ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

Թ. Խ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆ

(ՈՒՐՎԱԳԾԵՐ)

Երկրորդ հրատարակություն՝ լրացված և բարեփոխված

«ՄԻՏՔ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ—1968

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԵՐՐՈՐԴ ԲԱԺԻՆ

Հին Հայաստանի պատմա-աշխարհագրական նկարագիրը

## ՉՈՐՐՈՐԴ ԲԱԺԻՆ

### Հայաստանը VII—XVIII դարերում

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ԲԱԺԻՆ

### Հայաստանը 1801—1917 թթ.

# ԱՌԱՋԱԲԱՆ

*Սույն աշխատությունը օգտակար է հայ ժողովրդի և հայ գրականության պատմությամբ, Հայաստանի աշխարհագրությամբ, նրա ժողովրդական տնտեսության պատմությամբ, հնագիտությամբ զբաղվող մասնագետների, բարձրագույն դպրոցների աշխարհագրական, պատմության ու բանասիրական ֆակուլտետների ուսանողների, ուսուցիչների և ընթերցող լայն հասարակության համար։ Ուսանողը, մասնագետն ու հետաքրքրասերն այնտեղ կարող են գտնել օգտակար տեղեկություններ Հայկական լեռնաշխարհի բնության, պատմական Հայաստանի ճանապարհների, վարչա-տերիտորիալ բաժանման, պատմական կարևորագույն վայրերի (քաղաքների, ավանների, բերդերի, ճակատամարտերի վայրերի և այլն, և այլն), բնակչության թվի, զբաղմունքի, դասակարգային ու ու էթնիկական կազմի վերաբերյալ՝ ըստ պատմական ժամանակաշրջանների։*

*Ժամանակագրական առումով աշխատությունն ընդգրկում է հնագույն ժամանակներից մինչև 1917 թվականը։ Այն բուհական դասագիրք է և բաղկացած է հինգ բաժնից։*

*Առաջին բաժնի նյութը կազմում են Հայկական լեռնաշխարհի բնական պայմանները, իսկ երկրորդ բաժնինը՝ հին Հայաստանի գլխավոր ճանապարհները, բնակչությունը, վարչա-քաղաքական վիճակը։*

*Երրորդ բաժնում տրված է հին Հայաստանի պատմա-աշխարհագրական նկարագրությունը՝ ըստ Անանիա Շիրակացու «Աշխարհացույց»-ում կատարված վարչա-տերիտորիալ բաժանումների։ Ընդ որում, Մեծ Հայքի «աշխարհ»-ները բնութագրելիս նկատի է առնված պատմական ոչ թե մի դարաշրջան, այլ հնագույն ժամանակներից մինչև մոնղոլական արշավանքներն ընկած ամբողջ ժամանակաշրջանը։*

*Չորրորդ բաժինն իր մեջ ընդգրկում է VII—XVIII դարերը, որոնք բաժանված են մի քանի փոքր ժամանակաշրջանների։ Վերջիններից յուրաքանչյուրի մասին խոսելիս կանգ է առնված երկրի վարչա-քաղաքական վիճակի, տնտեսության և բնակչության աշխարհագրության վրա։ Այս բաժնում առանձին գլխով տրված է նաև Կիլիկիայի հայկական պետության պատմա-աշխարհագրական բնութագիրը։*

*Հինգերորդ բաժինն ընդգրկում է 1801—1917 թվականները։ Այստեղ համապատասխանաբար ներկայացված են երկրի վարչական ու տնտեսական վիճակը և բնակչության աշխարհագրությունը։*

*Աշխատությանը կցված են Հայկական լեռնաշխարհի ֆիզիկական և Մեծ Հայքի վարչական մանրամասն քարտեզները, որոնք զգալի չափով լրացվել ու ճշտվել են երկրորդ հրատարակության առթիվ։*

*Օտար նվաճողները, հատկապես թուրքական ջարդարարները կամայականորեն աղավաղել կամ ամբողջովին օտարացրել են Հայկական լեռնաշխարհի աշխարհագրական անունները, մոռացության տալով հայկական պատմական անունների մեծագույն մասը։ Այդ պատճառով էլ երկրի բնական պայմանները նկարագրելիս հարկադրված ենք եղել պատմական անունների հետ միասին գործածել նաև ժամանակակից մի շարք անուններ, որոնք մեծ մասամբ օտարածին են։*

Թ. Խ. ՀԱԿՈԲՅԱՆ

22. 02. 1966 թ.

Ք. Երևան

# ԱՌԱՋԻՆ ԲԱԺԻՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

### 1. ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆ ԱՆՑՅԱԼՆ ՈՒ ՌԵԼԻԵՖԸ

*Հայկական լեռնաշխարհը, որը որոշ հեղինակների մոտ երբեմն կոչված է նաև Հայկական բարձրավանդակ կամ սարահարթ, տեկտոնական և նրա հետ սերտորեն կապված հրաբխային ուժերի հետևանքով վեր բարձրացած մի երկիր է, ֆիզիկա-աշխարհագրական մի ուրույն մեծ շրջան։*

*Հայկական լեռնաշխարհը գրեթե բոլոր կողմերից սահմանափակված է բարձրաբերձ լեռնաշղթաներով։ Ընդհանուր առմամբ նա ունի ավելի բարձր դիրք, քան հարևան երկրները, այդ պատճառով էլ աշխարհագետների մոտ այն երբեմն համարվում է «լեռնային կղզի»։ Նրա հյուսիսային սահմանը կազմում է Փոքր Կովկաս լեռնասիստեմը, որը ձգվում է Մեծ Կովկասին (Կապ-Կոհ) զուգահեռ՝ հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք ուղղությամբ։ Հարավից լեռնաշխարհի սահմանը Կորդվաց և Մասիուս լեռներն են (Տավրոսից հարավ)։ Արևելքում Հայկական լեռնաշխարհը Իրանական սարահարթից անջատվում է Ուրմիա լճի (Կապուտան ծով) ու Արաքսի (Երասխ) ավազանների ջրբաժան շղթայով և Ղարադաղի լեռներով։ Իսկ հյուսիս-արևմուտքում Հայկական լեռնաշխարհի սահմանն անցնում է Անտիտավրոս և Պոնտական լեռնաշղթաներով։ Նշված սահմաններում Հայկական լեռնաշխարհի տերիտորիան հասնում է մոտ 300 000 քառ. կմ-ի։ Հայկական լեռնաշխարհում բարձրանում են զանազան ուղղություններ ունեցող բազմաթիվ լեռնաշղթաներ ու առանձին լեռնախմբեր։ Լեռնաշխարհի միջին*

բարձրությունը ծովի մակերևույթից հասնում է 1500—1800 մետրի։ Նա ավելի բարձր է, քան իր հարևան Փոքր Ասիան (որի միջին բարձրությունը 800—1200 մ է) և Իրանի բարձրավանդակը (միջին բարձրությունը 1400 մ)։ Ամբողջ լեռնաշխարհում ամենաբարձր գագաթը Մեծ Մասիսն է (5156 մ)։ Ձգվելով տարբեր ուղղություններով՝ լեռնաշղթաները հատվել են իրար հետ և առաջացրել բազմաթիվ փակ շրջաններ։ Լեռնաշղթաների մեջ ձգված են ձորեր, հովիտներ և դաշտեր։ Հենց ռելիեֆի այդպիսի բնույթի շնորհիվ է, որ հին և միջնադարյան Հայաստանի գավառների մի զգալի մասի անունները բարդված են «ձոր», «փոր», «հովիտ» բառերով։

Հայկական լեռնաշխարհի ռելիեֆը բազմազան է։ Այնտեղ մենք հանդիպում ենք տարբեր ժամանակներում առաջացած ծալքավոր լեռնաշղթաների, հրաբխային լեռնախմբերի ու առանձին գագաթների, գետերի գործունեությամբ առաջացած ձորերի ու հովիտների, առանձին սարահարթերի և այլն։

Լեռնաշխարհի ներկա ռելիեֆը հիմնականում ձևավորվել է երրորդական և չորրորդական ժամանակաշրջաններում։ Նրա ռելիեֆի ձևավորման մեջ սկզբնական շրջանում վճռական դերը պատկանում էր լեռնակազմական և վերջինիս հետ սերտորեն կապված հրաբխային երևույթներին։ Իսկ հետո ռելիեֆի ձևերի մեջ հսկայական փոփոխություններ են առաջացրել արտաքին ուժերը (արև, քամի, ջուր)։ Գետերը (հատկապես Արաքսը), արագընթաց հոսանքի շնորհիվ, կտրել ու ողողել են լեռնաշղթաներն ու առանձին բարձրացումները, իրենց հետ տանելով և ցածրադիր մասերում նստեցնելով հսկայական քանակությամբ տիղմ։ Երկրում տեկտոնական և հրաբխային երևույթները չեն դադարել գործելուց. դրանց արտահայտություններն են Հայկական լեռնաշխարհում՝ կրկնվող երկրաշարժերը, որոնք տեղի են ունենում թե՛ Արևմտյան Հայաստանում և թե՛ մեզ մոտ՝ Սովետական Հայաստանում։ Դրանք արտահայտվում են երբեմն թույլ, իսկ երբեմն էլ ավելի մեծ ուժով։ Սովետական Հայաստանում վերջին ժամանակներում տեղի են ունեցել մի քանի համեմատաբար ուժեղ երկրաշարժեր։ 1926 թ. Լենինականում տեղի ունեցած երկրաշարժը բավականին վնասներ պատճառեց քաղաքին։ 1931 թ. ապրիլի 27-ին Զանգեզուրի և Մեղրու շրջաններում տեղի ունեցած երկրաշարժի հետևանքով առաջացան զգալի ավերումներ։ Այդ երկրաշարժը միաժամանակ որոշ փոփոխություններ (փլվածքներ, աղբյուրների անհետացում և այլն) առաջացրեց ռելիեֆի վրա։ 1937 թ. հունվարի 6-ին Երև-

վանում, 1965 թ. Իգդիրում և նրա շրջակայքում նույնպես ուժեղ երկրաշարժեր եղան։

Ավելի վաղ ժամանակներում տեղի ունեցած մի շարք երկրաշարժերի մասին տեղեկություններ են հաղորդում մեր պատմիչները։ Կիրակոս Գանձակեցու հիշատակության համաձայն VIII դարի առաջին կեսում (հավանաբար 735 թ.) Հայոց ձորում (հնում՝ Վայոց ձոր, մինչև վերջին ժամանակներս՝ Դարալագյազ) երկրաշարժից զոհվել է 10 000 մարդ։ Երկրաշարժի հետևանքով ընկղմվել է Մոզան կամ Մոզն քաղաքը, իսկ գավառը իբր այդ օրվանից կոչվել է «Վայոց ձոր» («ողբերի ձոր»)[1]։ «Վայոց ձոր» տեղանվան առաջացման այս մեկնությունը, որ տալիս է Կիրակոս Գանձակեցին, միանգամայն կամայական է և անհամոզիչ. նախ այն պատճառով, որ Վայոց ձոր անունը դեռևս հիշատակվում է V դարի պատմիչների (Եղիշե և Ղազար Փարպեցի) մոտ, հետևապես, այդ անունը ոչ թե առաջացել է VIII դարում, այլ ավելի վաղ ժամանակներում, և, երկրորդ, Վայոց ձոր գավառանունը էթնիկական ծագում ունի։ Սակայն պատմիչի հաղորդած այդ տեղեկությունից երևում է, որ VIII դարի երկրաշարժը ոչ միայն մեծ վնասներ է պատճառել բնակչությանը, այլև ազդել է ռելիեֆի վրա։ Պատմիչի ասելով առաջացել են հսկա ճեղքեր, խափանվել են շատ աղբյուրներ։ Մի քիչ ավելի թույլ ուժով Սյունիքում երկրաշարժ է տեղի ունեցել X դարի սկզբներին, որի հետևանքով բնակչությունը դարձյալ բավականին տուժել է։

Իններորդ դարի երկրորդ կեսին Դվին քաղաքում և նրա շրջակայքում եղել է երկու երկրաշարժ։ Դրանցից մեկը տեղի է ունեցել 862 թ., Աշոտ Բագրատունու՝ Հայաստանի իշխանաց իշխան եղած ժամանակ։ Հիշատակության համաձայն երկրաշարժի հետևանքով Դվինում եղել են մեծ ավերումներ և զոհվել է 12 000 մարդ։ Մյուս երկրաշարժը, որն, ըստ նկարագրությունների, ավելի ուժեղ և աղետաբեր էր, տեղի է ունեցել 893 թվականին։ Աղետը պատահել է գիշերը, երբ քաղաքը խոր քնի մեջ էր։ Այդ երկրաշարժի հետևանքով փլվել են քաղաքի պարիսպներն ու պատվարները, բոլոր խոշոր և հաստահիմն շինությունները՝ եկեղեցիներ, ապարանքներ և այլ հաստատություններ։ Ավելի մեծ չափով տուժել է հատկապես ռամիկ ժողովուրդը, որի մեծագույն մասը կորցրել է իր տունն ու տեղը։ Մեծ է եղել մարդկային զոհերի թիվը։

[1] Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1910, էջ 70։

*1138 թ. տեղի է ունեցել Գանձակի մեծ երկրաշարժը, որի ալիքները տարածվել են նաև Սյունիքում։ Դրանից հինգ տարի անց, 1143 թ. Սյունիքում լինում է մի ավելի ուժեղ երկրաշարժ, որի պատճառած վնասները հսկայական չափերի են հասել։*

*Մեզ հասած տեղեկությունների համաձայն, տարբեր ժամանակներում երկրաշարժեր են նկատվել Մեծ և Փոքր Մասիսների շրջանում։ Դրանցից առաջինը տեղի է ունեցել 341 թ.։ Եդեսիայի եպիսկոպոս Եփրեմը պատմում է, թե այդ երկրաշարժի միջոցին, երբ, Մեծ և Փոքր Մասիսները նախ հեռացան իրարից, ապա սարսափելի ճայթյուններով մոտեցան և երբ լեռների միջից դուրս ժայթքեց ծուխ ու կրակ[1]։ Սա, իհարկե, չափազանցություն է, որովհետև Մասիսները վաղուց արդեն հանգած էին, սակայն նկարագրությունից երևում է, որ, իրոք, երկրաշարժը բավական ուժեղ է եղել։*

*Երկրորդ երկրաշարժը Մասիսների շրջանում տեղի է ունեցել ոչ շատ վաղ անցյալում՝ 1840 թ. հունիսին։ Այդ երկրաշարժը ցնցել է Մասիսները (Մեծ Մասիսի լանջին գտնվող Ակոռի գյուղը կործանվեց)՝ իր ալիքները տարածելով հեռու, մինչև Արաքսի ձախակողմյան ափերը։*

*Պատմությանն առանձնապես հայտնի է 1319 թվականի երկրաշարժը Այրարատյան աշխարհում։ Այդ երկրաշարժը, ինչպես պատմվում է, քարուքանդ է արել բազմաթիվ բնակավայրեր ու քաղաքներ, որոնց թվում և Անի մայրաքաղաքը։ Մի քանի երկրաշարժեր են տեղի ունեցել նաև Բարձր Հայքում, Ծոփքում և Հայաստանի այլ մասերում։*

*Դարեր շարունակ աղետաբեր երկրաշարժերի էպիկենտրոն է եղել Երզնկա քաղաքը։*

*Հին ու միջին դարերի մատենագիրները, որոնց թվում և հայ պատմիչները, առհասարակ ուռճացնում են երկրաշարժերի պատճառած վնասների չափերն ու մարդկային զոհերի թիվը։ Սակայն դրա հետ միասին պետք է նկատի ունենալ, որ այդ ժամանակներում շինությունների մեծագույն մասը խախուտ էր, և 6—7 բալանոց երկրաշարժն անգամ կարող էր մեծ ավերածություններ պատճառել։*

*Ներքին ուժերի արտահայտություններ են նաև հրաբխային երևույթները, որոնք անքակտելիորեն կապված են լեռնակազմական երևույթների հետ։ Նեմրութ հրաբուխը, օրինակ, գործել է*

[1] *Տե՛ս* Լեո, *Հայոց պատմություն, հ. Ա., Թիֆլիս, 1917, էջ 132—133։*

ընդհուպ մինչև 1440 թվականը և նույնիսկ դրանից հետո։ Այժմ Հայկական լեռնաշխարհում կա միայն մի գործող հրաբուխ. դա Թոնդրակ կամ Թոնդուրեկ գագաթն է Սաղկանց (Ալա-դաղ) լեռների արևելյան մասում։ Սա ամբողջ Մերձավոր Արևելքում միակ հրաբուխն է (բարձրույթ. 3330 մ), որ դեռ բոլորովին հանգած չէ։ Նրանից հաճախ լսվում են դղրդոցներ, գագաթից ոչ շատ հեռու, ժայռերի միջից դուրս են ժայթքում ջրային գոլորշիներ, ծուխ և ծծմբային գազ, բայց լավա չի արտավիժում։ Խառնարանի խորությունը հասնում է 600 մետրի։ Գլխավոր խառնարանից երեք կմ արևելք կան մի քանի փոքրիկ գագաթներ ևս, որոնք ժայթքում են բարձր ջերմության ունեցող ջրային գոլորշիներ։

Երկրաբանական ժամանակաընթացքում Հայկական լեռնաշխարհի ռելիեֆի ձևավորման մեջ, լեռնակազմական և հրաբխային երևույթներից բացի, առանձնապես նշելի են նաև սառցադաշտերի թողած ազդեցությունները։

Գիտության մեջ երկար ժամանակ պահպանվում էր այն կարծիքը, թե Հայկական լեռնաշխարհը՝ չնայած իր բացարձակ բարձրությանը և բարձրադիր լեռնային ընդարձակ սարահարթերի շատությանը՝ ոչ մի տեղ չի պահպանել չորրորդական դարաշրջանի սառցապատման հետքերը։ Սակայն վերջին հետազոտությունները ապացուցեցին, որ պարզ երևում են սառույցների շարժման հետևանքները և մորեններ (լեռնալանջերից սառույցների պոկած քարաշերտերի) գոյությունը (Գեղամա շղթայի Գնդասար և Սպիտակասար գագաթների լանջերին, Արագածի ու Մասիսների վրա և այլն)։ Ժողովուրդը տակավին վաղ ժամանակներից նկատել է Հայկական լեռնաշխարհի զանազան կողմերում լեռնային ապարների վրա սառույցի հոսելուց առաջացած խորագծեր և վերագրել է այդ «Անգեղ հսկայի» եղունգների վարպետությանը։

Հայկական լեռնաշխարհի ռելիեֆի ձևերի մեջ լայն տարածում ունեն գլխավորապես բարձր լեռնային շրջանները, հրաբխային սարահարթերը, գետահովիտները, դաշտերը և լճային իջվածքները։ Նրա ռելիեֆի համառոտ նկարագիրը տալու համար, հարմարության տեսակետից, սկսենք հյուսիս-արևելյան մասից և աստիճանաբար շարժվենք դեպի հարավ-արևմուտք։

**Փոքր Կովկաս լեռնախումբը**

Փոքր Կովկասը երբեմն կոչվում է նաև Անտիկովկաս։ Փոքր Կովկասը ձգվում է գրեթե Մեծ Կովկասին (Կապ-Կոհ) զուգահեռ։ Նա սկսվում է Սև ծովի (Էվքսինյան Պոնտոս) ափերի մոտից՝ Աճարայի (հնում՝ Ղա-

ղո) և Սուրամի (հնում՝ Լիխի) լեռնաշղթաներով, որոնք ունեն զուգահեռական ուղղություն։ Աճարայի լեռնաշղթայի շարունակությունը Բորժոմի կիրճից հետո, նույն արևելյան ուղղությամբ, կազմում է Թրիալեթի (Թռեղք) շղթան, մինչև Թբիլիսի (Տփղիս), որտեղ նա վերջանում է Մամա-Դավիթ («Հայր Դավիթ») սարով։ Նշված երկու լեռնաշղթաները ամբողջովին գտնվում են Հայկական ՍՍՀ սահմաններից դուրս։

*Փոքր Կովկասի հարավ-արևելյան կեսը բաղկացած է տարբեր ուղղություններով ձգվող մի շարք լեռնաշղթաներից, որոնք իրենց ծագմամբ ու բնույթով զանազանակերպ են և, միակցվելով իրար հետ, առաջացրել են մի շարք ֆիզիկա-աշխարհագրական շրջաններ։ Փոքր Կովկասի այդ կեսի մասերն են կազմում Վիրահայոց (վրացերեն՝ Սոմխեթի), Մրղուզի, Արեգունի, Սևանի (Շահ-դաղ), Մռավի, Ղարաբաղի (Արցախի), Խոնավ (Կեչուտի), Բազումի, Փամբակի, Գեղամի, Վարդենիսի և Զանգեզուրի (Սյունիքի) լեռնաշղթաները։*

**Վիրահայոց կամ Սոմխեթի լեռնաշղթա.**— *Սկսվում է Թրիալեթի (Թռեղք) լեռնաշղթայի Առջևան գագաթից և ձգվում մինչև Աղստև գետը։ Նա Խրամ գետով և սրա աջակողմյան վտակներով մասնատված է մի քանի մասերի, որոնցից հարավայինը, որը կոչվում է Պապաքարի շղթա, մտնում է Սովետական Հայաստանի տերիտորիայի մեջ։ Վերջինիս արևմտյան լանջերը զառիթափ են, իսկ արևելյան լանջերն ունեն համեմատաբար մեղմ թեքություն։ Գլխավոր լեռնաշղթան և նրա բազուկները ծածկված են փարթամ անտառներով։ Հարուստ է գունավոր մետաղների հանքերով։*

**Գանձակի կամ Գանջայի լեռներ.**— *Այս լեռները ձգվում են Աղստև և Թարթառ (Տրտու կամ Տրտուական) գետերի միջև։ Լեռնաշղթան իր երեք մասերում ունի տարբեր անուններ։ Արևմտյան մասը Մրղուզ գագաթի (3010 մ) անվամբ կոչվում է Մրղուզի լեռներ, միջինը՝ Սևանի լեռներ, իսկ արևելյանը, որ սկսվում է Հինալ գագաթից և արևելյան ուղղությամբ ձգվում է մինչև Թարթառ գետի ստորին հոսանքը, կոչվում է Մռավի լեռներ։*

*Ոչ մի գետ չի ճեղքում Գանձակի շղթան։ Նա հանդիսանում է ջրբաժան գիծ Քուռ և Արաքս գետերի միջև։*

*Գանձակի լեռնաշղթայի արևմտյան մասը կազմող Մրղուզի լեռները ձգվում են իրենցից հարավ գտնվող Արեգունի լեռներին զուգահեռ և վերջիններիս հետ կազմում են Գետիկի (Ճամբարակի) հովիտը։ Մրղուզի լեռներից դեպի հարավ նայող լանջերը զառիթափ են, իսկ դեպի հյուսիս նրանք երկար տարածության վրա գրեթե*

*պահպանում են գլխավոր շղթայի բարձրությունը և ապա, աստիճանաբար իջնելով, խառնվում են մերձքուռյան դաշտավայրին։*

*Գանձակի շղթայի միջին մասը՝ Սևանի լեռները, Մրղուզից ավելի բարձր են։ Նրա հարավային մասը, որ նայում է դեպի Սևանա (Գեղամա) լիճը, ժայռոտ է, լեռնանցքները բարձր են և ձմռանը համարյա անանցանելի։ Շղթայի այդ կողմում գտնվող մի քանի առանձնացած ձորերում պահպանվել են գիհու պուրակներ, որպես Սևանի ավազանում մի ժամանակ եղած անտառների մնացորդներ։ Սևանա լեռնաշղթայից սկիզբ են առնում և դեպի հյուսիս տարածվում մի քանի երկար լեռնաճյուղեր, որոնց միջին մասերը ծածկված են ճոխ անտառներով, իսկ դրանցից բարձր՝ ալպյան փարթամ արոտավայրեր են։ Շղթայի այդ ճյուղերը հայտնի են հանքային հարստություններով։*

*Թարթառ գետի ափից սկսած դեպի հարավ ձգվում են Ղարաբաղի (Արցախի) լեռները, որոնք ունեն հրաբխային ծագում և շրջապատի համեմատությամբ՝ փոքր բարձրություն։*

**Խոնավ լեռներ (Կեչուտ).**—*Հնում մի մասը կոչվում էր Մթին լեռներ։ Ունեն հրաբխային ծագում։ Արևմտյան լանջերն ավելի զառիթափ են, քան արևելյանը։ Հարուստ են ճոխ արոտավայրերով։ Լեռնաշղթայի հարավային հատվածը տարվա մեջ մեծ մասամբ պատած է լինում մառախուղով։ Հենց այդ պատճառով էլ նա կոչվել է նաև Մթին լեռներ։ Խոնավ լեռների Լեգլի գագաթից դեպի արևմուտք ձգվում է Ջըլգըի լեռնաշղթան, իսկ հարավային մասից սկսվում և դեպի արևելք է ձգվում Բազումի լեռնաշղթան, որը հասնում է մինչև Դիլիջանի մոտերքը։*

*Բազումի, Մթին և Վիրահայոց լեռնաշղթաների միջև տարածվում է Լոռու հրաբխային բարձրավանդակը (հնում՝ Տաշրատափ)։ Լոռին ունի ծովի մակերևույթից 1450 մ բարձրություն։ Նրա արևմտյան մասը ծածկված է ճոխ արոտավայրերով, իսկ արևելյանը՝ թանձրախիտ անտառներով։*

*Բազումից հարավ, գրեթե նրան զուգահեռ տարածվում են Շիրակի և Փամբակի լեռնաշղթաները։ Լոռուց հարավ, Բազումի և Փամբակի լեռնաշղթաների միջև եղած իջվածքը Կիրովական քաղաքի և Ֆիոլետովո գյուղի միջև գտնվող մի թամքույով բաժանված է երկու մասի՝ Փամբակի հովտի և Աղստևի ձորի։ Փամբակի վրա գտնվող Փամբի լեռնանցքի և Մայմեխ գագաթի մեջտեղից սկսվում և դեպի հարավ-արևելք է տարածվում Ծաղկունյաց լեռնաշղթան, որի և Փամբակի լեռնաշղթայի արևելյան կեսի միջև տարածվում է Մարմարիկ գետի անտառապատ ավազանը։*

Գեղամա հրաբխային լեռնաշղթան սկսվում է Հրազդանի ակունքի մոտից և տարածվում է հարավ, մինչև Գնդասար գագաթը։ Գեղամա լեռները կազմված են քսանից ավելի հրաբխային գագաթներից, որոնք իրար հետ միացած են թամբոցներով և ներկայացնում են լեռնաշղթայի տեսարան։ Նրա գլխավոր գագաթներից են Աժդահակը, Սպիտակ սարը, Գեղասարը և այլն։

Հրաբխային կոների գագաթներին կան 200—600 մ տրամագիծ ունեցող խառնարաններ, որոնցից մի քանիսը լցվելով ջրով, վեր են ածվել լճակների։ Ամառվա ընթացքում դեպի Գեղամա ճոխ արոտավայրերն էին գալիս ոչ միայն շրջապատի, այլև շատ հեռավոր տեղերի (անգամ Կասպից ծովի ափերի) բնակիչներ՝ իրենց անասունների հոտերով։ Ժողովրդական ավանդության համաձայն, այդ լճակները կառուցել են մարդիկ։

Գեղամա լեռների երկու լանջերն էլ զուրկ են անտառներից։

Վարդենիսի, Գեղամա, Արեգունու, Սևանի և Զանգեզուրի (Սյունյաց) լեռնաշղթաների միջև տարածվում է Սևանա (Գեղամա) լճի ավազանը, որն ունի 4760 քառ կմ տարածություն։ Այդ տարածության մի մասը բռնում է լճի հայելին։ Սևանա լճի ավազանն ունի եռանկյունու ձև։ Ավազանի հարավ-արևելյան և հարավային մասերում տարածվում են Բասարգեչարի և Մարտունու դաշտերը։ Սևանա լճի ավազանը համարյա զուրկ է անտառներից, միայն երբեմն պատահում են կարճահասակ և նոսր պուրակներ։ Դեպի Սևանա լճի ավազանն իջնող նշված լեռնաշղթաների լանջերը ծածկված են փարթամ արոտավայրերով։

**Զանգեզուրի (Սյունյաց) լեռներ**— Սկսվում են Հինալ գագաթից և, երկու աղեղ տալով, վերջանում Արաքսի մոտ խոր կիրճով (600 մ)։ Զանգեզուրը Փոքր Կովկաս լեռնասիստեմի մեջ ամենից բարձր լեռնաշղթան է։ Զանգեզուրի հյուսիսային մասում գագաթները լայնանիստ են, լեռնանցքներն՝ աննկատելի։ Լեռնաշղթայի միջին մասում եղած լեռնանցքներից նշանավոր են երկուսը. առաջին՝ Որոտանի լեռնանցքը (2344 մ), որով այժմ անցնում է Հայոց ձոր (Վայոց ձոր)—Սիսիան (Ծղուկք) խճուղին, երկրորդ՝ Սիսիանի լեռնանցքը (2348 մ), որով անցնում է այժմյան խճուղին նույն Սիսիանից դեպի Նախիջևան։

Լեռնաշղթայի հարավային մասը, որն սկսվում է Սարվարդ գագաթից, խիստ տարբերվում է հյուսիսայինից։ Այստեղ են գտնվում շղթայի ամենաբարձր գագաթները՝ Կապուտջուղը (3906 մ), որն Արագածից հետո Հայկական ՍՍՀ-ի ամենաբարձր գագաթն է

*և նրա նման ծածկված է մշտնջենական ձյունով, Սարվարդը, Երկաթասարը և այլն։ Զանգեզուրի հարավային մասի լանջերը երկու կողմերից էլ ակոսված են խորխորատներով։ Լեռնաշղթայի այս մասում շատ թե քիչ հարմար են երկու լեռնանցքներ։*

*Զանգեզուրի լեռնաշղթան արձակում է մի քանի լեռնաբազուկներ։ Դրանցից ամենաերկարը սկսվում է Որոտանի և Սիսիանի լեռնանցքների մեջտեղից և, ձգվելով արևմուտք, հասնում է Արփա գետի հովիտը։ Այս լեռնաբազուկը կոչվում է Հայոց ձորի (հնում՝ Վայոց ձորի) շղթա, որը ծալքավոր է և եզրավորում է Հայոց ձորը հարավային կողմից։ Հայոց ձորի հյուսիսային սահմանը կազմում է Վարդենիսի լեռնաշղթան, իսկ արևելյանը՝ Զանգեզուր լեռների կենտրոնական հատվածը։*

*Հարավում Զանգեզուրից բաժանվում և դեպի արևելք են տարածվում Բարգուշատի (Բարկուշատ) և Մեղրու (Արևիքի) լեռնաբազուկները։ Բարգուշատի ամենաբարձր գագաթը Արամազդն է, իսկ Մեղրունը՝ Բաղացսարը։ Մեղրու լեռնաշղթայից դեպի հյուսիս տարածվող ճյուղերից մեկի վրա է գտնվում Խուստուփ լեռն իր «նվիրական» գագաթով։ Թե՛ Բարգուշատի և թե՛ Մեղրու լեռնաշղթաների բարձր մասերը ծածկված են ալպյան փարթամ արոտավայրերով, իսկ ստորին մասերը՝ անտառներով։*

*Բարգուշատի և Մեղրու լեռները հարուստ են գունավոր մետաղների հանքերով։*

*Զանգեզուր լեռնաշղթայի հյուսիսային հատվածը Սևանա լճի ավազանը փակում է հարավ-արևելյան մասից։ Զանգեզուր լեռնաշղթայի այս հատվածի լանջերը զառիթափ են։ Լեռնաշղթայից դեպի արևելք տարածվող լանջերը միանում են Թարթառ (Տրտու) գետի անտառապատ վերնագավառին, իսկ արևմուտք տարածվողները իջնում են դեպի Մասրիկի դաշտը։*

*Զանգեզուր լեռնաշղթայի Կետի գագաթից սկսվում և դեպի արևմուտք է ձգվում* Վարդենիսի (Հարավ-Սևանի) *լեռնաշղթան։ Վարդենիսի լեռնաշղթան Զանգեզուրի հետ կազմում է մի անկյուն, որի մոտ գտնվում են Մեծ և Փոքր Ալլիճ լճակները։*

**Արագած և Արայի լեռ.**— *Ծաղկունյաց լեռներից բաժանվում են երկու լեռնաճյուղեր, որոնցից մեկը, մի աղեղ կազմելով, ձգվում է դեպի արևմուտք և միանում Արայի լեռան հետ, որի լանջերը խիստ քարքարոտ են և ծածկված են խղճուկ արոտավայրերով։ Նրա հարավ-արևմուտքում գտնվում է Հայկական լեռնաշխարհի երրորդ բարձր լեռը՝ Արագածը, որն իր բարձրությամբ*

միայն զիջում է Մեծ Մասիսին և Սիփանին։ Արագածը Հայկական ՍՍՀ ամենաբարձր գագաթն է (4095 մ)։

Արագածի խառնարանի շուրջը բարձրանում են չորս բուրգեր։ Խառնարանից ու հեռու ցրված են բազմաթիվ լճակներ, որոնցից ամենամեծը Սև լիճն է (3225 մ)։ Արագածի լավային հեղեղները բռնել են ընդարձակ տարածություն։ Նրա լավաները հյուսիսում հասնում են Լենինական, արևմուտքում՝ Ախուրյան, հարավում՝ Արաքս, իսկ արևելքում՝ մինչև Ծաղկունյաց շղթան. այստեղ Արագածի լավայի հեղեղի շնորհիվ առաջացել է Ապարանի սարահարթը՝ 2100 մ միջին բարձրությամբ։

Սևանա լճի ավազանից հարավ-արևելք, Զանգեզուրի և Ղարաբաղի լեռների միջև տարածվում է Անդրկովկասի ամենաբարձր շրջանը՝ Ղարաբաղի բարձրավանդակը։ Բարձրությունը վերին մասերում մոտ 3000 մ է։ Նրա վրա տարածվում են բազմաթիվ հրաբուխներ, որոնք դասավորված են հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք ուղղությամբ։ Ղարաբաղի բարձրավանդակը, իջնելով հարավ-արևելյան ուղղությամբ, առաջացնում է Տեղի և Եռաբլուրի սարահարթերը, որոնք իրարից անջատված են Գորիս գետի լայն հովտով։ Բարգուշատի լեռնաշղթային հյուսիսից միացած են, արևելքում՝ Գորիսը, իսկ արևմուտքում՝ Սիսիանը։ Նույն Բարգուշատի և Մեղրու լեռնաշղթաների միջև տարածվում է այժմյան Ղափանի շրջանը։ Ավելի հարավ՝ Մեղրու լեռնաշղթայի և Արաքս գետի միջև, գտնվում է Մեղրու եռանկյունաձև շրջանը։

Փոքր Կովկասի սիստեմին արևմուտքից հարակցվում են մի քանի սարահարթեր։ Դրանք են՝ Ապարանի սարահարթը, Կոտայքի սարահարթը, Քասախ և Հրազդան (Զանգու) գետերի միջև՝ Եղվարդի սարահարթը և Վարդենիս ու Հայոց ձոր լեռնաշղթաների միջև տարածվող Արփա գետի ավազանը։

Ավելի հյուսիս-արևմուտքում Փոքր Կովկասին են միացած Ամասիայի (հնում՝ Աշոցք) սարահարթը և Շիրակի դաշտը։ Շիրակի դաշտն իր բերրիությամբ հռչակված էր դեռ հնուց։

**Արաքսի հովիտը**

Արաքսի միջին հոսանքի շրջանում փռված է Հայկական լեռնաշխարհի ամենաընդարձակ հարթությունը՝ Արարատյան դաշտը։ Այս դաշտը պատմական ժամանակներում եղել է Հայաստանի քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի հիմնական կենտրոնը։

Արարատյան դաշտի միջին բարձրությունը 800—825 մ է։ Լայն առումով Արարատյան դաշտ է կոչվել Արաքսի երկու ափերին տա-

*բածվող այն հարթությունը, որը փռված է Ախուրյանի գետախառնուրդից մինչև Մեղրու կիրճը՝ մոտ 200 կմ երկարությամբ։ Ընդհանուր առմամբ, Արարատյան դաշտն ունի եռանկյան ձև։ Նա մի ժամանակ եղել է ծովի հատակ։ Այդ ծովն աստիճանաբար ետ քաշվելով, Արարատյան դաշտի տեղում թողել է մի խոշոր լիճ, որը հետագայում ցամաքել է։ Արարատյան դաշտը հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք ուղղությամբ (Արաքսի ուղղությամբ) ցածրանում է, նա ցածրանում է նաև շրջապատի լեռնաստորոտներից դեպի Արաքսի հունը։ Կլիմայի չորության պատճառով ամբողջ հարթությունը կներկայացներ կիսաանապատ, եթե Արաքսից և նրա ձախակողմյան վտակներից ոռոգման նպատակով հանված առուները չլինեին։ Անջրդի տեղերում բուսնում են միայն փուշ մոլախոտեր և փշաբույսեր։ Դեռ ուրարտական ժամանակներից սկսած այստեղ անց են կացվել արհեստական ջրանցքներ։ Սակայն Արարատյան դաշտի իսկական և սիստեմատիկ ոռոգման աշխատանքները սկսվեցին սովետական կարգերի հաստատումից հետո[1]։ Սովետական իշխանության տարիներին նորոգվեցին բոլոր հին ջրանցքները, կառուցվեցին նորերը (Լենինի անվան, Հոկտեմբերյանի, Ստորին Հրազդանի, Մեծամորի, Էջմիածնի, Կոտայքի և այլն), չորացվեց գետերի (Հրազդան, Սև ջուր) ստորին մասերում տարածված ճահիճների մեծագույն մասը, տնկվեցին արհեստական անտառներ։*

*Արարատյան դաշտը բլրաշարքերով մասնատված է մի շարք մասերի, որոնք իրենց բնական պայմաններով իրարից զգալի չափով չեն տարբերվում։ Արաքսի ձախ կողմում այդ մասերն են կազմում՝*

*ա)* **Հոկտեմբերյանի տափաստանը**, *որը ոռոգվում է Մաստարա, Քասախ և Սև ջուր (Մեծամոր) գետերով.*

*բ)* **Հրազդանի հովիտը (Զանգիբասար)**, *որը տարածվում է Հրազդան (Զանգու) գետի ստորին հոսանքի շրջանում.*

*գ)* **Ազատ** *գետի հովիտը.*

*դ)* **Շարուրի դաշտը**, *որը հիմնականում տարածվում է Արփա գետի ստորին հոսանքի ավազանում.*

*ե)* **Նախիջևանի դաշտը (Բոյուկ-դուզ)**, *որը տարածվում է Նախիջևան գետի հովտում.*

*Նախիջևանի դաշտից հետո, դեպի արևելք, Արաքսի ձախ*

[1] *Խոսքը վերաբերում է Արարատյան դաշտի այն մասերին, որոնք մտնում են Սովետական Հայաստանի և Նախիջևանի ԻՍՍՀ-ի մեջ, այսինքն՝ Արաքսի ձախ ափին։*

ափին տարածված են մի շարք փոքրիկ գետահովիտներ (Ալինջա-յի, հնում՝ Երնջակ, Ագուլիս-Օրդուբադի, Մեղրու և այլն), որոնք իրարից բաժանված են լեռնաբազուկներով։

Արարատյան դաշտն ավելի նեղ շերտով է ձգվում Արաքսի աջ կողմում։ Այստեղ նրա մասերն են կազմում Սուրմալուի և Մակուի դաշտերը, ինչպես և Արաքսի աջակողմյան վտակ Կարմիր գետի ստորին հոսանքում ընկած դաշտը։ Սուրմալուի (կամ Կարակալա) դաշտի սահմանները կազմում են հյուսիսից՝ Արաքս գետը, հարավից՝ Հայկական Պար լեռնաշղթայի դեպի հյուսիս իջնող լեռնալանջերը, իսկ արևելքից՝ Մեծ և Փոքր Մասիսների հյուսիսային դարավանդները։ Ոռոգման տեսակետից այդ դաշտի վիճակն այժմ աննախանձելի է, այնտեղ Արաքսից հանված են մի քանի վատ առուներ, որոնք ի վիճակի չեն գոնե նվազագույն չափով հագեցնելու դաշտերի ծարավը։ Հայկական Պարից հարավ՝ Զիլնագետի ավազանում տարածված է Բայազետի շրջանը, որն իրենից ներկայացնում է մի գոգավորություն և ոռոգվում է Զիլնագետ գետով։ Բայազետից հարավ-արևելք Մակուի շրջանն է։ Բայազետով հոսող գետը՝ Զիլնագետը, անցնում է նաև Մակուի շրջանով. նրա ստորին հոսանքը կոչվում է Դեղին գետ։ Սա աջ կողմից իր մեջ է ընդունում Մակու գետը, վերջինիս վտակներից մեկի ավազանում (այդ վտակը հնում կոչվում էր Տղմուտ) տարածվում է մի դաշտ, որը հնում հայտնի էր Ավարայր անունով։

Մակուից հարավ-արևելք տարածվում է Արարատյան դաշտի մասը կազմող, Սպիտակ (Աղ-չայ) և Կարմիր գետերի ստորին հոսանքում փռվող դաշտը՝ Նախիջևան և Ալինջաչայ գետերի դիմաց։

**Հյուսիսային հրաբխային բարձրավանդակ**

Հյուսիսային հրաբխային բարձրավանդակը պարփակված է, արևմուտքից՝ Արսիան-Մեծրաց, արևելքից՝ Խոնավ-Արագած, հյուսիսից՝ Անարայի շղթաների և հարավից՝ Արաքս-Կաղզվանի ձորի միջև։ Բարձրավանդակը լեռներով կիսված է երկու մասի՝ հյուսիսային և հարավային։ Նրա հյուսիսային մասը բաղկացած է մի քանի շրջաններից.

Կող (Գյոլե)—տարածվում է Կուր գետի ակունքների շրջանում, մեծ մասամբ պատած է ճահիճներով, տերիտորիալ տեսակետից համընկնում է Տայոց աշխարհի կազմի մեջ հիշատակվող Կող գավառին։

**Արդահան**— Կողի հյուսիսային հարևանն է, տարածվում է նրա և Ախլցխայի միջև։

**Ախալցխան** տարածվում է Կուր գետի ձախակողմյան վտակ Փոցխովի ավազանում։

Նշված երեք շրջանները հարուստ են անտառներով, նրանցից առաջին երկուսն այժմ մտնում են Թուրքիայի մեջ, իսկ երրորդը՝ Ախալցխան, կազմում է Սովետական Վրաստանի մասը։

**Ախալքալաքի** դիրքը բավականին բարձր է։ Նա հայտնի է իր փարթամ արոտավայրերով ու սառնորակ աղբյուրներով։ Այստեղ ցրված են բազմաթիվ լճակներ՝ Փարվանա, Դուման, Խանչալի և այլն, որոնք բոլորն էլ ունեն անուշահամ ջրեր և սնունդ են տալիս Ախալքալաքի գետին։ Ախալքալաքի սարահարթը հնում կոչվում էր Ջավախքի գավառ (վրաց. Ջավախեթի)։ Նրա արևելյան մասում գտնվող Փարվանա լճից է սկիզբ առնում գավառի միջով անցնող Ախալքալաքի գետը (հնում՝ Ջավախեթիս-Մտկվարի), որն իր վերին հոսանքում կոչվում է Փարվանա գետ։ Ախալքալաքի գետը Խերթվիս բերդի տակ թափվում է Քուռի մեջ։ Գետախառնուրդից քիչ վերև, Քուռի բարձրադիր ձախ ափին, գտնվում են Թմկաբերդի (վրաց. Թմոգվի) ավերակները։

Հյուսիսային հրաբխային բարձրավանդակի հարավային մասը համընկնում է Կարս և Ախուրյան գետերի ավազաններին։ Այդ ամբողջ շրջանը բաժանվում է ֆիզիկա-աշխարհագրական մի քանի գավառների՝ Կարսի դաշտի, Շիրակի դաշտի և Տեկորի սարահարթի։ Կարսի դաշտը, որն ավելի ճիշտ կլիներ կոչել սարահարթ, առանձնապես աչքի է ընկնում իր բնական խոտհարքներով և ջինջ օդով, իսկ նրա հարավ-արևմտյան մասում ընկած Սարիղամիշի շրջանը՝ խեժատու ծառատեսակներով, որոնք կազմում են համատարած անտառներ։ Կարսի դաշտից հարավ-արևելք՝ Առճո-Առիճ (Ալաջա) լեռների և Ախուրյան ու Արաքս գետերի միջև պարփակված եռանկյունաձև բարձրավանդակը կոչվում է Տեկորի սարահարթ, որից հյուսիս-արևելք փռված է Շիրակի արգավանդ դաշտը, որն իր հերթին սահմանակցվում է Ամասիայի սարահարթին (հնում՝ Աշոցք)։ Վերջինիս հյուսիսային մասում գտնվող Արփի լճից սկիզբ է առնում Ախուրյան գետը, որը հոսում է դեպի հարավ, գրեթե միջօրեականի ուղղությամբ։

**Հայկական Պար** լեռնաշղթան (այժմ թուրքերը կոչում են Աղրի-դաղ) հնում հայտնի էր իր երեք գագաթների՝ Բարգողի, Սուկավետի և Այծպտկունքի անուններով։ Նա սկսվում է արևելքում Փոքր և Մեծ Մասիսներով և, զուգահեռական ուղղությամբ ձգվելով

դեպի արևմուտք, վերջանում է Արևմտյան Եփրատի մոտ՝ Մարիամ լեռնազագաթով։

Հայկական Պարը մի մեծ պատնեշ է, որը բարձրանում է Հայկական լեռնաշխարհի գրեթե կենտրոնում, վերջինս բաժանելով երկու մասի՝ հյուսիսային և հարավային։ Մեծ մասամբ ունի հրաբխային ծագում։ Փոքր և Մեծ Մասիսներից մինչև Գայլատու (Բալըխ-գյոլ) լճի արևմտյան մասում գտնվող Սինակ գագաթը լեռնաշղթան ձգվում է զուգահեռականի ուղղությամբ։ Սինակից արևմուտք լեռնաշղթան կազմում է մի մեծ աղեղ։ Արևմուտքում՝ Թուրքմենկալա գագաթից լեռնաշղթան ընդունում է արևմտյան ուղղություն, և այդ ուղղությունը գրեթե չի խախտվում մինչև նրա արևմտյան ծայրակետը։ Լեռնաշղթայի ամենաբարձր գագաթներն են Մեծ Մասիսը, որը հնում կոչվել է նաև «Ազատն Մասիս» (5156 մ) և Փոքր Մասիսը (3925 մ)։ Երկու Մասիսների (կամ Արարատ) միջև առաջացել է մի թամբոց, որտեղ ձյան հալոցքի ջրերը կեսօրից հետո դուրս են գալիս որպես աղբյուրներ։ Այդ թամբոցը կրում է Սարդար-բուլաղ անունը։ Երկու Մասիսներն էլ ունեն հրաբխային ծագում։ Մեծ Մասսի դեպի հյուսիս և հարավ նայող կողմերում առաջացել են խոր ձորեր, որոնցից հյուսիսայինը, որը սկսվում է հավերժական ձյան տակից և իրենից ներկայացնում է մի հսկա պատռվածք, կոչվում է Սուրբ Հակոբի ձոր («Վիհք Մասեաց»)՝ համանուն վանքով։ Մեծ Մասսի վրա մշտնջենական ձյան գիծն սկսվում է մոտ 4000 մ բարձրությունից։ Նրա գագաթին, ինչպես հաղորդում են ուսումնասիրողները, լինում են ուժեղ քամիներ։ Մասիսներն անհամեմատ ավելի սակավաջուր են, քան Արագածը։ Նրանց լեռնատեսակները փխրուն են, այդ պատճառով էլ ձյան հալոցքի ջրերը ներծծվում են դեպի խորքերը, առանց սկիզբ տալու աղբյուրների։

Մասիսներից արևմուտք՝ մինչև Գայլատու լճի արևմտյան ափի մոտ բարձրացող Սինակ գագաթը, լեռնաշղթայի կատարները իջնում են՝ հասնելով 1760 մ։ Լեռնաշղթայի այս հատվածում առաջացել են մի քանի հարմար լեռնանցքներ, որոնցից են՝ ա) Մեծ Մասսից անմիջապես արևմուտք գտնվող Խ ա ր ա բ ա-բ ա զ ա ր ի լեռնանցքը, որով այժմ անցնում է Բայազետից Իգդիր տանող ճանապարհը. բ) Խարաբա-բազարից մոտ 15—20 կմ արևմուտք ընտնրվող Մ ե ծ և Փ ո ք ր Ձ ի ն գ լ ի ն ե ր ը։ Մեծ Ձինգլին կոչվում է նաև Օրկովի հովիտ կամ կիրճ, որով այժմ անցնում է Բայազետ—Իգդիր երկրորդ ճանապարհը։ Այդ լեռնանցքով են անցել արաբական զորքերը Կոգովիտից (Բայազետի շրջան) դեպի Այրա-

րատյան աշխարհը կատարած իրենց առաջին արշավանքի ժամանակ (640 թ.). գ) Կուչաղի (կամ Քարվանսարայի) լեռնանցքը՝ Գայլատու լճից մոտ 25 կմ արևելք։

Ակադ. Հ. Մանանդյանի կարծիքով, դեպի Այրարատյան աշխարհ և Արտաշատ մայրաքաղաք արշավելիս, Կուչաղով են անցել հռոմեական զորավարներ Պոմպեոսի և Կորբուլոնի լեգեոնները։

Բացի նշվածներից, լեռնաշղթայի Մեծ Մասիս—Սինակ հատվածում կան և այլ լեռնանցքներ (Զորի, Ասլանի), որոնք ևս հաղորդակցության համար դյուրին են։ Այդ է պատճառը, որ օտար նվաճողները Արածանիի հովտից դեպի Արաքսի ավազանը գրեթե միշտ անցել են Հայկական Պարի Սինակ—Մեծ Մասիս հատվածով։

Սինակից դեպի արևմուտք լեռնաշղթան շարունակ բարձրանում է և մինչև Սուկավետ (Քյոսա-դաղ) գագաթը այլևս հարմար լեռնանցքներ չունի։ Լեռնաշղթան իր այս հատվածի հյուսիսային կողմում արձակում է մի քանի ճյուղեր, որոնցից մեկը, որն սկսվում է Սինակից հյուսիս-արևմուտք և ունի հյուսիս-արևելյան ուղղություն, վերջանում է Կողբի հայտնի աղահանքերի մոտ և կոչվում է Բարդող (Թաքալթու)։

Հայկական Պարի հարավային լանջը, Մասիսներից մինչև Սուկավետ, ավելի զառիթափ է, քան հյուսիսայինը։ Սուկավետից (հիշատակվում է նաև Սուկավ և Ջրաբաշխ անուններով) մինչև Արաքսի ճեղքից մոտ 40 կմ արևմուտք գտնվող Այծպտկունք (Փալանթյոքան) գագաթը լեռնաշղթայի հարաբերական բարձրությունը, հարևան հյուսիսային և հարավային բարձրադիր սարահարթերի առկայության պատճառով, փոքր է։ Լեռնաշղթան իր այդ հատվածի տարբեր մասերում կրում է տարբեր անուններ։

Այծպտկունք գագաթի շրջանում Հայկական Պարը ճյուղավորվում է։ Ճյուղերից մեկը ձգվում է դեպի հյուսիս-արևմուտք՝ իրարից բաժանելով Կարինի (Էրզրումի) և Աշկալայի դաշտերը, երկրորդը դիմում է գրեթե ուղիղ արևմուտք՝ պատնեշելով Դերջան գետն իր աջակողմյան Կոմսոր վտակի ավազանից։ Երրորդ լեռնաճյուղը տարածվում է դեպի հարավ-արևմուտք և միանում Բյուրակնի (Բինգյոլ) լեռներին, իսկ չորրորդն ունի հյուսիս-արևելյան ուղղություն։ Վերջինս ձգվում է Այծպտկունքից մինչև Անտիպոնտական լեռները՝ Կարինի բարձրավանդակը բաժանելով Վերին Բասենի դաշտից։ Նրա հարավային մասը կոչվում է Դևվերույնի լեռներ, իսկ հյուսիսայինը՝ Կարգաբազար։ Այս լեռնաշղթանե՞րը հանդիսանում են ջրբաժան Կասպից ծովի և Հնդկական օվկիանոսի միջև։

Դեվեբոյնի լեռնաշղթայից արևելք մինչև Կաղզվանի սարահարթը, որն ընկած է Մեծրաց (Սողանլուղ) լեռնաշղթայի հարավային վերջավորության և Հայկական Պարի միջև, տարածվում են Վերին, կամ Անփայտ, և Ստորին Բասենի դաշտերը։ Վերին Բասենի դաշտը կազմում է Մուրց (Հասանկալա) գետի հովիտը, իսկ Ստորին Բասենը տարածվում է Մուրց գետի գետախառնուրդից մինչև Կաղզվանի սարահարթը։ Մուրց գետի գետախառնուրդի մոտ, Արաքս գետի վրա, գտնվում է Հովվի (Չոբան-քյոփրի) կոչված հայտնի հին կամուրջը։ Այդ կամուրջն ունի յոթ կամար, մինչև հիմա էլ կանգուն է և բանուկ։ Բասենում որոշ տարածում ունեն ճահիճները, հատկապես Ստորին Բասենում։ Հողը բերրի է։

**Շարիան-Ծաղկանց (Ալա-դաղի) լեռներ**

Այս լեռներն ընդհանուր անուն չունեն։ Լեռնաշղթայի արևմտյան մասը՝ Հայկական Պարի վրա գտնվող Սուկավետ գագաթից մինչև Արևելյան Եփրատի հունը, իր տարբեր մասերում կրում է տարբեր անուններ։ Դրանցից արևմտյանը, որն անմիջապես սկսվում է Սուկավետից, կոչվում է Շարիան լեռներ, իսկ Եփրատից արևելք, մինչև Թոնդուրեկ գագաթը ձգվում են բուն Ծաղկանց (Ալա-դաղ) լեռները։ Այնպես որ Շարիան-Ծաղկանց լեռներ ասելով՝ նկատի ունենք այն ամբողջ լեռնային սիստեմը, որն սկսվում է Սուկավետ գագաթից և ձգվում հարավ-արևելք՝ մինչև Թոնդուրեկ։ Շարիան-Ծաղկանցն իր ծագման և բնույթի տեսակետից լիովին համապատասխանում է Հայկական Պարին։

Արևելյան Եփրատի ձախ կողմում բարձրանում են Ծաղկանց լեռները։ Ծաղկանցն ունի 3512 մ բարձրություն։ Նրա լավաներն ընդարձակ տարածությամբ փռված են չորս ուղղությամբ՝ հյուսիսային, արևմտյան, արևելյան և հարավ-արևմտյան։

Դեպի հյուսիս փռված լավային բարձրավանդակը Եփրատի ձախակողմյան վտակների շնորհիվ վեր է ածվել վեցից ավելի լեռնաբազուկների, որոնք ունեն հովհարաձև դասավորություն։ Գրեթե կենտրոնով տարածվող լեռնաբազուկը վերջանում է մի ոչ այնքան բարձր գագաթով, որը հնում հայտնի էր Նպատ անվամբ։ Նպատի հյուսիսային ստորոտներին տարածվող դաշտը, որը կազմում է Ալաշկերտի դաշտի մի փոքրիկ մասը (և փռված է Արածանի գետի հովտում) հնում հայտնի էր Ձիրավ անվամբ։

Ծաղկանց լեռնաշղթայի արևմտյան ճյուղը հասնում է Մանազկերտ քաղաքի մոտերքը և այստեղ վերջանում Կոտեան գագաթով, իսկ արևելյանը հասնում է Թոնդուրեկին։ Թոնդուրեկը, որ գործող

հրաբուխ է և կազմված է երկու գագաթներից, գտնվում է չորս լեռնաշղթաների հատման կետում։ Նրանից սկսած՝ դեպի արևմուտք տարածվում են Ծաղկանց լեռները, դեպի հարավ՝ Կոտուրի (Կոտորի) լեռնաշղթան, դեպի հյուսիս-արևմուտք՝ Դիադինի լեռնաշղթան, որոնք հասնում են Հայկական Պարի Սինակ գագաթին, իսկ դեպի հյուսիս-արևելք ձգվողը իրենից ներկայացնում է բլրաշար։

Շարիան-Ծաղկանցի, Հայկական Պարի և Դիադինի լեռնաշղթաների միջև պարփակված է Ալաշկերտի դաշտը, որը բաժանվում է երկու մասի՝ բուն Ալաշկերտի և Դիադինի շրջանի։ Ալաշկերտի դաշտը չնայած ունի բերրի հող և ոռոգման համար լայն հնարավորություններ, այնուամենայնիվ, այժմ գտնվում է կիսամշակ դրության մեջ։

Ծաղկանց լեռներից դեպի հարավ-արևմուտք ձգվող լեռնաշարքը, առանց ընդհատվելու, հասնում է Նեմրութ գագաթին, որը գտնվում է Վանա լճի արևմտյան ափին։ Այս լեռնաշղթան ընդհանուր անուն չունի։ Նրա գագաթներից նշանավոր են երկուսը՝ Սիփանը (4434 մ, Նեխ-Մասիք)՝ Վանա լճի արևմտյան ափի մոտ, և Նեմրութը (3050 մ)։ Երկուսն էլ ունեն հրաբխային ծագում և իրենց շրջապատի նկատմամբ ներկայացնում են գեղեցիկ տեսարան։ Նրա խառնարանը վեր է ածվել մի գեղատեսիլ լճի։ Նեմրութի գլխավոր գագաթին հարավից միանում է մի երկրորդական գագաթ, որը, քայքայման ենթարկվելով, վեր է ածվել մի շարք ցցվածքների։ Ցցվածքները դասավորված են հաջորդական կարգով, կողք-կողքի[1]։

**Բյուրակն (Բինգյոլ)-Մնձուրյան լեռներ**

Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթան ևս Շարիան-Ծաղկանցի պես ընդհանուր անուն չունի։ Այժմյան քարտեզներում Բյուրակն-Մնձուրյան և Անտիտավրոս լեռնաշղթաները միասին երբեմն կոչվում են Ներքին Տավրոս։ Նա սկսվում է Բյուրակնից (Բինգյոլ) և վերջանում է արևմուտքում՝ Մնձուրի լեռներով։ Ուստի հարմար է անվանել Բյուրակն-Մնձուրյան լեռներ։ Լեռնաշղթան սկսվում է հրաբխային բարձրավանդակով՝ Բյուրակնով։

Բյուրակնը հրաբխային ծագում ունի և նման է Արագածին։ Նրա պսակից մնացել են երեք ցցեր։ Ունի մերձգագաթային հրա-

[1] Մուշի կողմի ժողովուրդը այդ բնական լեռնաշարքի հետ կապում է մի ավանդություն, ըստ որի, իբր, Բելն է այստեղ իր ուղտերի քարավանով քարացել։

պարակներ, ինչպես Արագածը։ Սակայն նա որոշ չափով Արագածից տարբերվում է։ Բյուրակնը ընդհանրապես ունի լանջի հյուսիսային թեքում, Նրա լավաներն ընդարձակ տարածություն են բռնում միայն հյուսիսային ուղղությամբ, մինչդեռ Արագածի լավաները գրեթե հավասարապես փռվել են բոլոր կողմերում, այդ պատճառով էլ վերջինիս լանջերը դարավանդներով իջնում են ամեն ուղղությամբ։ Հրաբխային այդ բարձրավանդակը հայերը Բյուրակն[1] են կոչել այն պատճառով, որ ձյան հալոցքից առաջացած ջրերը այդտեղ սկիզբ են տալիս բազմաթիվ (կարելի է առանց չափազանցության ասել՝ հազարավոր) աղբյուրների, իսկ թուրքերը թարգմանաբար կոչել են Բինգյոլ։ Այդ բազմաթիվ աղբյուրներն իրենց բխման կետերում, համարյա առանց բացառության, իրենցից ներկայացնում են մանր լճակներ։ Բյուրակնը իր փռվածության շնորհիվ բարձրավանդակի տեսք ունի։ Այստեղ ամռանը աճում են բարձր խոտաբույսեր։

Նրա երեք գագաթները դասավորված են աղեղի նման, որի ծայրերն ուղղված են դեպի հյուսիս։ Գագաթներից արևմտյանը կոչվում է Սրմանց (այժմ հայտնի է Բինգյոլ-դաղ անունով), որի հյուսիս-արևմտյան փեշերից սկիզբ է առնում Արաքս գետը։

Բյուրակն բարձրավանդակը ջրբաժան է Կասպից ծովի և Հնդկական օվկիանոսի միջև։ Նրա արևելյան կողմից ձգվում են երկու աղեղնաձև լեռնաճյուղեր, որոնք, ծայրերով գրեթե միանալով իրար, գրկում են Խնուսի գեղատեսիլ գոգավորությունը։

Բյուրակն-Մնձուրյան գլխավոր շղթան, ինչպես ասացինք, սկսվում է Բյուրակնից և ձգվում դեպի արևմուտք՝ մինչև Մնձուր լեռնագագաթը։ Լեռնաշղթան բեկորային է, բարձրացել է երրորդական շրջանում։ Հյուսիսային լանջը զառիթափ է, իսկ դեպի հարավ նայող լանջն ունի մեղմ թեքություն և տալիս է դեպի հարավ տարածվող ճյուղավորություններ, որոնք մեծ մասամբ իրենց ծայրերով հասնում են Արածանի։ Շղթան իր տարբեր մասերում կրում է տարբեր անուններ։

Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթան իր ամբողջ ընթացքում միայն մի տեղ ճեղքված է Լեշեգ-Քղի-Փերի գետով։ Գետի ճեղքից զատ, լեռնաշղթայի վրա կան մի քանի լեռնանցքներ, որոնք, անշուշտ, կարևոր նշանակություն ունեն լեռնային այդ երկրում հաղորդակցության համար։

[1] «Բիւր»-ը նեղ իմաստով նշանակում 10 000, իսկ լայն իմաստով՝ շատ, խիստ շատ (տե՛ս Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, 1927)։

*Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթայից սկիզբ են առնում և դեպի հարավ տարածվում մի քանի երկրորդական շղթաներ, որոնք հասնում են մինչև Արածանիի հովիտը։ Արևելքից արևմուտք նրանք ունեն հետևյալ հաջորդականությունը.*

*1)* **Սերոկի կամ Սերոխի լեռներ**—*սկսվում են Սրմանց գագաթի հարավ-արևմտյան կողմից և Բյուրակն գետի արևելյան կողմով ձգվում մինչև Արածանիի հովիտը։ Շղթան իր հարավային մասում արձակում է դեպի արևելք գնացող մի լեռնաճյուղ, որը կոչվում է Մերգեմեր։ Վերջինիս վրա է գտնվում ս. Կարապետ (Գլակա, Իննակնյան) հայտնի վանքը։*

*2)* **Սանջակի լեռներ**—*սկսվում են Ջավրոշից և ձգվում մինչև Բալու քաղաքի մոտերքը, կազմելով ջրբաժան գիծ Քղի և Բյուրակն գետերի միջև։ Սանջակի և քիչ առաջ նշված Սերոկի լեռներն արևմուտքից ու արևելքից իրենց մեջ են առնում Բյուրակն գետի հովիտը։*

*3)* **Սուրբ լույս** *(քրդերեն՝ Սիպլուս)* **լեռներ**—*սկսվում են Բագուտ գագաթից, սկզբում կազմում երկու աղեղ, այնուհետև ձգվում են ուղիղ դեպի հարավ՝ մինչև Մնձուր և Քղի գետերի գետախառնուրդը։ Սուրբ լույս և Սանջակ լեռների միջև տարածվում է Լեչեգ-Քղի գետի հովիտը, որն իր տերիտորիայով գրեթե համընկնում է այժմյան Քղի սանջակին։*

*4)* **Բյուրակն-Մնձուրյան** *լեռնաշղթայից դեպի հարավ տարածվող լեռնաճյուղերի մեջ ամենից արևմտյանը, որը կոչվում է Բ ո կ ո ւ ր - Բ ա բ ա կամ Բ ա կ ո ւ ր - Բ ա բ ա, սկսվում է Խաղաջուր գագաթից և, տարածվելով դեպի հարավ-արևելք, հասնում է Արածանիի աջ ափը՝ Խարբերդ քաղաքի դիմաց։ Այդ լեռնաճյուղի և Սուրբ լույսի միջև տարածվում է Մնձուր գետի ավազանը, որը հայտնի է Դերսիմ անունով։ Դերսիմը խիստ լեռնային, անտառապատ և անմատույց մի երկիր է։ Նրա հյուսիսային մասը Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթայի Մերջան գագաթից սկսվող մի լեռնաբազկով բաժանված է երկու կեսի, որոնցից արևելյանը կոչվում է Խուզիչան, իսկ արևմտյանը՝ Օվաջիկ։*

**Անտիպոնտական և Անտիտավրոսյան լեռնաշղթաներ**

*Անտիպոնտական և Անտիտավրոսյան լեռնաշղթաները կազմում են մեկը մյուսի շարունակությունը։ Նրանք ունեն հարավ-արևմուտքից հյուսիս-արևելք ուղղություն։*

*Առաջինն սկսվում է Կիլիկյան Տավրոսից և ձգվում մինչև Դիշ-դաշ գագաթը, իսկ երկրորդը՝ Դիշ-դաշից մինչև Մեծրաց լեռները։*

Անտիպոնտական լեռները, որոնք կոչվում են նաև Անտիպոնտական Պար, սկսվում են Մեծրաց շղթայի հարավային մասից։ Լեռնաշղթայի ամենահայտնի գագաթը Ծաղկավետն է, որը հարուստ է հորդաբուխ աղբյուրներով։ Նրա ստորոտներից են սկիզբ առնում հյուսիսում Օլթիի վտակ Թորթումը, հարավ-արևմուտքում՝ Եփրատը, հարավ-արևելյան մասում՝ Արաքսի ձախակողմյան վտակ Մուրցը (Հասանկալա)։ Ծաղկավետը միաժամանակ մի քանի լեռնաշղթաների հատման կետ է. նրանից ձգվում է մի լեռնաճյուղ և, հարավ-արևմտյան ուղղությամբ տարածվելով, հասնում է Հայկական Պարի Այծպտունք գագաթը։ Ծաղկավետից հյուսիս տարածված է մի ուրիշ լեռնաշղթա։

Ծաղկավետից դեպի արևմուտք գլխավոր շղթան կոչվում է Ծաղկավետ, որի արևմտյան ծայրից սկսած լեռնաշղթան ընդունում է հարավ-արևմտյան ուղղություն և մինչև Քոսափունար («փունար»՝ հայերեն «աղբյուր») շղթան իր տարբեր մասերում ունի տարբեր անուններ։

Անտիպոնտական և Անտիտավրոսյան լեռնային սիստեմների սահմանագլխից (Դիշ-դաշ գագաթից) մի երկար լեռնաբազուկ ձըգվում է դեպի հյուսիս-արևմուտք՝ դեպի Պոնտական լեռները։ Այդ լեռնաշղթան կոչվում է Ղըզլ-դաղ և ջրբաժան գիծ է կազմում Իրիս (Եշիլ-իրմակ) և Ալյուս (Կզըլ-իրմակ) գետերի միջև։ Հնում նա կազմում էր Կապադովկիայի և Փոքր Հայքի սահմանը։

Դիշ-դաշից հարավ-արևմուտք, մինչև Կիլիկյան Տավրոս, տարածվում է Անտիտավրոսը, որը համեմատած Անտիպոնտական լեռների հետ, ունի լանջերի ավելի մեղմ թեքություն և լայնանիստ գագաթներ։ Նրա գագաթների մեջ սուր ցցված է միայն Իլան-դաղը։ Շղթան իր ամբողջ տարածության ընթացքում մատչելի է ճանապարհորդների համար։

Փոքր Ասիայից դեպի Եփրատի հովիտը Անտիտավրոսի վրայով անցնող ճանապարհների թվին են պատկանում Դելիկլի-դաշի լեռնանցքով դեպի Մալաթիա և Բաղդադ տանող այժմյան խճուղին և երկաթուղին։

Կիլիկիայի մոտ Անտիտավրոսը վեր է ածվում լայն ու երկար սարերի, որոնք կոչվում են Ուզուն-յայլա (հայերեն՝ «Երկար սար»)։ Սրանք, մոտենալով Դաշտային Կիլիկիային, կտրատվում են Սարոս և Ծամնդավ (Ջամանդի) գետերով ու նրանց վտակներով։

Չնայած Անտիտավրոսյան և Անտիպոնտական լեռնաշղթաները կազմում են մեկը մյուսի շարունակությունը, բայց, այնուամե-

նայնիվ, իրենց բնույթով նրանք նույնը չեն։ Նրանցից առաջինը ծալքավոր է, մինչդեռ երկրորդը՝ բեկորային։ Անտիպոնտական լեռների դիմաց, Սև ծովի հարավային և հարավ-արևելյան ափերին զուգահեռ, ձգվում են **Պոնտական** լեռները։ Պոնտական լեռները սկսվում են Ճորոխի ստորին հոսանքի մոտից և ձգվում արևմուտք՝ մինչև Իրիս գետի հովիտը։ Նրա արևելյան մասը կոչվում է Լազիստանի (Պարխար, Խաղտյաց կամ Պարիադրեսի) լեռներ։ Լեռնաշղթան իր մյուս մասերում ևս ունի տարբեր անուններ։

Անտիպոնտական Պարի, Պոնտական լեռների և Արսիան-Մեծրաց (Սողանլուղ) լեռնաշղթաների միջև տարածվում է Ճորոխ գետի ավազանը։ Ճորոխի միջին հոսանքի շրջանն ու նրա աջակողմյան վտակ Օլթի գետի ավազանը միասին հնում կազմում էին Տայոց աշխարհի տերիտորիան, որն ընդհանուր առմամբ լեռնոտ, անտառապատ և ճանապարհներով աղքատ մի երկիր է։

**Եփրատի հովիտը**

Եփրատի հովտում ընկած են մի քանի դաշտեր։ Սրանք, ծովի մակերևույթից մեծ բարձրություն ունենալու շնորհիվ, կոչվում են նաև բարձրավանդակներ կամ սարահարթեր։ Ֆիզիկա-աշխարհագրական պայմաններով՝ բարձրությամբ, հողա-կլիմայական տեսակետից և այլն, դրանց չի կարելի իրար հետ նույնացնել, միավորել ֆիզիկա-աշխարհագրական մի շրջանի մեջ։ Ուստի միայն հարմարության տեսակետից է, որ Եփրատի ամբողջ հովիտը նկարագրում ենք մի վերնագրի տակ։

Եփրատի հովիտը բաղկացած է հետևյալ հիմնական շրջաններից՝ Կարնո սարահարթ, Աշկալայի դաշտ, Դերջանի (Մամախաթունի) դաշտ, Երզնկայի դաշտ, Կամախի հրաբխային սարահարթ։ Նշված այդ շրջաններից առաջին երկուսը՝ Կարնո դաշտն (Էրզրումի դաշտ կամ սարահարթ) ու Աշկալան, պարփակված են Հայկական Պարի արևմտյան վերջավորությամբ և Անտիպոնտական լեռների արևելյան մասով ու նրանցից դուրս եկող երկրորդական լեռնաճյուղերով, իսկ վերջին երեքը՝ Դերջանի դաշտը, Երզնկայի դաշտը և Կամախի հրաբխային սարահարթը, տարածվում են նույն Անտիպոնտական լեռնաշղթայի արևմտյան մասի և Բյուրակն-Մնձուրյան լեռների միջև։

Կարնո դաշտը ոռոգվում է Եփրատի վերին հոսանքի ջրերով։ Եփրատն այս դաշտում առաջացրել է ճահիճներ, որոնք առանձնապես մեծ տարածում ունեն քաղաքի հյուսիս-արևելյան մասերում։ Կարնո դաշտի կլիման խիստ է՝ ձմեռը լինում են սաստիկ ցրտեր, իսկ ամառը համեմատաբար շոգ է։

Կարնո դաշտը արևմուտքում միանում է Աշկալայի դաշտին։ Աշկալայի դաշտն իրենից ներկայացնում է մի նեղ հովիտ, որն ընկած է Եփրատի երկու կողմերում։ Հյուսիս-արևելքում նրան է միանում Շաղագոմք գետի բավականին լայն հովիտը, որն այժմ հայտնի է Օվաջըղ անունով։ Հարավային կողմից Աշկալայի հովիտը Դերջանի դաշտից բաժանված է Հայկական Պարի այն հատվածով, որը ձգվում է Այծպտկունք գագաթից մինչև Մարիամ լեռը, իսկ հյուսիսային կողմում Անտիտավրոսյան լեռների մասերը կազմող Օվաջըղի և Օթլուբել շղթաներն են։

Դերջանի դաշտը գրավում է բավականին ընդարձակ տարածություն։ Նա Եփրատի երկու ափերին տարածվելուց զատ, նեղ հովիտներով ձգվում է նաև Դերջան գետի և նրա վտակների հոսանքներում։ Այս դաշտի տարբեր մասերում, մանավանդ նախալեռնային շրջաններում, բխում են բազմաթիվ սառնորակ և հանքային աղբյուրներ։

Դերջանի դաշտից արևմուտք ընկած է Երզնկայի դաշտը։ Երզնկայի դաշտն ունի հարավ-արևելքից հյուսիս-արևմուտք տարածում։ Երզնկայի դաշտը, ի տարբերություն Կարնո, Աշկալայի և Դերջանի դաշտերի, որոնք ընկած են Եփրատի երկու կողմերում, տարածվում է գետի միայն աջ կողմում, որովհետև Եփրատն այս մասում հարավից անընդհատ շփվում է Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթայի հյուսիսային բարձրադիր լանջերին։ Չնայած ծովի մակերևույթից ունեցած բավականին մեծ բարձրությանը, նա նշանավոր է իր մրգատու այգիներով. Նրա հողա-կլիմայական պայմաններն այնպիսին են, որ այնտեղ անգամ կարելի է բամբակ աճեցնել և բարձր բերք ստանալ։

Երզնկայի՝ համեմատաբար ցածրադիր դաշտից դեպի հարավ-արևմուտք ընկած է Կամախի սարահարթը։

Կամախի սարահարթը կազմավորվել է Մնձուրի լեռներից և Անտիպոնտականի շրջանից արտավիժած լավաներից։ Սարահարթի տարբեր մասերում տարածված են ռելիեֆի տարբեր ձևեր՝ բըլըրապատ տարածություններ, հրաբխային ծագում ունեցող առանձին փոքր լեռնաճյուղեր, փոքրիկ հարթություններ։

**Արածանիի հովիտը** Արածանիի (կոչվում է նաև Արևելյան Եփրատ, Մուրադ գետ) հովիտը, Եփրատի հովտի պես, բաղկացած է մի քանի ֆիզիկա-աշխարհագրական շրջաններից, որոնք ռելիեֆի տեսակետից նման են իրար։ Նրանք բոլորն էլ հարթություններ են։ Արածանի գետին համընթաց կարելի է նշել հետևյալ դաշտերը. Ալաշկերտի,

Դութաղի, Մանազկերտի, Բուլանըղի, Մուշի, Ճապաղջրի, Բալուի և Խարբերդի։ Արածանիի հովիտն Արևմտյան Հայաստանի համար ունի այն նշանակությունը, ինչ Արաքսի հովիտը Արևելյան Հայաստանի համար։ Նշված այդ դաշտերը եթե ոռոգվեն ու ինտենսիվ մշակվեն, հսկայական քանակությամբ բերք կտան, սկսած բամբակից, բրնձից, խաղողից և վերջացրած հացահատիկներով և բանջարեղենով։ Սակայն այժմ այդ ամբողջ տարածության վրա բնակչությունը շատ նոսր է, արհեստական ոռոգումը գտնվում է պրիմիտիվ աստիճանի վրա, բերրի հողերի մեծագույն մասն անօգտագործելի է մնացել, որոնք պատած են ճահիճներով, փշաբույսերով և վայրի այլ խոտերով։

Արածանիի հովտում ընկած դաշտերը, ընդհանուր առմամբ, ավելի լայնատարած են և ցածրադիր, քան Եփրատի վրա գտնվողները։

Արածանիի վերին հոսանքի շրջանում և արևմուտքից նրա մեջ թափվող Շարիան գետի ավազանում տարածվում է Ալաշկերտի դաշտը, որն իր ֆիզիկա-աշխարհագրական պայմաններով որոշ չափով նման է Արարատյան դաշտին։ Արածանին հեղքելով Շարիան-Ծաղկանց լեռնային սիստեմը՝ դուրս է գալիս Դութաղի դաշտը։ Վերջինս տարածվում է Ծաղկանց լեռների արևմտյան բարձրությունների և Շարիան լեռներից դեպի հարավ ձգվող լեռնաբազուկների միջև։ Նրա ռելիեֆը չի ներկայացնում կատարյալ հարթություն, որովհետև Ծաղկանցից և Շարիանից եկող լեռնաճյուղերը, որոնք այդ մասում ունեն հարաբերական փոքր բարձրություն, մոտենում են ընդհուպ Արածանիի հոսանքին, խախտելով ամբողջ դաշտի հարթ մակերևույթը։ Դութաղից հարավ, Սիփանից և Ծաղկանցից դեպի արևմուտք տարածվող լեռնաճյուղերի միջև ընկած է Մանազկերտի դաշտը։ Նա գրեթե ամենուրեք ունի հարթ ռելիեֆ, տեղ-տեղ, մանավանդ Մանազկերտ (Պատնո) գետի ավազանում, պատած է ճահիճներով։ Դաշտը հարուստ է ջրերով։ Այստեղ Արածանիի մեջ են թափվում բազմաթիվ վտակներ, որոնց ջրերը, սակայն, ոռոգման նպատակների համար շատ քիչ չափերով են օգտագործվում։

Մանազկերտի դաշտը, առանց ընդհատվելու, հարավ-արևմուտքում միանում է Բուլանըղի դաշտին։ Վերջինս ունի եռանկյունու ձև և հիմնականում տարածվում է Արածանիի ձախ կողմում։ Բուլանըղը հայտնի է եղել ցորենով։

Բուլանըղի դաշտից հարավ, Բուլանըղ և Հայկական Տավրոս

լեռնաշղթաների միջև տարածվում է Մուշի դաշտը։ Սա հիմնականում ընկած է Մեղրագետի ավազանում։

Իր բերրիությամբ Մուշի դաշտը չի զիջում Հայկական լեռնաշխարհի որևէ ուրիշ շրջանի։ Սակայն այժմ այնտեղ գրեթե չի զգացվում մարդու միջամտությունը. հսկայական տարածություններ են կազմում ճահիճները, չկան կանոնավոր ոռոգման սիստեմներ, այդ պատճառով էլ Մուշի դաշտը չի տալիս այն բարիքները, ինչ կարող էր տալ։

Մուշի դաշտից արևմուտք, Արածանի գետին համընթաց, հաջորդական կարգով տարածվում են Ճապաղջրի, Բալուի և Խարբերդի դաշտերը, որոնք պարփակված են, հյուսիսից՝ Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթայից եկող լեռնաճյուղերի, իսկ հարավից՝ Հայկական Տավրոսի միջև։ Սրանք բոլորն էլ արգավանդ են։

**Վանա լճի ավազանը**

Վանա լճի ավազանը սահմանափակված է արևելքից Կոտուրի և Ջուխի լեռնե-րով, հարավից՝ Հայկական Տավրոսով (մինչև Բաղեշ), իսկ արևմուտքից և հյուսիս-արևմուտքից՝ Ռահ սարահարթով ու Նեմրութ, Բիլեջան, Սիփան և Թոնդուրեկ գագաթները միացնող լեռնաճյուղերով։ Ավազանն ունի եռանկյան ձև և իր սուր գագաթով ուղղված է դեպի հյուսիս՝ Թոնդուրեկ։ Նրա հյուսիսային և արևելյան հատվածները կտրատված են Ծաղկանց և Կոտուր լեռնաշղթաներից եկող լեռնաբազուկներով, որոնց շնորհիվ ավազանի այդ մասերում առաջացել են իրարից անջատ առանձին փոքրիկ գետահովիտներ։ Այդ գետահովիտների մեծ մասը բացվում է դեպի Վանա լիճը։ Նրանցից փակ է միայն մեկը՝ Արճակ լճակի շուրջը տարածվող հարթությունը։ Գետահովիտներից համեմատաբար ընդարձակ տարածություն ունեն հյուսիս-արևելքում Բերկրի գետի հովիտը, որը կոչվում է Աբաղայի դաշտ, արևելքում՝ Սև ջրի հովիտը, իսկ հարավ-արևելքում՝ Խոշաբ գետի ստորին հոսանքի շրջանը, որը հին ժամանակներից սկսած հայտնի է Հայոց ձոր անունով։ Հայոց ձորից հյուսիս, Վան քաղաքից քիչ արևելք, բարձրանում է Վարագա լեռը, որի վրա գտնվում է նույնանուն վանքը։

Ավազանի հարավային և արևմտյան մասերում նրա սահմանագիծը կազմող լեռնաշղթաների և լճի հայելու միջև տարածությունը քիչ է։ Նա այստեղ ձգվում է մի նեղ շերտով, իսկ տեղ-տեղ այդ շղթաները մոտենում են լճին, վերջանալով նրա ափին բարձր ժայռերով։ Կլիման ցամաքային է և համեմատաբար տաք։

Վանա լճի ավազանի տարբեր մասերում ցրված են բազմաթիվ լճակներ (Նազիկ, Արճակ և այլն), նա հարուստ է նաև գետակներով։

### Արսիան-Մեծրացի և Վասպուրականի (Կոտուր-Ջագրոսի) լեռնաշղթաները

Հայկական լեռնաշխարհում երկար տարածությամբ ձգվող լեռնախոտեմներից, եթե նկատի չունենանք Փոքր Կովկասը, միայն Արսիան-Մեծրացի և Վասպուրականի (Կոտուր-Ջագրոշի) լեռնաշղթաներն են, որ ունեն միջօրեական ուղղություն։ Ֆիզիկա-աշխարհագրական տեսակետից նրանք նույնատիպ չեն, սակայն իրենց ուղղությամբ համընկնում են։

Արսիան-Մեծրացի լեռնաշղթան սկսվում է Աճարայի լեռներից և ձգվում հարավ՝ մինչև Կաղզվանի սարահարթը՝ Կաղզվանի արևմտյան մասում։ Իր ամբողջ տարածությամբ, չհաշված մի քանի փոքրիկ աղեղները, որ նա տալիս է իր կենտրոնական մասերում, լեռնաշղթան ունի միջօրեական ուղղություն։ Նա բեկորային է. հանդիսանում է Պոնտական բեկորի արևելյան բարձրացած թևը։ Դեպի արևմուտք իջնում է երկար լանջերով, իսկ դեպի արևելք նրա լանջերը զառիթափ են։ Լեռնաշղթան իր ամբողջ տարածությամբ մեծ մասամբ ծածկված է անտառներով։ Հյուսիսային մասը կոչվում է Արսիանի շղթա, իսկ հարավայինը՝ Մեծրաց։ Վերջինիս կատարներն ավելի լայնանիստ են և հաղորդակցության համար համեմատաբար մատչելի։

Վասպուրականի լեռնաշղթան սկսվում է Մեծ և Փոքր Մասիսների մոտից և սկզբում, մինչև Թոնդուրեկ գագաթը, բլրաշարք է, իսկ այդտեղից արդեն հարավային ուղղությամբ ձգվում է հիմնական շղթան։ Մասից մինչև Սուրովա գագաթը, որը գտնվում է Կոտուր գետի ճեղքից մոտ 25 կմ հարավ, Կոտուրի լեռնաշղթան է, իսկ նրանից հարավ, նույն ուղղությամբ, ձգվում է Ջագրոշի լեռնաշղթան։

Թոնդուրեկից հարավ շղթան կազմում է մի աղեղ, որի միջով վազում է Կոտուր գետը։ Կոտուր գետի ճեղքից քիչ հյուսիս գտնըվում է Սարայի լեռնանցքը։ Կոտուրից դեպի հարավ, մինչև Սուրովա գագաթը, լեռնաշղթայի լանջերն ունեն մեղմ թեքություն, և նրա վրայով անցնելն առանձին դժվարություն չի ներկայացնում։

Սուրովա գագաթից սկսվում է Ջագրոշի (կամ Ջագրոս) լեռնաշղթան։ Այս շղթան ավելի վայրենի բնույթ ունի, կատարները խիստ ժայռոտ են և լեռնանցքները քիչ։ Նրա վրա եղած լեռնանցքներից նշանավոր են երեքը։ Դրանցից մեկը գտնվում է Սալմաստ գետի ակունքների մոտ և կոչվում է Խանասորի լեռնանցք։ Այդ

լեռնանցքով է անցնում Վանա լճի ավազանից դեպի Սալմաստ և Դիլման տանող ճանապարհը։ Զագրոսի մյուս երկու լեռնանցքները, որոնցից մեկը կոչվում է Քելիշինի լեռնանցք, իսկ մյուսը՝ Ռևանդուզի, գտնվում են ավելի հարավ։ Քելիշինի և Ռևանդուզի լեռնանցքներով, հնագույն ժամանակներից սկսած, Միջագետքի քաղաքները (Նինվե, Բաբելոն, Բաղդադ) կապվում էին Ուրմիա (Կապուտան) լճի ավազանի հետ։

Կոտուր և Զագրոս լեռնաշղթաների սահմանագլուխը կազմող Սուրովա գագաթից սկսվում է մի երկար լեռնաշղթա և տարածվում դեպի արևելք՝ գրեթե մինչև Թալիշի լեռները։ Այդ երկարաձիգ լեռնաշղթան, չնայած ընդհանուր անունով կոչվում է Միշաու-դաղ, բայց իր տարբեր մասերում կրում է տարբեր անուններ։ Նրա արևմտյան մասը, որը ջրբաժան է Ուրմիա լճի ավազանի և Արաքսի միջև, կոչվում է Սալմաստի լեռներ, կենտրոնական մասը՝ Ղարադաղի լեռներ, իսկ ծայր արևելյանը՝ Սավալանի լեռներ։

**Հայկական Տավրոս**

Տավրոսյան լեռնային սիստեմը Մերձավոր Արևելքի ամենաերկար լեռնաշղթաներից է։ Նա բաժանվում է երեք մասի՝ Անատոլիական Տավրոսի, Կիլիկյան Տավրոսի և Հայկական Տավրոսի։ Անատոլիական Տավրոսը լեռնասիստեմի արևմտյան մասն է, որը ձգվում է Միջերկրական ծովի հյուսիսային ափերին զուգահեռ, կենտրոնական մասը, որը տարածվում է Անատոլիական Տավրոսից մինչև Ջահան գետի ակունքի շրջանը, Կիլիկյան Տավրոսն է, իսկ նրանից արևելք՝ մինչև Վասպուրականի լեռները, ձգվում է Հայկական Տավրոսը։

Հայկական Տավրոսը մի պատվար է, որի ոչ բոլոր մասերն են հաղորդակցության համար դյուրին։ Այդ տեսակետից էլ հին և միջին դարերում ունեցել է ստրատեգիական խոշոր նշանակություն։ Լայնությունը բավականին մեծ է. Նրա վրա են գտնվում մի քանի լեռնային գավառներ, որոնք իրենց յուրահատուկ դերն են ունեցել հայ ժողովրդի պատմության մեջ (օրինակ՝ Սասունը, Խութը և այլն)։

Հայկական Տավրոսն արևմտյան մասում, որտեղ նա ձգվում է մի շարքով, իր մեջ գրկում է Ծովք լիճը (այժմ՝ Գյոլջիկ)։

Ծովք լճից անմիջապես արևելք լեռնաշղթայի կատարներն արագ իջնում են՝ շրջապատի նկատմամբ հասնելով միայն 200 մետրի և կազմելով մի շարք հարմար լեռնանցքներ։ Այդ լեռնանցքներով այժմ անցնում են Խարբերդ—Դիարբեքիր (Ամիդ) խճուղին և Բեռլին—Բաղդադ երկաթուղին։ Նույն լեռնանցքներով է անցել հնում Դարեհ Ա-ի կառուցած «Արքայական ճանապարհը», որը

*Պարսկաստանի խորքերից ձգվում էր մինչև Միջերկրական ծովի ափերը։*

*Ավելի արևելք լեռնաշղթան թեքվում է դեպի հյուսիս-արևելք և իր այդ ուղղությունը պահպանում է մինչև Դարկոշ գագաթին հասնելը։ Դարկոշից արևելք գալիս են Սասունի լեռները։ Դարկոշից սկսած, գլխավոր շղթային զուգահեռ, հարավից անցնում է մի երկրորդ՝ ավելի բարձր շղթա։ Գլխավոր և երկրորդական այդ շղթաների միջև գտնվում են Սասունի մի մասը կազմող Տալվորիկը և ինքը՝ Սասունը։ Սասունի լեռների արևելյան մասը կազմում են Խութի սարերը, որոնք կտրատված են Բաղեշ (Բիթլիս) գետով և նրա վտակներով։*

*Բաղեշ գետի հեղքից արևելք լեռնաշղթան ձգվում է Վանա լճի հարավային ափերին զուգահեռ և երկու տեղ ընդհուպ մոտենում է լճին։ Նրանցից արևմտյանը լճափին վերջանում է Ընձաքարս (կամ Կապուտկող) լեռնագագաթով, իսկ արևելյանը՝ Արտոս գագաթով։ Լեռնաշղթան մերձլճյան և մերձխոշաբյան շրջանում խիստ կերպով բարձրանում է։ Այդ մասերում նրա բարձրությունը ծովի մակերևույթից հասնում է 3000-ից ավելի մետրի։ Արևելքում Հայկական Տավրոսն արձակում է երեք ճյուղ, որոնցից առաջինը դիմում է դեպի հյուսիս-արևելք, երկրորդը տարածվում է դեպի հարավ-արևմուտք և միանում Կորդվաց (Քրդստանի) լեռներին, իսկ երրորդը հարավ-արևելյան ուղղությամբ շարունակվում է մինչև Զագրոսի վրա գտնվող Ազա-Ջեռանդ գագաթը։ Նրա այս լեռնաշղթաների միջև տարածվում է Աղբակի շրջանը։*

*Հայկական Տավրոսը հարուստ է օգտակար հանածոներով։ Դեպի հյուսիս նայող լանջերը զառիթափ են, իսկ դեպի հարավ արձակում է մի շարք լեռնաբազուկներ, որոնք ձգվում են երկար տարածության վրա։*

*Հայկական Տավրոսից հարավ տարածվում են՝ արևելքում Արևելյան Տիգրիսի (Բոհտան-սու) ավազանը, իսկ արևմուտքում՝ Արևմտյան Տիգրիսի (կամ ուղղակի՝ Տիգրիս) ավազանը, որոնք հնում կազմել են Հայկական պետության մասերը։*

**Եզրակացություն**

*Զուգահեռական և միջօրեական ուղղություն ունեցող գլխավոր շղթաները Հայկական լեռնաշխարհի մակերեսը բաժանում են առանձին ֆիզիկա-աշխարհագրական գավառների, որոնցից յուրաքանչյուրում զարգացել են կլիմայական, հողային և բուսական կյանքի բնորոշ պայմանները։*

*Հայկական լեռնաշխարհում բավականին տարածություն են*



3—1402

գրավում հարթությունները՝ լայնատարած լանջերը, դաշտերը, հովիտները և գոգավորությունները։ Այդ հանգամանքը նպաստում է տնտեսական կյանքի զարգացմանը։

Երկրի առանձին փակ գավառների մասնատված լինելը հին և միջին դարերում բավականին դժվարացրել է նրանց միջև փոխադարձ հաղորդակցությունը։

Ռելիեֆի լեռնային բնույթի պատճառով երկրի կլիման, հողը, բուսականությունը, կենդանական աշխարհը ենթարկվում են ուղղաձիգ զոնաւորման օրենքին։

## 2. ԿԼԻՄԱՅԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Հայկական լեռնաշխարհը հասարակածից ունի գրեթե նույն հեռավորությունը, ինչ որ Պիրենեյան և Ապենինյան թերակղզիները, Կորսիկա, Սարդինիա և Սիցիլիա կղզիներն ու Բալկանյան թերակղզին։ Թվում է, թե Հայկական լեռնաշխարհն իր կլիմայական պայմաններով շատ նման պետք է լիներ այդ երկրներին։ Սակայն երկրի բարձր լեռնային բնույթը, օվկիանոսներից ունեցած հսկայական հեռավորությունը, շրջապատում չոր տափաստանների առկայությունը և Սև ու Կասպից ծովերի մերձավորությունը Հայկական լեռնաշխարհի կլիմայական պայմանների վրա թողել են իրենց առանձնահատուկ ազդեցությունը, այնտեղ առաջացնելով կլիմայական ուրույն պայմաններ, որոնք տարբերվում են նշված երկրների կլիմայական պայմաններից։ Նրա կլիմայի վրա վճռական ազդեցություն են թողնում նաև հյուսիսից ու հարավից մուտք գործող օդային զանգվածները։

Հայկական լեռնաշխարհի կլիմայական պայմանների ձևավորման մեջ ամենից կարևոր դերը խաղում է երկրի՝ ծովի մակերևույթից ունեցած բարձրությունը։ Երկրի զանազան մասերը ծովի մակերևույթից ունեն 450—800 մետրից մինչև 4434 (Սիփան)—5156 (Մեծ Մասիս) մետր բարձրություն, որոնք արտահայտված են երբեմն լեռնալանջերի ու գագաթների, երբեմն էլ լեռնադաշտերի ձևով։ Հայտնի է, որ լեռնային երկրներում յուրաքանչյուր 200 մետր բարձրանալիս տարեկան միջին ջերմությունն իջնում է Ցելսիուսի մեկ աստիճանով։ Հենց այդ է պատճառը, որ Վանի շրջակայքում և Արածանիի հովտում աճում են խաղող, բամբակ, բրինձ, մինչդեռ նրանցից ոչ այնքան հեռու գտնվող լեռնային Սասունում անգամ գարին ու տարեկանը հաճախ չեն կարողանում բնականո-

հասունացման շրջանը անցնել։ Նույնպիսի հետևանքներ են տալիս նաև Արարատյան դաշտի ու նրա մոտ գտնվող Արագածի բարձրադիր լանջերի ջերմության տարբերությունները։

Տեղի բարձրության հետ ավելանում են նաև մթնոլորտային տեղումները, սակայն մինչև որոշ բարձրություն, որից սկսվում են նորից նվազել։

Կլիմայական պայմանների այդ տարբերություններն առաջացնում են հողի և բուսական աշխարհի ուղղահայաց գոտիականություն։

Կլիմայական տարբերություններ են առաջ գալիս նաև ռելիեֆի առանձնահատկություններից, այն է՝ լեռնաշղթաների ուղղությունից, նրանց լանջերի դիրքից և այլն։

Լեռնալանջերից նրանք, որոնք ուղղված են դեպի հարավ, ստանում են համեմատաբար ավելի շատ ջերմություն, քան դեպի հյուսիս ուղղվածները, որովհետև առաջինները ենթարկված են արևի համեմատաբար ուղղահայաց ճառագայթների ներգործությանը։ Առաջանում է կլիմայի բավականին զանազանակերպություն դեպի հարավ և հյուսիս նայող լանջերի միջև։ Այդ հանգամանքն իր հերթին ազդում է նաև բուսական ծածկի վրա. սովորաբար անտառներն ավելի փարթամ են լինում դեպի հյուսիս թեքված լանջերի վրա։

Լեռների և դաշտերի մերձավորությունը, որը սովորական և նույնիսկ տիպական է Հայկական լեռնաշխարհի համար, պատճառ է դառնում մի շարք հետաքրքրական երևույթների, որոնք նկատվում են ամռանն ու ձմռանը։ Ամռանը, լանջերի վրա, ցածրադիր մասերի հետ համեմատած, օդը սառը և ծանր է լինում, ուստի նա սահում է վար և բռնում ցածրադիր վայրերում տաքացած ու թեթևացած օդի տեղը, որն իր տեղը զիջելով նրան, վեր է բարձրանում։ Հայաստանի բոլոր դաշտերում կեսօրից հետո ըսկըսում է փչել լեռնահովտային քամի։ Այսպես, Արարատյան դաշտում ամռանը Երևանի և Էջմիածնի վրայով ժամը երկուսից հետո փչում է Գեղամա և Ծաղկունյաց լեռների արանքով դուրս եկած քամին, որին բնակիչներն անվանում են «Լուսավորչի քամի»[1]։ Շիրակում Լենինականի վրայով գրեթե օրվա նույն ժամերին փչում է Խոնավ լեռներից եկող քամին, որին անվանում են «Կաբախաչի քամի»։ Ախուրյանի ափերին, Անիից մինչև Մրեն և Բա-

[1] Տե՛ս Ստեփան Լիսիցյան, ՀՍՍՀ ֆիզիկական աշխարհագրություն, Երևան, 1940, էջ 74։ Լեո, Հայոց պատմություն, հ. Ա, Թիֆլիս, 1917, էջ 154։

գարան փչում է Արագածի ծաղկավետ լանջերից սկիզբ առնող անուշաբույր, մարմանդ հովը։

Ամռանը նույնպիսի լեռնահովտային քամիներ են առաջանում նաև Ալաշկերտում՝ Հայկական Պարի. մերձավորության շնորհիվ, Մանազկերտի դաշտում՝ Ծաղկանց լեռներից, Մուշում՝ Հայկական Տավրոսի և Նեմրութի մերձավորության հետևանքով և այլն։

Ձմռանը ցուրտ ու ծանր օդը, լեռնալանջերից ցած սահելով, լցվում է ցածրադիր գետահովիտներն ու դաշտերը և պարզկա երկնքի տակ, երկար գիշերներին, ճառագայթարձակման շնորհիվ ուժեղ կերպով սառչում է. հովիտներում հաճախ ջերմաստիճանն ավելի ցածր է լինում, քան լեռնալանջերին և լեռների բարձր մասերում։ Այդ երևույթը կոչվում է ինվերսիա, որը հատկանշական է Հայկական լեռնաշխարհի համար։

Հայկական լեռնաշխարհի կլիմայական պայմանների վրա ներգործող ներքին ազդակներից է նաև մակերևույթի բնույթը՝ նրա մերկ կամ բույսերով ծածկված լինելը։ Հայկական լեռնաշխարհում, ցամաք տարածությունների համեմատությամբ, ջրային տարածությունները չնչին են, հետևապես, նրանք շատ քիչ չափով են նպաստում օդի խոնավացմանը։ Հայկական լեռնաշխարհը անտառներով հարուստ չէ։ Անտառները տարածվում են գլխավորապես մերձսևծովյան մասերում՝ Փոքր Կովկասի հյուսիսային լանջերին և Բյուրակն-Մնձուրյան լեռների շրջանում։ Անտառների շնորհիվ այդ շրջաններում հողի և օդի խոնավությունը լավ է պահպանվում։

Խոնավությամբ աղքատ են մանավանդ Արածանիի հովիտը, Վանա լճի ավազանն ու Արարատյան դաշտը։

Հայկական լեռնաշխարհի կլիմայի վրա զգալի ազդեցություն ունեն նաև Սև ու Կասպից ծովերը, հարևան լեռները (Մեծ Կովկասը) և չոր տափաստանները՝ Մերձկասպյան տափաստանը, Իրանական սարահարթը, Միջագետքը, Փոքր Ասիայի բարձրավանդակը։

Սև և Կասպից ծովերը, մանավանդ առաջինը, ընդհանուր առմամբ խոնավաբեր ազդեցություն են թողնում Հայկական լեռնաշխարհի վրա։ Սև ծովի ազդեցությունը ուժեղ կերպով զգացվում է լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան (Եփրատի հովիտ, Արաքսի վերնագավառ) և հյուսիսային (Լոռի՝ լայն իմաստով, Հյուսիսային Հրաբխային բարձրավանդակ և այլն) շրջաններում, որի հետևանքով տեղումների քանակն այդ վայրերում հասնում է 600—1000 մմ, այն դեպքում, երբ Սև ծովի խոնավ զանգվածներից Արարատյան դաշտն ստանում է աննշան քանակություն. Հոկտեմբերյանում՝

*266 մմ, Երևանում՝ 312 մմ, Կողբում՝ 237 մմ և այլն։ Սև ծովի համեմատությամբ, Կասպից ծովի ազդեցությունն ավելի փոքր մասշտաբի է։ Կասպից ծովից եկող խոնավությունը Հայկական լեռնաշխարհում նկատվում է Մրղուզի, Սևանա, Գապաքարի և Զանգեզուրի (Սյունյաց) լեռների լանջերին։*

*Պետք է նկատել, որ Հայկական լեռնաշխարհն ընդհանրապես տեղումներով ավելի հարուստ է, քան Իրանական սարահարթը, Անատոլիական բարձրավանդակը և Միջագետքի երկրները։*

*Սակայն Հայկական լեռնաշխարհի կլիման ընդհանուր առմամբ ցամաքային է։ Նրա ցրտության կենտրոնը ձմեռվա ընթացքում Կարսի շրջանն է, որն իր հերթին սառեցնում է նաև հարևան շրջանների օդը։ Ամառվա ընթացքում, ընդհակառակն, լինում է շոգ՝ մանավանդ Արարատյան դաշտում ու Արածանիի հովտում։*

*Հայկական լեռնաշխարհի խստաշունչ և դաժան ձմեռը մանրամասն նկարագրված է թե՛ օտարազգի և թե՛ հայ պատմիչների կողմից։ Այսպես. Տակիտոսը հայկական ձմեռն անվանում է «դժնդակ», Ստրաբոնը պատմում է, որ Հյուսիսային Հայաստանի լեռներում ձյունն այնքան առատ է լինում և բուքն այնքան սաստիկ, որ ճանապարհորդները հաճախ թաղվում են ձյան տակ։ Հայաստանի ձմեռը նկարագրել է նաև Քսենոֆոնը, որը 401—400 թթ. (մ. թ. ա.) ձմռանը, 10 000 հույն զորքի հետ, Հայաստանի վրայով վերադառնում էր հայրենիք՝ Հունաստան։ Նրա հիշատակության համաձայն, հունական զորքերը, սաստիկ ցրտի պատճառով, շատ տառապանքներ կրեցին, ցրտահարվեցին զգալի թվով մարդիկ և անասուններ։ Սարսափով է հիշատակում Հայաստանի դաժան ձմեռվա մասին հռոմեական պատմագիր Պլուտարքոսը, որը նույնիսկ փորձում է հայկական սաստիկ ցրտերով ու սառնամանիքներով բացատրել Տիգրան Բ-ի կողմից հռոմեական զորավար Լուկուլլոսի կրած պարտությունը (68 թ. մ. թ. ա.)[1]։*

*XIII դարի հայ պատմիչ Ստեփանոս Օրբելյանը սաստիկ ցրտերով և բքերով է մեկնում Սյունիքի գավառներից մեկի՝ Սոթքի անունը. «Սօթից գաւառ, որ սակս հանապազորդեան բքոց և դառնաշունչ օդոցն կոչեցաւ Սոթք»[2]։ Պակաս դաժան չէ ձմեռը նաև Հայաստանի հարավային կողմերում՝ Տավրոսյան լեռների շրջա-*

---

[1] *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, Երևան, 1944, էջ 219—221։*

[2] Ստեփաննոս Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 12։*

նում։ Սասունցիները երկարատև ձմեռվա ընթացքում ձյան ահագին կույտերի վրա ման գալու համար գործ էին ածում իրենց ձեռքով պատրաստած փայտե հատուկ «տոնամաններ»։ Մեր հին գրականության մեջ կան հիշատակություններ Բաղեշի կողմերում ձյան մեծ հուսքերի մասին։ Պակաս սաստիկ չէ Հայկական Տավրոսին հարավից միացած Մոկաց աշխարհի ձմեռը, որի մասին այնքան պատկերավոր է պատմում Արծրունյաց նախարարական տան պատմիչ Թովմա Արծրունին։

Հայկական լեռնաշխարհում տեղումներն անհավասարաչափ են բաշխված։ Ամենից առատ տեղումներ ստանում են, ինչպես քիչ առաջ ասացինք, Բյուրակն-Մնձուրյան լեռների շրջանը, Եփրատի հովիտը, Ճորոխ գետի ավազանը, Հյուսիսային հրաբխային բարձրավանդակը և Լոռին։ Համեմատաբար առատ են տեղումները Մրգուզի, Սևանի, Զանգեզուրի և Տավրոսյան լեռների բարձրադիր լանջերին։

Միանգամայն այլ է դրությունը ցածրադիր վայրերում՝ գետահովիտներում և դաշտերում, որպիսիք են Մերձարաքսյան կամ Արարատյան դաշտը, Արածանիի հովիտը, Վանա լճի ավազանը և այլն։ Այս շրջանները, որոնք կազմում են լեռնաշխարհի մեծ մասը և հանդիսացել են հայ ժողովրդի տնտեսական ու կուլտուրական կյանքի կենտրոններ, ստանում են չափազանց քիչ քանակությամբ մթնոլորտային տեղումներ, այնպես որ առանց արհեստական ոռոգման այդ վայրերում գրեթե անկարելի է աճեցնել որևէ կուլտուրա։ Նկատի ունենալով մթնոլորտային տեղումների սակավությունը, հնագույն ժամանակներից սկսած, մարդիկ շատ թե քիչ չափով հոգ են տարել տեղումներով աղքատ այդ շրջաններում ոռոգման ցանց ստեղծելու։ Ջրանցքներ են անցկացվել դեռևս ուրարտական շրջանում։ Այսպես. ուրարտական Մենուա թագավորն (810—778 թթ. մ. թ. ա.) իր պետության մայրաքաղաք Տուշպայի (այժմ՝ Վան) բնակչությանը խմելու ջրով ապահովելու և, ամենից կարևորը, նրա շուրջն ընկած չոր տարածությունները ոռոգելու համար անց է կացրել մի ջրանցք, որի կառուցումը հետագայում հայերը կապել են առասպելական կիսաառասպելական թագուհի Շամիրամի անվան հետ։ Այդ պատճառով էլ Մենուայի կառուցած ջրանցքը, որը մինչև օրս էլ գոյություն ունի և գործում է, ժողովուրդը անվանում է Շամիրամի ջուր կամ Շամիրամի ջրանցք։

Շամիրամի ջրանցքը սկսվում է Խոշաբ գետից հարավ, Հայկական Տավրոսի հյուսիսային լանջերից և ուղղվում դեպի հյուսիս։

Նա կամուրջով անց է կացված Խոշաբի վրայով։ Խոշաբից դեպի հյուսիս, մի քանի գյուղերի և ավանների շրջակայքը ոռոգելուց հետո, Շամիրամի ջրանցքը հասնում է Վան քաղաքի ուրարտական պարսպի մոտ և նրանից քիչ ներքև թափվում Վանա լճի (Բզնունյաց ծով) մեջ։ Ջրանցքը իր ամենաջրառատ ժամանակ վայրկյանում տալիս է ավելի քան 1500 լիտր ջուր։ Վան քաղաքից մինչև ջրանցքի ակունքն ուղիղ գծով 70 կմ է, բայց ընդհանուր երկարությունը, հաշվելով նրա կորությունն ու ոլորանները, հասնում է 80 կմ-ի։ Մենուայի կառուցած այդ ջրանցքը անգամ այժմ հիացմունք է պատճառում թե՛ հասարակ դիտողին և թե՛ մասնագետ ճարտարապետին։ Նա ուրարտական շինարարական արվեստի փայլուն նմուշ է, որը երկար ու ձիգ դարերի ընթացքում պահպանել է իր գոյությունը։ Նրա հոսանքի ուղղությամբ մի քանի տեղերում, ժայռերի վրա զետեղված են ուրարտական արձանագրություններ[1]։ Այժմ, չնայած գործում է Շամիրամի ջրանցքը, այնուամենայնիվ, Վան քաղաքի շրջակայքը և նրանից հարավ ընկած տարածությունները խոպանացել են, դարձել չոր ու անպտուղ տարածություններ։

Ենթադրվում է, որ ուրարտական շրջանում ջրանցքներ են հանվել նաև Մանազկերտում, Ալաշկերտում, Արմավիրի (Արգիշտիխինիլի) և Մեծամորի լճի մոտերքում, Գեղամա լեռների հարավ-արևմտյան լանջերին։ Հրազդանից հանված էր մի ջրանցք, որը թունելով անցնում էր դեպի էջմիածնի դաշտը։

Հետագա դարերում, հայ ժողովրդի պատմության հին և միջին շրջանում, ոռոգման նպատակներով ջրանցքներ են կառուցվել Արարատում, Վանա լճի ավազանում, Արածանիի հովտում, Զանգեզուրում և այլուր։ Ստեփանոս Օրբելյանի հիշատակության համաձայն, X դարում Տաթևի վանականները վանքապատկան Ցաքուտ վայրը (որը գտնվում է Տաթևի վանքի դիմաց) ոռոգելու համար ժայռոտ և դժվարանցանելի տեղերով ջրանցք են փորում և Վարարակի ջուրը բերում հասցնում են Ցաքուտ, որը վեր են ածում այգիների։

Մարդիկ իրենց այդ գործունեությամբ մեծ փոփոխություններ են առաջացրել կլիմայական և առհասարակ երկրի բնական պայմանների մեջ։ Մի դեպքում նրանք անխնա կտրատելով անտառները որոշ շրջաններ դարձրել են լերկ ու անպտուղ, իսկ մյուս դեպքում փորել են ջրանցքներ, կառուցել արհեստական ջրամբարներ, տնկել են պուրակներ, որոնց շնորհիվ ավելի բարենպաստ են դարձրել երկրի այս կամ այն փոքրիկ շրջանի բնական պայման-

[1] Տե՛ս «Հանդես ամսօրյա», 1893, էջ 84—85։

ները։ Մոնղոլական տիրապետության շրջանում չոր ու անպտուղ դարձավ Անդրկովկասի, այդ թվում և Հայաստանի զգալի մասը։ Հետագա դարերում թուրքական և պարսկական դաժան լծի տակ գտնվող ժողովուրդը հնարավորություն չունեցավ գոնե նվազագույն չափով սահմանափակելու ոռոգման ցանցը. անբերրիությունն ու սովն այդ դարերում դարձել էին մեր ժողովրդի մշտական ուղեկիցները[1]։

### 3. ՋՐԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*ա)* **Լճեր.**— *Հայկական լեռնաշխարհին առանձնահատուկ տեսք են տալիս լեռնային լճերը, որոնց մի զգալի մասն ունի հրաբխային ծագում, իսկ մյուս մասը նախկին ջրային խոշոր ավազանների մնացորդներ են։ Փոքր թիվ չեն կազմում Հայկական լեռնաշխարհում նաև անհետացած լճերը։ Երբեմնի լճի հատակներ են, ինչպես պարզել են երկրաբանները, Զանգեզուրի լեռնադաշտը, Արաքսի հովիտը, Ալաշկերտի դաշտը, Մուշի դաշտը, Կարինի դաշտը և այլն։*

*Հայկական բարձրավանդակի լեռներում եղած անթիվ լճերի մեջ իրենց մեծությամբ և նշանակությամբ առաջնակարգ են հատկապես երեքը՝* Ս և ա ն ը, Վ ա ն ը և Ո ւ ր մ ի ա ն։

**Սևանա լիճը** *(հնում՝ Գեղամա լիճ, Գեղարքունյաց ծով) աշխարհի լեռնային ամենամեծ և ամենաբարձր լճերից է։ Նրա բարձրությունը ծովի մակերևույթից 1916* **մ** *է, մակերեսը հավասար է 1416* **քառ կմ**-*ի։ Նորատուսի և Արտանիշի հրվանդաններով Սևանա լիճը բաժանված է երկու անհավասար մասի՝ հյուսիս-արևմտյան և հարավ-արևելյան։ Հյուսիս-արևմտյան մասն ավելի փոքր է, նրա մակերեսը 384* **քառ կմ** *է, իսկ հարավ-արևելյանն ընդարձակ է, ունի 1032* **քառ կմ** *մակերես։ Հարավ-արևելյան մասում միջին խորությունը 36* **մ** *է (ամենախոր տեղում 47,5* **մ***), իսկ հյուսիս-արևմտյան մասի խորությունն ավելի մեծ է։ Այս մասում նրա միջին խորությունը 45,4* **մ** *է, իսկ Սևանա թերակղզուց ոչ հեռու՝ հասնում է 95* **մ***, և սա նրա ամենախոր տեղն է*[2]։

*Ջնայած լճի ավազանում ձմեռը լինում է խստաշունչ, այնուամենայնիվ, լիճը հազվադեպ է ամբողջովին սառչում (Սևանա լիճը ամբողջովին սառել է, օրինակ՝ 1906, 1920, 1925, 1949 թթ.)։ Գար-*

---

[1] Ջրի պաշտամունքը, որը բավականին լայն տարածում ուներ հայերի մեջ, համարում են ոռոգման անհրաժեշտության արգասիք։

[2] Տվյալները վերաբերում են մինչև լճի մակարդակի իջեցումը։

նանն ու աշնանը լճի ջրերը քամիների պատճառով ալեկոծվում են, իսկ ամռանը՝ հայելու նման հանգիստ են լինում։

Սևանա լճի մեջ թափվում են մոտ 29 գետ և գետակ։ Դրանցից ամենանշանավորներն են.

Գավառագետը, որն սկիզբ է առնում Գեղամա լեռների կենտրոնական մասից և, անցնելով Կամո քաղաքի մոտով, թափվում է լիճը։

Բախտակ գետը, սկիզբ է առնում նույն շղթայի հարավային մասից և լճի մեջ է թափվում Մարտունուց հյուսիս-արևմուտք։

Արգիճի (Այրիջա) գետը, կազմվում է Արգիճի բարձրավանդակի վրայով հոսող Արևմտյան, Միջին ու Արևելյան Արգիճի գետերից և լճի մեջ է թափվում Մարտունու մոտ։

Վարդենիս գետը, սկիզբ է առնում Վարդենիս լեռների ստորոտներից և լճի մեջ է թափվում Վարդենիս գյուղի մոտ։

Մասրիկի գետը, սկիզբ է առնում Զանգեզուրի լեռների տակից և կտրելով Մասրիկի դաշտը, թափվում է Սևանի մեջ։

Լճի հյուսիս-արևմտյան անկյունում նրա մեջ է թափվում Ձկնագետը:

Լճից արհեստական թունելով դուրս է գալիս հորդացած Հրազդանը, որը ջուր է մատակարարում Արարատյան դաշտին։ Այժմ լճի մակարդակը բավական իջել է, որի հետևանքով կրճատվել է նրա մակերեսը։ Ջրից ազատված տեղերում (հատկապես Սևանի շրջանի Լճաշեն գյուղում) հայտնաբերված են ամենատարբեր ժամանակներին վերաբերող շատ հնություններ։ Լճի մակերեսը ձյան հալոցքի և գարնանային անձրևների ժամանակ (մայիսին) բարձրանում է, իսկ դրանից հետո սկսում է իջնել։ Մակերեսի տատանումներ են նկատվում նաև պարբերաբար, երկար տարիների ընթացքում, ինչպես այդ տեղի է ունենում Վանա և Ուրմիա լճերում։ Սևանա լճի ջուրը քաղցրահամ է և զարմանալի կապուտակ։ Այնտեղ ապրում են բազմաթիվ ձկներ, որոնց մեջ առանձնապես գովված է իշխանը։ Մյուս ձկնատեսակներից են սիգը, կողակը և բախտակը։

Սևանա լճի հյուսիս-արևմտյան մասում, ափից մի քանի հարյուր մետր հեռավորության վրա գտնվում է Սևանա փոքրիկ կղզին (այժմ՝ թերակղզի), որտեղ պահպանված է միջնադարյան վանքը։ Այժմ այդտեղ տեղավորված են հանգստյան տներ։

Կղզին և ծովեզրյա գյուղերն իրար հետ հաղորդակցությունը դարեր շարունակ պահպանում էին միայն լաստերով և պարզունակ ձկնորսական նավերով։ Այժմ կա կանոնավոր շոգենավային երթև-

վեկությունը։ Սևանա լիճը անտեսական նշանակություն է ունեցել նաև հին ու միջին դարերում։ Այնտեղ որսացվել է մեծ քանակությամբ ձուկ, եղել է նավագնացություն։

Վանա լիճը (հնում՝ Տոսպա լիճ, Բզնունյաց ծով, Խլաթի լիճ, Ռշտունյաց լիճ և այլն) գտնվում է Հայկական Տավրոսից հյուսիս։ Նրա բարձրությունը ծովի մակերևույթից 1720 մ է, տարածությունը՝ 3765 քառ կմ, իսկ խորությունը՝ մինչև 25 մ։ Նրա մեջ թափվում են մի շարք գետեր. դրանցից նշանավոր են Խ ո շ ա բ ը, որը լճի մեջ է թափվում Վան քաղաքից հարավ, Մ ա ր մ ե տ ը, որն սկիզբ է առնում Կոտոր լեռնաշղթայի արևմտյան ստորոտներից և, իր վերին հոսանքում ճահիճներ առաջացնելուց հետո, ուղղվում է դեպի արևմուտք ու թափվում լճի մեջ՝ Վան քաղաքից հյուսիս-արևմուտք, Բ ե ր կ ր ի ն (կամ Բ ա ն դ ի մ ա հ ի) գետը, որն սկսվում է Թոնդուրեկ գագաթի հարավային լանջերից և Բերկրի քաղաքից քիչ անցնելով՝ թափվում է լճի մեջ, նրա հյուսիս-արևելյան անկյունից, Ա ր ճ ե շ ը, որը լճի մեջ է թափվում նրա հյուսիսային կողմից, Արճեշ քաղաքի մոտ։

Վանա լիճը հանդիսանում է երբեմնի մեծ ջրային ավազանի մնացորդ։ Նա փակ լիճ է՝ նրանից դուրս չի գալիս ոչ մի գետ, այդ պատճառով էլ ջուրն աղի է։ Վանա լճի ջուրն իր մեջ պարունակում է մեծ քանակությամբ բորակ։ Լճի մակերևույթն այժմ էլ աստիճանաբար բարձրանում է և ընդարձակվում։ Ջուրը հետզհետե ցամաքից նվաճում է նորանոր մասեր։ Այսպես. լճի ընդարձակման պատճառով հին Արճեշ քաղաքը, որը գտնվում էր հյուսիսային ափին, այժմ անցել է ջրի տակ, հետզհետե փոքրանում է Վան քաղաքի և լճի հայելու միջև եղած տարածությունը։

Նրա մեջ հաջող կերպով բազմանում է ձկան մի տեսակը, որը հայտնի է տառեխ անունով։ Հին և միջին դարերում տառեխը որսվում էր և, աղ դնելուց կամ չորացնելուց հետո, արտահանվում էր օտար երկրներ։ Այնտեղ նույնիսկ գոյություն ուներ արքայական հատուկ ձկնորսարան, որը գտնվում էր հյուսիս-արևելյան ափին, Առեստավանի մոտ։ Ժամանակի համեմատ, մեծ էր Վանա լճի դերը նաև նավագնացության համար։ Լճափին ընկած քաղաքները՝ Վանը, Ոստանը, Խլաթը, Արճեշը, Բերկրին, նավագնացությամբ կապվում էին իրար հետ։

Վանա լճի մեջ կան մի շարք կղզիներ, որոնցից նշանավոր են, հյուսիսային մասում՝ Լիմը և Կտուցը, իսկ հարավում, Ոստան քաղաքի դիմաց՝ Արտերն ու միջնադարյան հուշարձաններով հարուստ Աղթամարը։

**Ուրմիա լիճը** *(հնում՝ Կապուտան ծով, այժմ՝ Ռիզայե) հին Հայաստանի ամենամեծ ջրային ավազանն է։ Գտնվում է Հայկական լեռնաշխարհի հարավ-արևելյան սահմանագլխին։ Ծովի մակերևույթից ունի* **1330 մ** *բարձրություն, մակերեսը* **5775 քառ կմ** *է։ Հանդիսանում է հին ծովի մնացորդ։ Արտահոսք չունի, ջրերը սաստիկ աղի են, զուրկ է ձկներից։ Չնայած իր մեծությանը, խորությունն աննշան է՝* **4—5 մ**, *իսկ ամենախոր տեղում՝* **15 մ**։ *Հյուսիսային ափերին առաջացել են լայնատարած ճահիճներ։ Գրեթե կենտրոնական մասում ցրված են բազմաթիվ կղզիներ, որոնցից շատ թե քիչ նշանավոր են այժմ Էշակ և Կոյուն կոչվող կղզիները։*

*Ուրմիայի մեջ թափվող բազմաթիվ գետերից նշանավոր են հետևյալները.*

**Թավրիզի գետ** *(կամ* Աջի–չայ), *որը սկիզբ է առնում Սավալան ու Ազբուշ լեռների կազմած թամքոցից և հոսում է դեպի արևմուտք՝ Շահի կոչվող թերակղզու մոտ թափվելով լճի մեջ։ Նա իր միջին և ստորին հոսանքների շրջանում առաջացնում է ճահիճներ։*

**Սալմաստի** *(կամ* Զուբա–չայ) *գետը, սկիզբ է առնում Ջագրոշի լեռների հյուսիսային մասի լանջերից և, ձախ կողմից իր մեջ ընդունելով Դիլման վտակը, թափվում է լճի մեջ նրա հյուսիս-արևմտյան անկյունում։*

**Նազլու–չայը**, *սկիզբ է առնում Ջագրոշի լեռներից և լճի մեջ է թափվում Շահի թերակղզու դիմաց՝ արևմտյան ափից։*

*Հին և միջին դարերում Ուրմիա լիճն ըստ երևույթին շատ քիչ տնտեսական նշանակություն է ունեցել, որովհետև նա ծանծաղ է և ձկներից զուրկ։ Բայց, դրան հակառակ, նա խոշոր նշանակություն է ունեցել ստրատեգիական առումով։ Գտնվելով հին Հայաստանի հարավ-արևելյան սահմանագլխին, Ուրմիա լիճն այդ մասում խափանել է արևելքից եկող օտար նվաճողների մուտքը դեպի Հայկական լեռնաշխարհ։*

*Հայկական լեռնաշխարհի մյուս, անհամեմատ ավելի փոքր լճերից են Ծովակ Հյուսիսոն (Չլդըրի լիճ)՝ Չլդըր լեռների շրջանում, Արփի լիճը՝ Ախուրյան գետի ակունքում, Մեծամորի լիճը՝ Արագածից հարավ, Մեծ և Փոքր Ալլճերը՝ Վարդենիս և Զանգեզուր լեռնաշղթաների ստորոտին, Գայլատուն (Բալըղ-գյոլ)՝ Հայկական Պարի Սինակ գագաթի մոտ, Արճակի*[1]

[1] *Հավանաբար սկզբում կոչվել է Արշակի լիճ, իսկ հետագայում աղավաղվելով դարձել Արճակի լիճ։*

լիճը՝ Վանա լճից արևելք, որի մեջ է թափվում Մեհմեդիկ գետակը, Ն ա զ ի կ լիճը՝ Վանա լճից արևմուտք, Ծ ո վ ք լիճը (Գյոլջիկ)՝ Հայկական Տավրոսի արևմտյան մասում, և հազարավոր այլ ավելի փոքր լճակներ, որոնք ցրված են Զանգեզուրի, Գեղամա, Հայկական Պարի, Արագածի, Բյուրակնի, Հայկական Տավրոսի, Նեմրութի և այլ լեռնային շրջաններում։

Սևանից, Վանից և Ուրմիայից բացի, մնացած լճերը տնտեսական ավելի փոքր նշանակություն են ունեցել։ Դրանցից համեմատաբար տնտեսական մեծ նշանակություն է ունեցել Մեծամորի (Այղր) լիճը, որից հանված առուներով հնագույն ժամանակներից ի վեր ոռոգել են բավականաչափ հողային տարածություններ։

Սկզբնաղբյուրների հաղորդած տեղեկություններից երևում է, որ Հայկական լեռնաշխարհում պատմական ժամանակներում եղել են մի քանի այնպիսի լճակներ, որոնք այժմ գոյություն չունեն, ցամաքել են, օրինակ՝ Սյունյաց իշխանանիստ Շաղատ գյուղաքաղաքի (այժմ՝ գյուղ Հայկական ՍՍՀ-ի Սիսիանի շրջանում) մոտ, Կարին քաղաքի մոտ և այլն։ Կարելի է ենթադրել, որ այդպիսի լճերը կամ եղել են շատ ծանծաղ, կամ թե ուղղակի ճահիճներ են եղել, որի պատճառով էլ ցամաքել են։ Կային նաև արհեստական մի քանի ջրամբարներ և լճակներ Արագածի փեշերին, Երևանի մոտ, Վան քաղաքից արևելք և այլուր։

բ) Գետերը.— Հայկական լեռնաշխարհը, մեծ մասամբ ունենալով հրաբխային-լեռնային ռելիեֆ, հարուստ է սառնորակ աղբյուրներով և գետերով։ Սառնորակ աղբյուրներով առանձնապես աչքի են ընկնում Արաքսի վերնագավառն ու Արևմտյան Եփրատի ավազանը։ Վերջինս, որ գրեթե համընկնում է VII դ. «Աշխարհացույց»-ի մեջ նկարագրված Բարձր Հայքին, հնուց ի վեր պաղ ու վճիտ ջրերով հանրահայտ է եղել։ Աղբյուրներով պակաս նշանավոր չեն Հյուսիսային հրաբխային բարձրավանդակը, Զանգեզուրը, Արագածը, Գեղամա լեռները և լեռնային ուրիշ շատ շրջաններ։

Հայկական լեռնաշխարհից սկսվող գետերը ըստ ավազանների բաժանվում են չորս խմբի՝ դեպի Սև ծով հոսող գետեր, Պարսից ծոց հոսող գետեր, Կասպից ծով հոսող գետեր և ներքին ավազանները (երկրի ներսի լճերը) թափվող գետեր։ Վերջին խմբին պատկանող գետերի մասին արդեն ասվեց լճերի մասին խոսելիս։

Դեպի արտաքին ավազանները հոսող բոլոր խոշոր գետերն սկիզբ են առնում Բարձր Հայքի բուն տերիտորիայից կամ նրան շրջապատող լեռների լանջերից։

Հայկական լեռնաշխարհից սկիզբ առնող և դեպի Սև ծով հո-

սող գետերից են՝ Ճորոխը (երկարությունը 345 կմ, հնում՝ Վոհ, Ակամփսիս) իր Օլթի վտակով, Գյումուշխանեի (Խարշութ, Խորշատ) գետը, որի հովտում (վերին Հոռանքի շրջանում) գտնըվում են Գյումուշխանեի (հնում՝ Արգիրոկաստրոն) արծաթի հայտնի հանքերը, Գայլը (այժմ՝ Կելկիտ, հունարեն՝ Լիկոս), որ սկիզբ է առնում Անտիպոնտական լեռների արևմտյան լանջերից և, ծովից ոչ հեռու միանալով Իրիս հորդառատ գետին, թափվում է Սև ծով, Ալյուս կամ Հալիսը (այժմ՝ Կըզըլ-իրմակ), որը Հայկական լեռնաշխարհից դեպի Սև ծով հոսող գետերի մեջ ամենից երկարն ու ջրառատն է։

Դեպի Պարսից ծոցը Հայկական լեռնաշխարհից հոսում են երկու գետ՝ Եփրատը և Տիգրիսը։ Եփրատը (երկարությունը 2700 կմ, Հայաստանի մասում՝ 800 կմ) կազմվում է երկու ճյուղից՝ Արևմտյան (Ֆրատ, Կարա-սու, հայերեն՝ Սև ջուր) և Արևելյան (թրք. Մուրադ-չայ), որը հնում հայտնի էր Արածանի անունով։ Արևմտյան Եփրատը (երկարությունը 500 կմ) սկսվում է Ծաղկավետ (այժմ՝ Դյումլու) լեռների հարավային լանջերից։ Այն ակունքում՝ տեղացիների մոտ պաշտամունքի առարկա դարձած՝ մի հսկայական հորդաբուխ աղբյուր է, որը կազմում է հինգ-վեց ոտնաչափ լայնություն ունեցող մի գետակ։ Ակունքից դուրս գալով՝ նա հանդարտ իջնում է դեպի հարավ, աջ և ձախ կողմերից իր մեջ ընդունելով բազմաթիվ աղբյուրներ։ Հասնելով Կարին, նրա ընթացքն ավելի է դանդաղում։ Այստեղ նա առաջացնում է բավականին ընդարձակ ճահիճներ, որոնք մեր հին մատենագրության մեջ կոչվում են «Ճամբ Կարնոյ»։ Ջուրը պղտոր է և, հավանաբար, հենց այդ պատճառով է, որ ստացել է իր Սև ջուր (Կարա-սու) անունը։ Կարինի մոտ նա թեքվում է դեպի արևմուտք և, շատ չանցած, աջ կողմից իր մեջ ընդունում է Ճաղագոմքի գետը, որը սկիզբ է առնում Օվաջիղի լեռների տակից և, ոռոգելով նույնանուն նեղ ու երկար դաշտը, հասնում է Եփրատին։ Դերջանի դաշտում ձախ կողմից նա իր մեջ է ընդունում Դերջան (Դուզլու) գետը։ Դերջանի գետաբերանից հարավ Սև ջուրը նորից է ընդունում արևմտյան ուղղություն և, շարունակ քսվելով Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթայի հյուսիսային փեշերին, հասնում է նախ Երզնկայի դաշտը, ապա՝ Կամախի հրաբխային բարձրավանդակը։ Կամախից հարավ-արևմուտք նա կազմում է մի օղակ և աջ կողմից իր մեջ Տևրիկ վտակն ընդունելուց հետո, ուղղվում է դեպի հարավ-արևելք՝ Խարբերդի դաշտի արևմտյան մասում միանալով Արածանիին։ Նախքան Արածանիին միանալը, նա անցնում է Բյուրակն-Մնձուր-

յան լեռնաշղթայի արևմտյան մասով։ Այստեղ նրա հունը նեղ է և խոր։ Նրա ձորն ահավոր խորության է հասնում Ակն քաղաքի մոտ։ Ակնի կիրճը կազմող բարձրությունները հասնում են ձյան գծին և, մինչդեռ կիրճի հատակում ծաղկում է նշենին, վերևում, բարձրությունների վրա, խոր ձմեռ է լինում[1]։

Արածանին (կամ Արևելյան Եփրատ, թրք. Մուրադ), որը Եփրատի մյուս ճյուղի՝ Սև ջրի նման իր ամբողջ հոսանքով անցնում է Հայկական լեռնաշխարհի տերիտորիայով, սկսվում է Ծաղկանց հրաբխային լեռնախմբին պատկանող Թոնդուրեկ գագաթի մոտից։ Նա սկզբից ևեթ մի հորդահոս գետակ է կազմում, որը կարճ ճանապարհ անցնելուց հետո, մտնում է Թոնդուրեկի հյուսիսային լավային փովածքների շրջանում գտնվող ձորը, Դիադին ամրոցքաղաքից 22—27 կմ դեպի հարավ։ Այս շրջանում գետի երկուափերի ձագարաձև փոսերից դուրս են ցայտում ծծմբային տաք ջրեր, այնքան տաք, որ «տեղացիները, այդ աղբյուրների վրա եփում են ուխարի միս»։ Այդ տաք աղբյուրները, որոնք թափվում են Արածանիի մեջ, հնում կոչվում էին «Վարշակի ջերմուկ»-ներ։ Դարերի ընթացքում նրանց պարունակությունները գետի վրա կազմել են երկու բնական կամուրջ։ Կամուրջներից մեկն այնքան լայն է, որ նույնիսկ նրա վրայով կարող են ձիավորներ անցնել։

Այնուհետև, Արածանին մտնում է բազալտի սև ժայռերից կազմված մի նեղ և երկար ձոր, ուր նա դառնում է ավելի սրընթաց։ Շատ չանցած, դուրս գալով այդ անձուկ ձոր-ճեղքից, նա փոխում է իր հյուսիսային ուղղությունը և հոսում է դեպի հյուսիսարևմուտք. Դիադինի խոր ձորից դուրս գալուց հետո էլ հանքային ջրերը, գրեթե առանց ընդհատվելու, ուղեկցում են նրան երկար տարածության վրա՝ մինչև Ծաղկանցից դեպի հյուսիս մատնաձև տարածվող լեռնաճյուղերի հյուսիսային ստորոտները։

Արածանին իր վերնագավառում հանդիսացել է պաշտամունքի առարկա, այնպես, ինչպես Եփրատն իր ակունքի շրջանում։

Ալաշկերտի հովտում նա իր մեջ է ընդունում բազմաթիվ գետակներ, որոնց մեջ ամենից երկարն ու ջրառատը Շարիան գետն է։ Մանազկերտի դաշտից մինչև Մուշի դաշտ մտնելը Արածանին անցնում է լեռնային շրջաններով և ունի արագ ընթացք։ Աջից ու ձախից նրա մեջ են թափվում մի շարք գետեր, այսպես՝ Մանազկերտ քաղաքի մոտ նրա մեջ է թափվում Մ ա ն ա զ կ ե ր տ (այժմ՝ Պատնոս) գետը, դրանից արևմուտք, աջ կողմից՝ Խ ն ո ւ ս ի (Վա-

---

[1] Տե՛ս В. Штреккер, Очерки Верхней Армении, Тифлис, 1837, էջ 19։

յամնամիք) գետը, ապա՝ Բ յ ու ր ա կ ն ը, որն իր ստորին հոսանքի շրջանում կոչվում է Ջ հ ա ր բ ո հ ա ր (այսինքն՝ չորս տեղից անցանելի)։ Մուշի դաշտում ձախ կողմից նրա մեջ է թափվում Մ ե ղ ր ա գ ե տ ը կամ Մ շ ո գետը։

Մուշի դաշտից անմիջապես արևմուտք, գետը մտնում է նեղ և խոր կիրճերի մեջ, որտեղ նրա հունը նեղ է, և հոսանքը արընթաց։ Այստեղ նա կազմում է մի քանի ջրվեժներ։ Նեղ կիրճը վերջանում է Բալուի մոտ, և Արածանին մտնում է Խարբերդի ընդարձակ ու բերրի դաշտը։ Մուշից մինչև Խարբերդ նրա մեջ աջ կողմից թափվում են մի շարք վտակներ, որոնցից նշանավոր են երկուսը՝ Ճ ա պ ա ղ ջ ո ւ ր արագահոս գետը (Գյոմեկ-սու) և Փ ե ր ի գետը, որն սկսվում է Բյուրակն լեռան արևմտյան մասից և իր տարբեր մասերում կրում է տարբեր անուններ։

Խարբերդի դաշտից արևմուտք Արածանին միանում է հյուսիսից եկող իր քրոջ՝ Եփրատին։ Արածանին ավելի ջրառատ է, քան Եփրատը։

Արածանին և Եփրատը միանալուց հետո մտնում են Տավրոսյան լեռների շրջանը։ Այստեղ նրանք պատռում են Տավրոսյան հսկայական լեռնային սիստեմը՝ առաջացնելով բազմաթիվ զառիվեր կիրճեր։ Տավրոսյան լեռների շրջանում Եփրատը կազմում է փոքրիկ ջրվեժներ, որոնց թիվը հասնում է 300-ի։

Կտրելով Տավրոսի շղթան, Եփրատը դուրս է գալիս Միջագետքի հարթություն։ Այստեղ նա նախ ուղղվում է դեպի արևմուտք՝ մոտենալով Միջերկրական ծովին, ապա թեքվում է դեպի հարավ և աստիճանաբար մոտենում իր արևելյան մեծ հարևանին՝ Տիգրիսին։ Բավականին երկար տեղ Տիգրիսին զուգահեռ հոսելուց հետո, Եփրատը միանում է նրան և թափվում Պարսից ծոցը։ Այդ երկու խոշոր գետերը իրար միանալուց հետո կրում են Շ ա տ - է լ - Ա ր ա բ ընդհանուր անունը։

Դեպի Պարսից ծոց հոսող մյուս խոշոր գետը Տ ի գ ր ի ս ն է։ Տիգրիսը (կոչվել է նաև Դկլաթ), որը Հայկական լեռնաշխարհից սկսվող գետերից ամենաջրառատն է, Եփրատի նման կազմված է երկու ճյուղից՝ Ա ր և մ տ յ ա ն և Ա ր և ե լ յ ա ն։ Արևմտյան ճյուղը, որը կոչվում է նաև ուղղակի Տիգրիս, իր հերթին կազմված է երկու ճյուղից։ Նրանցից մեկը հայտնի է Ա ր ղ ա ն ա անունով։ Արղանայի գրեթե միջին հոսանքի շրջանում, նրա աջ ափին, գտնըվում է Արղանա գյուղաքաղաքը, որը հին և միջին դարերում հռչակված էր իր գունավոր մետաղների (գլխավորապես պղնձի) հանքերով։ Շատ չանցած, Արղանա գետը միանում է Արևմտյան Տիգ-

րիսի մյուս ճյուղի՝ Զ ի բ ե ն ե ի հետ, որի ակունքն ավելի արևելք է գտնվում։ Վերջինս բավական երկար տարածություն հոսում է բնական թունելով, որը փորել է ինքը՝ Զիբենեն։ Այդ թունելի շրջանում մինչև օրս էլ պահպանվել են ասորական վիմագիր արձանագրություններ։

Արղանա և Զիբենե գետակները միանալուց հետո, գետն արդեն կրում է իր իսկական անունը՝ Տիգրիս, որը մինչև Դիարբեքիր (Ամիդ) քաղաքի մոտերքը հոսում է դեպի հարավ, իսկ Դիարբեքիրից քիչ հարավ փոխում է հոսանքի ուղղությունը դեպի արևելք։ Մինչև Արևելյան Տիգրիսի հետ միանալը նա իր մեջ աջ և ձախ կողմերից ընդունում է բազմաթիվ ջրառատ վտակներ։ Սրանց մեջ ամենից նշանավորը ձախ կողմից նրա մեջ թափվող Բ ա թ մ ա ն գետն է (Բաթման-սու), իր Խ ո ւ լ փ վտակով։ Բաթման գետը հնում հայտնի էր Ք ա ղ ի ր դ և Ն ի մ ֆ ի ո ս անուններով։

Բաթման վտակն ընդունելուց հետո, գետը մտնում է մի լեռնային շրջան։ Նրա հունը հարավից պատող լեռնաճյուղերից մեկի վրա այժմ գտնվում է Հասանքեյ գյուղը, որտեղ պահպանվել են ուրարտական զանազան կառուցվածքներ (այդ թվում լեռնալանջի ուղղությամբ դասավորված 16 հարկանի ջրաղացների ավերակներ)։ Այստեղից շարունակելով հոսել նույն արևելյան ուղղությամբ, գետը Սղերդ քաղաքից հարավ-արևմուտք միանում է Արևելյան Տիգրիսին։

Ա ր և ե լ յ ա ն Տ ի գ ր ի ս ը (Թրք. Բոհտան-սու, Քսենոֆոնի մոտ կոչված է Կենտրիտես) սկսվում է Հայկական Տավրոսի և Կորդվաց (Քրդստանի) լեռների կազմած անկյունից։ Ակունքներից քիչ հեռու նա փոխում է իր հյուսիս-արևմտյան ուղղությունը, ընդունելով արևմտյան ուղղություն, որը մինչև Արևմտյան Տիգրիսին միանալը համարյա չի փոխում։ Իր վերին հոսանքի շրջանում, ձախ կողմից նա իր մեջ է ընդունում Շ ա հ բ ո ւ ր գետակը։ Ավելի արևմուտք, աջ կողմից նրա մեջ են թափվում նախ Մ ո կ ս գետը, ապա, Սղերդ քաղաքի մոտ, Բ ա ղ ե շ գետը՝ իր Գ յ ո ղ ա լ դ ա ր ա վտակով։ Արևելյան Տիգրիսն անհամեմատ սակավաջուր է, քան Արևմտյան Տիգրիսը։ Երկու Տիգրիսները միանալուց հետո, ճեղքում են Քրդստանի լեռները և դուրս գալիս Միջագետք։ Ձախ կողմից իր մեջ ընդունելով Մ ե ծ Զ ա վ կամ Զ ա բ վտակը, Տիգրիսը շարունակում է իր ընթացքը դեպի հարավ՝ մինչև Եփրատին միանալը։

Հայկական լեռնաշխարհից երկու խոշոր գետ հոսում են դեպի Կասպից ծով։ Դրանք են՝ Կ ո ւ ր և Ա ր ա ք ս գետերը։

Կուրն Անդրկովկասի ամենախոշոր գետն է։ Նա իր վերին հոսանքով պատկանում է Հայկական լեռնաշխարհի գետային ցանցին։ Սկիզբ է առնում Հյուսիսային Հրաբխային բարձրավանդակի հյուսիսային մասի հարավ-արևմտյան անկյունից՝ Գյոլեի ճահճալճակներից։ Հոսելով հարավից հյուսիս ուղղությամբ, մտնում է Արդահանի սևահողային և բերրի դաշտը։ Ախլցխայի սահմանների մոտ նա թեքվում է դեպի հյուսիս-արևմուտք, բայց շատ չանցած, քաղաքի մոտ շուռ է գալիս դեպի հյուսիս-արևելք։ Ախլցխայից ոչ հեռու, ձախ կողմից իր մեջ ընդունելով Փ ո ց խ ո վ ջրառատ գետը, Կուրը շարունակում է հոսել հյուսիս-արևելյան ուղղությամբ։ Բորժոմիի կիրճից դուրս գալուց հետո նա ընդունում է հարավ-արևելյան ուղղություն, կտրելով Արևելյան Վրաստանը, ապա Ադրբեջանը, հասնում է Կասպից ծով։ Բացի նշված Փոցխովից, Կուրի մեջ են թափվում Մեծ և Փոքր Կովկասներից սկսվող բազմաթիվ գետեր՝ ավելի և ավելի ջրառատ դարձնելով այն։

Փոքր Կովկասից դեպի Կուր հոսող լեռնային փրփրալից գետերը բազմաթիվ են։ Կուրի հոսանքին համընթաց թվարկենք նրանցից մի քանիսը. Ք ց ի ա (Խրամի), սկսվում է Ծալկայից (Վրացական ՍՍՀ) և, իր հերթին մի քանի վտակներ ընդունելուց հետո, թափվում է Կուրի մեջ։ Նախքան Կուրի մեջ թափվելը Քցիան իր մեջ է ընդունում նաև Դ ե բ ե դ գետը։ Դեբեդը կազմվում է Ձ ո ր ա գ ե տ և Փ ա մ բ ա կ գետերից։ Դեբեդից ներքև, Պապաքարի լեռնալանջերից դեպի Կուր վազում են Կ ո ղ բ և Կ ո թ գյուղերի փոքրիկ գետակները։ Ա ղ ս տ և ը (ադրբեջաներեն՝ Ա ղ ս տ ա ֆ ա) սկիզբ է առնում Ֆիոլետովոյի լեռնանցքի մոտից և շարունակ հոսում է անտառապատ ձորերով, որ Դիլիջանի մոտ լայնանալով կազմում է մի փոքրիկ հովիտ։ Կուրի հետ միանում է Անդրկովկասյան երկաթուղու Փոյլի կայարանի մոտ։ Աղստևից արևելք հաջորդական կարգով Փոքր Կովկասից սկսվում և Կուրի մեջ են թափվում բազմաթիվ գետեր, որոնցից են՝ Հ ա խ ո ւ մ ը, Տ ա վ ո ւ շ ը, Զ ա կ ա մ ը (Զեգամ-չայը), Շ ա մ ք ո ր-չ ա յ ը, Գ յ ա ն ջ ա-չ ա յ ը (Գանձակ), Կ յ ո ւ ր ա կ-չ ա յ ը և Թ ա ր թ ա ռ ը, որը հնում հայտնի էր Տ ր տ ո ւ անունով։

Կուրն ու Արաքսը, հատկապես իրենց գետաբերանների մոտ, շատ հաճախ են փոխում իրենց հուները։

Արաքսը (հնում՝ Երասխ) մեծ մասամբ հոսում է Հայկական լեռնաշխարհով։ Նա սկսվում է Բյուրակն բարձրավանդակի Սրբմանց գագաթի տակից, որտեղ հավաքվում են ջրառատ բարձրավանդակի հազարավոր աղբյուր-լճակների ջրերի մեծ մասը։ Արա-

ծանիի և Եփրատի ակունքների նման Արաքսի ակունքն էլ ժողովուրդը դարձրել է պաշտամունքի առարկա։ Բարձրավանդակի վրայի ջրերը միանալով՝ սկիզբ են տալիս չորս առվակների, որոնք էլ իրենց հերթին, Սրմանց գագաթի լանջին միանալով՝ կազմում են Արաքսը։ Նա սկզբից որպես մի փոքրիկ գետակ վազում է դեպի արևմուտք և, իր մեջ ընդունելով Բյուրակնի ուրիշ լանջերից իջնող բազմաթիվ վտակներ, թեքվում է դեպի հյուսիս-արևելք ու այդ ուղղությամբ շարունակում իր ընթացքը՝ մինչև Տվարածատափի դաշտը (Կարայազ)։ Այստեղ Արաքսը, աջ կողմից իր մեջ Սև ջուր գետն ընդունելուց հետո ուղղվում է դեպի հյուսիս։ Շատ չանցած, Այծպտկունք (Փալանթյոքան) գագաթից արևելք ճեղքում է Հայկական Պարը և դուրս գալիս Վերին Բասենի դաշտը։ Վերջինիս սահմաններում ձախ կողմից նրա մեջ է թափվում Գեղրոյնի լեռների տակից սկսվող Մուրց (Հասանկալա) գետը։ Մուրց գետի գետաբերանից սկսած, Արաքսը թեքվում է դեպի արևելք և սրընթաց արագությամբ անցնում նախ Ստորին Բասենով, ապա՝ Կաղզվանով և դուրս է գալիս Արարատյան դաշտը։

Արարատյան դաշտում հյուսիսից և մասամբ էլ հարավից նրա մեջ թափվում են մի շարք վտակներ։ Իրենց ջրառատությամբ և երկարությամբ նշանավոր են ձախ կողմից թափվող վտակները։ Դրանք են.

**Ախուրյան**[1]— սկսվում է Արփի լճից, վազում է նախ դեպի արևելք, ապա թեքվում է դեպի հարավ և, կտրելով Բագումի ու Շիրակի լեռնային սիստեմներին պատկանող լավային շերտերը, Լենինականի մոտ իջնում է Շիրակի դաշտը։ Շիրակի հարավային մասում Ախուրյանը, աջ կողմից ընդունելով իրենից ավելի ջրառատ և մոտ 50 կմ-ով ավելի երկար Կարսա գետը, շատ չանցած միանում է Արաքսին։

**Սև ջուր**— հնում կոչվում էր Մեծամորի գետ։ Սկսվում է Մեծամորի լճից և նրա շրջակայքում բխող աղբյուրներից։ Իր միջին հոսանքում ընթանում է գրեթե Արաքսին զուգահեռ և գետախառնուրդից մոտավորապես 15 կմ հեռու ձախ կողմից ընդունում է Քասախ գետը։

---

[1] Հնում Ախուրյան կոչվում էր Կարսա գետը այժմյան Ախուրյան գետի ստորին հոսանքի հետ միասին՝ մինչև գետաբերանը, իսկ Արփի լճից բխող մասը կոչվում էր Մեծամորի գետ։ Վերջինս թուրքերն անվանում էին Արփաչայ, որն այժմ գործածությունից հանված է։ Մայր գետը, որ համարվում է Արփի լճից սկիզբ առնողը, կոչվում է Ախուրյան։

Արտաշատ մայրաքաղաքի դիրքի վերաբերյալ Մովսես Խորենացու հաղորդած մի վկայությունից երևում է, որ հնում Սև ջուրը (Մեծամոր) Արաքսին զուգահեռ դեպի արևելք հոսելիս է եղել ավելի հեռու՝ մինչև այժմյան Արտաշատի շրջանը։ Հետևապես, այդ ժամանակներում մինչև Արաքսին միանալը նրա մեջ էին թափվում, Քասախից բացի, նաև Հրազդանը (Զանգուն) և Ազատ գետը (Գառնին)։

Արարատյան դաշտում անկայուն է եղել նաև Արաքսի հունը։ Դարերի ընթացքում նա մի քանի անգամ փոփոխվել է։ Այժմ էլ Հոկտեմբերյանի դաշտում Արաքսից հյուսիս պարզ երևում է նրա հին հուններից մեկը, որ տեղացիներն անվանում են «Չոր Արաքս»։ Նրա հունի անկայունության հետևանքով Արարատյան դաշտի սահմաններում Արաքսի վրա կառուցված կամուրջները երկար չեն դիմանում։ Հենց այդ է պատճառը, որ հռոմեական բանաստեղծության մեջ (Վիրգիլիոսի մոտ, 70—19 թթ. մ. թ. ա.) Հռոմի ստրկացնող լծի դեմ հայ ժողովրդի հերոսական պայքարը արտահայտված է իր կամուրջները քանդող Արաքսին նվիրված արտահայտությամբ՝ «Կամուրջ չհանդուրժող Արաքս»։

Հաջորդ վտակը, որ Արարատյան դաշտում ձախ կողմից թափվում է Արաքսի մեջ, Հ ր ա զ դ ա ն ն է (Զանգուն)։ Նա սկսվում է Սևանա լճից և մինչև Երևան ունի մեծ անկում։ Իջնելով մեկ աստիճանից մյուսը՝ Հրազդանը հարմարություն է ընձեռում սանդուղքաձև դասավորված էլեկտրակայանների կառուցման համար։

Արաքսի ձախակողմյան վտակներից են նաև՝ Ա զ ա տ (Գառնի) գետը, Վ ե դ ի ն, Ա ր փ ա գետը, Ն ա խ ի ջ և ա ն-չ ա յ ը, Ա լ ի ն-ջ ա-չ ա յ ը (Երնջակ գետ), Մ ե ղ ր ու գետը, Ո ղ ջ ի գետը (Կապանի գետ), Ո ր ո տ ա ն ը, որն իր ստորին հոսանքում կոչվում է Բարգուշատի գետ և որն աջ կողմից թափվում է Հ ա գ ա ր ի գետի (Աղավնո գետ) մեջ՝ ապա նրա հետ միասին միանում Արաքսին։

Հայկական լեռնաշխարհում Արաքսի մնացած աջակողմյան վտակներից նշանավոր են Գայլատու (Բալըղ-գյոլ) լճից սկսվող Դ ե ղ ի ն գետը (Զանգիմար) և Կ ա ր մ ի ր գետը, որն իր վերին հոսանքում կոչվում է Կ ո տ ու ր ի գետ։

Արաքսի երկարությունը 913 կմ է։ Նրա ավազանը կազմում է Հայկական լեռնաշխարհի գրեթե կեսը։ Խիստ տղմոտ է։ Իր տեղափոխած տիղմի քանակությամբ աշխարհում բռնում է երկրորդ տեղը՝ առաջին տեղը զիջելով Նեղոսին։

Հայկական լեռնաշխարհի գետերը լեռնային բնույթ ունեն. նրանք արագընթաց են, փրփրալից և պարունակում են հսկայա-

կան քանակությամբ էներգիա։ Նրանց անկման ուժը հին և միջին դարերում օգտագործվել է շատ չնչին չափով՝ ջրաղացներ գործի գնելու համար։ Մեր օրերում անսպառ գետային էներգիան լայն չափերով ի սպաս է դրված ժողովրդական տնտեսությանը Հայկական լեռնաշխարհի այն մասերում, որոնք մտնում են ՍՍՀՄ-ի մեջ։

Հայկական լեռնաշխարհի գետերն իրենց մեծ անկման պատճառով նավարկության համար պիտանի չեն (բացառությամբ Եփրատի որոշ մասերի)։ Նրանք գրեթե պիտանի չեն նաև լաստարկման համար, եթե չհաշվենք պրիմիտիվ լաստարկումները, որոնք կարող են կատարվել մի քանի համեմատաբար մեծ գետերի որոշ մասերում։ Մեծ է եղել և այժմ էլ մեծ է նրանց նշանակությունը ոռոգման գործում։

Հայկական լեռնաշխարհի գետերի նշանակությունը զգալի է նաև ձկնորսության համար։

## 4. ԲՈՒՍԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԸ

Հայկական լեռնաշխարհի կլիմայական պայմանների բազմատեսակությունն իր խոր ազդեցությունն է թողել բուսական աշխարհի վրա՝ այստեղ ևս առաջ բերելով խիստ բազմազանություն։ Բուսականությունն այս լեռնային երկրում ուղղաձիգ գոտիներ է տալիս՝ ըստ ծովի մակերևույթից ունեցած բարձրության։

Ընդհանուր առմամբ Հայկական լեռնաշխարհի հողը բերրի է։ Երկիրը նպաստավոր է գյուղատնտեսության երկու կարևորագույն ճյուղերի՝ երկրագործության և անասնապահության համար։

Երկրի ցածրադիր մասերում՝ ծովի մակերևույթից 500—1100 մետր բարձրության վրա գտնվող հարթություններում (Արարատյան դաշտ, Արածանիի հովիտ, Վանի շրջան, Մեղրու և Ղափանի հովիտներ), արհեստական ոռոգման դեպքում, հաջող կերպով աճում են մերձարևադարձային տեխնիկական այնպիսի կուլտուրաներ, ինչպիսիք են բամբակը, ծխախոտը և այլն։ Այս գոտում հացահատկային կուլտուրաների այլ տեսակների հետ միասին մշակվում է բրինձ։ Մեծ տարածում ունի կորիզավոր պտուղների և խաղողի մշակումը։ Հնագույն ժամանակներից սկսած Հայաստանը նշանավոր է իր խաղողով, ծիրանով, դեղձով և բազմաթիվ այլ պտուղներով։ Հայկական լեռնաշխարհն ունի խաղողի, ծիրանի, դեղձի և այլ պտուղների բազմաթիվ տեսակներ, որոնք իրենց որակով չեն զիջում աշխարհի որևէ այլ երկրի պտուղների տեսակներին։ Հին և մի-

ցին դարերում պտուղների մի զգալի մասը, գլխավորապես չորացրած վիճակում, արտահանվել է զանազան երկրներ։ Դժվար է ճըշգրիտ որոշել, թե որ ժամանակվանից Հայկական լեռնաշխարհում մարդիկ սկսեցին զբաղվել այգեգործությամբ։ Այգեգործության պատմությունն սկսվում է հնագույն ժամանակներից, և մարդկային հասարակության պատմությանը վերաբերող առաջին իսկ հիշատակություններից ու նյութական կուլտուրայի մնացորդներից երևում է, որ իրոք Հայկական լեռնաշխարհի հնագույն բնակիչները գյուղատնտեսական այլ ճյուղերի հետ միասին զբաղվել են նաև այգեգործությամբ։

Ցածրադիր այս գոտում բավականին ընդարձակ տերիտորիա են գրավել ճահճապատ տարածությունները։ Մեզ հասած վկայությունների համաձայն, հսկայական ճահիճներ կային Արմավիրի, Վաղարշապատի, Արտաշատի, Մանազկերտի շրջակայքում։ Ճահիճները տարածում ունեն նաև ավելի բարձրադիր գոտիներում՝ Կարնո շրջանում, Մուշում, Ալաշկերտում։ Ցածրադիր գոտում չոր և շոգ կլիմայի պատճառով հողի մեծագույն մասը, արհեստական ոռոգման բացակայության հետևանքով, պատած է փշաբույսերով և չորասեր այլ բույսերի տեսակներով։ Այդ տիպի տարածությունները, որոնք վաղ գարնանը ծածկվում են գույնզգույն ծաղիկներով, խոտերի թավշով և արագ կերպով չորանալով վեր են ածվում խոտազուրկ անհրապույր տարածությունների, նորից խոտով զարդարվում են աշնանը՝ ծառայելով որպես անասունների ձմեռանոցներ, նման Մուղանի դաշտին, որտեղ ձմեռն ապաստանել են բազմաթիվ քոչվորական ժողովուրդների միլիոնավոր մանր և խոշոր եղջյուրավոր անասուններ ու ձիեր։ Կիսաանապատային այդ գոտու ամենատարածված բույսը օշինդրն է, որը հարմարված է ցամաքային կլիմայական պայմաններին։

Ցածրադիր դաշտային գոտուն հաջորդում է նախալեռնային գոտին, որը ծովի մակերևույթից ունի 1100—1500 մ բարձրություն։ Այս գոտու ստորին մասերում՝ մինչև 1300 մ բարձրության վրա, են տարածվում է խաղողի և կորիզավոր պտուղների մշակույթը, իսկ ստնձենին, խնձորենին, սալորենին, բալենին, կեռասենին և բազմաթիվ այլ տեսակներ՝ մինչև 1500 մետր բարձրության վրա։ Նախալեռնային այս գոտու համար, սակայն, բնորոշ կուլտուրաները հացաբույսերն են՝ ցորենը, տարեկանը, գարին, հաճարը, կորեկը և այլն։ Հացահատիկներով առանձնապես աչքի են ընկնում Մուշի, Ալաշկերտի և Շիրակի դաշտերը, ինչպես և մի քանի այլ գետահովիտներ, որոնք դեռ վաղ շրջանից ստացել են հացի շտե-

*մարանների համար։ Հայկական լեռնաշխարհն իր հարևան Իրանական սարահարթի և Միջավոր Արևելքի մի քանի այլ երկրների հետ միասին հանդիսանում է վայրի ցորենների նախահայրենիքը։*

*Ընդհանուր առմամբ նախալեռնային այս գոտին Հայկական լեռնաշխարհում, մյուս գոտիների համեմատությամբ, ունի ամենից մեծ տարածությունը։ Այստեղ, ինչպես և մասամբ հաջորդ գոտում, մեծ տարածում ունեն հացազգիները, փետրախոտերը և այլ խոտեր։*

*Նախալեռնայինից վեր տարածվում է լեռնային գոտին, ծովի մակերևույթից ունենալով 1500—2500 մ բարձրություն։ Նրա ստորին շերտում, մինչև 1900 և նույնիսկ 2000 մ բարձրության վրա, գլխավորապես լեռնադաշտերում, դեռևս տարածվում են հացահատիկները, միայն այն տարբերությամբ, որ այստեղ ցորենը հաջող չի աճում և քիչ տարածում ունի, իսկ դրա փոխարեն ավելի մեծ տեղ են գրավում գարին ու տարեկանը։ Հացահատիկների ցանքերը լեռնային այդ գոտում երբեմն վնասվում են վաղահաս ցրտերից։ Պակաս վտանգավոր չէ նաև կարկուտը, որը երբեմն տեղում է լեռնային որոշ շրջաններում։*

*Լեռնային գոտու բարձր շերտերում՝ 1900—2000 մետրից վեր, տարածվում են ալպյան մարգագետինները, որոնք բռնում են ընդարձակ տարածություններ։ Ալպյան մարգագետիններով առանձնապես հարուստ են Բյուրակնյան, Հայկական Տավրոս, Խոնավ, Մրղուզի, Սեանի, Գեղամա և Զանգեզուրի լեռների բարձրադիր լանջերը։ Այդ արոտավայրերը և նրանցից ցած տարածվող լայնատարած խոտհարքները կերի բնական բազա են անասնապահության զարգացման համար։*

*Անտառներով, ընդհանուր առմամբ, Հայկական լեռնաշխարհն աղքատ է։ Նրա կենտրոնական մասերը, եթե չհաշվենք լեռնային շրջաններում տեղ-տեղ երևացող առանձին պուրակները, գրեթե անտառազուրկ են։ Անտառները մեծ տարածություն են գրավում նրա հյուսիսային և հարավ-արևմտյան մասերում։ Թանձրախիտ անտառների ընդարձակ տարածությունները հատուկ են հատկապես հյուսիսային ծայրամասային նահանգներին։ Այդ տեսակետից հայտնի են եղել հատկապես Արցախ, Գուգարք, Տայք նահանգները, ինչպես նաև Սյունիքի որոշ մասերը։ Եղիշեն Արցախի անտառները կոչում է «թանձրախիտ մայրիք», Մովսես Խորենացին, նկատի ունենալով Տայքի անտառապատությունը, նրա բնությունը բնորոշում է հետևյալ խոսքերով՝ «... գիշին մառախլապատ տեղից մայրեաց»։*

*Անտառները մեծ տարածություններ են բռնում նաև Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմտյան և հարավային մասերում, հատկապես Դերսիմում, Արևելյան Տիգրիսի ավազանում և Վանա լճի հարավային շրջաններում։*

*Նշվածներից բացի, անտառը բավականին մեծ տարածություն է գրավում Կարս գետի վերնագավառում՝ Սարիղամիշի շրջակայքում։ Սարիղամիշի այդ անտառները խեժատու են և ունեն տնտեսական խոշոր նշանակություն։ Նախասովետական շրջանում այստեղ կային փայտամշակման մի քանի հասարակ ձեռնարկություններ։*

*Հայկական լեռնաշխարհի մյուս շրջաններում ցրված են առանձին փոքր պուրակներ, որոնք ունեն միայն տեղական նշանակություն։ Մեզ հասած հիշատակություններից պարզ երևում է, որ հնում Հայկական լեռնաշխարհում անտառները շատ ավելի լայն տարածություն են գրավել, քան այժմ։*

*Հայկական լեռնաշխարհի անտառների ծառատեսակների մեծ մասը լայնատերև է։ Առանձնապես տարածված են հետևյալ ծառատեսակները՝ կաղնի, հաճարի, բոխի, թխկի, հացենի, կեչի, իսկ Զանգեզուրի, Լոռու և Ղարաբաղի անտառներում՝ մեծ քանակությամբ վայրի պտղատու ծառեր և թփեր (առավելապես տանձ, խնձոր, սալոր, մոշ, մոռ)։ Որոշ շրջաններում (Մեղրի, Ղափան, Վանա լճի ավազան և այլն) անտառային պուրակներ են կազմում ընկուզենիները։*

*Հին Հայաստանում տնկվել են մի քանի պուրակ-անտառներ։ Դրանցից համեմատաբար նշանավոր են եղել Արմավիր մայրաքաղաքի մոտ գտնվող սոսիների պուրակը («Սոսյաց անտառ»-ը, III դ. մ. թ. ա.), Բագարանի շրջանում՝ «Ծննդոց անտառը» (III դ. մ. թ. ա.) և Արտաշատ-Դվինի մոտ գտնվող արհեստական անտառը։ Վերջինս տնկվել է Խոսրով Բ Կոտակի օրոք (330—338 թթ.)։ Խոսրով Կոտակը Արտաշատ մայրաքաղաքի կլիմայական և դիրքային անպաստ պայմանների պատճառով[1] արքունական պալատներ է կառուցում քաղաքից հյուսիս մի բարձրադիր տեղում, որի շուրջը հետագայում ծավալվում է Դվին մայրաքաղաքը։ Միաժամանակ, նրա հրամանով տնկվում է այն ժամանակվա համեմատ բավականին մեծ մի անտառ, որը բաղկացած էր կաղնիներից։*

---

[1] *Երասխը, որը երկու կողմից շփվում էր Արտաշատի պարիսպներին, այդ ժամանակներում հեռացել էր քաղաքից, և վերջինիս շրջակայքում առաջացել էին մեծ տարածություն գրավող ճահիճներ։*

Խոսրովի օրոք տնկված այդ անտառը սկսվում էր Գառնի բերդի մոտից, տարածվում Ազատ ու Վեդի գետերի ջրբաժանով՝ մինչև Դվինի Տիկնունի ապարանքը, ապա այնտեղից էլ մինչև Արտաշատ և Արաքս։ Այդ անտառը բաղկացած էր երկու մասից, որոնք պարսպապատված էին առանձին-առանձին։ Առաջին մասը կոչվեց «Տաճար Մայրի», իսկ երկրորդը՝ «Խոսրովակերտ»։ Այնտեղ թագավորական որսի համար պահվում էին զանազան տեսակի բազմաթիվ որսի կենդանիներ։

Հայկական լեռնաշխարհի բնությունը, ինչպես տեսանք, նպաստավոր է անասնապահության համար։ Այստեղ կան անհրաժեշտ չափով թե՛ խոտհարքներ ու ձմեռային արոտատեղեր և թե՛ ալպյան մարգագետիններ։ Ընտանի կենդանիներից տարածված են եղել՝ ոչխարը, այծը, կովը, ձին, գոմեշը, ջորին, էշը և թռչուններ։

Վայրի կենդանիներից տարածված են՝ աղվեսը, նապաստակը, գայլը, արջը, բորենին, ծայր հարավային մասերում պատահել է առյուծ։ Լեռներն ու դաշտերը հարուստ են որսի կենդանիներով և թռչուններով, որոնց մեջ հայտնի են եղել քարայծը, վայրի ոչխարը, այծյամը, եղնիկը, վարազը, կաքավը, բադը, փասյանը, լորամարգին և այլն։

Տնտեսական տեսակետից հին և միջին դարերում խոշոր նշանակություն ուներ որդի մի փոքրիկ տեսակ, որն ապրում էր Արարատյան դաշտի եղեգնաբույսերի վրա։ Այդ միջատից պատրաստում էին լավագույն որակի կարմիր ներկ, որը մեր մատենագրության մեջ հայտնի է «որդան կարմիր» անունով, իսկ արաբական աղբյուրները, որոնք գրեթե առանց բացառության մեծ գովեստով են խոսում հայկական «որդան կարմրի» մասին, այն կոչում են «ալ-կըրմըզի»։ Որդան կարմիր ներկը Հայաստանից արտահանվող ապրանքների մեջ գրավում էր գլխավոր տեղերից մեկը և մեծ հռչակ ուներ Մերձավոր Արևելքի երկրներում։

## 5. ԲՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Իբրև գերազանցորեն լեռնային երկիր՝ Հայկական լեռնաշխարհն աչքի է ընկնում իր բնական հարստություններով։ Բնական հարստությունների առումով հին Հայաստանը ամենից առաջ հայտ-

նի է եղել իր սեղանի աղով[1]։ Հայկական լեռնաշխարհի սեղանի աղի երեք հռչակավոր հանքերը՝ Կողբը, Նախիջևանը և Կաղզվանը, որոնք մարդկությանը հայտնի են հնագույն ժամանակներից, մինչև այժմ էլ ոչ միայն չեն կորցրել իրենց արժեքը, այլև շարունակում են մնալ, մանավանդ Կողբը, որպես պաշարներով հարուստ աղահանքեր։ Կողբի աղահանքերում վերջերս գտնված քարե գործիքները կենդանի ապացույց են այն բանի, որ Հայկական լեռնաշխարհի բնակիչներն աղահանքերը շահագործման են ենթարկել դեռևս քարե դարաշրջանից սկսած։ Կողբից, Կաղզվանից և Նախիջևանից բացի, տարբեր տեսակի աղեր են տարածված երկրի զանազան մասերում, հատկապես Եփրատի և Վանա լճի ավազաններում, որոնք, սակայն, ունեցել են գերազանցապես տեղական նշանակություն։ Ոչ պակաս նշանավոր է Հայկական լեռնաշխարհը պղնձի ու նրան ուղեկցող կապարի ու ցինկի հանքերով։ Պղնձի բազմաթիվ հանքեր տարածված են երկրի զանազան մասերում։ Բայց այդ առումով ամենից նշանավորները եղել են՝ Գուգարքի Տաշիր գավառը, Սյունիք նահանգի մի քանի գավառները (Վայոց ձորը, Բաղքը, Ձորքը), Հանքավանի (Միսխանայի) պղնձի հանքերը, որոնց պաշարներն սպառված են, Արևմտյան Տիգրիսի ակունքներում գտնվող Արղնիի (Արղանա-մադան) հայտնի պղնձահանքերը։

Պետք է նշել, որ սովետական իշխանության օրոք ձեռնարկված երկրաբանական նոր հետազոտությունների շնորհիվ, որ շարունակվում է ավելի մեծ թափով, Հայկական ՍՍՀ-ում հայտնաբերվեցին նորանոր հանքեր, որոնք դարձել են կայուն բազա Սովետական Հայաստանի ծաղկած արդյունաբերության համար։

Երկաթը, որի գործածությունը Հայկական լեռնաշխարհի բնակիչներին դարձյալ հայտնի է հնագույն ժամանակներից, ավելի հաճախակի է հանդիպում և մեծ չափերով է տարածված, քան պղինձը։ VII դարին պատկանող «Աշխարհացույց»-ի մեջ հիշատակվում է, որ երկաթով հարուստ են Աղձնիք և Տուրուբերան նահանգները։ Առանձնապես նշանավոր էին Աղձնիք և Վասպուրական նահանգների սահմանագլխին գտնվող «Երկաթահատ» կամ «Երկաթահանք» կոչվող հանքերը՝ Ընձաքիարս լեռան մոտ. այստեղ արդյունահանվում էր նաև կապար, որի պատճառով էլ հանքավայրը հաճախ կոչվում էր նաև «Կապարահատ»։

Ներկայումս Հայկական լեռնաշխարհում նշմարվում են հար-

---

[1] Հանքանյութերի մեջ սեղանի աղը միակն է, որ մարդն օգտագործում է որպես սննդանյութ։

յուրավոր հին «ձուլարաններ»-ի հետքեր, որոնք վերաբերում են ամենատարբեր ժամանակների։

Նավթ դարձյալ հիշատակվում է Աղձնիք և Տուրուբերան նահանգներում։ Նավթային ավազաններ կան նաև Վանից հարավ, Բերկրի քաղաքի շրջանում և Կարինում։

Քարածխով առանձնապես աչքի են ընկնում Արևմտյան Տիգրիսի և Եփրատի ավազանները։

Ազնիվ մետաղներից Հայաստանում հիշատակվում է ոսկու և արծաթի հանքերի մասին։ Արծաթի հայտնի հանքավայրը գտնվել է Հայաստանի հյուսիս-արևմտյան մասում՝ ներկայիս Գյումուշխանեում (նույնանուն գետի ափին), իսկ ոսկու հանքեր և ոսկեբեր հողեր հիշատակվում են Հայաստանի չորս մասերում՝ Սպեր գավառում, որը գտնվում էր Ճորոխ գետի վրա (համապատասխանում է ներկայիս Իսպիրի շրջանին), Արարատյան դաշտում, Չորրորդ Հայք նահանգի Պաղնատուն գավառում և Հայկական Տավրոսի՝ Վանա լճից հարավ տարածվող հատվածում։ Դրանցից առանձնապես հռչակված են եղել Սպերի ոսկու հանքերը։ Ալեքսանդր Մակեդոնացին (336—323 թթ. մ. թ. ա.), ինչպես վկայում է Ստրաբոնը, Սպերի ոսկու հանքերը տիրելու համար Մենոն զորավարի հրամանատարությամբ մի զորաբաժին է ուղարկում այդ կողմերը, որը սակայն հաջողություն չի ունենում և խեղդամահ է արվում տեղացիների կողմից։

Ոսկին և արծաթը որպես ուղեկցող մետաղներ հանդես են գալիս նաև պղնձի և գունավոր մետաղների գրեթե բոլոր հանքերում։

Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերում, հատկապես հրաբխային շրջաններում և գունավոր մետաղների հանքավայրերում, տարածված է մեծ քանակությամբ ծծումբ։

Նշվածներով, իհարկե, չեն սահմանափակվում Հայկական լեռնաշխարհի հանքային հարստությունները։ Կան բազմաթիվ այլ հանքային հարստություններ՝ տորֆ, զառիկ, խրոմիտ և այլն։ Բնական մյուս հարստություններից են շինանյութերը և հանքային ջրերը։ Շինանյութերի առումով Հայկական լեռնաշխարհը շատ հարուստ է։ Ավազը, կավը և կրաքարերը տարածված են համարյա ամենուրեք։ Կան տարբեր տեսակի և գույնի մարմարներ (Երևանի մոտ, Արզականում, Արտաշատի շրջանում), որոնք իրենց որակով աշխարհում լավագույն մարմարների թվին են պատկանում։ Հրաբխային բազմաթիվ վայրերում մեծ չափերով տարածված են բազմատեսակ տուֆեր։ Երևանի և Լենինականի շրջակայքում տարածվում են տուֆերի անսպառ շերտեր։ Տուֆերի մեջ ամենից հայտնին

Արթիկի վարդագույն տուֆն է, որը ներկայումս մեր հանրապետության պահանջները բավարարելուց բացի, մեծ չափերով ուղարկվում է նաև Սովետական Միության զանազան քաղաքների և արդյունաբերական այլ կենտրոնների շինարարության համար։ Պակաս տարածում չունեն նաև գրանիտը, բազալտը, գիպսը։ Գեմզայի հարուստ պաշարներ կան այժմյան Անիի շրջանում (Անիպեմզայի հանքերը)։ Շինանյութերի մեջ են մտնում նաև փայտանյութերը։ Նշված շինանյութերի բարձր որակը և առատությունը, բնականաբար, նպաստել են Հայկական լեռնաշխարհի բնակիչների շինարարական արվեստի զարգացմանը, մի արվեստ, որի կոթողներն այսօր էլ չեն կորցրել իրենց հմայքը։

Հրաբուխների տարածվածության շնորհիվ Հայկական լեռնաշխարհի գրեթե բոլոր կողմերում բխում են բազմատեսակ և բազմաթիվ հանքային տաք և սառն աղբյուրներ։ Նրանք հիմնականում ունեն ածխաթթվային, երկաթային, ծծմբային և ածխաթթվա-ալկալիական բաղադրություն։ Հրազդան գետի ավազանում բխում են ածխաթթու-աղային մի շարք հորդ աղբյուրներ, որոնց մեջ պատմական շատ հին ժամանակներից ի վեր իր բուժիչ հատկություններով հայտնի է Արզնիի հանքային ջուրը, որի բխման վայրում ներկայումս կառուցված է Հայկական ՍՍՀ-ի հայտնի առողջարաններից մեկը։

Տաք աղբյուրներից հայտնի են Դիադինի շրջանի (հնում՝ Վարշակի ջերմուկ) և Ջերմուկի (Հայոց ձորում) ջրառատ աղբյուրները։ Դիլիջանի, Կիրովականի անտառապատ ձորերում ցրված են բազմաթիվ նվազ և հորդարուխ ածխաթթվա-ալկալիական աղբյուրներ։ Հանքային ջրերով հարուստ են նաև Եփրատի հովիտը (հատկապես Կարինի և Երզնկայի շրջանները), Զանգեզուրը և մի շարք այլ շրջաններ, որտեղ նույնպես տարածված են հրաբուխներ։

# ԵՐԿՐՈՐԴ ԲԱԺԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՆԱԳՈՒՅՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ VII ԴԱՐԸ (Մ. Թ.)

## ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

### 1. ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՀՆԱԳՈՒՅՆ ԲՆԱԿԻՉՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԲՆԱԿՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ

*Վերջին տասնամյակների ընթացքում կատարված հետազոտությունների շնորհիվ պարզված է, որ Հայկական լեռնաշխարհում մարդը հանդես է եկել դեռևս հին քարե դարում, և այնուհետև երկրում հասարակական կյանքը շարունակվել է առանց ընդհատման։*

*Երկրորդ հազարամյակում (մ. թ. ա.) Հայկական լեռնաշխարհում արդեն կազմավորվում են Միտանի, Հայասա-Ազզի և Նաիրյան ցեղային միությունները։*

**Միտանի.**— *Հայկական լեռնաշխարհի հարավում և նրա հարևան շրջաններում ապրող ժողովուրդներին խեթերն անվանում էին խուրրիներ, իսկ ասորեստանցիները՝ սուբարիներ։ Խուրրի կամ սուբարի կոչվող այդ ցեղախմբերը, որոնք երբեմն կոչվում են նաև խուրրի-միտանիներ, մեծ թիվ էին կազմում հատկապես Միջագետքի հյուսիսային և Հայկական լեռնաշխարհի հարավ-արևմտյան մասերում։ Խուրրիները մ. թ. ա. XVIII դարում արդեն հիմք են դնում մի պետության, որը պատմության մեջ հայտնի է Միտանի անունով։ Միտանի պետությունն իր մեջ ընդգրկում էր մոտավորապես հետևյալ տերիտորիաները. ամբողջ Հյուսիսային Միջագետքը, Վանա լճի ավազանը, Արևելյան և Արևմտյան Տիգրիս գետերի և Հայ-*

կական Տավրոս լեռնաշղթայի միջև ընկած շրջանները, ինչպես և Արածանի գետի ստորին, գույն նաև նրա միջին և վերին հոսանքների շրջանները։ Նա հետագայում իրեն է միացրել նաև Ասորիքի (Սիրիայի) հյուսիսային մասերը։ Այսպիսի սահմաններում, բնականաբար, Միտանին համարվում էր իր ժամանակի Առաջավոր Ասիայի խոշորագույն պետություններից մեկը։ Նա գրեթե շարունակ պատերազմների մեջ էր գտնվում խեթական պետության, Բաբելոնի, Ասորեստանի և Եգիպտոսի հետ։

Պատերազմների հետևանքով խուրրիների պետությունը, հետզհետե թուլանալով, մ. թ. ա. XV դարում ուժեղացած Ասորեստանի կողմից ստանում է ծանր հարված, իսկ XIV դարի վերջին (մ. թ. ա.) վերջնականապես վերանում է պատմական ասպարեզից։

Միտանի պետության մեջ բնակվող բազմաթիվ ցեղերից և ցեղախմբերից ամենից մարդաշատն ու զորեղը խուրրիների կամ սուբարիների ցեղախումբն էր, որի ձեռքին էլ հիմնականում գտնվում էր քաղաքական իշխանությունը։

Միտանի անունը ավելի ուշ պահպանվեց մատիեն ժողովրդի անվան մեջ։ Իսկ այդ պետության մեջ քաղաքական կարևոր դեր կատարող սուբարիների (խուրրիների) հիշատակը պահպանվել է իրենց երկրի աշխարհագրական անվան մեջ, որը համապատասխանում է ուրարտական շրջանի Շուպրիա-Ծուպանի և հին հայկական Ծոփք աշխարհագրական անուններին։ Թվում է, թե սուբարիների անվան հետ պետք է կապել նաև Վանա լճի հյուսիս-արևմտյան ափին բարձրացող Ծիպան կամ Սիփան լեռնազանգվածի անունը։

Հայասա.— Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևմտյան մասում դեռևս մ. թ. ա. XV դարում կազմավորվել էր Հայասա կամ Հայասա-Ազզի ցեղային միությունը։ Հայասան իր մեջ ընդգրկում էր բավական ընդարձակ տերիտորիաներ։ Նրա կազմի մեջ էին մտնում, ավելի ուշ շրջանում՝ Փոքր Հայք կոչվող երկրի մեծ մասը (Իրիսի վտակ Գայլ գետի ավազանում) և Բարձր Հայքի արևմտյան գավառները։ Այլ կերպ ասած, Հայասայի տերիտորիան բաղկացած էր Գայլ, Արևմտյան Եփրատ և Ճորոխ գետերի վերին հոսանքներում ընկած շրջաններից[1]։ Տերիտորիալ տեսակետից, երկու հիմնական ցեղախմբերին համապատասխան, Հայասան բաժանված էր երկու մասերի՝ հյուսիս-արևելյան և հարավ-արևմտյան։ Դրանցից առաջինը կոչվում էր Ազզի և հանդիսանում էր ազզի ցեղախմբի-

[1] Ոմանք Հայասան տեղադրում են Հայկական լեռնաշխարհի կենտրոնական շրջանում։

րի երկիրը, իսկ երկրորդը բուն Հայասան էր՝ հայասա ցեղախմբերի բուն երկիրը։

Հայասա-Ազզին հաճախակի ընդհարման մեջ էր գտնվում իր հարևանի՝ խեթական թագավորության հետ։

Հայասա-Ազզին ռազմա-ցեղային մի ուժեղ և բավական մարդաշատ միություն էր։ Նա ուներ սեփական զորք, բավականաչափ զարգացած տնտեսություն, մշակույթ։ Բնակչության հիմնական զբաղմունքը երկրագործությունն ու անասնապահությունն էր։ Բավականաչափ զարգացած է եղել նաև մետաղագործությունը։ Հայասայում կային մի քանի քաղաքներ և բերդեր։ Նրա նշանավոր քաղաքներից էր Կումմախան։ Ուսումնասիրողների կարծիքով, վերջինս համապատասխանում էր Արևմտյան Եփրատի ձախ ափին գտնվող հին հայկական Անի ամրոցին, որը միջին դարերից սկսած հայտնի է Կամախ անունով և այժմ էլ գոյություն ունի նույն անվամբ։

XII դարի սկզբներից սկսած (մ. թ. ա.), երբ կործանվում է խեթական թագավորությունը, ընդհատվում են նաև նրա հարևան Հայասայի վերաբերյալ գրավոր տեղեկությունները։

**Նաիրյան ցեղախմբեր.**—Միտաննիի անկումից հետո նրա կազմի մեջ մտնող ցեղախմբերը, որոնք բնակվում էին գլխավորապես Հայկական Տավրոսի ու երկու Տիգրիսների (Արևմտյան ու Արևելյան) միջև ընկած շրջաններում և Վանա լճի ափերին, ասորական արձանագրություններում կոչված են Նաիրի[1] ժողովուրդներ։

Նաիրյան երկրների «թագավորների» թիվը հասնում էր 83-ի։ Դրանից էլ հետևում է, որ Նաիրի երկրի ցեղերը միավորված չէին մի միասնական պետության մեջ։

Նաիրիի ցեղերի տնտեսության հիմքը կազմում էին գյուղատնտեսության երկու գլխավոր ճյուղերը՝ երկրագործությունն ու անասնապահությունը, որոնց հետ միասին անշուշտ գոյություն ուներ նաև արհեստագործությունը։

Նաիրին դեռևս պետություն չէր բառիս իսկական իմաստով։ Բայց այնտեղ ապրող ցեղախմբերը զարգացման տեսակետից բավականին առաջադիմել էին, և նրանց հետագա քայլն անխուսափելիորեն տանում էր դեպի պետության առաջացում։

**Ուրարտական ցեղախմբեր.**— Նաիրյան ցեղախմբերի կազմի մեջ մտնող ուրարտացիները, որպես առավել զարգացած և ուժեղ ցեղախումբ, աստիճանաբար իրենց ենթարկելով Նաիրյան մյուս

---

[1] Նորագույն ուսումնասիրությունների համաձայն, «Նաիրի» նշանակում է «գետային», «գետերի երկիր»։ Այնպես որ այդ անունը էթնիկական ծագում չունի։

ցեղախմբերին, IX դարի կեսերին հիմնադրեցին մի պետություն, որը պատմության մեջ հայտնի է Ուրարտու, Ուրաշտու կամ Վանի թագավորություն անունով։

Նրա առաջին թագավորներն ուղղակի կրում էին «Նաիրի երկրի արքա» տիտղոսը։ Իսկ հետագայում պետության մեջ քաղաքական իշխանությունն իրենց ձեռքը վերցրած ուրարտացիների բուն երկրի՝ Բիայնայի անվամբ կոչվում էին «Բիայնա երկրի արքա»։

Ուրարտուն իր ծաղկման շրջանում (մոտավորապես մ. թ. ա. VIII դարի առաջին կեսում) գրավում էր գրեթե ամբողջ Հայկական լեռնաշխարհը։ Նրա սահմաններն այդ ժամանակաշրջանում հյուսիսում հասնում էին Փոքր Կովկասի և Ջիղըրի լեռնաշղթաներին, հարավում՝ Կորդվաց լեռնաշղթային և Արևմտյան Տիգրիս գետին, արևմուտքում՝ Եփրատ գետին, իսկ արևելքում՝ Փոքր Կովկասի հարավ-արևելյան ծայրերը Ուրմիա լճի արևելյան ափերի հետ միացնող գծին։ Ուսումնասիրողներից ոմանք գտնում են, որ վերոհիշյալ ժամանակաշրջանում դեռ դրանից էլ ընդարձակ են եղել ուրարտական պետության սահմանները։

Ուրարտական պետությունը բաժանվում էր երկու մասի՝ կենտրոնական շրջանի և ծայրամասային երկրների։ Առաջինն ուրարտացիների բուն երկիրն էր, որը հայտնի էր Բիայնա անունով։ Բիայնան գտնվում էր Վանա լճի ավազանում և նրա շրջակայքում։ Այստեղ բնակչության մեծամասնությունը կազմում էին ուրարտացիները։ Այդ մասում բնակչությունը համեմատաբար ավելի միատարական էր, և նրա շրջանների միջև եղած տնտեսական ու քաղաքական կապերն ավելի բազմակողմանի ու ամուր էին։ Բիայնայում նախնադարյան համայնքն իր տեղը զիջել էր գյուղական համայնքին, և առեղծվել էր սարկատիրություն։

Ուրարտական պետության մայրաքաղաքը՝ Տուշպան (կամ Տոսպ, Վան), որն ուներ կենտրոնական դիրք Բիայնա երկրում, գտնվում էր Վանա լճի արևելյան ափին։

Ուրարտական պետության մեջ մտնող ծայրամասային երկրների տերիտորիաները միասին վերցրած մի քանի անգամ գերազանցում էին կենտրոնական մասին՝ Բիայնա երկրին։ Այստեղից էլ միանգամայն անվիճելի պետք է համարել ուսումնասիրողների արտահայտած այն կարծիքը, ըստ որի ուրարտացիներն իրենց ղեկավարած այդ պետության մեջ կազմում էին փոքրամասնություն։ Ծայրամասային երկրների բնակչությունն էլ ավելի անմիատարր էր։ Արձանագրությունների մեջ հիշատակվող բազմաթիվ երկրներից յուրաքանչյուրն իրենից ներկայացնում էր մի-մի էթնիկական-

տերիտորիալ միավոր՝ մի ցեղախմբի երկիր։ Այնպես որ Ուրարտական պետության ծայրամասերի վարչական-տերիտորիալ բաժանումները հիմնականում համընկնում էին էթնիկական շրջանների հետ։ Բնակչությունը հասարակական զարգացման առումով այս երկրներում ավելի ցածր աստիճանի վրա էր գտնվում, քան Բիայնիայում։ Սակայն այստեղ, ավելի հին ժամանակաշրջանների հետ համեմատած, արագ կերպով քայքայվում էր տոհմական հասարակությունը, մի պրոցես, որը Հայկական լեռնաշխարհում սկսվել էր դեռևս երկրորդ հազարամյակի կեսերին (մ. թ. ա.)։

Ուրարտական պետության մասերը կազմող երկրներից և այլ աշխարհագրական վայրերից շատերի անունները պահպանվեցին հետագա դարերում։ Այսպես, ասորեստանյան արձանագրությունների տեքստերում հաճախակի հիշատակվող Էնզիտե լեռնային երկիրը համապատասխանում է Պտղոմեոսի հիշատակած Անզիտենի և հայկական միջնադարյան Անձիտի (կամ Հանձիտ) հետ։ Դրանք իրար համապատասխանում են ոչ միայն հնչյունական տեսակետից, այլև տեղադրությամբ. այն տարածվում էր Արածանի գետի ստորին հոսանքի շրջանում։ Կասկած չկա, որ ուրարտական Դիաուեխի (ասորեստանյան՝ Դայանի) երկրանունը համապատասխանում է հունական պատմագիրների հիշատակած Տաոխի և հայկական միջնադարյան Տայք անվանը։ Ուրարտական Կումմուխը անտիկ գրականության մեջ պահպանվել է Կոմագեն ձևով, Մելիտեին՝ Մալաթիա ձևով, Արզանի գետի անունը (անտիկ պատմագիրների մոտ՝ Արզանիաս)՝ Արածանի ձևով։ Ուրարտական Ախուրիանի, Աշտուխինի քաղաքները, որոնք գտնվում են Սարիղամիշի կողմերում, իրենց տեղադրությամբ և անունների հնչյունական տեսակետից, ինչպես գտնում են նորագույն ուսումնասիրողները, լիովին համապատասխանում են, առաջինը՝ Ախուրյան գետի, իսկ երկրորդը՝ Կարսի շրջանում գտնվող Աստախանե վայրի (միջնադարյան՝ Աստեղանի) անվանը։ Անգամ այժմյան հայկական բազմաթիվ քաղաքների և գյուղերի անունները գալիս են ուրարտական շրջանից, որոնք, իհարկե, ժամանակի ընթացքում կրել են որոշ ձևափոխություններ։ Այսպես. հավանական է համարվում, որ Ալաշկերտը համապատասխանում է նույն տեղում հայտնաբերված ուրարտական արձանագրության մեջ հիշատակված Անաշի հետ, չնայած որ հայերն Ալաշկերտը միջնադարում անվանում էին Վաղարշակերտ։ Վաղուց արդեն ցույց է տրված, որ հին և միջնադարյան հայկական Մանազկերտ քաղաքի (այժմ ևս՝ Մանազկերտ,

*Արածանիի ձախ ափին) անունն առաջացել է ուրարտական Մենուա թագավորի անունից, որն այդ քաղաքի հիմնադիրն է։*

*Կարելի է բերել նույն կարգի բազմաթիվ այլ օրինակներ ևս, բայց այդքանն էլ բավական է համոզվելու համար, որ իրոք Հայկական լեռնաշխարհի տեղագրական և այլ բնույթի աշխարհագրական անունների մի զգալի մասը գալիս է ուրարտական շըրջանից։*

*Ուրարտական պետությունը էթնիկական տեսակետից բազմազան էր։ Նրա վարչա-տերիտորիալ միավորները, մանավանդ ծայրամասային նահանգներում, հիմնականում միաժամանակ հանդիսանում էին էթնիկական միավորներ։*

*Արդի գիտությունն իր բարձրարժեք ուսումնասիրություններով կարողացել է պարզաբանել ուրարտական շրջանում Հայկական լեռնաշխարհում, հատկապես նրա արևմտյան և հարավային մասերում ապրող բնակչությանը վերաբերող բազմաթիվ հարցեր։ Նյութական կուլտուրայի մնացորդների, ուրարտական և ասորեստանյան սեպագիր արձանագրությունների, ուրարտական շրջանի աշխարհագրական անունների, ինչպես և ժամանակագրական տեսակետից ավելի մոտ ապրած անտիկ մատենագիրների հաղորդած տեղեկությունների հիման վրա ներկայումս ոչ միայն պարզված են Ուրարտական պետության բնակչության հասարակական զարգացման աստիճանը և կուլտուրային ու տնտեսությանը վերաբերող բազմաթիվ խնդիրներ, այլև նրա էթնիկական մոտավոր կազմը։*

*Ուրարտական պետության կազմի մեջ մտնող ցեղախմբերից են.*

*ա)* **Ուրարտացիներ.**— *Սրանք հիմնականում բնակվում էին, ինչպես արդեն ասացինք, Բիայնա երկրում։ Հավանաբար նրանց մի որոշ մասն էլ կայազորային ծառայություն էր անում և պետական պաշտոններ վարում ծայրամասային երկրներում։ Իրենց պետության ծայրամասային երկրներն ու սահմանները պաշտպանելու համար ուրարտացիները կառուցել էին բազմաթիվ բերդեր։ Մեծ քանակությամբ բերդեր էին կառուցված ոչ միայն պետության հարավային (Ասորեստանի կողմում) և հարավ-արևելյան (Վանա և Ուրմիա լճերի միջև ընկած լեռնային երկրները) կողմերում, այլև հյուսիսային մասերում՝ Արաքս գետի միջին հոսանքի շրջանում։ Հնագիտական ուսումնասիրությունների շնորհիվ Հայկական ՍՍՀ տերիտորիայում հայտնաբերված են ուրարտական մի քանի քաղաքների և բերդերի ավերակներ։ Այսպես. Սևանա լճի հարավ-արևմտյան մասում հայտնաբերված մի մեծ բերդի ավերակները*

հանդիսանում են ուրարտական Տուլխու բերդաքաղաքի մնացորդները։ Կամո քաղաքի մոտ գտնվող ժայռի վրա դարձյալ կան հին բերդի ավերակներ։ Այդ բերդը ևս ուրարտական ժամանակաշրջանի է և կրել է «Խալդ աստծու քաղաք» անունը։ Նույն Սևանա լճի հարավային ափին, Ծովինար գյուղից ոչ հեռու հայտնաբերված են ուրարտական մի ուրիշ բերդի ավերակներ։ Ուրարտական ժամանակաշրջանում այդ բերդը կոչվել է «Թեյշեբա աստծու քաղաք»։ Բերդեր են եղել նաև Երևանի շրջակայքում, այժմյան Կարմիր Բլուրի (ուրարտական ժամանակաշրջանում կոչվել է «Թեյշեբաինի») տեղում և Արինբերդում (Էրեբունի)։ Ուրարտական ժամանակաշրջանում Արարատյան դաշտավայրում, որը կազմում էր Ուրարտական պետության հյուսիսային բարեբեր երկիրը, ամենից հռչակվածը Արգիշտիխինիլի («Արգիշտիի քաղաք») քաղաքն էր՝ կառուցված Արգիշտի Ա-ի օրոք (մ. թ. ա. 786—760)։ Արգիշտիխինիլին, որը համապատասխանում է Երվանդյանների տիրապետության և ավելի ուշ ժամանակաշրջանի հայկական Արմավիր քաղաքին, ուրարտացիների երկրորդ մայրաքաղաքն էր։

Ուրարտացիների անունը հետագայում պահպանվել է ալարոդ ժողովրդի, Այրարատ երկրանվան, Ռշտունիք գավառանվան, Ռըշտունյաց նախարարական տան անվան և մի շարք այլ անունների մեջ։

*բ)* **Արմեններ**.— *Հնդեվրոպական ծագում ունեցող արմենների բուն երկիրը գտնվում էր Ուրարտական պետության հարավ-արևմտյան մասում՝ Հայկական Տավրոս լեռնաշղթայի և Տիգրիս գետի միջև։ Նրանց երկիրը տերիտորիալ տեսակետից համարյա համընկնում էր Նաիրյան երկրների հետ։ Այդ տերիտորիայում, բացի արմեններից, բնակվում էին նաև նաիրյան այլ ցեղախմբեր։ Ուրարտական պետության կործանմանն անմիջապես հաջորդող ժամանակաշրջանին վերաբերող վկայություններից երևում է, որ արմենները գրավել են բավականին մեծ տերիտորիա և նաիրյան ցեղախմբի մեջ, մոտավորապես մ. թ. ա. VI դարում, ամենից մարդաշատն են եղել։ Ուրարտուի անկման շրջանում արմեններն անջատվելով նրանցից, կազմեցին առանձին ռազմացեղային միություն։*

*գ)* **Մատիեններ, ալարոդներ և սասպեյրներ**.— *Սրանց մասին գրավոր վկայություն ունի V դարի (մ. թ. ա.) հայտնի պատմագիր Հերոդոտը։ Այս երեք ցեղախմբերը նույնպես տեղաբնիկ են։ Նրանցից առաջին երկուսը՝ մատիենները և ալարոդները հնագույն խուռիական ցեղից են։ Հավանական է համարվում, որ «մատիեն» ցե-*

ցեղախմբի անունը մնացել է Միտանի պետության անունից, իսկ ալարոդները համարվում են ուրարտացիների անմիջական հետնորդներ։ Ալարոդները բնակվում էին Արարատյան դաշտի և Վանա լճի կողմերում, մատիենները՝ Վանա և Ուրմիո լճերի միջև ընկած շրջաններում։

Սասպեյրները պատկանում էին Հայասա-Ազզի ցեղախմբերի թվին։ Նրանք բնակվում էին Ճորոխ գետի վերին հոսանքի շրջանում։ Հավանական է համարվում, որ սասպեյրների անունը պահպանվել է միջնադարյան Հայաստանի Բարձր Հայք կոչվող նահանգի Սպեր գավառի անվան մեջ։

*գ)* **Տայեցիներ, մարդեր, խալդայներ, կորդվացիներ.**—*Սրանց, ինչպես նաև մի քանի այլ ցեղախմբերի մասին հիշատակում է հույն պատմագիր Քսենոֆոնը։ Տայեցիները, խալդայները և կորդվացիները տեղաբնիկ էին, իսկ մարդերը Հայկական լեռնաշխարհ էին եկել հարևան Մարաստանից։*

*Տայեցիները, որ Քսենոֆոնի մոտ կոչված են տաոխներ, հիմնականում բնակվում էին Ճորոխի միջին հոսանքի և նրա աջակողմյան վտակ Օլթիի ավազանում, այսինքն այն տերիտորիայում, որը հետագայում հայ մատենագրության մեջ կոչված է Տայք։*

*Խալդայների հիմնական երկիրն այդ ժամանակներում համարում են հայկական մատենագրության մեջ Խաղտիք կոչված երկիրը, որը տարածվում էր Սև ծովի հարավ-արևելյան լեռնային ափերին՝ հյուսիս-արևմուտքից սահմանակցվելով Տայոց աշխարհին։ Քսենոֆոնի վկայությամբ, նրանք արմենների մոտ ծառայում էին որպես վարձկան զինվորներ։*

*Կորդվացիները Քսենոֆոնի մոտ կոչված են կարդուխներ։ Հույն պատմագրի վկայության համաձայն, կորդվացիները բնակվում էին լեռներում և, լինելով ռազմիկ, չէին ենթարկվում թագավորներին։ Նրանք եղել են բավական զարգացած ժողովուրդ։ Նրանց «տները կահավորված էին բազմաքանդակ պղնձե ամաններով», ապրում էին «...գեղեցիկ տներում, որոնք հարուստ էին պաշարեղենով. և գինի ևս շատ կար, որը պահում էին ծեփված հորերում»*[1]*։ Կորդվացիները բնակվում էին Կենտրիտես (Բոհտան-սու) գետից հարավ ընկած երկրում, որն այդ ժողովրդի անվամբ էլ հետագայում շարունակվեց կոչվել Կորդվաց աշխարհ։*

*Մարդերը կամ մեդացիները (մարերը) հիմնականում բնակվում էին Իրանական սարահարթի հյուսիս-արևմտյան մասերում։*

---

[1] **Քսենոֆոն,** *Անաբասիս* (Հ. **Մանանդյան,** *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, Երևան, 1944, էջ 382 և 383)։*

Նրանց երկիրն իրենց անունով էլ կոչվում էր Մեդիա կամ Մեծ Մեդիա (հայ պատմագրության մեջ կոչվել է Մարաստան)։ Մեդացիները լինելով Հայկական լեռնաշխարհի հարևան երկրի բնակիչներ, բնականաբար, նրանց մի մասն անցել է Հայկական լեռնաշխարհի խորքերը։ Ենթադրվում է, որ մարերի բնակության հիմնական շրջանները Հայկական լեռնաշխարհում եղել են հայ մատենագրության մեջ հետագայում Տուրուբերան կոչվող նահանգի Մարդաղի և Վասպուրականի նահանգի Մարդաստան գավառները։ Հռոմեական պատմագիր Տակիտոսի հիշատակության համաձայն, հռոմեական զորավար Կորբուլոնը Հայաստանի մայրաքաղաք Արտաշատը գրավելուց հետո, երբ 59 թ. իր զորքով շարժվում էր դեպի Տիգրանակերտ, անցավ մարդերի երկրով։ Վերջիններս, նույն պատմիչի ասելով, հաճախակի հարձակումներ էին կատարում և մեծ վնասներ պատճառում դեպի Տիգրանակերտ արշավող հռոմեական բանակին[1]։ Դրանից հետո մատենագրական աղբյուրներում այլևս չենք գտնում մարդերի մասին որևէ հիշատակություն։ Ենթադրվում է, որ հայ Արշակունիների տիրապետության շրջանում հայտնի դարձած Մարդպետունի նախարարական տունը, որը իշխում էր Մարդպետական աշխարհում (Վասպուրականի հյուսիս-արևմտյան գավառները), առաջացել է մարդերի ավագանուց՝ դասակարգային տրոհման հետագա խորացման շնորհիվ։

**ե) Ցեղեր և ցեղախմբեր, որոնց մասին գրավոր հիշատակություններ չկան.**— Վերևում նշված հայկական և ոչ հայկական ցեղերից և ցեղախմբերից բացի, Հայկական լեռնաշխարհում նախահայկական շրջանում բնակվելիս են եղել նույնպես հայկական ու այլ բազմաթիվ ցեղեր և ցեղախմբեր, որոնց մեծագույն մասը մտել է հիշված ցեղախմբերի միության մեջ։ Այդ ցեղերի և ցեղախմբերի մասին մեզ չեն հասել գրավոր հիշատակություններ կամ այնպիսի աղբյուրներ, որոնց միջոցով հնարավոր լիներ համեմատաբար բազմակողմանի գաղափար կազմել նրանց վերաբերյալ։ Սակայն այդ բացը մասնակիորեն վերացվում է արդի լեզվաբանության և պատմական գիտության զարգացման շնորհիվ, որոնք հնարավորություն են ստեղծել, բանասիրական և պատմական անուղղակի որոշ նյութերի հիման վրա, պարզաբանել հնագույն ժամանակներում Հայկական լեռնաշխարհում բնակվող ցեղերին ու ցեղախմբերին վերաբերող մի քանի կնճռոտ հարցեր։

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, էջ 336։

Հայտնի է, որ Հայկական լեռնաշխարհում ապրող հնագույն ցեղերն ու ցեղախմբերը, մասնակցելով հայ ժողովրդի կազմավորման պրոցեսին, դադարեցին ինքնուրույն գոյություն ունենալուց։ Նրանցից որպես հիշատակ (չհաշված կազմավորված ժողովրդի վրա նրանց թողած տնտեսական, լեզվական, մշակութային, կենցաղային և քաղաքական ազդեցությունները) մնացել են այն շրջանների աշխարհագրական անունները, որտեղ նրանք բնակվելիս են եղել։ Հայոց լեզվի «ք» հոգնակի մասնիկը, որն ունի հնդեվրոպական ծագում, ոչ միայն եզակի բառը դարձնում է հոգնակի, այլև ցույց է տալիս այս կամ այն ցեղի, ժողովրդի բնակության վայրը, ինչպես, օրինակ, հայ—Հայք, աղվան—Աղվանք, ասորի—Ասորիք, վիր—Վիրք, պարս—Պարսք, գամիր—Գամիրք և այլն։ Նույն այս նշանակությունը ունի նաև ուրարտերեն «նի» մասնիկը։ Մեզ հասած աշխարհագրական այն անունները, որոնք վերջանում են «ք», «նի» և «նիք» մասնիկներով, ցույց են տալիս թե՛ տվյալ ցեղի և թե՛ այն երկրի անունները, որտեղ այդ ցեղերը կամ ժողովուրդները ապրել են։ Էթնիկական ծագում ունեն Գուգարք, Կորճայք, Ուտիք, Հարք, Աղձնիք, Սյունիք, Ռշտունիք, Գեղարքունիք, Արզնի, Գառնի և Հայաստանի նահանգների, գավառների ու բնակավայրերի բազմաթիվ այլ անուններ։

Այսպիսով անվիճելի է այն, որ նախահայկական հնագույն ժամանակներում Հայկական լեռնաշխարհում բնակվելիս են եղել մի քանի տասնյակ ցեղախմբեր, որոնց մեծագույն մասը մտել է խուրրիների և հայասացիների ցեղային միության, իսկ հետագայում՝ ուրարտացիների պետության մեջ։ Նրանք գտնվել են զարգացման տարբեր մակարդակների վրա։

Նախքան վերջացնելը, անհրաժեշտ ենք համարում երկու խոսք ասել տեղաբնիկներից մեկի՝ «բալ»-երի կամ «բաղ»-երի վերաբերյալ։

«Բալեր» կամ «բաղեր» ցեղախմբի անունը ոչ մի տեղ չի հիշատակված։ Նրա մասին եա գիտնականների կողմից դատողություններ են արվում «բաղ» արմատ ունեցող աշխարհագրական տեղանունների հիման վրա։ Այսպես, պրոֆ. Գր. Ղափանցյանը ենթադրում է, որ հնագույն ժամանակներում խեթերի երկրից արևելք, մոտավորապես այժմյան Բաղեշի և Բալուի (Բալահովիտ) շրջաններում բնակություն էր հաստատել փոքրասիական (ամենայն հավանականությամբ՝ հայկական) հզորագույն ցեղերից մեկը՝ «բալեր» կամ «բաղեր» ցեղը։ VIII դարում (մ. թ. ա.) կիմերների ճնշման տակ բաղերը (մենք կասեինք՝ նրանց մի մասը) չարժվել

են դեպի արևելք և բնակություն հաստատել Հայկական լեռնաշխարհի արևելյան մասերում, ընդ որում՝ նաև Սյունիքի հարավային մասում։ Բալերի բուն երկրում, Հայկական լեռնաշխարհի արևմտյան մասում, նրանց անունը պահպանվել է Բալահովիտ, Պաղնատուն, Պաղին, Բաղեշ և այլ տեղանունների ձևով, իսկ արևելքում՝ Սյունիքում՝ Բաղաբերդ և Բաղք (Բաղաց աշխարհ) անուններով[1]։ Նույն այդ ցեղանվան հետ է կապվում նաև Բաղասական աշխարհի (Կազբք, Փայտակարան) անունը։

գ) **Կիմերներ և սկյութներ.**— Թե՛ կիմերները և թե՛ սկյութները եկվոր են։ Նրանք Հայկական լեռնաշխարհ են եկել հարավային ռուսական տափաստաններից։ Կիմերները մ. թ. ա. VIII դարի վերջին Մերձվոլգյան տափաստաններից, Հյուսիսային Կովկասի վրայով և Կովկասյան լեռնաշղթայի արևմտյան մասով, շարժվել են դեպի Փոքր Ասիայի արևելյան մասերը։ Նրանք այնտեղ հաստատվեցին Կապադովկիայում, որը հայերի կողմից (կիմերների անունով) կոչվեց Գամիրք։ Ենթադրվում է, որ նրանց մի մասը, արշավանքի ընթացքում, հաստատվեց նաև Հայկական լեռնաշխարհի հյուսիսային և հյուսիս-արևմտյան շրջաններում[2]։

Հաջորդ դարի սկզբներին Ռուսաստանի հարավային տափաստաններից սակերը (սկյութացիներ) Կասպից ծովի արևմտյան ափերով արշավեցին դեպի Մերձավոր Արևելք՝ այդ թվում նաև Անդրկովկաս ու Հայաստան։ Սակերն Անդրկովկասում տարածվեցին մինչև Սև ծով։ Նրանց մի մասը հաստատվեց «Աշխարհացույց»-ի մեջ նկարագրված Ուտիք աշխարհի Շակաշեն արգավանդ գավառում (այժմյան Կիրովաբադի շրջան), որը համապատասխանում է հունա-հռոմեական հեղինակների Սակասեններին։ Սակերը, հաստատվելով Անդրկովկասում, բնականաբար, այնտեղ պետք է թողնեին որոշ ազդեցություն՝ էթնիկական, լեզվական և այլ տեսակետներից։ Նրանց հիշատակն Անդրկովկասում պահպանվել է մի շարք աշխարհագրական անուններում։ Այսպես, բացի վերը հիշված Շակաշենից, սակերից է մնացել նաև «զոկ» անունը։ Ենթադրվում է նաև, որ սակերի անունից է առաջացել նաև «Սի-սակ-ան» (Սյունիք) անունը։

---

[1] Տե՛ս Проф. *Гр. Капанцян*, Историко-лингвистич. значение топонимики древней Армении (Երևանի պետական համալսարանի «Գիտական աշխատություններ», 1940, հ. XIV, էջ 380—381)։

[2] Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, СПБ, 1908, էջ 431: Պրոֆ. Մելիքսեթ-Բեկ, Древняя Русь и армяне (Հայկական ՍՍՀ լեզվի ինստիտուտ, «Աշխատությունների ժողովածու», հ. Ա, Երևան, 1946, էջ 98)։ Լեո, Հայոց պատմություն, հ. Բ, Երևան, 1947, էջ 146։

*Մեր կարծիքով, սակերի անունից առաջացած պետք է համարել նաև այժմյան Զանգեզուր անունը, որը միջնադարում կոչվում էր Ձագ-և-ձոր (հավանաբար՝ սակ-ա-ձորի աղավաղումը)։*

## 2. ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԹԻՎԸ, ԷԹՆԻԿԱԿԱՆ ԿԱԶՄՆ ՈՒ ԽՏՈՒԹՅՈՒՆԸ

*Հայկական լեռնաշխարհում բնակվող հայկական ցեղային միությունների հասարակական զարգացումը մ. թ. ա. VII—VI դարերում հասել էր այն աստիճանի, որ, կարելի է ասել, հայ ժողովուրդն արդեն հիմնականում կազմավորված էր։ Այնպես որ, երբ հիմնադրվեց միասնական Հայկական պետությունը, հայ ժողովրդի կազմավորման պրոցեսը հասել էր իր պատմական օրինաչափական ավարտին, այսինքն՝ Հայկական լեռնաշխարհի բնակչությունը հիմնականում միավորվել էր հայ ժողովրդի մեջ՝ ստեղծելով իր ինքնուրույն պետությունը։*

*Ստրաբոնի վկայությամբ, մեր թվականությունից առաջ, երկրորդ դարի առաջին կեսին (Արտաշես Ա-ի օրոք) Հայկական լեռնաշխարհում արդեն տիրապետում էր մի լեզու՝ հայերենը. «այնպես, որ բոլորը միալեզու եղան»—ասում էր Ստրաբոնը։*

*Հին Հայաստանի բնակչության գերակշիռ մեծամասնությունը կազմում էին հայերը։ Նրանց թիվը անհամեմատ ավելի մեծ էր կենտրոնական նահանգներում՝ Վասպուրականում, Տուրուբերանում, Այրարատում, Սյունիքում և այլուր։*

*Հին Հայաստանի հայ բնակչության թվի վերաբերյալ չկան հատուկ ուսումնասիրություններ։ Հայագիտական աշխատությունների մեջ, որոնցում այս կամ այն առիթով խոսվում է այդ հարցի մասին, հին Հայաստանի բնակչության վերաբերյալ բերված են հակասական և վերին աստիճանի անհավանական թվեր։ Այդ կարգի ուսումնասիրությունների մեջ հայերի թիվը տատանվում է վեցից մինչև ավելի քան երեք տասնյակ միլիոնի սահմաններում։*

*Հին և միջնադարյան մյուս երկրների նման Հայաստանում ևս բնակչության ընդհանուր թիվն իմանալու համար հատուկ մարդահամար չի կատարվել, եթե չհաշվենք հարկատուների թվի որոշումը աշխարհագիրների ժամանակ։ Ուստի բնակչության թվի մասին խոսելիս, միայն կարելի է մոտավոր չափով, այն էլ ենթադրաբար որոշել այն։*

*Հիմք ընդունելով զորքի քանակը, հարկերի ավյալները (գըլ-*

խահարկը) և զանազան այլ անուղղակի հիշատակությունները, կարելի է եզրակացնել, որ հին Հայաստանի հայ բնակչության թիվը չի անցել 5—6 միլիոնից։ Հավանական պետք է համարել, որ բուն Հայաստանի բնակչության թիվը 5—6 միլիոնի է հասել XIII դարում[1], մոնղոլների ավերիչ արշավանքների նախօրյակին։

Հին Հայաստանում հայերից բացի, որոնք կազմում էին նրա բնակչության հիմնական զանգվածը, բնակություն էին հաստատել նաև այլ ժողովուրդներ։

Հռոմեական պատմիչ Ապպիանոսի վկայությամբ, Տիգրան Բ-ն (առաջին դար, մ. թ. ա.) իր արշավանքների ժամանակ հելլենիստական 12 քաղաքներից 300 000 բնակիչ գաղթեցրեց և բնակեցրեց Հայաստանի քաղաքներում, հատկապես պետության նոր մայրաքաղաք Տիգրանակերտում։ Նրա գաղթեցրած բնակչությունը բաղկացած էր գլխավորապես հույներից, ասորիներից և հրեաներից։ Նույն դարի 40-ական թվականներին, երբ հայ-պարթևական միացյալ զորքերը գրավեցին Ասորիքը, այնուհետև Փյունիկիան և Կիլիկիան, բազմահազար հրեաներ գաղթեցին և բնակություն հաստատեցին արևելյան երկրներում՝ այդ թվում և Հայաստանում։ V դարի մատենագիր Փավստոս Բուզանդը վկայում է, որ չորրորդ դարում հրեական բազմահազար ընտանիքներ կային Երվանդաշատ, Արտաշատ, Զարեհավան և Հայաստանի այլ քաղաքներում[2]։ Նրա հաղորդած թվերից երևում է, որ հայկական որոշ քաղաքներում հրեաները բավականին մեծ տոկոս էին կազմում։ Որպես ընդհանուր երևույթ, կարելի է նշել, որ Հայաստանում գտնվող հույները, հրեաները և ասորիները բնակություն են հաստատել գերազանցապես քաղաքներում, իսկ նրանց հիմնական զբաղմունքը եղել է առևտուրն ու արհեստագործությունը։

Նշված ժողովուրդներից բացի, հին Հայաստանում զգալի թիվ էին կազմում նաև հարևան ժողովուրդները։ Այսպես, Գուգարքում և Տայքում հայերի հետ միասին բնակվում էին որոշ թվով վրացիներ։ Ուտիքում և Արցախում, մանավանդ դրանց արևելյան գավառներում, զգալի տոկոս էին կազմում աղվանները։ Հայաստանի հարավ-արևելյան նահանգներում բնակություն էին հաստատել մեդացիները, իսկ հետո՝ պարսիկները։ Մի ժամանակ Հայկական պետության կազմի մեջ մտնող Փայտակարանում, որը տարածվում էր Արաքս գետի ստորին հոսանքի շրջանում, հայերի թիվն աննշան էր,

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, էջ 116։

[2] Տե՛ս Փավստոս Բուզանդ, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 262—263։

այնտեղ գերազանցապես ապրում էին աղվաններ և այլ ժողովուրդներ։ Հայաստանի հյուսիս-արևմտյան մասերում հայերի, հույների և այլ ժողովուրդների հետ միասին բնակվում էին նաև պոնտական այլազգի ժողովուրդներ։ Հարևան ժողովուրդները, մանավանդ վրացիներն ու աղվանները, բնակության տեսակետից հայերի հետ այնքան էին ներթափանցել իրար մեջ, որ դժվար է նրանց էթնիկական սահմաններն առանձին-առանձին որոշել։

Այսպիսով, հին Հայաստանում, բացի հայերից, բնակվում էին նաև հույներ, հրեաներ, ասորիներ, պարսիկներ, վրացիներ, աղվաններ և այլն։ Դրանցից բացի, ամառները զանազան վաչկատուն ցեղեր, գլխավորապես Մերձկասպյան տափաստաններից, իրենց հոտերով գալիս էին Հայաստանի բարձրադիր արոտավայրերը՝ որպես ժամանակավոր բնակիչներ։

Ավելի ուշ շրջանում, արաբական տիրապետության օրոք, մոտ VIII դարի կեսերից սկսած, Աբասյան հարստության խալիֆները, հայ ժողովրդին «հնազանդ» պահելու և Հայկական լեռնաշխարհի ստրատեգիական կարևոր դիրքն իրենց քաղաքական նպատակներին (ընդդեմ Բյուզանդիայի) ծառայեցնելու համար Հայաստանում բնակեցնում են մի շարք արաբական ցեղեր, որոնք պետք է դառնային խալիֆայության հուսալի հենարանը։ Այդպիսի քաղաքականության հետևանքով Հայաստանում արաբական տարրը հետզհետե աճում էր։ Վանա լճի ավազանում ստեղծվում են Կայսիկ և Օսմանիկ արաբական ցեղերի էմիրությունները։ Արճեշում, Խլաթում, Դվինում և հայկական մի քանի այլ քաղաքներում բնակեցվում են մեծ թվով արաբ ու պարսիկ բնակիչներ, որոնց խալիֆայության կողմից տրվում է մեծ արտոնություններ ու իրավունքներ՝ ի հակադրություն տեղաբնիկ հայերի։

XI դարից սկսած՝ Հայկական լեռնաշխարհում բնակություն են հաստատում նաև սելջուկ-թուրքերը, XIII դարից՝ մոնղոլ-թաթարները, իսկ հետո՝ թուրքական ցեղերը։

Հայաստանում օտար ժողովուրդներ բնակեցնելու հետ միասին պարբերաբար երկրից դուրս էր մղվում հայ բնակչության մի մասը։ Այդ երևույթը սկսվել էր դեռևս բյուզանդական կայսր Հուստինիանոսի ժամանակներից (527—565)։ Հայերի տեղահանումն իրենց սեփական երկրից ավելի մեծ չափեր է ընդունում, մանավորապես, XI դարի առաջին քառորդից սկսած։ 1021 թ. Վասպուրականի Սենեքերիմ թագավորը, արևելյան զանազան ցեղերի հարձակումներից զրկված և Բյուզանդիայի ճնշման տակ, իր երկիրը հանձնում է կայսրությանը, իսկ ինքը, բազմահազար հայե-

րի հետ միասին, տեղափոխվում Փոքր Ասիա։ 1045 թ. նույն բախտին արժանացան նաև Գագիկ Բ Բագրատունի թագավորը և բազմաթիվ հայեր։ Դրանից հետո, սելջուկների արշավանքների ժամանակ և ավելի ուշ՝ մոնղոլների ու թուրքական զանազան ցեղերի ասպատակությունների պատճառով հայերի մի զգալի մասը ստիպված էր թողնել հայրենիքն ու դիմել դեպի Բյուզանդիա և Սև ծովի ափերը։

Չնայած այդ տեղափոխումներին և զանազան օտար ժողովուրդների՝ Հայաստանում բնակություն հաստատելուն, այնուամենայնիվ, բուն Հայաստանում հիմնական բնակիչները, ընդհուպ մինչև առաջին համաշխարհային պատերազմը, կազմում էին գերազանցապես հայերը։

Անուղղակի տվյալներից ելնելով՝ կարելի է ասել, որ հին Հայաստանի բնակչության խտությունը միատեսակ չի եղել նրա բոլոր մասերում։ Բնակչության միջին խտությունը ճշգրիտ չի կարելի որոշել, որովհետև չի պարզված նրա ճշգրիտ թիվը։ Ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ բնակչության խտությունն անհամեմատ մեծ է եղել կենտրոնական, համեմատաբար հարթավայրային նահանգներում (Այրարատում, Տուրուբերանում, Վասպուրականում), Բարձր Հայքում և Չորրորդ Հայքում։ Դա, նախ, երևում է նրանից, որ հին Հայաստանի այդ մասերում էին գտնվում գլխավոր և մարդաշատ քաղաքները՝ Արտաշատ, Դվին, Վաղարշապատ, Արճեշ, Խլաթ, Բաղեշ, Վան, Ոստան, Կարին, Արծն, Տիգրանակերտ, Արշամաշատ և այլն, երկրորդ, բնակչության զբաղմունքի մեջ այդ նահանգներում երկրագործությունն անհամեմատ ավելի մեծ տեղ էր գրավում, քան լեռնային շրջաններում։ Բնական է, որ երկրագործությունը ենթադրել է տալիս բնակչության ավելի մեծ խտություն, քան բնական արոտավայրերի բազայի վրա հենված անասնապահությունը, որն ավելի մեծ ծավալ ուներ լեռնային շրջաններում։ Եթե դրանց վրա գումարենք նաև այն, որ ծայրամասային լեռնային նահանգների՝ Սյունիքի, Տայքի, Արցախի և մյուս տերիտորիաների մի զգալի մասը գրավում են ապառաժոտ և քարքարոտ տարածությունները, ապա միանգամայն պարզ է, որ վերջիններում բնակչության խտությունն այդ ժամանակներում մեծ լինել չէր կարող։

Բնակչության խտությունը մասնավորապես բարձր էր Արարատյան դաշտում, Ալաշկերտի հովտում, Մուշի դաշտում, Վանա լճի ավազանում, Կարինի շրջանում և Խարբերդի դաշտում։ Եթե ընդունելու լինենք, որ հին Հայաստանում բնակչության ընդհանուր

*թիվը (ներառյալ նաև մյուս ժողովուրդները) հասել է 4—5 միլիոնի, ապա, համապատասխանորեն, խտությունը կազմել է 13—17 մարդ մեկ քառակուսի կիլոմետրի վրա։*

### 3. ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԿԱԶՄԸ ԵՎ ԶԲԱՂՄՈՒՆՔԸ

*III—IV դդ. (մ. թ.) Հայաստանը վերջնականապես թևակոխում է ֆեոդալիզմի ժամանակաշրջանը, որը տևել է բազում դարեր։ Ֆեոդալիզմը զարգացման աստիճանով բաժանվում է երեք շրջանի։*

*Վաղ ֆեոդալիզմի շրջանում հասարակությունը բաժանված էր երկու հակադիր դասակարգերի՝ ազնվական կամ ֆեոդալ-նախարարական (որի մեջ մտնում էր նաև բարձր հոգևորականությունը) և գյուղացիական կամ շինականների։ Իրավական տեսակետից, առաջինը ազատների կամ շահագործողների դասակարգն էր, իսկ երկրորդը՝ անազատների կամ շահագործվողների։*

*Ազնվական դասակարգը բաժանվում էր երկու մեծ խմբի՝ աշխարհիկ ֆեոդալների (նախարարների) և հոգևոր ֆեոդալների։ Դրանցից յուրաքանչյուրի մեջ կար վասալական աստիճանավորություն կամ, այլ կերպ ասած, ֆեոդալական հիերարխիա։ Նախարարների դիրքն այդ հիերարխիայի մեջ որոշվում էր թագավորին տրվող զորքի թվով։*

*Ազնվական-ֆեոդալական սանդուղքի ամենաբարձր աստիճանը բռնում էր* **նույնը թագավորը** *(իսկ մարզպանների տիրապետության շրջանում՝ Սասանյան Պարսկաստանի արքայից արքան)՝ հանդիսանալով բոլոր նախարարներին գլխավորող սյուզերենը։ Թագավորից հետո ըստ աստիճանի գալիս էին.*

**Բդեշխները.**—*Հայաստանի ծայրամասային չորս նահանգների ֆեոդալ-իշխաններն էին, որոնք արտաքին վտանգից պաշտպանում էին երկրի հյուսիսային, հարավային, արևելյան և արևմտյան սահմանները։ Սրանք կոչվում էին «գահերեց», այսինքն բարձր գահ ունեցող իշխաններ։*

**Նախարարները.**—*Հայտնի էին իրենց տոհմային ծագումով, զորքի մեծ քանակությամբ և ժառանգական կալվածքներով։ Սրանք թե՛ Արշակունիների և թե՛ մարզպանների տիրապետության օրոք, պետության մեջ ունեին քաղաքական մեծ կշիռ։*

**Ազատները.**—*Ազնվական մանր կալվածատերեր էին և հանդի-*

սանում էին նախարարների վասալները։ Ազատներից կազմվում էր հայկական զորաբանակի հեծելազորը։

Ֆեոդալիզմի ձևավորման հետ միասին ֆեոդալականացվում է նաև հայկական եկեղեցին։ Ֆեոդալիզմի գաղափարախոսների բավական ստվար բանակը՝ հոգևորականությունը, նույնպես ուներ իր աստիճանավորությունը։ Քրիստոնեության շրջանում այդ հիերարխիայի գլուխ կանգնած էր կաթողիկոսը։

Գյուղացիությունը կազմում էր ամենամարդաշատ և շահագործվող դասակարգը։ Շահագործվող այս դասակարգի ներսում ևս գոյություն ուներ որոշ շերտավորում. նախարարական հողերի վրա ապրող և աշխատող շինականները կախման մեջ էին տվյալ հողատիրոջից։ Դրանց համեմատությամբ, իհարկե, ավելի բարձր էին ազատ գյուղացիները։ Գյուղացիության մեջ բացի իրավական անհավասարությունից կար նաև գույքային որոշ անհավասարություն։

Շինականները կոչվում էին «անազատ»։ Նրանք պարտավոր էին ֆեոդալին վճարել աշխատապարտ և արդյունավճար ռենտա։ Բացի դրանից, շինականները տալիս էին պետական հարկեր։ Պարսկական պետության գանձվող հարկերից էին հողահարկը («հաս») և գլխահարկը («սակ»)։ Հողահարկը գանձվում էր բերքի $^{1}/_{6}$—$^{1}/_{3}$-ի չափով՝ նկատի ունենալով հողի որակը, մշակույթի տեսակը, ոռոգումը և այլն։ Շինականների դրությունն առանձնապես ավելի ծանրացավ, երբ VI դարի կեսերից սկսած մտցվեց հողահարկը դրամով գանձելու սիստեմը։ Գլխահարկը գանձվում էր 20-ից 50 տարեկան անձերից։ Նշված հարկերից բացի, գյուղացին «պտուղ» անվան տակ հայկական եկեղեցուն էր տալիս իր ստացած բերքի մեկ տասներորդ մասը։ Գյուղացիներն այս կամ այն առիթով պարտավոր էին ձրիաբար աշխատել զանազան կառուցումների (ճանապարհների, ջրանցքների, կամուրջների, տաճարների և այլն) վրա։

Իրենց դրությամբ ավելի ծանր պայմաններում էին ստրուկները, որոնք հին Հայաստանում կազմում էին բավական մեծ թիվ։ Նրանց աշխատանքը գերազանցապես գործադրվում էր պետական մեծ շինարարությունների և լեռնային արդյունահանության գործում։ Նրանք կառուցում էին ճանապարհներ, ջրանցքներ, ամբարտակներ։ Մասամբ ստրկական աշխատանքով էին մշակվում նաև վանքապատկան հողերը։ Ավելի սակավ էր տներում աշխատող ստրուկների թիվը։ Վերջիններս մեր հին մատենագրության մեջ կոչվում են «ծառա»-ներ և «աղախին»-ներ։

Քաղաքներում առանձին դաս էին կազմում առևտրականները և արհեստավորները։ Նրանք իրավական դրությամբ ավելի բարձր

էին, քան շինականները։ IX—XIII դարերի հետ համեմատած, քաղաքային այս դասը V—VII դարերում չափազանց թույլ էր թե՛ իրավական տեսակետից և թե՛ թվով։ Առևտրականները և արհեստավորներն իրենց դիրքով տարբերվում էին միմյանցից։ Բացի այդ, նրանցից յուրաքանչյուրն էլ իր հերթին շերտավորման էր ենթարկվել։ Առևտրականներից գանձվող հատուկ հարկը կոչվում էր «բաժ» (մաքս)։

Քաղաքային անազատ բնակչությունը և գյուղացիությունը միասին կոչվում էին «ռամիկ»-ներ։

Բնակչության հիմնական զբաղմունքը կազմում էին գյուղատնտեսության երկու կարևորագույն ճյուղերը՝ երկրագործությունն ու անասնապահությունը, որոնցից և ստացվում էր երկրի եկամտի բացարձակ գերակշիռ մասը։ Ստացված եկամուտների չափերն ի նկատի ունենալով, որոշ տարբերություն կարելի է տեսնել նաև նշված երկու ճյուղերի միջև։ Նրանցից երկրագործությունն իր արտադրանքի չափով ավելի առաջնակարգ տեղ էր գրավում։

Առաջավոր Ասիայում երկրագործությամբ զբաղվել են ամենահնագույն ժամանակներից սկսած։ Անդրկովկասում և մասամբ էլ հարևան երկրներում մինչև այժմ կատարված հնագիտական պեղումներից պարզվում է, որ այդ երկրներում երկրագործությամբ զբաղվել են անգամ նոր քարե դարում։ Դարերի ընթացքում գնալով ավելի է առաջադիմել երկրագործությունը և միաժամանակ դարձել բազմաճյուղ։

Հայկական լեռնաշխարհում երկրագործության զարգացման տեսակետից առանձնապես մեծ քայլ էին կատարել ուրարտացիները և հայկական այն բազմաթիվ ցեղախմբերը, որոնք մտնում էին Ուրարտական պետության կազմի մեջ։

Ուրարտացիները ժառանգություն թողեցին ոչ միայն իրենց նյութական կուլտուրան, մետաղագործությունը (հատկապես երկաթի մշակման տեխնիկան), ճարտարապետությունը, այլև երկրագործության մշակույթի և ջրանցքաշինության՝ նախորդ ժամանակաշրջանների հետ համեմատած բարձր տեխնիկան։ Նրանք գործածության մեջ էին դրել երկաթե խոփը, որը, ժամանակաշրջանի համեմատ, մեծ զարկ տվեց երկրագործությանը։ Ուրարտացիներից ժառանգություն ստացած երկրագործական մշակույթի տեխնիկան հայերի մոտ սոսկ ընդօրինակություն չմնաց, և ոչ էլ մնաց միևնույն աստիճանի վրա. հայ ժողովուրդը յուրացնելով ուրարտացիների երկրագործության և ջրանցքաշինության տեխնիկան, այն ավելի զարգացրեց։

Հին Հայաստանում երկրագործության մեջ իշխող էին երկդաշտյան և մասամբ եռադաշտյան սիստեմները, հիմնական գործիքն արորն էր, որին ամրացված էր երկաթե խոփ։ Լեռնային փակ շրջաններում դարեր շարունակ գործածության մեջ էին մնացել նաև երկրագործական ավելի պրիմիտիվ գործիքներ։

Հին Հայաստանի երկրագործական հիմնական մշակույթներն էին՝ հացահատիկներն ու բանջարեղենը, այգեգործությունը և տեխնիկական կուլտուրաները։

Հացահատիկները Հայկական լեռնաշխարհի ամենահին կուլտուրաներից են։ Հայաստանն Առաջավոր Ասիայի իր հարևան երկրների հետ միասին քաղաքակիրթ մարդկությանը տվել է հացահատիկների, հատկապես ցորենի մի քանի տեսակներ։ Հին Հայաստանում ցանվող հացահատիկներից առանձնապես մեծ տարածում ունեին ցորենը, գարին, տարեկանը, կորեկը, հաճարը, բրինձը և ոսպը։ Դրանց բերքի մի մասը արտահանվում էր այլ երկրներ։ Բնական պայմաններից ելնելով, հացահատիկների ցանքատարածությունները տեղաբաշխված էին հետևյալ կերպ. ցորենը, գարին, տարեկանը, հաճարը, ոսպը, մասամբ նաև կորեկը ցանվում էին գլխավորապես բարձրադիր դաշտերում և նախալեռնային ու լեռնային շրջաններում։

Հացահատիկային կուլտուրաների ցանքերով, ինչպես սասցինք բուսական ու կենդանական աշխարհի մասին խոսելիս, առանձնապես աչքի էին ընկնում Շիրակի, Մուշի և Ալաշկերտի դաշտերը։ Բրնձի մշակույթը հիմնականում տարածված էր Արաքսի և Արածանիի ու Եփրատի հովիտներում։

Հացահատիկներից գարին, բացի այն, որ դրանից հաց էին թխում, ինչպես և օգտագործում որպես անասնակեր, ծառայում էր իբրև հումք գարեջուր ստանալու համար։ Ինչպես երևում է, գարեջուր պատրաստելու տեխնիկան շատ վաղուց էր հայտնի Հայկական լեռնաշխարհում։ Քսենոփոնի հիշատակության համաձայն, դեռևս մ. թ. ա. V դարի վերջերին Հայաստանում արտադրում և գործ էին ածում գարեջուրը։ Հույն պատմիչը, ինչպես պարզ երևում է նրա վկայությունից, ծանոթ չի եղել գարեջուր ստանալու տեխնիկային։ Հավանաբար Հայաստանը եղել է գարեջրի առաջին հայրենիքներից մեկը։

Հայաստանի կլիմայական պայմանները նպաստավոր են այգեգործության զարգացման համար։ Ոռոգման սիստեմը, որն ընդգրկում էր բավական մեծ տարածություններ, հնարավորություն էր քնձեռում ցածրադիր դաշտային շրջաններում զբաղվելու խա-

ղողի, դեղձի և ծիրանի մշակությամբ։ Այդ երեք կուլտուրաներն էլ ունեին տեղական մի շարք տեսակներ, որոնք իրենց որակով մեծ համբավ ունեին Առաջավոր Ասիայի և այլ երկրների շուկաներում։ Հայաստանից արտահանվում էին բավական մեծ քանակությամբ չորացրած մրգեր, գլխավորապես չամիչ, դեղձի ու ծիրանի չիր։

Խաղողի մշակությունը Հայաստանում ունի բազմադարյա պատմություն։ Մարդկային հասարակությանը վերաբերող առաջին իսկ հիշատակություններից և ներկայումս կատարվող պեղումներից պարզ երևում է, որ Հայկական լեռնաշխարհում այգեգործությունը, այդ թվում հատկապես խաղողի մշակությունը, սկսվել է շատ վաղ ժամանակներից։ Խաղողը թարմ վիճակում օգտագործելուց և չորացնելուց բացի ենթարկվել է վերամշակման։ Խաղողից պատրաստում էին գինի և այլ մթերքներ։ Մատենագրական վկայությունների համաձայն, Հայաստանում գինին վաղ ժամանակներից հանդիսանում էր արտահանության կարևորագույն ապրանքներից մեկը։ Խաղողի մշակության տարածվածության շնորհիվ նա իր արտացոլումն է գտել հայ ճարտարապետության և արվեստի այլ բնագավառներում։ Հայաստանի տարբեր վայրերում հայտնաբերված ամենատարբեր ժամանակաշրջաններին վերաբերող նյութական կուլտուրայի մնացորդների վրա քանդակված են խաղողի վազեր, ողկույզներ, զանազան մրգեր։

Խաղողի, դեղձի և ծիրանի մշակությամբ առանձնապես աչքի են ընկել՝ Վանա լճի ավազանը, Եփրատ ու Արաքս գետի հովիտները և Գողթն ու Նախճավան գավառները։

Նույն շրջաններում և մինչև 1500 մ բարձրությունների վրա տարածված են եղել նռենին, տանձենին, խնձորենին, սերկևիլենին, բալենին, սալորենին, կեռասենին և բազմաթիվ այլ պտղատու ծառեր, որոնք բավականաչափ բարձր տեսակարար կշիռ են ունեցել այգեգործության մեջ։

Տեխնիկական կուլտուրաների մեջ կարևոր տեղ էին գրավում բամբակը, կտավհատը, քնջութը և կանեփը։ Բամբակը հիմնականում տարածված էր Արաքսի, Արածանիի հովիտներում և Արևմտյան Եփրատի, ինչպես և Վանա լճի ավազանում։ Հայաստանում արտադրվող բամբակը, ինչպես մենք տեսանք բուսական աշխարհի մասին խոսելիս, ոչ միայն բավարարում էր ներքին շուկայի կարիքները, այլև արտահանվում էր որպես անմշակ հումք։

Ցակաս նշանակություն չունեին նաև քնջութը, կտավհատը և կանեփը։ Դրանցից առաջինի մշակույթը տարածված էր գրեթե

նույն շրջաններում, ինչ որ բամբակը, իսկ վերջին երկուսը բարձրանում էին մինչև լեռնային գոտու ստորին շերտերը։ Հայաստանում մշակվող քնջութի, կտավհատի և կանեփի բազայի վրա գյուղերում, ավաններում և քաղաքներում կային բազմաթիվ ձիթհանքեր։ Ձիթհանության մասին հիշատակությունները ավելի հաճախակի են դառնում X—XIII դարերի սկզբնաղբյուրներում։ Ակադեմիկոս Մառի կողմից Անիում հայտնաբերված ձիթհանքը այնքան խոշոր էր, որ նա այն անվանեց գործարան։

Հայաստանում բավական լայն տարածում ուներ նաև բանջարաբուծությունը։ Երկրի գրեթե բոլոր շրջաններում մշակում էին բազմատեսակ բանջարեղեն, կանաչեղեն, վարունգ, կաղամբ, լոբաբույսեր և այլն։ Ավելի ցածրադիր վայրերում՝ սեխ, ձմերուկ։

Գյուղատնտեսության մյուս կարևորագույն ճյուղն անասնապահությունն էր։ Հայկական լեռնաշխարհի ֆիզիկա-աշխարհագրական պայմանները նկարագրելիս տեսանք, որ նպաստավոր պայմաններ կային անասնապահության զարգացման համար։ Հայկական լեռնաշխարհն ուներ անհրաժեշտ չափով խոտհարքներ ու ձմեռային արոտատեղիներ։ Մեծ չափով տարածված են ալպյան մարգագետինները։ Պահում էին մեծ քանակությամբ ոչխարներ, այծեր, եզներ, կովեր, գոմեշներ, ջորիներ, էշեր, ընտանի թռչուններ և այլն։ Խաշնարածությամբ զբաղվում էին գլխավորապես լեռնային շրջաններում։ Եզներ ու կովեր պահում էին գրեթե բոլոր շրջաններում, իսկ գոմեշներ՝ միայն հարթավայրային և շամբուտ վայրերում։ Ջորիներն ու էշերը, ոչխարների և այծերի նման, հիմնականում մեծ տարածում ունեին լեռնային մասերում՝ Սյունիքում, Արցախում, Բարձր Հայքում և այլուր։

Անասունները, հատկապես ոչխարներն ու այծերը, կազմում էին Հայաստանից արտահանվող ապրանքներից։ Ոչխարներից ու այծերից ստացված բրդի մի մասը արտահանվում էր անմշակ վիճակում։

Անհրաժեշտ է նշել, որ հին Հայաստանի անասնաբուծության ամենակարևոր ճյուղերից մեկը, որով Հայկական լեռնաշխարհը հռչակված էր դեռ շատ հնուց, ձիաբուծությունն էր։ Արտահանվող ապրանքների մեջ մեծ տեղ ու տեսակարար կշիռ ունեին ձիերը։ Պարսից Աքեմենյան արքայից արքաները Հայաստանից որպես հարկ տարեկան վերցնում էին 20 հազար ձի։ Հայաստանի զինվորական ուժի մի զգալի մասը կազմում էր հեծելազորը, որի ձիերը բացառապես տեղական էին։

Հին Հայաստանում հռչակված էր մանավանդ ձիու մի տեսա-

կը, որը կոչվում էր «նժույգ»։ Ստրաբոնը չափազանց մեծ գովեստով է խոսում Հայաստանի ձիերի մասին, նշելով, որ նրանք ունեն բարձր հասակ և «անզուգական գեղեցկություն»։ Հայ մատենագիրները մեր երկրի ձիերի լավ հատկությունները բնորոշելու համար գործ էին ածում զանազան ածականներ՝ «սրավար», «սրաթռիչ», «օդապարիկ» և այլն։

Ձիու ազնիվ տեսակով հռչակված նահանգներից մեկը Արցախն էր (Լեռնային և Դաշտային Ղարաբաղը), որին սահմանակից էր Մուղանի դաշտավայրը։ Իսկ այս վերջինը հին ժամանակներից սկսած հռչակված էր ձիերի համար որպես արոտատեղի։ Հին Հայաստանում իր ձիերով հայտնի է եղել նաև Սյունյաց աշխարհը։ Այս երկրամասն իր բազմահազար հեծյալներին մատակարարում էր տեղական ընտիր ձիեր։

Երկրագործությունից և անասնապահությունից բացի, հին Հայաստանում գոյություն ուներ և բավականին զարգացած էր գյուղատնտեսության փոքր ճյուղերից մեկը՝ շերամապահությունը։ Այդ զբաղմունքը, որը կապված էր թթենու այգիների հետ, համեմատաբար լայն չափերով տարածված էր Սյունիքում, Արցախում, Գողթնում, Նախիջևանում, Վանի շրջանում և Արտաշատ-Դվինի շրջակայքում։ Միջին դարերում հայկական մետաքսը լրիվ չափով բավարարում էր երկրի մետաքսագործության պահանջը, որը բավականին զարգացած էր հատկապես Դվինում։ Դեռ ավելին, մետաքսե գործվածքների և պատրաստի ապրանքների հետ միասին որոշ չափով արտահանվում էր նաև բոժոժ։

Գյուղատնտեսությունից հետո հին Հայաստանի տնտեսության մեջ իր տեսակարար կշռով մեծ տեղ էր բռնում **արհեստագործությունը**։ Արհեստն այդ ժամանակաշրջանում դեռևս չէր անջատվել գյուղատնտեսությունից։ IX դարից սկսած գյուղատնտեսությունից անջատվող արհեստագործությունը կենտրոնանում է նոր զարգացող ֆեոդալական քաղաքներում։ Արհեստագործության զարգացման համար խթաններ էին հանդիսանում ներքին ու արտաքին շուկաները, տարանցիկ առևտուրը, երկրի ընդերքում եղած բազմաթիվ ու բազմապիսի հումքային բազաները և այլն։

Հին Հայաստանում գոյություն են ունեցել բազմապիսի արհեստներ։ Արհեստների մեջ առաջնակարգ տեղը բռնում էր մետաղագործությունը, որը գալիս էր խոր հնությունից։ Մետաղագործական արհեստների թվին պատկանող զինագործությունը, որն ուներ պետական պաշտպանական նշանակություն, ընդունել էր բավականին լայն չափեր և իր արտադրանքով բավարարում էր երկրի զին-

ված ուժերի պահանջները։ Մետաղագործական արհեստներից էին նաև դարբնությունը, որը համարվում է մետաղագործական արհեստների հայրը, պղնձագործությունը և ոսկերչությունը։ Դրանցից առաջինը հիմնականում կապված էր գյուղատնտեսության հետ, իսկ վերջին երկուսը՝ գերազանցապես քաղաքային կյանքի։ Հայաստանում արհեստների մեջ ոչ պակաս կարևոր նշանակություն ունեին շինարարական արհեստները՝ քարտաշությունն ու որմնադրությունը, ծեփագործությունը, ներկարարությունը, ինչպես նաև հյուսնությունը։ Պետք է ենթադրել, որ այդ արհեստներով զբաղվում էին բավականաչափ մեծ թվով մարդիկ։ Մատենագրական վկայությունների համաձայն, հայ արհեստավորներից բացի, օտար երկրներից տարբեր ժամանակներում Հայաստան էին եկել բազմաթիվ այլ արհեստավորներ։ Նրանց մի մասը Հայաստան էր բերված փոքրասիական երկրներից և Միջագետքի ու Սիրիայի կողմերից՝ որպես գերազանցապես ռազմագերիներ (Տիգրան Բ-ի և Արտավազդ Բ-ի ժամանակներում) կամ պետական դիվանագիտական հատուկ պայմանագրերով (Տրդատ Ա-ի օրոք), իսկ մյուս մասը կամովին էր եկել։ Շինարարական արհեստը կանգնած էր զարգացման բավական բարձր աստիճանի վրա։ Նրա արտադրության արդյունքն էին Արտաշատ, Տիգրանակերտ, Վաղարշապատ, Դվին և այլ քաղաքների հոյակապ շինությունները ու մի շարք տաճարներ, որոնց թվում և հիասքանչ Զվարթնոցը։ Շինարար արհեստավորի ձեռքի արդյունքն էին նաև ճանապարհները, ջրանցքները, կամուրջները և այլ կառուցումներ, որոնց ավերակները այժմ էլ հիացնում են դիտողին։

Հին Հայաստանում մեծ չափերի էր հասել հնագույն շրջանից գոյություն ունեցող արհեստներից մեկը՝ կավագործությունը, որն ուներ իր բազմապիսի ճյուղերը, այն է՝ թրծված աղյուսի, ջրատար կավե խողովակների և կղմինդրի արտադրությունը, բրուտագործությունն իր կավե ամաններով և այլն։

Պակաս նշանակություն չունեին կաշեգործությունը, ներկարարությունը և, մանավանդ, ջուլհակությունը, որն արտադրում էր բամբակյա, բրդյա և մետաքսյա հյուսվածքներ։

Չնայած այդ բոլորին, Հայաստանը թե՛ վաղ ֆեոդալիզմի և թե՛ զարգացած ֆեոդալիզմի շրջանում մնում էր բնատնտեսության ինքնամփոփ պայմաններում։

Արհեստավորներն իրենց սոցիալական դրությամբ գրեթե հավասար էին գյուղացիներին, այսինքն պատկանում էին շահագործ-

վող դասակարգին։ Բայց իբրև քաղաքի ազգաբնակության հիմնական մաս՝ վայելում էին որոշ արտոնություններ։

Արհեստների հետ սերտորեն կապված է հասարակական արտադրության մի այլ տեսակը՝ լեռնային արդյունահանությունը։

Հայկական լեռնաշխարհն ունի մետաղի և ոչ մետաղի բազմաթիվ հանքեր, որոնք շահագործման են ենթարկվել հին Հայաստանում։ Լեռնային արդյունահանության մեջ առաջնակարգ տեղ է գրավել սեղանի աղի, պղնձի, կապարի, ոսկու, արծաթի, զառիկի, մարմարի, տորֆի, պղնձարջասպի և այլ հանքատեսակների շահագործումն ու նրանց վերամշակումը։ Լեռնային արդյունահանության հետ անմիջաբար կապված էին մի քանի արհեստներ՝ դարբնություն, հյուսնություն և այլն։ Հանքերում աշխատողների մի զգալի մասը կազմում էին ստրուկները։

Շնորհիվ աշխարհագրական բարենպաստ պայմանների, Հայաստանում, վաղ անցյալից սկսած, մեծ տեղ էր գրավում նաև տարանցիկ ու տեղական առևտուրը, որի մասին, նպատակահարմարությունից ելնելով, կխոսենք ճանապարհների բաժնում։

**Որսորդություն**.—Որսորդությունը մարդկային հասարակության հնագույն զբաղմունքն էր։ Նա ավելի հին պատմություն ունի, քան անասնապահությունը, երկրագործությունը և արհեստները։

Չնայած հասարակության զարգացման հետ միասին գյուղատնտեսության ճյուղերն ու արհեստները հետզհետե գրավել են ավելի առաջնակարգ տեղ, բայց որսորդությունը մնացել է և անգամ այժմ մնում է որպես հասարակական արտադրության ճյուղերից մեկը։

Հին Հայաստանի որսորդության մեջ իր արտադրանքի քանակով առաջնակարգ տեղ էր գրավում ձկնորսությունը։ Սևանա լճի իշխան ձուկը, Վանա լճի տառեխը, ինչպես և մեծ գետերից որսացվող ձկները, Հայաստանից արտահանվող ապրանքների շարքում ունեին տեսակարար մեծ կշիռ։ Ձկներն արտահանվում էին թե՛ թարմ, թե՛ չորացրած ու աղ դրած վիճակում։

Վանա լճի հյուսիս-արևելյան ափին կառուցված էր արքունական հատուկ ձկնորսարան, որտեղ որսացվող ձկների գերակշիռ մասն արտահանվում էր արտաքին այլ երկրներ։ Բագրատունիների թագավորության շրջանում մի այդպիսի ձկնորսարան կար նաև Սևանա լճի հարավային ափին՝ Կոթ ավանում։ Ձկնորսությունը դասային արհեստ չէր, չնայած դրանով մեծ մասամբ զբաղված էին հասարակության ցածր շերտերին պատկանողները։

Ավելի պակաս նշանակություն ուներ և սեզոնային բնույթ էր

վրում կենդանիների որսը։ Այս զբաղմունքը համեմատաբար ավելի շատ էր տարածված լեռնային շրջաններում՝ Սասունում, Խութում, Մոկքում, Սյունիքում և այլուր։

Կենդանիների որսով զբաղվելը հին Հայաստանում դարձել էր մի տեսակ զվարճալիք բարձր խավի, թագավորների և ֆեոդալ իշխանների համար։ Հայ պատմագիրներ Փավստոս Բուզանդի, Մովսես Խորենացու և մյուսների մոտ նկարագրված են որսորդության բազմաթիվ տեսարաններ, որոնց մեջ անմիջականորեն մասնակցում էին վերնախավի բարձրաստիճան ներկայացուցիչները։ Արշակունի հայ թագավորներն ունեին իրենց որսատեղիները։ Մենք արդեն տեսանք, որ նրանցից Խոսրով Կոտակը (334—338 թթ.) Ազատ գետի ափերին, Արտաշատ-Դվինի շրջակայքում տնկած կաղնու անտառը արհեստական եղանակով լցնելով որսի կենդանիներով՝ այն դարձրել էր իր որսատեղին։

Արքայական և ֆեոդալ-իշխանական որսահանդեսներին մասնակցում էին նաև զինված հատուկ ջոկատներ, որոնք կազմվում էին հեծյալներից։ Այնպես որ որսորդությունը ոչ միայն զվարճալիք էր, այլև զինվորներին ռազմական կոփվածություն տալու միջոցներից մեկը։ Իշխաններն ու թագավորները որսի էին գնում մեծ խմբերով։ Նրանք իրենց հետ տանում էին վարժեցրած շներ ու բազեներ և որսավայրում մնում էին շաբաթներով։

Մի առանձին զբաղմունք էր նաև զինվորական ծառայությունը նախարարական և արքունի մշտական բանակներում։ Մշտական բանակի զինվորների բացարձակ մեծամասնությունը կազմում էր հեծելազորը։ Հեծյալների թիվն Արշակունիների տիրապետության ժամանակաշրջանում հասնում էր 120 000-ի, որը բացառապես կազմված էր ազատներից, այդ պատճառով էլ հեծելազորը կոչվում էր «ազատագունդ» կամ «ազատազորք»։ Ազատների վերնախավը՝ ֆեոդալ-նախարարները, կրտսեր նախարարները և մյուսները վարում էին համապետական և տեղական բարձր պաշտոններ։

Հոգևորականությունը, որը կազմում էր բավական ստվար թիվ, զբաղված էր քրիստոնեական եկեղեցու սպասարկումով՝ քարոզելով ֆեոդալիզմի գաղափարախոսությունը։

Այսպիսով, երկրի նյութական բարիքները ստեղծում էին շահագործվող անազատները՝ գյուղացիները, արհեստավորները և մասամբ ստրուկները, իսկ շահագործող ազատները, որոնք վարում էին պետական զանազան պաշտոններ, կատարում էին զինվորական ծառայություն, սպասարկում հայ եկեղեցին, ապրում էին

շահագործվողների հաշվին։ Եվ միանգամայն բնական է, որ ֆեոդալական Հայաստանում, դեռ վաղ անցյալում, բռնկվեցին ֆեոդալիզմի դեմ ուղղված մի շարք սոցիալական շարժումներ։

## ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԼԽԱՎՈՐ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Հայկական լեռնաշխարհը ներքին և արտաքին հաղորդակցության առումով բավական կզզիացած դիրք ուներ։*

*Արտաշեսյանների և Արշակունիների թագավորության շրջանում Հայկական պետության մեջ մտնող ծայրագավառները (Փայտակարան, Տայք և այլն), որոնք մոտ էին Կասպից ու Սև ծովերին, երբեմն դուրս էին գալիս Հայկական պետության շրջանակներից և, տնտեսական, առևտրական ու կուլտուրական առումով լինելով համեմատաբար թույլ զարգացած, շատ թե քիչ ուժեղ ազդեցություն չէին կարողանում թողնել երկրի ընդհանուր դրության վրա։*

*Երկրի ներսում ևս պակասում էին մեծ նշանակություն ունեցող ջրային ճանապարհները։ Ճիշտ է, Հայկական բարձրավանդակը ջրառատ է, բայց ունի լեռնային ռելիեֆ։ Հայկական լեռնաշխարհի լճերի և գետերի մասին խոսելիս տեսանք, որ նրանք չեն կարող ծառայել իբրև առաջնակարգ ջրային ճանապարհներ։ Նրանցից մի մասի վրա, իհարկե, նավարկություն կատարվել է, բայց դա ունեցել է շատ սահմանափակ նշանակություն. այնտեղ եղել է միայն տեղական հաղորդակցություն մոտիկ ափերի միջև։ Եփրատի վրա, որը երկրի միջով հոսող գետերից ամենախոշորն է, նավարկություն կատարվել է միայն այն տեղերում, որտեղ նա հոսում է հովիտներով և դաշտերով այն էլ գերազանցապես միայն հոսանքին համընթաց ուղղությամբ։ Տեղաբնիկ հնագույն բնակիչների կողմից գործածվող լաստերը, որոնք շինվում էին ուռեցրած տիկերի վրա, կարողանում էին գնալ միայն գետն ի վար։*

*Այսպիսով, Հայաստանի համար առաջնակարգ նշանակություն ունեցող ճանապարհները ցամաքային ճանապարհներն էին, իսկ նրանց ուղղությունները և հարմար լինելն էլ կախված էր տվյալ շրջանի ռելիեֆից ու տեղական այլ պայմաններից։ Այն շրջաններում, որտեղ ռելիեֆը լեռնային է, ճանապարհները դժվարամատչելի էին, և փոխադրական ամենալավ միջոցն այդպիսի վայրերում հանդիսանում էին բեռնակիր անասունները՝ ձին, ջորին, էշը։ Ավելի*

տափարակ վայրերում՝ սարահարթերում և դաշտերում, ինչպես և գետերի լայն ու խոր ձորերում, ճանապարհներն այնքան հարմար էին, որ նրանցով անցնում էին անիվավոր փոխադրական միջոցները։ Դաշտային բնույթի ճանապարհները բացակայում էին երկրի մեծագույն մասում, իսկ եղած փոքրաթիվ դաշտային ճանապարհներն էլ մի սարահարթից, դաշտից կամ գետահովտից մյուսն անցնելիս հանդիպում էին լեռնային բարձր շղթաների, անցնելով վերջիններիս համեմատաբար հարմար անցքերով՝ լեռնանցքներով։ Հայկական լեռնաշխարհի լեռնանցքները ունեն մոտ 1200—2000 մ բարձրություն (ծովի մակերևույթից), ձմռանը ծածկվում են խոր ձյունով, և նրանց մեծագույն մասը այդ եղանակներին դառնում է բոլորովին անանցանելի։

Պատմական Հայաստանի մի զգալի մասն էլ՝ Արցախ, Սյունիք, Գուգարք, Սասուն, Մոկք, Չորրորդ Հայքի որոշ շրջանները և այլն, գրեթե զուրկ են եղել հարմար ճանապարհներից։ Հաղորդակցության ճանապարհներն այդ լեռնային երկրներում եղել են գլխավորապես նեղ ու փոքրիկ լեռնային կածանները։

Սակայն, չնայած Հայկական լեռնաշխարհը հաղորդակցության համար ունի այդպիսի մեծ դժվարություններ, արգելքներ ու որոշ անհարմարություններ, այնուամենայնիվ, նա իր աշխարհագրական դիրքի շնորհիվ հնագույն ժամանակներից ի վեր հանդիսացել է կարևոր ճանապարհը, կապող օղակը և կամուրջը Հնդկաստանի ու Պարսկաստանի և Սև ու Միջերկրական ծովերի, ինչպես նաև Միջագետքի և Սև ու Կասպից ծովերի միջև։ Նշված երկրների միջև առևտուրն ու ապրանքափոխանակությունը կատարվել է գլխավորապես Հայաստանի վրայով։ Հայաստանի մասնակցությունը միջազգային առևտրին պասիվ բնույթ չուներ. նրա դերը չէր սահմանափակվում առևտրական քարավաններին սպասարկելով։ Նա իր հերթին համաշխարհային շուկաներն էր հանում բազմատեսակ ապրանքներ՝ ցորեն, ձի, ոչխար, միս, ձուկ, չորացրած մրգեր, գինի, բուրդ, բամբակ, ներկեր, մետաղներ, արհեստավորական զանազան արտադրանքներ՝ մահուդ, գորգեր, զանազան գործվածքներ, ակնեղենի տարկաներ և այլն։ Այս հանգամանքը, բնականաբար, խոշոր չափով դրական ազդեցություն էր թողնում տնտեսության զարգացման վրա, նպաստելով քաղաքների զարգացմանն ու աճմանը։

Մեծ էր նաև Հայկական լեռնաշխարհի ստրատեգիական-քաղաքական նշանակությունը։ Նա մի բնական խոշոր միջնաբերդ էր, որն իշխող դիրք ուներ Մերձավոր Արևելքի նկատմամբ։ Ոչ ոք չէր

կարող ապահով կերպով տիրել Միջագետքը, Պարսից ծոցը, Ասորիքը, Փոքր Ասիան՝ առանց նախօրոք Հայկական լեռնաշխարհում ամրանալու։ Արածանիի և Կարինի հովիտներին տիրելուց հետո, չափազանց դյուրին է նաև Միջերկրական ծովի կիլիկյան ափերի նվաճումը։ Գլխավորապես պատմական Հայաստանի ստրատեգիական-քաղաքական նշանակությունն էր պատճառը, որ նա, գրեթե ամբողջ պատմության ընթացքում, դարձել էր կռվածաղիկ աշխարհակալ պետությունների միջև, մի հանգամանք, որը շատ խիստ բացասական ազդեցություն էր ունենում նրա քաղաքական անկախության և տնտեսության զարգացման վրա։

Հայաստանի ամենանշանավոր ճանապարհն այն ճանապարհն էր, որը գալիս էր Միջին Ասիայի կողմերից և Հայկական լեռնաշխարհի վրայով անցնում դեպի Սև ու Միջերկրական ծովերի ափերը։ Միջին Ասիայից և Կենտրոնական Ասիայից դեպի Հայաստան եկող երկու ճանապարհ կար։ Նրանցից մեկը, դուրս գալով Խորասանից, անցնում էր Կասպից ծովի հարավային և արևմտյան ափերով, ապա Գիլան և Մազանդարան նահանգների վրայով հասնում էր Արաքսի հովիտը։ Սակայն այս ճանապարհը այնքան բարեկարգ ու բանուկ չէր՝ բազմաթիվ լեռների ու ճահիճների պատճառով, որոնք ընկած էին նրա տարբեր հատվածներում։ Մյուս ճանապարհը, որը դարձյալ սկիզբ էր առնում Խորասանի հռչակավոր Հերաթ քաղաքից, անցնում էր Շահ-Ռուդով, Թեհրանով և Թավրիզով ու դուրս գալիս Արաքսի հովիտը։ Վերջին ճանապարհն ավելի երկար էր, քան առաջինը, սակայն հաղորդակցության համար ավելի հարմար և հանգիստ էր։ Հենց այդ պատճառով, դեռ հնագույն ժամանակներից նա ավելի բանուկ էր և հայտնի։ Գլխավորապես այս ճանապարհով էին իրար հետ կապվում Արևելքն ու Արևմուտքը։ Սա համաշխարհային առևտրի կարևոր ճանապարհն էր։

Հերաթից դուրս եկող այդ ճանապարհը, դեպի արևմուտք անցնելով, կանգ էր առնում Այրարատյան նահանգում, Մասիսի ստորոտների մոտ, որտեղ նա միանում էր Սև ծովից եկող ճանապարհներին։ Միաժամանակ, դեպի Սև ծով էին գալիս Եվրոպայի զանազան մասերից՝ Դանուբի, Դնեստրի, Դնեպրի և Դոնի ջրային ճանապարհները։

Մի ուրիշ մեծ ճանապարհ Միջերկրական ծովի ափերից գալիս էր նույն Մասիսի ստորոտները և միանում Արևելքից եկող նշված ուղուն։ Միջերկրական ծովի ափերից եկող այդ ճանապարհը փյունիկեցիների առևտրական ճանապարհն էր, որը դուրս էր գալիս Տյուրոսից և, կտրելով Սիրիայի անապատը, հասնում էր Եփ-

ռատ։ Այստեղ նա բաժանվում էր երկու ճյուղի, դրանցից մեկը գնում էր դեպի հարավ՝ Բաբելոն, իսկ մյուսը՝ դեպի հյուսիս, Արածանիի և Արաքսի հովիտներով դեպի Կասպից ծով։ Հենց այդ գծով էր Բաբելոնը կապվում հյուսիսային երկրների հետ։ Նույն այդ ճանապարհն հարավում միանում էր Եգիպտոս գնացող ուղուն։

Հնդկաստանի և Պարսկաստանի ապրանքները Եվրոպան ստանում էր այն ճանապարհով, որն անցնում էր Հայաստանի վրայով և կանգ առնում Սև ծովի ափին գտնվող, այն ժամանակներում մեծ հռչակ ձեռք բերած Տրապիզոն նավահանգստային քաղաքում։ Վերջինս Եվրոպայում, հատկապես միջին դարերում, հայտնի էր «մետաքսի ճանապարհ» անունով։

Առաջավոր Ասիայի տնտեսական ու քաղաքական կյանքի զարգացմանը զուգընթաց, գնալով զարգանում և բազմանում էին նաև համաշխարհային նշանակություն ունեցող ճանապարհները, որոնք առևտրական ու տնտեսական կապերի հետ միասին ունեին նաև վարչական, քաղաքական ու ռազմական նշանակություն։ Այսպես, Աքեմենյան հարստության հիմնադրումից շատ չանցած Պարսկաստանը դարձավ աշխարհակալ մեծ տերություն։ Եվ Դարեհ Ա-ի ժամանակ (522—484, մ. թ. ա.) արդեն պարսկական տիրապետության տակ էր գտնվում հին հայտնի աշխարհի մեծագույն մասը, այդ թվում և Հայաստանը։ Իրարից բաժան և թշնամի սրանեյան մեծ պետությունների միավորումը խոշոր չափով նպաստեց առևտրի և, հետևապես, առևտրական հաղորդակցության զարգացմանը։ Աշխարհակալ մեծ պետությունը կառավարելու և նրա հեռավոր ծայրերը կենտրոնի հետ կապելու համար Աքեմենյանների տիրապետության ժամանակ բացվեցին զանազան ուղղությամբ ձգվող ճանապարհներ։ Այդ ճանապարհներից մեկը, որը ամենից բարեկարգն էր և հայտնին, կառուցվել է Դարեհ Ա-ի ժամանակ։ Նա կոչվում էր «Արքայական ճանապարհ» և ձգվում էր Պարսից ծոցից հյուսիս գտնվող Սուզա մայրաքաղաքից մինչև Միջերկրական ծովի ափերը՝ 2500 կմ երկարությամբ։ Այդ ճանապարհն իր միջին մասում՝ մոտ 320 կմ երկարությամբ, անցնում էր հին Հայաստանի հարավ-արևմտյան մասով։ Հայաստանում նա ուներ հարավ-արևելքից դեպի հյուսիս-արևմուտք ուղղություն։ Կտրելով Տիգրիս և Եփրատ գետերը, Արևմտյան Տիգրիսի հովտով նա գալիս էր Ամիդ (Դիարբեքիր), որտեղից Արղանա գետի հովտով մտնում էր Խարբերդի դաշտը, իսկ այստեղից էլ՝ Մելիտինե (Մալաթիա), ապա շարունակում ընթացքը դեպի արևմուտք։

«Արքայական ճանարհից» մի քանի ճյուղեր դուրս գալով Հայկական լեռնաշխարհի զանազան մասերից, ձգվում էին դեպի հյուսիս և հյուսիս-արևելք՝ մինչև Կապ-Կոհ (Կովկասյան շղթա) և Կասպից ծովի ափերը, որոնք կազմում էին Աքեմենյանների տիրապետության հյուսիսային սահմանը։

Առաջավոր Ասիայում Աքեմենյաններին հաջորդեցին Սելևկյանները, որոնց տիրապետության ժամանակ Առաջավոր Ասիայում սկսվեց տնտեսական վերելք։ Մի կողմից զարգանում էր հելլենիստական մշակույթը, որն արդյունք էր հունական և արևելյան կուլտուրաների ձուլման, իսկ մյուս կողմից՝ առևտուրը, արհեստներն ու նրանց հետ կապված տնտեսության այլ ճյուղերը։ Դրանց շնորհիվ, բնականաբար, կանոնավորվում և ավելի մեծ մասշտաբների էր հասնում հաղորդակցությունը։ Ալեքսանդր Մակեդոնացին և նրա հաջորդները բարեկարգեցին և ապահովեցին Եվրոպայի և Առաջավոր Ասիայի հաղորդակցությունը Միջին Ասիայի և Հնդկաստանի հետ։ Նրանց ժամանակ էր, որ առևտուրն իրոք ստացավ միջազգային բնույթ։ Կարճ ժամանակամիջոցում առևտրական խոշոր կենտրոններ դարձան Եգիպտոսում՝ Ալեքսանդրիան, իսկ Մերձավոր Արևելքում՝ Սելևկիան ու Անտիոքը։ Միջազգային այդ առևտրին մասնակցում էր նաև Հայաստանը, մասնավորապես նրա հարավ-արևմտյան մասը։ Վերջինիս միջով էին անցնում միջազգային առևտրական ճանապարհները և նպաստում նրա քաղաքների ու առևտրի զարգացմանը։ Աքեմենյանների ժամանակ Հայաստանի այդ մասում (Ծոփքում) էին գտնվում Արշամաշատ և Արկաթիակերտ հելլենիստական քաղաքները։

Ավելի ուշ շրջանում՝ Արտաշեսյանների տիրապետության ժամանակներում (189 թ. մ.թ.ա. մինչև 1 թ. մ. թ.) Հայաստանի հնագույն քաղաքների՝ Վանի, Մանազկերտի, Արմավիրի, Երվանդաշատի կողքին, երկրի կենտրոնում բարձրանում են Արտաշատ, իսկ հարավում՝ Տիգրանակերտ քաղաքները։ Վերջին երկուսը բավականին բարեկարգ ճանապարհով կապված էին իրար հետ։ Արտաշատ—Տիգրանակերտ ճանապարհը կոչվում էր «Արքունական ճանապարհ»։ Բացի դրանից, Արտաշատ և Տիգրանակերտ քաղաքներից դուրս էին գալիս այլ ճանապարհներ ևս, որոնք ձգվում էին տարբեր ուղղություններով՝ Արտաշատից դեպի Սատաղ (որը գտնվում էր այժմյան Երզնկա քաղաքից հյուսիս), Արտաշատից դեպի Թավրիզ, Տիգրանակերտից դեպի Տիգրիսի հովիտը, ուր միանում էր Պարսից «Արքայական ճանապարհին» և այլն։ Այս ներքին ճանապարհների վրա ևս կառուցվեցին քաղաքներ, առևտրական

նշանակություն ունեցող ավաններ և կայարաններ, օրինակ՝ Զարիշատը, Զարեհավանը, Բագավանը։

Հայկական լեռնաշխարհի ճանապարհների կենտրոնը, սիրտը ուրարտական շրջանում Վանա լճի արևելյան ափերն էին՝ կենտրոն ունենալով Տուշպա (Վան) մայրաքաղաքը և Արարատյան դաշտը Արգիշտիխինիլի (Արմավիր) քաղաքով։ Իսկ Հայկական շրջանում երկրի գլխավոր ճանապարհների կենտրոնն ու հանգուցակետը դարձան Արարատյան դաշտում գտնվող Արտաշատ և նրա հյուսիսային շարունակությունը կազմող Դվին մայրաքաղաքները։

VI դարում և հետագայում Դվինից դուրս էին գալիս հինգ գլխավոր ճանապարհներ, որոնք տրված են «Մղոնաչափք»-ում և բավական մանրամասնությամբ նկարագրված են Ալիշանի մոտ[1]։

Արտաշատ-Դվինից դուրս եկող ճանապարհները ունեին հետևյալ ուղղությունները. 1) արևմտյան, որ ձգվում էր Դվին—Կարին—Կողոնիա (այժմ՝ Շապին-Գարահիսար)—Ամասիա—Բյուզանդիոն ուղղությամբ. 2) հարավ-արևմտյան՝ Դվին—Խլաթ—Քղիմար—Ուռհա—Դամասկոս, իսկ այստեղից էլ կապվում էր Երուսաղեմի և Ալեքսանդրիայի հետ. 3) հյուսիս-արևելյան, որը Հրազդան գետի հովտով ու Գեղամա ծովի (Սևանա լճի) հարավային ափերով գնում էր դեպի Տրտու գետի (Թարթառ) հովիտը և հասնում Աղվանից աշխարհի մայրաքաղաք Պարտավ. 4) հարավ-արևելյան՝ Դվին—Նախճավան—Թավրիզ ուղղությամբ. Թավրիզում միանում էր այն ուղու հետ, որը տանում էր Նինվե—Մծբին—Ուռհա։ Նախճավանում այդ ճանապարհից անջատվում էր մի ուրիշ գիծ, որը ձգվում էր դեպի Արդաբիլ և Պարսկաստանի հյուսիսային մասերը. 5) հյուսիսային, որը Գուգարքի վրայով գնում էր Տփղիս (Թբիլիսի), իսկ այստեղից էլ՝ դեպի ավելի հյուսիս։ Տփղիսից մի ուրիշ, ավելի բարեկարգ ճանապարհ տանում էր դեպի Պարտավ, որը մի կողմից, ինչպես տեսանք, կապված էր Դվինի հետ, իսկ մյուս կողմից՝ Կասպից ծովի արևմտյան ափերի և Դերբենդի հետ։

Հիշատակված ճանապարհներից զատ, հին Հայաստանում գործում էին տեղական բազմաթիվ ճանապարհներ, որոնցով կապ էր պահպանվում տարբեր շրջանների միջև։

Առևտրի և հաղորդակցության մեջ Հայաստանն արտակարգ դեր է ունեցել մանավանդ IX դարի վերջերից մինչև մոնղոլական ավերիչ արշավանքներն ընկած շրջանում։ Այդ ժամանակաշրջանում տարանցիկ ճանապարհներն անցնում էին Այրարատյան աշխարհով։ Աշխույժ առևտրի շնորհիվ ոչ միայն իրենց նշանակությամբ

[1] Տե՛ս Ղ. Ալիշան, *Այրարատ*, Վենետիկ, 1890, էջ 413։

պահպանեցին Հայաստանի ավելի հին քաղաքներ Դվինը, Վանը, Նախճավանը և մյուսները, այլև առաջ եկան ու արագորեն փարթամացան նոր քաղաքներ, ինչպիսիք են՝ Անին, Կարսը, Արծնը և ուրիշներ։ Ավելի աշխուժացավ քարավանային երթևեկությունը հին ճանապարհներով, բացվեցին նոր ճանապարհներ։

Ինչպես տեսանք, Հայաստանը գտնվելով Արևելքի և Արևմուտքի միջև, հանդիսացել է նրանց կապող օղակը։ Հայաստանի այդպիսի դիրքը նրա տնտեսության համար դրական էր այն առումով, որ նա սերտորեն կապված էր համաշխարհային առևտրի հետ, որն իր հերթին նպաստում էր ներքին առևտրի և արհեստագործության զարգացմանը։ Սակայն ճանապարհի վրա ընկած լինելը Հայաստանի համար ուներ նաև խիստ բացասական նշանակություն։ Որպես ստրատեգիական և տնտեսական խոշոր նշանակություն ունեցող երկիր և դրեթե միշտ գտնվելով աշխարհակալ պետությունների միջև, Հայաստանը շարունակ թատերաբեմ է եղել բազմաթիվ պատերազմների։ Եթե դրա վրա ավելացնենք նաև այն բազմաթիվ ավերիչ արշավանքները, որոնք պատմության ընթացքում տեղի են ունեցել արաբների, սելջուկների և թաթար-մոնղոլների ու թուրքական այլ ցեղերի կողմից դեպի Հայաստան, ապա հասկանալի է դառնում, թե ինչու Հայկական լեռնաշխարհի աշխարհագրական դիրքը երկրի տնտեսության զարգացման տեսակետից համարվում է և՛ բարենպաստ, և՛ աննպաստ։

## ՀԱՄԱՌՈՏ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԵՐԻՏՈՐԻԱՅԻ ԵՎ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՄԱՆ՝ ՍԿՍԱԾ ԱՌԱՋԻՆ ՀԻՇԱՏԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ VII ԴԱՐԸ

### 1. ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԵՐԻՏՈՐԻԱՆ ԵՎ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ Մ. Թ. Ա. V-ԻՑ ՄԻՆՉԵՎ Մ. Թ. I ԴԱՐԸ

Հայաստան ասելով պետք է հասկանալ այն ամբողջական տերիտորիան, որտեղ ապրել ու իր պատմությունն է կերտել հայ ժողովուրդը։

Ուրարտական պետության կործանումից հետո, VI—V դարերից սկսած (մ. թ. ա.)՝ եղած հիշատակություններն արդեն կարելի է ընդունել իբրև հայ ժողովրդի և նրա զբաղեցրած տերիտորիայի՝ Հայաստանի մասին տեղեկություններ։

Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության տակ գտնվելու ժամանակներից սկսած՝ Հայաստանի մասին մեզ են հասել Դարեհ Ա-ի (522—484) Բիսիթունի (Քիրմանշահ քաղաքի մոտ) արձանագրությունը, հույն պատմագիրներ Հերոդոտի ու Քսենոփոնի գրավոր հիշատակությունները։

Դարեհի Բիսիթունի արձանագրության մեջ հիշատակված վայրերը, որոնց մի քանիսի տեղագրությունը դեռևս չի ճշտված, գտնվում էին Հայաստանի (արձանագրության մեջ՝ Արմինա) հարավային սահմանամերձ շրջաններում, այդ պատճառով էլ այդ արձանագրությամբ հնարավոր չէ որոշակի գաղափար կազմել Հայաստանի տերիտորիալ ամբողջականության մասին։ Գրեթե նույնպիսի թերություններ ունեն նաև Հերոդոտի ու Քսենոփոնի հաղորդած վկայությունները։ Սակայն, այնուամենայնիվ, վերջիններիս հաղորդած տեղեկություններն անհամեմատ ավելի ամբողջական և որոշակի են ու հնարավորություն են տալիս, գոնե մոտավոր չափով, իմանալ Հայաստանի տերիտորիալ մեծությունը։

Աքեմենյանների տիրապետությունը, որը Հայաստանում հաստատվել էր 519 թ., Դարեհ Ա-ի ժամանակ, շարունակվեց մինչև 330 թ. (մ.թ.ա.)։

Դարեհ Ա թագավորի օրոք Աքեմենյան Պարսկաստանի կազմի մեջ մտնող բոլոր երկրները, դրանց թվում և Հայաստանը, ենթարկվեցին պետական ու վարչական վերակազմման։ Դարեհ Ա-ն պարսկական ամբողջ պետությունը բաժանել էր մի շարք մեծ շրջանների՝ սատրապությունների, որոնց կառավարիչները կոչվում էին սատրապներ («աշխարհապահ»)։ Սատրապները, որոնք իրենց շրջաններում ունեին վարչական ու դատական իշխանություն և հավաքում ու Աքեմենյան արքունիքն էին ուղարկում պետական հարկերը, ենթարկված էին անմիջապես Դարեհի բարձրագույն իշխանությանը։ Հայաստանի նախկին իշխանավորները, չնայած ենթարկվում էին սատրապներին, բայց պահպանել էին իրենց ներքին իրավունքները։

Հայկական ցեղախմբերի բնակության շրջանները, որոնք Հերոդոտի մոտ կոչված են Արմենիա, կազմում էին Աքեմենյան Պարսկաստանի երկու սատրապություններ՝ 13-րդը և 18-րդը։ 13-րդ սատրապության մեջ մտնում էին Հայկական լեռնաշխարհի արևմտան շրջանները՝ Արմենիան (արմենների երկիրը), Հայասա-Ազզին և նրանց հարևան մի քանի մանր ցեղերի զբաղեցրած շրջանները։ Արմենիան տարածվում էր Տիգրիսի վերին և Արածանիի ստորին հոսանքների շրջանում և տերիտորիայով համընկ-

նում էր ավելի ուշ շրջանում Ծոփք ու Աղձնիք նահանգներին («աշխարհներ»-ին)։ Հավանական պետք է համարել այն, որ նշված ժամանակաշրջանում Արմենիայի մեջ են մտել նաև բազմաթիվ այլ վայրեր Հայկական լեռնաշխարհի կենտրոնական մասերից։

Հերոդոտի հիշատակության համաձայն, Արմենիան, իր արևմտյան սահմանը կազմող Եփրատ գետից սկսած, դեպի հարավ-արևելք, Պարսից «Արքայական ճանապարհի» ուղղությամբ տարածվում էր 56,6 փարսախ (մոտ 320 կմ)։ Եթե նույն չափով նա տարածվում էր նաև արևելյան ուղղությամբ, իսկ դա շատ հավանական է, ապա արևելյան սահմանը Արածանիի ուղղությամբ հասել է Վանա լճի ավազանը՝ իր մեջ ամփոփելով հետագայի Տուրուբերանի մեծ մասը։

Արմենների երկրից անմիջապես հյուսիս տարածվում էր Հայաստան։ Հյուսիսային կողմից նրա սահմանը կազմում էր Պոնտական լեռնաշղթան։

Արմենիայից և Հայաստայից բացի, Աքեմենյան Պարսկաստանի 13-րդ սատրապության մեջ էին մտնում նաև Հայաստայից հյուսիս՝ մինչև Պոնտական ծով (Սև ծով) ընկած շրջանները։

18-րդ սատրապությունը, դարձյալ Հերոդոտի վկայությամբ, կազմված էր մատիենների, սասպեյրների և ալարոդների երկրներից։

Չափազանց հետաքրքրական է, իհարկե, իմանալ 18-րդ սատրապության ճշգրիտ սահմանները, սակայն փաստերի բացակայության պատճառով առայժմ զրկված ենք այդ հնարավորությունից։ Ընդհանուր ձևով կարելի է ասել, որ մատիեններն ապրում էին Վանա և Ուրմիա լճերի միջև, ալարոդները՝ Վանա լճի ավազանում, Արարատյան դաշտում և նրանից արևելք, իսկ սասպեյրները՝ Սպերի և Տայքի կողմերում։

Աքեմենյան Պարսկաստանի տիրապետության ժամանակաշրջանի Հայաստանի մասին ամենակարևոր աղբյուրը Քսենոֆոնի «Անաբասիս» աշխատությունն է, որի մեջ բավական մանրամասնությամբ նկարագրված է Քսենոֆոնի և 10 000 հույն զորքի վերադարձը Հայաստանի ու Տրապիզոնի վրայով դեպի Հունաստան։ Այդ նահանջը տեղի է ունեցել 401—400 թթ. (մ.թ.ա.)։ Հայաստանի մասին Քսենոֆոնի հաղորդած տեղեկությունները միանգամայն արժանահավատ են, որովհետև նա ինքն անձամբ եղել է Հայաստանում և նկարագրել է իբրև ականատես։ Միանգամայն հասկանալի է, որ Քսենոֆոնի տեղեկությունները վերաբերում են Հա-

յաստանի (Արմենիայի) այն մասերին, որոնց միջով նա անցել է հույն զորքերի հետ։

Նրա հաղորդած տեղեկությունների հիման վրա հնարավոր է դառնում դատել ոչ միայն զուտ պատմական մի շարք հարցերի մասին, այլև շատ թե քիչ որոշակի գաղափար կազմել այն ժամանակի Հայաստանի տերիտորիայի և վարչական բաժանման վերաբերյալ[1]։

---

[1] Քսենոֆոնի հաղորդած տեղեկությունները, ինչպես բուն տեքստում ասացինք, վերաբերում են Հայաստանի՝ նրա նահանջի ճանապարհին ընկած շրջաններին։ Այդ պատճառով էլ բազմաթիվ ուսումնասիրողներ հետաքրքրվել են Քսենոֆոնի նահանջի ճանապարհի ուղղությունը լուսաբանելու հարցով։ Չնայած դրան, մինչև օրս էլ դեռ վերջնականապես չի պարզված այդ ճանապարհի ուղղությունը. ուսումնասիրողների մոտ գոյություն ունի տարակարծություն։ Հիշյալ ճանապարհի ուղղությունը որոշելու համար բոլոր ուսումնասիրողներն էլ օգտվում են հենց իր՝ պատմիչի հիշատակություններից։ Նա իր ճանապարհի նկարագրություններում հիշատակում է մի շարք վայրերի անուններ, որոնցից մի քանիսի տեղագրությունը հայտնի է, և անունները էլ պահպանվել են հին հայկական մատենագրության մեջ։ Դրանք են. Կարդուխների երկիրը, որը համապատասխանում է հին հայկական Կորդվաց աշխարհին, Եփրատը, որը համապատասխանում է հայկական Արածանիին, Փասիանների երկիրը՝ հին հայկական Բասեն գավառը, Տաոխների երկիրը՝ հին հայկական Տայքը, Տրապիզոնը, որն այժմ էլ գոյություն ունի և մի քանի այլ վայրեր։ Ուստի, ուսումնասիրողներն ինչպիսի ոլորաններով էլ տանեն Քսենոֆոնին իր զորքով, համենայն դեպս, նրան անց են կացնում նշված վայրերով։

Գրեթե բոլոր ուսումնասիրողները, բացառությամբ պրոֆ. Ստ. Լիսիցյանի, Քսենոֆոնի նահանջի ճանապարհը Կորդվաց աշխարհից մինչև Մուշի դաշտը, որոշում են միևնույն ուղղությամբ։ Նրանց կարծիքով՝ Քսենոֆոնը Կորդվաց աշխարհից Հայաստան է մտել Արևելյան Տիգրիսի (Քսենոֆոնի մոտ՝ Կենտրիտես) գետաբերանից ոչ հեռու՝ Սղերդ քաղաքի մոտով, այնուհետև Հայաստանի միջով շարժվել է դեպի հյուսիս-արևմուտք՝ մինչև Ջիբենե գետի միջին հոսանքը, իսկ այստեղից էլ, թեքվելով հյուսիս-արևելյան ուղղությամբ, անցել է Հայկական Տավրոս լեռնաշղթան և մտել Մուշի դաշտը։

Քսենոֆոնի նահանջի ճանապարհի՝ Մուշի դաշտից մինչև Տրապիզոն ձգվող հատվածի ուղղության վերաբերյալ նույն ուսումնասիրողների մոտ կան տարբեր կարծիքներ։ Նրանցից ոմանք պնդում են, որ Քսենոֆոնը Մուշի դաշտից դիմել է հյուսիս կամ հյուսիս-արևելք և, անցնելով Եփրատ-Արածանին, նախ մտել է Խնուսի դաշտը, ապա Կարնո շրջանը, իսկ այստեղից էլ դիմել է դեպի արևմուտք, Բաբերդի մոտ անցնելով Ճորոխը, ուղղվել է հյուսիս-արևելք և հասել Տրապիզոն։ Գիտնականների մյուս մասի կարծիքով՝ հույները Մուշի դաշտից մտել են Մանազկերտի շրջանը, որտեղից գնացել են դեպի հյուսիս և անցել Արածանին այժմյան Ղարաքիլիսայի մոտ ու դուրս եկել Ալաշկերտի դաշտը, իսկ այստեղից էլ, Կարինի ու Բաբերդի մոտով ուղղություն վերցնելով դեպի արևմուտք, հասել են Տրապիզոն։ Ակադեմիկոս Մանանդյանը հույների նահանջի ճանապարհը Ալաշկերտի դաշտից սկսած մինչև Տրապիզոն որոշում է մի այլ ուղղությամբ։ Ըստ նրա, հույներն Ալաշկերտի դաշտով և Հայկական Պարի վրա գտնվող Դալի-բաբա լեռ-

*Քսենոֆոնի հիշատակության համաձայն, Արմենիան իր ժամանակներում վարչականորեն բաժանված էր երկու մասի՝ Արևելյան Արմենիայի և Արևմտյան Արմենիայի։ Նրանցից յուրաքանչյուրը կազմում էր մի-մի սատրապություն և մտնում էր Աքեմենյան Պարսկաստանի կազմի մեջ։ Ն. Ադոնցի կարծիքով՝ Քսենոֆոնի հիշատակած Արմենիայի (Հայաստան) Արևելյան և Արևմտյան մասերը համապատասխանում են նույն Աքեմենյան ժամանակաշրջանի վերոհիշյալ 18-րդ և 13-րդ սատրապություններին*[1]*, որոնք հիշատակված են Հերոդոտի կողմից։ Իսկ դրանից երևում է, որ Հերոդոտի ժամանակ 18-րդ սատրապության մեջ հայացման պրոցեսը շատ խորն էր գնացել, այդ էր պատճառը, որ Հերոդոտից հետո շատ չանցած, Քսենոֆոնն արդեն 18-րդ սատրապությունը հիշատակում է ո՛չ որպես սասպերների, մատիենների և ալարոդների երկիր, այլ Արևելյան Արմենիա (Արևելյան Հայաստան)։*

*Սելևկյանների տիրապետության ժամանակաշրջանում (IV դարի վերջերից մինչև II դարի սկզբները մ. թ. ա.), Հայաստանի մի մասը ենթարկված էր Սելևկյան թագավորներին։ Հայաստանը այդ ժամանակ բաղկացած էր երեք հիմնական մասերից՝ Փոքր Հայք, Ծոփք և Մեծ Հայք։ Նրանցից Փոքր Հայքը և Մեծ Հայքի հյուսիսային մասը ինքնուրույն էին և կառավարվում էին տեղական թագավորներով։ Պատմագիտական և հնագիտական վերջին ուսումնասիրությունների արդյունքները ցույց են տալիս, որ Մեծ Հայքում իշխում էին Երվանդունի թագավորները։ Երվանդունիներն Արարատյան դաշտում կառուցել էին մի քանի բերդեր և քաղաքներ,*

---

*նանցքով անցել են Բասեն, այստեղից՝ դեպի Օլթիի շրջանը, ուր գտնվում էր տաոխների երկիրը և, այնուհետև, Սարիղամիշի շրջանով ու Կարսի հարավային մասով՝ դեպի Կաղզվանի կողմերը։ Կաղզվանի շրջանից նրանք Արարատյան դաշտով շարժվել են արևելք, մինչև Հրազդան գետի մոտերքը, ապա թեքվելով հյուսիս-արևմուտք, անցել են Արագածի հյուսիսային մասով և դուրս եկել Շիրակի դաշտը, այստեղից էլ շարունակելով իրենց ճանապարհը Արդահանի հարավային մասով դեպի Ճորոխ, անցել են գետը և մակրոնների ու կոլխերի երկրների միջով ուղղվել դեպի Տրապիզոն։*

*Պրոֆ. Ստ. Լիսիցյանը հույների նահանջի ճանապարհը որոշում է միանգամայն այլ ուղղությամբ։ Ըստ նրա, հույները, Կորդվաց աշխարհից մտնելով Հայաստան, շարժվել են «Արքայական ճանապարհի» ուղղությամբ և դուրս եկել Խարբերդի դաշտը։ Այստեղից նրանք գնացել են Լեշեգ-Քղի-Փերի գետի ուղղությամբ և Բյուրակնի արևմտյան մասով դուրս եկել Արաքսի վերին հոսանքի շրջանը, այնուհետև Արաքսի հոսանքին համընթաց գնալով, անցել են Հայկական Պարը և դուրս եկել Բասենի դաշտը, իսկ այստեղից էլ Կարինի ու Բաբերդի վրայով հասել Տրապիզոն։*

[1] *Տե՛ս Н. Адонц*, Армения в эпоху Юстинина, էջ 390։

որոնց մեջ ամենանշանավորներն էին Երվանդաշատ քաղաքը և Երվանդակերտ ամուր բերդը։

Սելևկյան շրջանում Ծոփքը կազմված էր Արևմտյան Տիգրիսի վերին հոսանքի և ստորին Արածանիի վրա ընկած շրջաններից։ Նա Մեծ Հայքին միացվեց բավական ուշ՝ Տիգրան Բ-ի օրոք։

Մեծ Հայքը, ինչպես և հայկական մյուս երկրները՝ Ծոփքն ու Փոքր Հայքը, տարբեր ժամանակներում ունեցել են տարբեր տարածություն։ Գերմանացի հայագետ Հյուբշմանը, հենվելով Ստրաբոնի վկայությունների վրա, ենթադրում է, որ Սելևկյան շրջանում բուն Հայաստանը (հայկական բոլոր երկրները՝ առանց Փոքր Հայքի) իր մեջ էր ընդգրկում հետագա 15 նահանգներից հազիվ չորսը՝ «Չորրորդ Հայքը, Աղձնիքը, Տուրուբերանը և Այրարատը»[1]։ Սակայն փաստերը ցույց են տալիս, որ Սելևկյանների տիրապետության ժամանակաշրջանում Հյուբշմանի նշած նահանգներից բացի, Մեծ Հայքի մասերն են կազմել նաև Վանա լճից հարավ գտնվող Մոկաց աշխարհն ու Ռշտունիքը, ինչպես և լճից հարավ-արևելք ընկած բազմաթիվ շրջաններ։

Բացի դրանից, պետք է նշել, որ հետագայում Մեծ Հայքին միացած Բարձր Հայք նահանգի արևմտյան և հյուսիս-արևմտյան մեծագույն մասը ևս հայկական էր և Սելևկյանների տիրապետության ժամանակաշրջանում մտնում էր Փոքր Հայքի մեջ։

Փոքր Հայքը Սելևկյանների ժամանակաշրջանում ուներ ավելի մեծ տերիտորիա, քան երկրորդ դարից (մ.թ.ա.) մինչև III դարը (մ. թ.) ընկած շրջանում։ Այդ ժամանակաշրջանում, բացի Հալիս և Գայլ գետերի ավազաններից, Փոքր Հայքի մեջ էր մտնում նաև հետագայում Բարձր Հայք կոչվող նահանգի մեծագույն մասը, որը, սակայն, Արտաշես Ա-ն (II դ. մ.թ.ա.) միացրեց Մեծ Հայքին, և այնուհետև նա միշտ մնաց որպես Մեծ Հայքի կազմի մեջ մտնող մի շրջան։

Սելևկյանների տիրապետության ժամանակաշրջանում Մեծ Հայքում, Փոքր Հայքում և Ծոփքում զարգանում է տնտեսությունը և կուլտուրան։ Հասարակության դասակարգային շերտավորումն այդ հիման վրա ավելի է խորանում։ Հայ ժողովուրդն սկսում է ամեն մի առիթ օգտագործել ինքնուրույն պետականություն ձեռք բերելու համար։ Շատ չանցած, հայկական ինքնուրույն պետականությունը դառնում է պատմական իրողություն։

Երրորդ դարի ընթացքում Սելևկյան պետությունը մշտական

[1] Տե՛ս Հ. Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, թարգմ. Պիլեզիկճյանի, Վիեննա, 1907, էջ 16։

պատերազմների, ապստամբությունների և իշխող վերնախավի ներքին երկպառակությունների պատճառով հետզհետե թուլանում էր։ Նրանց աշխարհակալ պետությունից աստիճանաբար անջատվում էին նորանոր երկրներ։

190 թ. (մ.թ.ա.) Մագնեզիայի մոտ Հռոմի կողմից սելևկյան թագավոր Անտիոքոս Մեծի կրած ծանր պարտությունից օգտվելով, իրենց անկախ հայտարարեցին Մեծ Հայքի Արտաշես և Ծոփքի Զարեհ կառավարիչները։ Կազմվեցին Մեծ Հայքի և Ծոփքի պետությունները։

Փոքր Հայքը դրանցից էլ դեռ շատ առաջ էր ձեռք բերել ինքնուրույն պետականություն։

Մեծ Հայքի և Ծոփքի հայկական թագավորությունների գրաված տերիտորիաների և դրանց ընդարձակման մասին բավականաչափ լավ գաղափար ենք կազմում Ստրաբոնի վկայությունների հիման վրա։

Նրա վկայությունից երևում է, որ Մեծ Հայքի Արտաշես թագավորը իր պետությանն էր միացրել Կասպյան երկիրը (Փայտակարանը), Վասպուրականը (Ստրաբոնի մոտ՝ Բասորոպեդա), Փավնիտիսը (?), որը մի քանի ուսումնասիրողների մոտ նույնացվում է Սյունիքի հետ, Պարիադրեսի լեռնալանջերը՝ Տայքը, Խորձենեն, Գուգարքը (Գոգարինե), Կարնո գավառը (Կարենիտիս), Դերջանը (Դերքսենե)՝ Կարինից արևմուտք, և Տմորիքը (Կորդվաց լեռներից հարավ)։ Իսկ Ծոփքի թագավոր Զարեհը գրավել էր Անտիտավրոսի կողմերը գտնվող երկիրը և Եկեղյաց գավառը, որը այդ ժամանակներում ավելի մեծ տերիտորիա էր գրավում, քան հետագա դարերում։

Այսպիսով, այսրեփրատյան Հայաստանը, այսինքն՝ Մեծ Հայքն ու Ծոփքը, Արտաշես Ա-ի (189—160 թթ. մ.թ.ա.) և Զարեհի օրոք իրենց մեջ բովանդակում էին Փայտակարանը, Սյունիքը, Վասպուրականը, Այրարատը, Գուգարքը, Տայքը, Բարձր Հայքի մեծ մասը, Տուրուբերանը, Չորրորդ Հայքը, Աղձնիքը, Մոկքը, Կորճեքի մեծագույն մասը և թերևս նաև Ուտիքն ու Արցախը, այսինքն՝ ավելի ուշ շրջանի՝ Արշակունիների թագավորության ժամանակաշրջանի հայկական պետության 15 նահանգներից 14-ը։

Ստրաբոնը հաղորդում է նաև, որ ընդլայնված Հայաստանում բնակչությունը խոսում էր մի լեզվով՝ հայերենով։

Նույն այս երկրորդ դարում (մ.թ.ա), Մեծ Հայքից ու Ծոփքից բացի, ընդարձակվել էր նաև Եփրատից արևմուտք տարածվող Փոքր Հայքը, որը նվաճել էր Պարիադրես (Պարխարյան) լեռների

արևմտյան լեռնալանջերն ու Պոնտոսի հյուսիս-արևելյան ծովափնյա շրջանները։

Հայկական այդ երեք թագավորությունների մեջ ամենաընդարձակը և զորեղը Արտաշես Ա-ի թագավորությունն էր՝ Մեծ Հայքը։

Մեծ Հայքի մասին պատմագիրները մանրամասն տեղեկություններ են հաղորդում սկսած Տիգրան Բ-ի (95—56, մ. թ. ա.) ժամանակներից։

Տիգրան Բ-ն գահ բարձրանալուց անմիջապես հետո վերադարձվում է պատանդությունից ազատվելու համար Պարսկաստանին զիջած 70 հովիտները, որոնք գտնվում էին Ատրպատականի կողմերում և Մեծ Հայքին էին միացված դեռևս Արտաշես Ա-ի օրոք։ Այդ 70 հովիտները, ուսումնասիրողների մեծ մասի կարծիքով, տերիտորիայով համընկնում էին հետագայում Պարսկահայք կոչված նահանգին։ Տիգրանն այնուհետև (մոտավորապես 94 թվին մ.թ.ա.) Մեծ Հայքին է միացնում Ծոփքը, որը նրա կազմի մեջ մնաց նաև հետագա դարերի ընթացքում։

Ծոփքի միացումից հետո Տիգրան Բ-ի ընդարձակ թագավորությունը արևմուտքում, բացի Պոնտոսից, անմիջապես սահմանակից դարձավ նաև Կապադովկիային։ Ծոփքի միացումից շատ չանցած, և գուցե դրանից էլ առաջ, Տիգրան Բ-ն Մեծ Հայքին միացրեց նաև Փոքր Հայքի արևելյան շրջանները, որոնք կազմեցին Կարնո աշխարհի (հետագայում՝ Բարձր Հայք) մասերը։ Հարավային կողմերում նա Հայկական պետությանը միացրեց Կորդվաց աշխարհը։

Տիգրանի նվաճած այդ երկրները այնուհետև կազմեցին Հայկական պետության մասերը։ Իսկ Տիգրանի մյուս պատերազմներով ձեռք բերած երկրները՝ Ատրպատականը, Մեծ Մեդիան, Ադիաբենը, Օսրոյենը, Միգդոնիան, Կոմագենը, Ասորիքը և մյուսները շատ կարճ ժամանակ մնացին Հայկական պետության կազմում։ Երբ նվաճված երկրներն անջատվեցին Տիգրանի պետությունից, իսկ դա տեղի ունեցավ Պոմպեոսի արշավանքից հետո (65 թ. մ.թ.ա.), Հայաստանի քաղաքական սահմանները գրեթե համընկան Հայկական լեռնաշխարհի սահմանների հետ։ Այնպես որ հին Հայաստան կամ, հայագիտության մեջ հաճախակի գործածվող՝ պատմական Հայաստան ասելով, տերիտորիալ տեսակետից պետք է հասկանալ ոչ թե Տիգրան Բ-ի աշխարհակալ պետությունը, այլ Արտաշես Ա-ի օրոք եղած Մեծ Հայքի տերիտորիան և Տիգրանի ժամանակ նրան միացված Ծոփքը, Փոքր Հայքի արևելյան մասը, Կորդուքը և Նոր Շիրականը, որն ավելի ուշ շրջանում կոչվում էր Պարսկահայք։ Հին Հայաստանն այդպիսի կազմով, որը, ինչպես ասվեց,

տերիտորիայով, բացի հյուսիս-արևելյան և հյուսիսային մասերում եղած շեղումների, հիմնականում համընկնում էր Հայկական լեռնաշխարհին, ուներ հետևյալ սահմանները. հյուսիսում նրա սահմանը կազմում էր Կուր գետը, հարավում՝ Կորդվաց և Մասիուս լեռները, արևմուտքում՝ Եփրատ գետը, իսկ արևելքում՝ Կասպիտան լիճն ու նրանից հյուսիս-արևելք ձգվող լեռնաշղթան։ Տիգրան Բ-ի ժամանակներից սկսած, նշված սահմաններում ամփոփված երկիրը հայտնի է դարձել Մեծ Հայք կամ Հայաստան անունով։ Եվ չնայած որ հետագա դարերում հաճախակի փոփոխություններ են կրել նրա սահմանները՝ մերթ նեղացել, մերթ լայնացել, մերթ էլ, վարչական-քաղաքական տեսակետից երկիրը բաժանվել է տարբեր պետությունների միջև, այնուամենայնիվ, աշխարհագիրների և պատմաբանների մոտ Հայաստան է կոչվել վերը հիշված տերիտորիալ ամբողջականությունը։ Թե որքանով է աշխարհագրական այդ հասկացողությունը համապատասխանում պատմական իրողությանը, կըտեսնենք հետո՝ հարմար առիթով։

Սելևկյանների և Արտաշեսյանների տիրապետության շրջանում Հայաստանը գանվում էր մի շարք երկրների միջև։ Այդ երկրներից էին Վիրքը, Աղվանքը, Ատրպատականը, Պարթևական թագավորությունը, Կապադովկիան, Պոնտոսը և Տիգրիսի վերին հոսանքում ու Հյուսիսային Միջագետքում ընկած Աղիաբենի, Միգդոնիայի (Մծբին կենտրոնով) և Օսրոյենի (Եդեսիա կենտրոնով) փոքրիկ թագավորությունները, որոնք մեծ մասամբ ենթակա էին պարթևներին։ Հայաստանն այդ հարևանների հետ ուներ տնտեսական և կուլտուրական ամուր կապեր։

Արտաշեսյանների թագավորության շրջանում Հայկական պետությունը վարչական տեսակետից բաժանված էր երկու խոշոր մասերի՝ ներքին գավառների և արտաքին երկրների։

Արտաքինի մեջ մտնում էին Արվաստանի (Մծբինի շրջակայքը), Կորդուքի, Նոր Շիրականի, Գուգարքի, Ծոփքի և Աղձնիքի բդեշխությունները, որոնք Տիգրան Բ-ի և Պոմպեոսի միջև կնքված 65 թ. (մ.թ.ա.) դաշնագրով մնացին Հայկական պետության կազմում։ Բդեշխությունները կիսանկախ էին և վասալական կախում ունեին հայ թագավորներից։ Բդեշխությունների վասալական կարևոր ծառայությունը հայոց թագավորներին այն էր, որ նրանցից յուրաքանչյուրն իր կողմում պաշտպանում էր Հայկական պետության սահմանները։ Այդ պատճառով էլ բդեշխությունները կոչվում էին նաև «կողմնակալություն» կամ «սահմանակալություն»։ Բդեշխները արքունիքում ավելի բարձր գիրք ունեին, քան երկրի ներսի հողատեր

ազնվականները։ Բդեշխի պաշտոնը բոլոր տեղերում ժառանգական էր, բացառությամբ Տիգրան Բ-ի օրոք՝ Աղձնիքի բդեշխի պաշտոնի, որը վարում էր թագավորի մերձավորներից մեկը։ Այդ էլ այն պատճառով, որ Աղձնիքը, Տիգրանակերտ մայրաքաղաքով հանդերձ, պատկանում էր արքունական տանը։

Մի փոքր այլ էր պետության ներքին շրջանների վարչական վիճակը։ Կենտրոնական գավառներում կառավարիչներ նշանակում էր թագավորը։ Կառավարիչներ էին նշանակվում արդեն ընդարձակ հողային կալվածքներ ձեռք բերած ազնվականներից։ Նրանք, չնայած ձեռք էին բերել բավականաչափ կալվածատիրական իրավունքներ, բայց ժառանգաբար իրավունք չունեին կառավարել տվյալ գավառը կամ շրջանը։ Թագավորը «աշխարհներում» ու գավառներում կառավարիչ էր նշանակում ամենաազդեցիկ հողատիրական տոհմի ավագին՝ տալով նրան «նահապետ», «տանուտեր» տիտղոսը։

Արտաշեսյանների թագավորության ժամանակաշրջանի երկրի ներքին գավառների վարչական բաժանման մասին շատ քիչ տեղեկություններ են հասել մեզ։ Այդ պատճառով էլ առայժմ հնարավոր չէ տալ վարչական բաժանման լիակատար և վերջնական պատկերը։ Ակադ. Հ. Մանանդյանը հավանական համարելով, որ հին Հայաստանը դեռևս Արտաշես Ա-ի ժամանակաշրջանում «ունեցել է ֆեոդալական կազմակերպության (տնտեսաձևին—Թ. Հ.) հատուկ սաղմերը և առանձին հիմքերը», գտնում է, որ երկիրը այդ ժամանակ մասնատված էր բազմաթիվ շրջանների, որոնց մեջ, նրա կարծիքով, «հավանորեն տնտեսապես և քաղաքականապես գերակշռող» դեր է կատարել «կալվածատեր ազնվականությունը»[1]։

Հռոմեական աշխարհագիր Պլինիոս Ավագի վկայությամբ, Հայաստանը նրա ժամանակ (23—79) բաժանված էր 120 շրջանների, որոնց նա անվանում էր ստրատեգիաներ (բառացի՝ «զորավարություններ»)։ Ուսումնասիրողների կարծիքով, այդ շրջանների մեծագույն մասը գոյություն ուներ դեռևս Տիգրան Բ-ի օրոք։

Հավանական պետք է համարել այն, որ Արտաշեսյանների թագավորության ժամանակաշրջանում, հատկապես Տիգրանի օրոք, վարչական շրջանները հիմնականում համապատասխանում էին ռազմականին։

Արտաշեսյանների ժամանակ Հայաստանն ուներ երկու մայրաքաղաք՝ Արտաշատը, որը կառուցվել էր Արտաշես Ա-ի օրոք (մոտա-

[1] Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934, էջ 248—251։ Հմմտ. նաև՝ Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 392։

*վորապես մ. թ. ա. 166 թ.) և Տիգրանակերտը՝ հիմնադրված Տիգրան Բ-ի օրոք (մ. թ. ա. 77 թ.)։*

## 2. ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԵՐԻՏՈՐԻԱՆ ԵՎ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄԸ I ԴԱՐԻ ԿԵՍԻՑ ՄԻՆՉԵՎ VII ԴԱՐԻ ԿԵՍԸ (Մ. Թ.)

*Հայկական պետության տերիտորիայի մասին ավելի մանրամասն տեղեկություններ ունենք Արշակունիների թագավորության շրջանից (66—429 մ. թ.)։ Այսպես, պատմագիրների հաղորդած տեղեկություններից պարզ երևում է, որ այդ ժամանակաշրջանում Հայկական պետության սահմանը հարավ-արևելքում հասնում էր Զինթա ամրոցին (այժմյան Քելիշինի լեռնանցքի շրջանում) և Ատրպատականի Գանձակ քաղաքին (Մարաղայից հարավ)։ Հարավում Հայկական պետության սահմանը նույն ժամանակաշրջանում հասնում էր Կորդվաց լեռներին և Արևմտյան Տիգրիսին, հյուսիսում՝ Կուր գետին, իսկ արևմուտքում՝ Եփրատին։*

*Նշված սահմաններում ամփոփված երկրում բնակչության ճնշող մասը կազմում էին հայերը։ Բայց, մանավանդ, ծայրամասային շրջաններում հայերի հետ միասին ապրում էին նաև այլ ժողովուրդներ՝ կորդվացիներ, մարեր, աղվաններ, վրացիներ, հույներ, ասորիներ, կապադովկիացիներ և այլք։ Այնպես որ Արշակունիների շրջանում հայ ժողովրդի էթնիկական սահմանները միայն մոտավոր չափով էին համընկնում պետական սահմանների հետ։ Եթե հարավ-արևելքում և արևելքում Հայկական պետության սահմաններն ավելի ընդարձակ էին էթնիկականից, ապա արևմուտքում ճիշտ հակառակն էր. այստեղ Հայկական պետության սահմանն անցնում էր Եփրատ գետով, մինչդեռ ամբողջ Փոքր Հայքը, որի բնակչության հիմնական մասը կազմում էին հայերը, տարածվում էր Եփրատ գետից արևմուտք։ Դեռ ավելին, մի քիչ ավելի ուշ՝ VI դարում հայկական տարրը ձգվում է դեպի արևմուտք այն աստիճան, որ համարյա ամբողջ Կապադովկիայում ձեռք է բերում բացարձակ գերակշռություն, որով մասնավորապես և պայմանավորված էր Հուստինիանոսի ժամանակաշրջանում (527—565) կատարված նոր պրովինցիալ բաժանումը Փոքր Ասիայի արևելյան մասում։*

*Արշակունիների թագավորության ժամանակաշրջանում Հայկական պետության՝ վերը նշված քաղաքական սահմանները գրեթե մնացել են անփոփոխ՝ մինչև 387 թ.։ Նշված սահմանները Արշակունիների Հայկական պետության առավելագույն սահմաններն*

էին։ Ծայրամասային նահանգները՝ Աղձնիքը, Կորդուքը, Արցախը, Ուտիքը, Գուգարքը, երբեմն ապստամբելով՝ դուրս էին գալիս Հայկական պետության շրջանակներից, բայց այդ ապստամբությունները ճնշվում էին, և նրանք նորից միացվում էին Հայկական պետությանը։ Բացի այդ, Հռոմն ու Պարսկաստանը ևս ժամանակավորապես իրենց ձեռքն էին գցում Հայաստանի մեջ մտնող զանազան շրջաններ, որոնք տարածվում էին հարավ-արևելքում, հարավում և հարավ-արևմուտքում։ Սակայն մինչև չորրորդ դարի երկրորդ կեսը հայկական զորքի ուժով այդ շրջանները նորից միացվում էին Հայաստանին։

Արշակունիների թագավորության ժամանակաշրջանում Հայկական պետության հիմնական մայրաքաղաքներն էին Արտաշատը և Վաղարշապատը։

Երկարաձիգ պատերազմները Հռոմի և Սասանյան Պարսկաստանի միջև վերջացան նրանով, որ IV դարի վերջերին Հայաստանը բաժանվեց այդ երկու տերությունների միջև։ Պայմանագրային համաձայնությունը, որը տեղի ունեցավ 387 թ., ուժի մեջ մնաց մինչև 591 թ., երբ Պարսկաստանի համեմատությամբ Բյուզանդիայի բարենպաստ պայմանների շնորհիվ Հայաստանի կենտրոնական նահանգները Սասանյաններից ժամանակավորապես անցան Բյուզանդիային։

Պարսկաստանի և Հռոմի միջև կնքված հատուկ պայմանագրով Հայաստանի ծայրամասային նահանգները՝ Ծոփքը, Աղձնիքը, Կորդուքը, Նոր Շիրականը (Պարսկահայքը), Բաղասական աշխարհը (Փայտակարան), Արցախը, Ուտիքը և Գուգարքը համարվեցին Հայաստանից անջատված և մտցվեցին այդ պետությունների կազմի մեջ։ Հայաստանի կազմում մնում էին միայն կենտրոնական նահանգները, որոնք բաժանվեցին հիշյալ պետությունների միջև։ Հայաստանի խոշորագույն մասը՝ $^{4}/_{5}$-ը անցավ պարսիկներին, իսկ $^{1}/_{5}$-ը՝ հռոմեացիներին։

Այդ բաժանումից հետո, որը պատմության մեջ հայտնի է Հայաստանի առաջին քաղաքական բաժանում անունով, այլևս Մեծ Հայքն ամբողջությամբ ընդգրկող մի միասնական հայկական թագավորություն չստեղծվեց։

Հայաստանի արևելյան և արևմտյան մասերի բաժանումը ոչ միայն տերիտորիալ իմաստ ուներ, այլև քաղաքական, նույնիսկ կուլտուրական։ Թե՛ պարսիկները և թե՛ հատկապես հռոմեացիները ամենազանազան եղանակներով ազդում էին հայ ժողովրդի ներքին կյանքի վրա՝ իհարկե, բացասական իմաստով։

387 թ. այդ բաժանմամբ Հայաստանում Հռոմի ու Պարսկաստանի միջև սահմանն անցնում էր Մծբին—Կարին (այժմ՝ Էրզրում) գծով։

Այդ գծի ուղղությամբ թե՛ հռոմեական և թե՛ պարսկական մասում կային և կառուցվեցին մի շարք բերդաքաղաքներ ու բերդեր։ Այսպես, սահմանի հարավային ծայրակետ Մծբինը, որն ամրացված քաղաք էր, գտնվում էր պարսկական բաժնում, նրա դիմաց, դեպի հյուսիս տարածվող Դարա շրջանում գտնվում էր հռոմեական Դարա կամ Անաստասուպոլիս ամուր քաղաքը (այժմյան Կարա-Դարա փոքրիկ գյուղի մոտ)։

Ավելի հյուսիս, սահմանային Նիմֆիոս (այժմ՝ Բաթման-սու) գետի աջ կողմում, հռոմեական մասում գտնվում էր Մարտիրուպոլիս (Տիգրանակերտ) քաղաքը։ Գետի ձախ ափին տարածվում էր պարսկական Արզանեն հարուստ շրջանը՝ Արզն քաղաքով։ Բացի դրանից, Մարտիրուպոլսի ուղիղ դիմաց, պարսկական մասում, Ակբա լեռան վրա գտնվում էր Ակբա ամրոցը (այժմ՝ Անուշիրվան-կալա)։ Ակբայից ոչ այնքան հեռու գոյություն ունեին ևս պարսկական սահմանագլխային երկու բերդեր՝ Ափումը և Խլոմարը կամ Քղիմարը։ Հենց պարսկական այդ բերդերի (Ակբայի, Ափումի և Խլոմարի) գրավման համար էին գործողություններ կատարում հռոմեական զորքերը VI դարի վերջերին ծագած երկարատև պատերազմների ընթացքում։

Պարսկական Ակբա, Ափում և Խլոմար բերդերի դիմաց կանգնած էին հռոմեական ամրացված բերդերը։ Այսպես, բացի Մարտիրուպոլսից և նրանից հյուսիս գտնվող Աթթախ բերդից գոյություն ուներ և Փիս բերդը, որը գտնվում էր Մարտիրուպոլսից 35 կմ հեռավորության վրա։ Փիսից դեպի արևմուտք, 8—10 կմ հեռավորության վրա գտնվում էին Կլեսուրի երկու լեռնանցքները՝ մեկը մյուսին շատ մոտ։ Այս կողմերում պարսկական մասից դեպի հռոմեականը կարելի էր անցնել միայն այդ երկու լեռնանցքներով, այլ ճանապարհ գոյություն չուներ։ Մեզ հասած տեղեկությունների համաձայն, հետագայում Հուստինիանոս կայսրի օրոք ավելի ամրացվեցին ստրատեգիական բացառիկ նշանակություն ունեցող Փիս բերդն ու Կլեսուրի լեռնանցքները։

Փիսից հյուսիս լայնական ուղղությամբ տարածվում էր Հայկական Տավրոսը։

Հայկական Տավրոսից հյուսիս, Արածանիի հովտում սահմանն ուղղված էր դեպի Թեոդոսուպոլիս (Կարին)։ Այս շրջանում հռոմեական տիրապետությունը պարսկականի հետ շփվում էր Հաշտ-

յանք և Խորձյան գավառներում՝ Կթառիճ և Արտալես (կամ Արտալեսոն) բերդերի ամրացված գծով։ Կթառիճը գտնվում էր Հաշտյանք գավառում և, մինչև Հուստինիանոս կայսրը, իրենից ներկայացնում էր մի անշուք գյուղ։ Հուստինիանոսն այստեղ կառուցեց ամուր բերդ՝ արհեստական ջրամբար-խրամատներով, այն դարձնելով Հաշտյանք գավառամասում պաշտպանության հենակետ։ Նույնպիսի դեր էր կատարում Արտալեսը Խորձյան գավառում։

Թեոդոսուպոլսի կողմերում երկու պետությունների սահմանը այնքան էլ որոշակի չէր։

Թեոդոսուպոլիսը գտնվում էր հռոմեական մասում։ Նա ուղղակի սահմանի վրա չէր, այլ մի փոքր արևմուտք։ Այս մասում անմիջական սահմանի վրա գտնվում էր Դու գյուղը, իսկ դեպի հյուսիս, այժմյան Կանդիլ լեռան մոտերքում՝ Ծաղիկ գյուղը։

Ի հակադրություն Թեոդոսուպոլսի, պարսկական մասում գտնըվում էր Բոլ կամ Բող բերդը, որը բավականաչափ մեծ դեր խաղաց VI դարի պարսկա-հռոմեական պատերազմների ժամանակ։ Բող բերդի տեղը ճշգրիտ չի որոշված։ Սովորաբար այդ բերդը տեղադրում են այժմյան Հասան-կալա քաղաքի տեղը։ Ադոնցի կարծիքով Բող բերդի ավերակները պետք է որոնել Կարգաբազար լեռների շրջանում գոյություն ունեցող Բուա-կալա ամրոցի մոտերքում։

Ուրեմն այսպես, Հայաստանի՝ 387 թ. առաջին բաժանման գծի ուղղությամբ հռոմեական մասում գտնվում էին Անաստասուպոլիս (Դարա), Մարտիրուպոլիս (Տիգրանակերտ), Աթթախ, Փիս, երկու Կլեսուրներ, Կթառիճ, Արտալես և Թեոդոսուպոլիս (Կարին) ամրացված կետերը, իսկ պարսկական մասում՝ Մծբին, Արզն, Ակբա, Ափում, Խլոմար և Բող բերդերը։

Երկու պետությունների միջև եղած սահմանն անցնում էր հետևյալ բնագծերով (հարավից-հյուսիս)՝ Մծբին-Իզլայի լեռներ—Բաթման-սու գետ—Սերոկի լեռներ—Դևեբոյնի և Կարգաբազարի լեռներ—Կանդիլ լեռներ և դեպի հյուսիս-արևմուտք՝ մինչև Սև ծովի մոտերքը։

Նկարագրված գծից արևելք ընկած էր Հայաստանի՝ Սասանյան Պարսկաստանին անցած մասը, որը հայտնի է Արևելյան Հայաստան անունով, իսկ գծից արևմուտք հռոմեական մասն էր՝ Արևմտյան Հայաստանը։

**Արևմտյան Հայաստան**

Արևմտյան Հայաստանը տերիտորիայով և ժողովրդի կազմով ներկայացնում էր մի ամբողջություն. այնտեղ գերազանցապես ապրում էին հայեր։ Սակայն Հռոմեական կայ-

սըրութկան կողմից գրավվելու ժամանակի և նրանից ունեցած կախվածության աստիճանի տեսակետից այնտեղ գոյություն ունեին երեք կարգի վարչական միավորներ՝ ինքնավար նախարարություններ կամ Սատրապական Հայաստան, Ներքին Հայք և Փոքր Հայք։

*ա)* **Ինքնավար նախարարություններ** *կամ* **Սատրապական Հայաստան.**—*Ինքնավար նախարարությունները գրավում էին Արածանիի ստորին և Արևմտյան Տիգրիսի վերին հոսանքների վրա ընկած շրջանները։ Նրանք թվով վեց էին՝ Մեծ Ծոփքը, Անգեղտունը, Անձիտը, Ծահունյաց Ծոփքը, Հաշտյանքը և Բալահովիտը։ Նախարարությունների տերիտորիան ավելի հին ժամանակներում կազմում էր Ծոփքի թագավորությունը։*

*Ինքնավար նախարարություններում, ինչպես հենց անունը ցույց է տալիս, հայ նախարարները ներքին կյանքում ունեին ինքնուրույնություն, սակայն քաղաքական գործերում ենթարկված էին Հռոմին և որոշ չափով վերահսկողության տակ էին իրենց ներքին գործերում։ Այդ տերիտորիան Հռոմը զավթել էր մոտավորապես 374 թվականին, Պապ թագավորի սպանությունից հետո։*

*բ)* **Ներքին Հայք.**—*Սա հռոմեացիների, ապա բյուզանդացիների մոտ կոչվել է նաև «Մեծ Հայք»։*

*Ներքին Հայքը կազմված էր Եփրատի վերին հոսանքում ընկած գավառներից, որոնք թվով տասնմեկ էին՝ Խորձյան, Պաղնատուն, Մնձուր, Դարանաղի, Եկեղյաց, Մանանաղի, Դերջան, Կարին, Շաղգոմք, Սպեր և Առյուծ (վերջինս, որի աշխարհագրական դիրքը մեզ համար դեռևս մնում է անհայտ, հիշատակված է միայն «Աշխարհացույց»-ի մեջ)։ Ներքին Հայքը իր տերիտորիայով համընկնում էր «Աշխարհացույց»-ի մեջ նկարագրված Բարձր Հայքի (Կարնո երկիր) հետ։*

*Ներքին Հայքը Հռոմի կողմից զավթվել էր 387 թ. բաժանման ժամանակ։*

*գ)* **Փոքր Հայք.**— *Փոքր Հայքը, ինչպես մենք տեսանք, կազմում էր հնագույն Հայասա երկրի մասը։ Այս երկիրը հայկական էր և ընկած էր Եփրատից արևմուտք։ Սելևկյանների տիրապետության քայքայման ժամանակ առաջինը Փոքր Հայքն էր, որը դեն շպրտեց օտարի լուծը և ստեղծեց իր հայկական անկախ պետությունը։ Փոքր Հայքի թագավորության տիրապետության տակ էին գտնվում նաև հարևան խալդերի և տիբարենների երկրները, այնպես որ նրա սահմանները հյուսիսում հասնում էին Տրապիզոն և Փառնակիա նավահանգիստները։ Բայց Փոքր Հայքի անկախությունը երկար չտևեց։ Միհրդատ Եվպատորը 112 թ. (մ.թ.ա.) գրավում է այն և միացնում*

Պոնտական թագավորությանը։ Այնուհետև, 66 թ. (մ.թ.ա.) հռոմեական զորավար Պոմպեոսը, Պոնտոսի հետ միասին, գրավում է նաև Փոքր Հայքը և դարձնում Հռոմեական կայսրության ենթակա շրջան։ Սկզբում նա անմիջապես չմիացվեց Հռոմին, այլ դարձավ Հռոմի ձեռքին նվիրատվության առարկա, որը տրվում էր այս կամ այն վասալ երկրին՝ Հռոմի նկատմամբ ունեցած հավատարմության և կատարած ծառայությունների համար։

Փոքր Հայքն անմիջականորեն Հռոմեական կայսրությանն է միացվում առաջին դարի (մ.թ.) երկրորդ կեսում։

Հայ պատմագիրների մոտ չափազանց քիչ և աղոտ են Փոքր Հայքի մասին եղած տեղեկությունները։ Փոքր Հայքի դերը որոշ չափով անտեսված է նաև հայագիտական մի շարք ուսումնասիրությունների մեջ։ Հայ ժողովրդի պատմությունը առանց Փոքր Հայքի պատմության կլիներ թերի, որովհետև Փոքր Հայքը ոչ միայն տերիտորիալ տեսակետից հարևան էր Մեծ Հայքին, այլև կուլտուրական, տնտեսական և այլ կապերով սերտորեն կապված էր վերջինիս հետ։ Ավելին՝ Փոքր Հայքում ապրող բնակչության մեջ հայերը միշտ էլ կազմել են բացարձակ մեծամասնություն։ Այս իմաստով էլ նրա պատմությունը կազմում է մեր ժողովրդի պատմության անբաժանելի մասը։

Առաջին դարից սկսած (մ.թ.ա.) Փոքր Հայքը կազմում էր հռոմեական Կապադովկիա պրովինցիայի մի մասը։

Սկզբնաղբյուրների հաղորդած խառնափնթոր տեղեկությունների հիման վրա հնարավոր չէ ճշգրիտ որոշել Փոքր Հայքի ամբողջական սահմանները։ Փոքր Հայքը հռոմեական Կապադովկիա պրովինցիայի կազմի մեջ եղած ժամանակ բաղկացած էր հինգ շրջաններից։ Այդ շրջանները հյուսիսից հարավ ունեին հետևյալ հաջորդական կարգը. Օրբալիսեն, Այտուղան, Այրետիկ, Օրսեն և Օրբիսեն։ Հիշատակված մարզերից Օրբալիսենը գտնվում էր Գայլ գետի հովտում, հաջորդ երկուսը՝ Այտուղանը ու Այրետիկը գտնվում էին Հալիսի ափերին (առաջինը՝ աջ ափին, իսկ երկրորդը՝ ձախ)։ Օրսենը և Օրբիսենը տարածվում էին Կանգալա գետի շրջանում (առաջինը՝ հյուսիսում, իսկ երկրորդը՝ հարավում)։

Այսպիսով, Փոքր Հայքն իբրև Կապադովկիա պրովինցիայի մի մաս, իր մեջ ընդգրկում էր Գայլ գետի ավազանի վերին և միջին մասերը, Հալիս գետի վերին հոսանքի շրջանները և Տևրիկ գետի ավազանն ամբողջությամբ։

Փոքր Հայքի ծայրամասային քաղաքները իրար հետ միացված էին խոշոր նշանակություն ունեցող ռազմական ճանապարհով։ Այդ

ճանապարհը Փոքր Հայքի տերիտորիայում կազմում էր մի մեծ շրջան, միացնելով հետևյալ քաղաքներն իրար հետ. Սեբաստիա—Նիկոպոլիս—Զիմարա—Մելիտինե և նորից Սեբաստիա։ Այդ ճանապարհը, նշված քաղաքներից դուրս եկող ռազմական այլ ճանապարհների հետ միասին, Փոքր Հայքը դարձնում էր ստրատեգիական կարևոր մի հանգույց։

Սակայն Փոքր Հայքը մինչև վերջ չմնաց Կապադովկիայի կազմում։ Երրորդ դարի վերջին՝ Դիոկղետիանոս կայսեր օրոք, նա բաժանվեց Կապադովկիայից և մտավ Հռոմեական կայսրության մեջ որպես առանձին պրովինցիա՝ կազմելով Պոնտական դիոցեզի պրովինցիաներից մեկը։ Չորրորդ դարի երկրորդ կեսին, Թեոդոս կայսեր օրոք (379—395) Փոքր Հայքը բաժանվեց երկու մասի՝ Առաջին Հայքի և Երկրորդ Հայքի։ Առաջին Հայքը կազմում էր Սեբաստիայի մարզը՝ համանուն կենտրոնով և Կոլոնիա, Սատաղ, Սեբաստուպոլիս ու այլ քաղաքներով։ Երկրորդ Հայքը տարածվում էր նրանից հարավ (Մելիտինեի շրջակայքը և դեպի ավելի արևմուտք)։ Նրա մեջ մտան, բացի Մելիտինեից, որը նրա կենտրոնն էր, նաև Արկա, Կոմանա, Արիարաթ ու այլ քաղաքներ։

Առաջին և Երկրորդ Հայքերի բռնած տերիտորիաները զգալի չափով մեծ էին նախկին Փոքր Հայքի տերիտորիայից։ Նրա այդ մեծացումը կատարվեց Կապադովկիայի հաշվին։

Այդպիսի դրությամբ Փոքր Հայքը մնում էր մինչև Հուստինիանոսի ռեֆորմները։

Մինչև Հուստինիանոս կայսրի ռեֆորմները Կայսրության արևելյան մասը բաղկացած էր երկու պրեֆեկտուրայից[1]։ Դրանցից մեկը կոչվում էր Արևելյան պրեֆեկտություն, որը բաղկացած էր հինգ դիոցեզներից, սրանց թվում գտնվում էր և Պոնտական դիոցեզը։ Եփրատից արևմուտք գտնվող հայկական երկրները՝ Առաջին Հայքը, Երկրորդ Հայքը և Պոլեմոնյան Պոնտոսը, որպես պրովինցիաներ մտնում էին Պոնտական դիոցեզի մեջ։ Կայսրության ռազմական միավորումները համընկնում էին քաղաքացիական, վարչա-տերիտորիալ բաժանման հետ։ Պրովինցիաները վարչական տեսակետից կառավարվում էին պրեզիդների կողմից, իսկ ռազմականորեն դրանք ենթարկվում էին դուքսերին ու կոմսերին, սրանք էլ՝ մագիստրոսներին։ Պոնտական դիոցեզում, որը բաղկացած էր 11 պրովինցիայից և որի մեջ, ինչպես ասացինք, մտնում էին Եփ-

[1] Մինչև V դարի երկրորդ քառորդը Բյուզանդական կայսրությունը բաժանված էր չորս երկրամասի՝ պրեֆեկտուրայի, որոնք տրոհված էին դիոցեզների, սրանք էլ իրենց հերթին՝ պրովինցիաների։

*բատից արևմուտք գտնվող հայկական երկրները, կար միայն մի դուքս։ Այդ դուքսը կոչվում էր Հայաստանի դուքս (*dux Armeniae*), որի իշխանությունը տարածվում էր Առաջին Հայքի, Երկրորդ Հայքի և Պոլեմոնյան Պոնտոսի վրա։ Հայաստանի դքսի տրամադրության տակ կար բավականին ստվարաթիվ մի բանակ, որի զինվորների թիվը հասնում էր մոտ 30 000-ի։ Զինվորական գլխավոր միավորները գտնվում էին Սատաղում (Առաջին Հայքում) և Մելիտինեում (Երկրորդ Հայք)։ Հայաստանի դուքսը պատվավոր դիրք էր գրավում վասալական հիերարխիայում։*

*Այնպես որ Փոքր Հայքը կազմում էր Կայսրության բաղկացուցիչ մասը։ Վարչական և իրավական տեսակետից այլ էր նախկին Մեծ Հայքից Կայսրությանը միացած նահանգների դրությունը։ Սրանք ունեին կիսանկախ վիճակ, այսինքն՝ արտաքին քաղաքականությամբ և վասալական ծառայություններով կապված էին Կայսրության հետ, իսկ ներքին կյանքում ունեին ինքնուրույնություն։*

*Ներքին Հայքում պետական ամենաբարձր պաշտոնը կոչվում էր Հայաստանի կոմես (*comes Armeniae*), որը նշանակվում էր կայսրի կողմից։ Կոմեսը ռազմական գործերում ենթարկվում էր մագիստրոսին։ Սատրապական Հայաստանում իշխում էին հայ նախարարները, որոնց վրա հսկող պետական որևէ պաշտոնյա չկար։*

*Ռազմական միավորումների և վարչական բաժանման այդ ձևը Արևմտյան Հայաստանում իր գոյությունը պահպանեց մինչև VI դարի երկրորդ քառորդը՝ Հուստինիանոս կայսրի ժամանակները։*

*Հուստինիանոս կայսրը (527—565) կատարեց մի շարք վերափոխություններ, որոնք ընդգրկեցին օրենսդրական, դատական, ռազմական և վարչական բնագավառները։ Բռնակալ Հուստինիանոսը կայսրության հիմքը համարում էր զենքն ու օրենքը։*

*Հուստինիանոսը 529 թվականին հատուկ հրովարտակով ռազմական վերակազմության ենթարկեց Բյուզանդական կայսրության մեջ եղած հայկական բոլոր հողերը։ Արևմտյան Հայաստանում նրա կատարած ռազմական վերափոխություններն արդյունք էին պարսկա-բյուզանդական պատերազմների ժամանակ վերջինիս ունեցած անհաջողությունների։ Այդ պատերազմները ցույց տվեցին, որ Ներքին Հայքի նախարարությունները և Սատրապական Հայաստանի զորքերը չէին կարող և ցանկություն էլ չունեին միաբանված կռվել բյուզանդական կանոնավոր զորքերի շարքում ի փառս օտարների։*

Հուստինիանոսի կատարած ռազմական վերակազմության համաձայն, վերացվեցին Սատրապական Հայաստանի նախարարների իշխանական պաշտոնները, իսկ նրանց տեղը նշանակվեցին օտարազգի երկու դուքսեր։ Ռազմական այդ վերափոխության էությունն այն էր, որ Բյուզանդական կայսրության ենթակա հայկական բոլոր երկրները՝ Առաջին Հայքը, Երկրորդ Հայքը, Ներքին Հայքը և Սատրապական Հայաստանը ընկան մի զինվորական պետի տիրակալության տակ։ Այդ պետը կոչվում էր ստրատեգ կամ մագիստրոս (մոտավորապես համապատասխանում է գեներալ-նահանգապետին), որի նստավայրը Թեոդոսուպոլիս (Կարին) բերդաքաղաքն էր։ Մագիստրոսին էին ենթարկվում բյուզանդական Հայաստանի մնացած բոլոր պաշտոնյաները։ Վերացվեցին կոմեսի պաշտոնը, հայ նախարարների սեփական զորք ունենալու ժառանգական իրավունքները և այլն։

Մագիստրոսի տրամադրության տակ գտնվող գլխավոր բերդաքաղաքներն էին, ամրությունների առաջին գծի վրա՝ Թեոդոսուպոլիսը (Ներքին Հայքում) և Մարտիրուպոլիսը (Սատրապական Հայաստանում)։ Դրանցից դեպի արևմուտք անցնում էր ամրությունների երկրորդ գիծը՝ Սատաղ (Առաջին Հայքում) և Մելիտինե (Երկրորդ Հայքում) բերդաքաղաքներով։

Հուստինիանոսի օրոք, նրա հրամանով վերակառուցեցին և դժվարամատույց դարձրեցին Արևմտյան Հայաստանում գոյություն ունեցող բոլոր ամրություններն ու բերդերը։ Ըստ հարմարության առանձին գոյություն ունեին ամրությունների մի քանի տեսակներ՝ ամրացված քաղաքներ, կարևոր բերդեր, խրամատավորված ճամբարներ և այլն։

Հուստինիանոսի կատարած ռազմական վերակազմությանը մոտ 7—8 տարուց հետո հաջորդեց վարչականը։ Նա հայերի նկատմամբ համառ կերպով վարում էր բյուզանդականացման քաղաքականություն։ Նրա կատարած վարչական վերակազմությունը շատ ավելի բացասական հետևանքներ ունեցավ Արևմտյան Հայաստանի բնակչության կյանքում, քան ռազմականը։

535 և 536 թթ. բոլոր դիոցեզներում կատարված վարչական վերակազմության հետ միասին Հուստինիանոսի հրովարտակով վերակազմվեցին նաև Բյուզանդական կայսրությանը ենթակա հայկական բոլոր երկրները՝ Առաջին Հայքը, Երկրորդ Հայքը, Ներքին Հայքը և Սատրապական Հայաստանը։ Այդ հրովարտակի համաձայն, հայկական երկրները բաժանվեցին չորս վարչական շրջանների (պրովինցիաների)՝ Առաջին Հայք, Երկրորդ Հայք, Երրորդ

Հայք և Չորրորդ Հայք։ Հուստինիանոսի վարչական բաժանումը համընկնում է նրա դատական-իրավական բաժանմանը։

**Առաջին Հայք.**—Վարչական այս միավորը համարվեց պրոկոնսուլություն (փոխկոնսուլություն), որի կենտրոնը Հուստինիանուպոլիսն էր։ Նրա մեջ մտան՝ նախկին Ներքին Հայքը ամբողջապես (Թեոդոսուպոլիս և այլ քաղաքներով հանդերձ), նախկին Առաջին Հայքի արևելյան շրջանները՝ Սատաղ, Նիկոպոլիս, Կոլոնիա քաղաքներով և Պոլեմոնյան Պոնտոսի մի մասը՝ Տրապիզոն գլխավոր քաղաքով։

**Երկրորդ Հայք.**—Կազմվեց նախկին Առաջին Հայքի մյուս մասից (Սեբաստիա և Սեբաստուպոլիս քաղաքներով հանդերձ), նախկին Պոլեմոնյան Պոնտոսի Կոմանա քաղաքի շուրջն ընկած տերիտորիաներից և Հելենապոնտոսի Զելա ու Բերիսա քաղաքների շրջակայքից։ Այս վարչական միավորի ղեկավարի դիրքն ու կոչումը մնաց նախկինը՝ դուքս։ Կենտրոնը Սեբաստիան էր։

**Երրորդ Հայք.**—Կազմակերպվեց նախկին Երկրորդ Հայքի տերիտորիայից, կենտրոնը մնաց նույնը՝ Մելիտինեն (Մալաթիա)։ Առանձնահատուկ ուշադրություն էր դարձվում այս պրովինցիայի ամրացման վրա։ Երրորդ Հայքը կառավարվում էր կոմեսի կողմից։

**Չորրորդ Հայք.**—Նախկինում կառավարվում էր անկախ սատրապների (հայ նախարարների) կողմից, հետևապես պրովինցիայի կառուցվածք չուներ։ Տերիտորիայով լիովին համընկնում էր նախկին վեց նախարարություններից բաղկացած Սատրապական Հայաստանի հետ։ Չորրորդ Հայքը համարվեց կոնսուլություն։ Կենտրոնը Մարտիրուպոլիսն էր, իսկ գլխավոր բերդը՝ Կիթառիճը։

Ստեղծված չորս պրովինցիաների կառավարիչները նշանակվում էին կայսրի կողմից։ Ազնվականության դրությունը, մինչև ամուսնության և ժառանգական կարգի մասին եղած հրովարտակը, մնաց նույնը, ինչ որ նախկինում։ Սակայն դա ամիսների հաշիվ եղավ։ 536 թվականի մարտի 18-ին նույն Հուստինիանոս կայսրը հատուկ հրովարտակ արձակեց, որով Արևմտյան Հայաստանի նախարարական իշխանությունները զրկվեցին քաղաքական ինքնուրույնությունից։ Այս հրովարտակի համաձայն, ժառանգական իրավունքներ տրվեցին թե՛ նախարարական տների կրտսեր անդամներին և թե՛ կանանց։ Հետևանքն այն եղավ, որ հայկական նախարարություններն սկսեցին տրոհվել նախարարների ժառանգների (թե՛ արական և թե՛ իգական սեռի ներկայացուցիչների) միջև, դրանով իսկ, կորցնելով իրենց դերն ու նշանակությունը։

Հուստինիանոսի վերափոխությունների նպատակն էր Արև-

մըտյան Հայաստանը զրկել տեղական զինվորական ուժից ու ինքնուրույնությունից և այն աստիճանաբար լուծել Կայսրության մեջ։

Հուստինիանոսի ռեֆորմների հետևանքով Արևմտյան Հայաստանում առաջանում են դժգոհություններ։ Բանը հասնում է զինված ընդհարման։ Սակայն Կայսրության կողմից ձեռք առնված կտրուկ միջոցների շնորհիվ խռովությունները ճնշվում են։ Նախարարներից շատերն ստիպված էին իրենց կալվածքները վաճառել և տեղափոխվել արևմուտք։ Ստեղծված աննպաստ պայմանների հետևանքով Փոքր Հայքի հայերը, դեռևս V դարի կեսերին, աստիճանաբար կորցնում էին իրենց մայրենի լեզուն։

Սակայն պատմական որոշ անցքեր խանգարեցին Բյուզանդական կայսրության պլանները։ Հայաստանի երկրորդ բաժանումից հետո (591 թ.) Փոքր Հայքի հայերը սերտ շփման մեջ են մտնում Արևելյան Հայաստանից Բյուզանդիային անցած կենտրոնական նահանգների հայ բնակչության հետ։ Բացի դրանից, մեծ թվով հայեր բյուզանդական կայսրերի բռնի միջամտությամբ Հայաստանի կենտրոնական նահանգներից տեղափոխվեցին արևմուտք։ Հայերի՝ դեպի արևմուտք տեղափոխման հոսանքն այնքան ուժեղ և մեծ մասշտաբի էր, որ հաջորդ դարում (VII դ.) պրովինցիաների բաժանման ժամանակ մի լայնարձակ տերիտորիա, որը նախկինում հայկական չէր, կոչվեց հայերի անվամբ։ Տեղափոխությունները կատարվում էին, ինչպես նշեցինք, վարչական բռնի ուժով։ Տեղափոխվածների զգալի մասը (մանավանդ VI դարի վերջերին, Մորիկ կայսրի օրոք) որպես զինվորներ ուղարկվում էին Կայսրության արևմտյան սահմանները պաշտպանելու։

Արևմտյան Հայաստանի վարչական վիճակը, VI դարի վերջերին որոշ փոփոխություններ կրելով հանդերձ, մնաց նույնը մինչև VII դարի կեսերը՝ արաբների հանդես գալը։

**Արևելյան Հայաստան**

Հայագիտական գրականության մեջ այս ժամանակաշրջանի Արևելյան Հայաստանը հաճախ կոչված է Մարզպանական Հայաստան կամ Պարսկահայաստան։ Վերջին անվանակոչումները գիտական չեն, որովհետև երկրի անունը ո՛չ թե որոշվում է տիրողներով՝ մարզպաններով, կամ քաղաքական վիճակով, տվյալ դեպքում պարսկական տիրապետությանը ենթակա լինելով, այլ այն ժողովրդի անվամբ, որն այդ երկրում բնակվում է։ Հետևապես երկիրը պետք է կոչել իր իսկական անունով, այսինքն՝ Հայաստան։ Նրա երկու հատվածներն իրարից տարբերելու համար արևելյան մասը, որը գտնվում էր

Պարսկաստանի տիրապետության տակ, պետք է անվանել Արևելյան Հայաստան, իսկ արևմտյանը, որը մտնում էր Բյուզանդիայի կազմի մեջ՝ Արևմտյան Հայաստան։

Արևմտյան Հայաստանը, առաջին բաժանումից երկու տարի անց, անմիջապես միացվեց Կայսրությանը, իսկ Արևելյան Հայաստանում հայկական ինքնուրույն թագավորությունն իր գոյությունը պահպանեց մինչև 429 թ.։ Բացի այդ, ի տարբերություն Արևմըտյան Հայաստանի, որտեղ VI դարում գրեթե լիովին ոչնչացվեցին հայկական խոշոր նախարարությունները, սովորությունները, ավատական կարգը, և երկիրը վերածվեց կայսրության կազմի մեջ մտնող լոկ պրովինցիայի, Արևելյան Հայաստանում, հայկական թագավորության վերացումից մոտ երկու տասնյակ տարի հետո, սասանյան արքայից արքաների կիրառած պարսկացման քաղաքականությունը գլխովին տապալվեց։ Հայ ժողովուրդն իր ազատագրական պատերազմներով «խելքի բերեց» սասանյան տիրակալներին, չնայած վերջիններիս անհաջող փորձերն այդ ուղղությամբ շարունակվում էին իրենց տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում։

VI դարում Սասանյան ամբողջ պետությունը բաժանված էր չորս երկրամասի՝ արևելյան, արևմտյան, հյուսիսային և հարավային։ Այդ երկրամասերը կոչվում էին «քուստակներ»։ Յուրաքանչյուր քուստակ (երկրամաս) գլխավորում էին երկու բարձրաստիճան պաշտոնյաներ, նրանցից մեկը վարչական գծով էր և կոչվում էր «պատգոսպան»։ Սրա իրավասություններն ունեին քաղաքական-վարչական բնույթ՝ հարկերի հավաքում, պետական շինարարություն և այլն։ Քուստակի մյուս բարձրաստիճան պաշտոնյան ռազմական գծով էր։ Սա կոչվում էր «սպայապետ» և տվյալ քուստակի ռազմական ուժերի գերագույն հրամանատարն էր։ Քուստակները բաժանված էին ավելի փոքր վարչական միավորների՝ մարզերի և «շահրների»։ Հայաստանը, Ատրպատականը, Վրաց աշխարհն ու Աղվանքը մտնում էին Հյուսիսային կամ Կապկոհ (Կովկասյան) քուստակի մեջ։ Հյուսիսային քուստակի կենտրոնն էր Ատրպատականի Գանձակ քաղաքը (Ուրմիա լճից հարավ-արևելք)։ Հյուսիսային քուստակի մեջ մտնող մարզերի և շահրների թիվը հասնում էր 13-ի։ Հայաստանի մարզպանը նշանակվում էր սասանյան արքունիքի կողմից և նույն արքունիքի հրահանգներն իրականացնող՝ երկրի ամենաբարձր պաշտոնյան էր։ Մարզպանից բացի կային նաև երկու բարձր պաշտոններ՝ սպարապետություն և հազարապետություն։ Սպարապետը վարում էր երկրի զորքերի գլխավոր հրամանա-

տարի պաշտոնը, իսկ հազարապետը զբաղվում էր երկրի ներքին տնտեսական, կուլտուրական և շինարարական գործերով։ Թե՛ սպարապետը և թե՛ հազարապետը ստորադրված էին մարզպանին։ Մարզպանի պարտականությունների մեջ էին մտնում, բացի սասանյան արքունիքի հրահանգները կատարելուց, նաև երկրի ներքին կարգի պահպանումը, գործակալների միջոցով արքունի հարկերի հավաքումը, բռնկված ապստամբությունների ճնշումը, Հայաստանի մարզպանության սահմանների պաշտպանությունը արտաքին հարձակումներից և այլն։ Մարզպանների վարչական կենտրոնը՝ մայրաքաղաքը, մինչև V դարի կեսը Արտաշատն էր, իսկ դրանից հետո դարձավ Դվինը։

484 թ. Նվարսակում Վահան Մամիկոնյանի և պարսից արքունիքի միջև կնքված պայմանագրից սկսած, Հայաստանի մարզպանությունը կոչվեց «Տանուտիրական երկիր», իսկ մարզպանը՝ «Հայոց տանուտեր»։ Այդ պայմանագրով փաստորեն երկիրը ձեռք բերեց կիսանկախ վիճակ։

Հայ նախարարները պարսկական արքունիքում ունեին իրենց գահերը հիերարխիայի սիստեմում, իրենց համապատասխան աստիճաններ։ Բայց, ընդհանուր առմամբ, հայ Արշակունիների նախկին արքունիքում ունեցած գահերի հետ համեմատած, նրանց դիրքը Տիզբոնի արքունիքում ցածր էր։ Հայ նախարարների շարքում Տիզբոնի արքունիքում առաջին գահը գրավում էր Սյունիքի նախարարը։ Սյունիքը Հայաստանի մարզպանության մեջ էր մտնում որպես առանձին շահր և ուներ բավական լայն իրավունքներ։ 571 թ. Սյունիքը դուրս եկավ Հայաստանի մարզպանությունից և մինչև արաբների առաջին արշավանքը (640 թ.) անմիջականորեն ենթարկվում էր Հյուսիսային քուստակի պատգոսպանին ու սպայապետին։ Հյուսիսային քուստակում Հայաստանին հավասար վարչական իրավունքներ ունեին Վրաց աշխարհը, Աղվանքը և Ատրպատականը, իսկ Արևմտյան քուստակում՝ Ադիաբենը և Արվաստանը։ Դրանցից առաջինի մեջ որպես շահր մտնում էր հայկական Աղձնիք նահանգը, իսկ երկրորդի մեջ՝ Նոշիրականը։ Շահրներում, օրինակ՝ Սյունիքում, Աղձնիքում, Նոշիրականում գլխավորում էին տեղական հայ իշխաններ-նախարարները, որոնք մարզպանությունների նկատմամբ ունեին մի տեսակ ներքին ինքնուրույնություն։

Ընդհանուր առմամբ Հյուսիսային կամ Կապկոհի քուստակի մեջ մտնող մարզպանությունները՝ Հայաստանը, Վրաց աշխարհը, Ատրպատականը, Աղվանքը, համեմատաբար ավելի թույլ էին

կապված Սասանյան Պարսկաստանի բուն պետության հետ, քան մյուս քուստակների մեջ մտնող մարզպանությունները։

Արևելյան Հայաստանի տերիտորիան մարզպանների տիրապետության շրջանում (429—640) զգալի չափով փոքր էր հայ Արշակունիների տիրապետության շրջանում եղած տերիտորիայից։ Հայաստանը տնտեսապես և քաղաքականապես թուլացնելու նպատակով Սասանյանները նրա ծայրամասային նահանգները միացրին այլ մարզպանությունների։ Հայաստանի մարզպանության շրջանակներից դուրս մնացին նախկինում Հայկական պետության բաղկացուցիչ մասերը կազմող Գուգարքը, Ուտիքը, Արցախը, Փայտակարանը, Պարսկահայքը (Նոշիրական), Կորճեքը և Աղձնիքը։ Գուգարքըն այդ ժամանակաշրջանում մտնում էր Վրացական մարզպանության մեջ, Ուտիքն ու Արցախը՝ Աղվանքի մարզպանության մեջ, Փայտակարանը՝ Ատրպատականի մարզպանության մեջ, իսկ Պարսկահայքը, Աղձնիքը և Կորճեքը՝ Արևմտյան քուստակի մեջ։ Այլ կերպ ասած, Հայաստանի մարզպանությունն իր մեջ միավորում էր հետևյալ վեց նահանգները («աշխարհները»)՝ Այրարատ, Վասպուրական, Տուրուբերան, Սյունիք, Մոկք և Տայք։ 571 թ. Հայաստանի մարզպանության շրջանակներից Սյունիքի, ինչպես և վերը նշված ծայրաշրջանների դուրս գալը լոկ վարչական բնույթ ուներ։ Իրականում դրանք տնտեսական, կուլտուրական և այլ կապերով մնացին որպես Հայաստանի մասերը կազմող երկրներ։

Հայաստանի առաջին բաժանմամբ Հռոմի և Պարսկաստանի միջև որոշված սահմանը նույն դրությամբ մնաց մինչև 591 թիվը, երբ Բյուզանդական կայսրությունը օգտվելով Պարսկական պետության ներքին թուլությունից և գահի ժառանգության համար ծագած կռիվներից, կարողացավ պարսիկներից խլել Հայաստանի մարզպանության մեծ մասը՝ կենտրոնական նահանգները՝ Այրարատյան աշխարհի խոշորագույն մասը մինչև Դվին, Տուրուբերանը և Տայքը։ Պարսկական մասում մնացին Այրարատյան աշխարհից մի փոքր մաս՝ Դվինն իր շրջակայքով և Սյունիք, Վասպուրական ու Մոկք նահանգները։

Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև եղած սահմանի հյուսիսային հատվածի ուղղությունը մինչև վերջերս սխալ էր պատկերացվում։ Այդ հարցի առթիվ կատարած իր արժեքավոր ուսումնասիրության շնորհիվ Ս. Տ. Երեմյանը վերջնականորեն պարզել է երկու պետությունների (Բյուզանդիայի և Պարսկաստանի) միջև

*եղած սահմանի ուղղությունը (ըստ 591 թ. բաժանման), որը որոշվում է հետևյալ գծով՝ Տփղիս (Թբիլիսի)—Թռեղքի լեռներ (Թրիալեթի լեռներ)—Խռնավ լեռներ—Բազումի լեռներ՝ մինչև Աղստև գետի հետ հատվելը—Գեղամա լեռներ—Ազատ գետ—Արաքս գետ՝ Ազատ գետի գետաբերանից մինչև Մասսի դիմաց—Մակու—Առեստավան (Վանա լճի հյուսիս-արևելյան ափին)—Ընձաքիարս գագաթը՝ Վանա լճի հարավային ափին—Մծբին[1]։*

*Հայաստանի երկրորդ բաժանումից հետո, մինչև արաբական արշավանքները, նախկին Արևելյան Հայաստանի ներքին կյանքի և վարչական վիճակի մեջ շոշափելի փոփոխություններ տեղի չունեցան։ Արևմտյան Հայաստանում եղան որոշ փոփոխություններ։ Նրա վարչական կենտրոնը Թեոդոսուպոլսից փոխադրվեց Շիրակաշատ քաղաքը, որը կոչվեց Մավրիկուպոլիս։ Բացի դրանից, Հյուսիսային Միջագետքը և նախկին Չորրորդ Հայքի հարավային որոշ մասեր միացվեցին և կազմվեց հռոմեական Հյուսիսային Միջագետք կամ Մյուս Չորրորդ Հայք պրովինցիան, որի վարչական կենտրոնը Ամիդն էր (Դիարբեքիր)[2]։*

* * *

*Այժմ անդրադառնանք այն հարցին, թե հին Հայաստանում I—VII դարերում ներքին վարչական բաժանման ինչ սիստեմ գոյություն ուներ և ինչով էր պայմանավորված այն։ Այդ դարերում Հայաստանում վերջնականապես ձևավորվել էին ֆեոդալական հարաբերությունները։ Ուրեմն, հասարակական տնտեսաձևը ֆեոդալական էր։*

*Յուրաքանչյուր երկրի ներքին վարչական բաժանումը պայմանավորված է և լրիվին համապատասխանում է այն հասարակական-տնտեսական ձևին, որը տվյալ ժամանակաշրջանում ապրում է այդ երկրի ժողովուրդը։ Մասնավոր սեփականության վրա հեն-*

---

[1] **Տե՛ս** „Атлас истории СССР", часть I, Москва, 1948։

[2] *Այսպիսով, Արևմտյան Հայաստանում կողք կողքի գոյություն ունեին երկու Չորրորդ Հայքեր՝ իսկական Չորրորդ Հայքը և Հյուսիսային Միջագետքը կամ Մյուս Չորրորդ Հայքը։ Առաջինի վարչական կենտրոնը, ինչպես տեսանք, Մարտիրուպոլիսն էր (Տիգրանակերտը), իսկ երկրորդինը՝ Ամիդը (Դիարբեքիր)։ Դրականության մեջ (թե՛ սկզբնաղբյուրներում, թե՛ ուսումնասիրություններում) հաճախ Ամիդը նույնացված է Տիգրանակերտի հետ։ Սակայն վերջնականապես պարզված է Տիգրանակերտի դիրքը. նրա ավերակները գտնվում են այժմյան Փարկին կամ Սիլվան քաղաքի տեղում, մինչդեռ Ամիդը եղել է այժմյան Դիարբեքիրի տեղում (Արևմտյան Տիգրիսի աջ ափին)։*

ված պետական սիստեմներում ընդհանրապես երկրի վարչական բաժանումը ելնում է ոչ թե տնտեսության զարգացման հեռանկարներից, բնապատմական պայմաններից, ժողովրդի կազմից և առանձնահատկություններից, այլ հետապնդում է շահագործման, ռազմական և ոստիկանական նպատակներ։

Ֆեոդալիզմի դարաշրջանին հատուկ էր երկրի տերիտորիալ մասնատվածությունը։ Յուրաքանչյուր ֆեոդալի իշխանության տակ գտնվող գավառը կամ երկիրն իրենից ներկայացնում էր վարչական-քաղաքական միավոր՝ գրեթե կիսանկախ պետություն։

Ֆեոդալական Հայաստանի տերիտորիան, IV—VII դարերի նախարարական (ֆեոդալական) տներին համապատասխան, մասնատված էր բազմաթիվ մանր ու խոշոր գավառների։ Ամեն մի ֆեոդալական-նախարարական տուն ուներ իր «աշխարհը», «գավառը»։ Նախարարները հանդիսանում էին իրենց «գավառի» կամ «աշխարհի» տերերը։

Վաղ ֆեոդալիզմի շրջանում, որն սկսվում է III—IV դարերից, Հայաստանում արդեն ձևավորվել էին բազմաթիվ նախարարական (ֆեոդալական) տներ, որոնցից յուրաքանչյուրը տիրում էր որոշ տերիտորիայում։ Այսպես. Բագրատունիներն իշխում էին Սպերում, Բագրևանդում և ապա Կոգովիտում, Մամիկոնյանները՝ Տայքում և Տարոնում, Կամսարականները՝ Արշարունիքում և Շիրակում, Ամատունիները՝ Արտազում, Մարդպետունի տոհմը՝ Մարդպետականում (Վասպուրականի հյուսիս-արևմտյան մասը, ներառյալ նաև Նախիջևանի գավառը), Ռշտունիները՝ Ռշտունիքում և Տոսպում, Սյունյաց իշխանները՝ Սյունիքում, Արծրունիները՝ Աղբակում, Մոկաց իշխանները՝ Մոկքում, Խորխոռունիները՝ Խորխոռունիքում, Աբեղյանները՝ Աբեղյանքում, Գաբեղյանները՝ Գաբեղյանքում, Հավնունիները՝ Հավնունիքում և այլն։

Արշակունյաց արքայական տունը, որը պետք է դիտել որպես ամենազորեղ նախարարությունն այդ շրջանում, տիրում էր Այրարատյան աշխարհի մեծագույն մասի՝ Ճակատք, Մասյացոտն, Արագածոտն, Ոստան, Շարուր, Կոտայք, Նիգ և մի քանի այլ գավառներին[1]։

---

[1] Արշակունյաց գահի օրինական ժառանգից բացի, թագավորի մյուս որդիներին կամ այն հարազատներին, որոնք հավակնություն ունեին խախտել ավատական կարգը և ժառանգել թագավորության իրավունքը, արգելվում էր բնակվել Այրարատյան աշխարհում՝ արքունիքին մոտ. նրանց կալվածքներ էին տրված արքունիքից հեռու՝ Վասպուրական նահանգի Աղբերանի (Վանա լճի հյուսիս-արևելյան մասում), Տուրուբերան նահանգի Աղիովիտի (Վանա լճից հյուսիս) և Չորրորդ Հայք նահանգի Հաշտյանք գավառներում։

կայնածավալ «աշխարհներ» ունեին Հայաստանի չորս բդեշխները (կողմնակալ, սահմանակալ)՝ Գուգարքի, Նոշիրականի, Աղձնիքի և Սոփքի բդեշխները։

Ընդարձակ կալվածքներ ուներ նաև եկեղեցին. կաթողիկոսական աթոռը կալվածքներ ուներ 15 գավառներում։ Այդ կալվածքները մեծ մասամբ գտնվում էին Այրարատում, Տուրուբերանում (Տարոն գավառում) և Բարձր Հայքում (Դարանաղի, Եկեղյաց ու Դերջան գավառներում)։ Քրիստոնեական եկեղեցին ևս ենթարկված էր ֆեոդալականացման։

Ահա դրանք էին ֆեոդալական Հայաստանի տերերը։ Նրանցից յուրաքանչյուրի, ինչպես և նրանցից կախում ունեցող ավելի մանր նախարարների կալվածքները միասին կազմում էին մի-մի վարչական-քաղաքական միավորներ՝ ֆեոդալական իշխանություն կամ նախարարություն։ Հին Հայաստանի նախարարությունների թիվը հաշվվում է մոտավորապես 50—70։

Նախարարությունների մի մասը իր մեջ ընդգրկում էր մեկ գավառ (օրինակ՝ Բզնունիք, Խոռխոռունիք և այլն), մի մասը՝ մի քանի գավառներ (օրինակ՝ Բագրատունիները), իսկ մի մասն էլ՝ ամբողջական նահանգներ՝ «աշխարհ»-ներ (օրինակ՝ Սյունիք, Մոկք, Տայք)։ Խոշոր նախարարություններն իրենց հերթին տրոհված էին մանր մասերի, որոնցում իշխողները ստորադրված էին և կախում ունեին գլխավոր նախարարից՝ «նահապետ»-ից։ Նախարարությունը ժառանգական էր։ Սրանք վասալական կախման մեջ էին Արշակունի թագավորներից՝ կատարելով նրանց համար վասալական ծառայություն և իրենց զորքով մասնակցելով պատերազմներին։ Նախարարների գահերի աստիճանավորության կարգը (բոլոր գլխավոր նախարարներն Արշակունյաց արքունիքում ունեին իրենց գահը) կախված էր ոչ միայն նախարարների տված զորքի քանակությունից, այլև ունեցած տերիտորիայի մեծությունից։ Հին Հայաստանում ցրված բազմաթիվ նախարարությունները իրարից կալվածքներ և ամբողջական գավառներ գրավելու համար հաճախ ընդհարվում էին, որի հետևանքով առանձին նախարարությունների սահմանները ենթարկվում էին խոշոր փոփոխությունների։ Նախարարությունների տիրապետության տակ գտնվող կալվածքները, բացի հարևան նախարարություններից զենքի ուժով ձեռք բերվածներից, ըստ ծագման երեք տեսակի էին՝ ժառանգաբար անցնող կալվածքներ, որ մեր մատենագրության մեջ կոչված է «հայրենականք», դրամով ձեռք բերվածներ՝ «քսակագինք» կամ «գանձագինք» և սյուզերենի (թագավորի) կողմից ծառայությունների համար պարգևվածներ՝

«պարգևականք»։ Դրամով գնված կալվածքները դառնում էին «հայրենականք»։ Ժամանակի ընթացքում հաճախ «հայրենականք» էին դառնում նաև թագավորի պարգևած կալվածքները։

Մարզպանների տիրապետության շրջանում հին նախարարական տների ճյուղավորման և նորերի առաջացման պատճառով ավելի է մասնատվում երկրի տերիտորիան։ Այս շրջանում մատենագիրների կողմից հիշատակվում են այնպիսի գավառանուններ, որոնք գոյություն չունեին Արշակունիների տիրապետության ժամանակ։ Արաբական տիրապետության տարիներին, բացի հայ ֆեոդալական տներից, Հայաստանի տարբեր մասերում հանդես են գալիս նաև արաբա-պարսկական քաղաքական միավորներ՝ էմիրություններ, բայց դրա հետ միաժամանակ վերանում են հայկական իշխանական բազմաթիվ տներ։

Ֆեոդալական Հայաստանի գավառաբաժանման մասին ամբողջական տեղեկություններ է հաղորդում VII դարի հեղինակ Անանիա Շիրակացին իր «Աշխարհացույց»-ում[1]։

«Աշխարհացույց»-ի մեջ Մեծ Հայքը, որի սահմանները քաղաքական առումով հայ Արշակունիների թագավորության ժամանակ տարածվում էին Կուր գետից մինչև Վերին Միջագետք և Կասպից ծովից մինչև Արևմտյան Եփրատի ընթացքը, բաժանված է 15 «աշխարհի», որոնք իրենց մեջ ամփոփում են 187—193 գավառ։ Դեռևս Արշակունիների թագավորության շրջանում գոյություն ուներ այդ 15 «աշխարհների» (մեր մատենագրության մեջ կոչված են նաև «նահանգ», «կողմ», «տուն», «գունդ») և նրանց մեջ մտնող գավառների մեծ մասը։ Սակայն այդ շրջանում պատմիչների կողմից որոշակի տարբերություն չի դրվում «աշխարհ» և «գավառ» հակացողությունների միջև։ «Գավառն» ու «աշխարհը» հաճախակի հիշատակվում են իրար կողք կողքի, մինչդեռ «Աշխարհացույց»-ի մեջ «աշխարհ»-ը և «գավառ»-ը բոլորովին տարբեր հակացողություններ են՝ ամենից առաջ տերիտորիայի մեծության տեսակետից։

«Աշխարհացույց»-ի համաձայն, Մեծ Հայքը Արշակունիների թագավորության շրջանում բաղկացած էր հետևյալ 15 «աշխարհ»-ներից. Բարձր Հայք կամ Կարնո աշխարհ, Չորրորդ

[1] Ոմանք «Աշխարհացույց»-ը վերագրում են Մ. Խորենացուն, իսկ ոմանք էլ՝ այլ հեղինակի։

Կարծում ենք, որ «Աշխարհացույց»-ի նախնական տեքստը ստեղծվել է V դարում՝ պատմահայր Մովսես Խորենացու կողմից, իսկ VII դարում այն վերափոխվել ու այդ ժամանակաշրջանին համապատասխան է դարձվել Անանիա Շիրակացու կողմից։ Պատահական չէ, որ «Աշխարհացույց»-ի տեքստը մենք հանդիպում ենք այդ երկու հեղինակների երկերի շարքում։

Հայք, Տայք, Տուրուբերան կամ Տարոնի երկիր, Աղձնիք, Գուգարք, Այրարատ, Վասպուրական, Մոկք, Կորճեք կամ Կորդվաց աշխարհ, Ուտիք, Արցախ, Սյունիք, Պարսկահայք (կամ Նոշիրական) և Փայտակարան։

Մեծ Հայքի սահմանների մասին «Աշխարհացույց»-ի հաղորդած տվյալները վերաբերում են ոչ թե հեղինակի ապրած ժամանակին (VII դար), այլ Արշակունիների տիրապետության շրջանի Հայկական պետության առավելագույն տերիտորիային։ Շիրակացին քաղաքական առումով նշում է ծայրագավառներից մի քանիսի (Գուգարքի, Ուտիքի, Արցախի, Փայտակարանի) անջատումը Հայաստանից, բայց ընդհանուր առմամբ նրա տվյալները իր ժամանակվա Հայաստանի սահմանների մասին վիճելի են։ Սակայն դրա հետ միաժամանակ պետք է նշել, որ «Աշխարհացույց»-ի հեղինակին քաղաքական սահմաններն այնքան էլ չէին հետաքրքրում։ Նրա աշխատությունը երկրագրական բնույթի է, որի մեջ տերիտորիալ բաժանման հիմքում ընկած են գլխավորապես տվյալ երկրի բնակչության էթնիկական կազմն ու բնական պայմանները։

«Աշխարհացույց»-ում նկարագրված հին Հայաստանի նահանգների մի մասը հանդիսանում էին վարչական միավորներ՝ նախարարություններ կամ բդեշխություններ, օրինակ, Սյունիքը (մի նախարարություն էր, ուր իշխում էր Սյունյաց նախարարական տունը), Մոկքը (դարձյալ կազմում էր մի նախարարություն, ուր տիրում էին Մոկաց իշխանները), Տայքը (ամբողջովին գտնվում էր Մամիկոնյան նախարարական տան իշխանության ներքո), Գուգարքը (կազմում էր մի բդեշխություն), Աղձնիքը (դարձյալ առանձին բդեշխություն էր) և այլն։

Նահանգների մյուս մասը սոսկ աշխարհագրական-տերիտորիալ հասկացողություններ էին։ Այդպիսին էին, օրինակ, կենտրոնական երեք խոշոր նահանգները՝ Այրարատը, Տուրուբերանը և Վասպուրականը։ Այս նահանգներից յուրաքանչյուրի տերիտորիայում իշխում էին ոչ թե մեկ, այլ բազմաթիվ նախարարական տներ։ Վասպուրականում առանձին-առանձին իրենց սեփական գավառներն ունեին և իշխում էին հավասար իրավունքներով (անմիջականորեն վասալական կախում ունենալով հայոց թագավորից, իսկ մարզպանների տիրապետության ժամանակ՝ պարսից արքայից) Արծրունիները, Ռշտունիները, Ամատունիները, Անձևացիք և այլ իշխանական տներ. Այրարատում, չհաշված Արշակունիներին, իշխում էին Բագրատունիները, Կամսարականները, Դիմաքսյանները, Սահա-

տունիները և ուրիշներ, դարձյալ կազմելով հավասար իրավունքներ ունեցող և անմիջապես Արշակունի թագավորներին ենթարկվող նախարարություններ։ Տուրուբերանում նախարարություններ էին կազմում Մամիկոնյանների, Խոռխոռունիների, Բզնունիների և այլոց գրաված շրջանները։ Այսպիսով, նշված վերջին երեք նահանգներում, որոնց նման էին հավանաբար նաև հին Հայաստանի մի քանի այլ նահանգներ, վարչական միավորներ էին կազմում ոչ թե իրենք՝ նահանգներն ամբողջությամբ վերցրած, այլ նրանց մեջ մտնող նախարարությունները, որոնք կարող էին բաղկացած լինել մեկ, երկու կամ ավելի գավառներից։

Նախարարական տները մեծ մասամբ կրում էին այն գավառի կամ երկրի անունը, որի վրա իշխում էին կամ, ընդհակառակն, իրենց տոհմական անունները տալիս էին տվյալ երկրին։ Երկու դեպքում էլ ստացվում էր միևնույն արդյունքը, այն, որ նախարարական տան և նրա իշխանության տակ գտնվող երկրի անունները մեծ մասամբ համընկնում էին՝ Խոռխոռունիներ—Խոռխոռունիք, Բզնունիներ—Բզնունիք, Երվանդունիներ—Երվանդունիք, Պալունիներ—Պալունիք, Մոկաց իշխաններ—Մոկք, Սյունյաց իշխաններ—Սյունիք և այլն։

Յուրաքանչյուր նահանգ կամ գավառ իրենից ներկայացնում էր հարևան տերիտորիալ միավորներից բնական արգելագծերով (լեռներով, գետերով և այլն) սահմանագծված մի մեծ կամ փոքր աշխարհագրական շրջան՝ դաշտ, հովիտ, «փոր», «ձոր» «սարահարթ»։

# ԵՐՐՈՐԴ ԲԱԺԻՆ

# ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄԱ-ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

## ԱՅՐԱՐԱՏ

### 1. ԱՆՈՒՆԸ, ԴԻՐՔԸ, ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

*Այրարատ անվան ստուգաբանությամբ զբաղվել են մի շարք բանասերներ և պատմաբաններ։ Սակայն մինչև օրս էլ այդ անվան մեկնության շուրջ գոյություն ունեն տարբեր կարծիքներ։ Ամենից հավանականը այն կարծիքն է, որն Այրարատ անունը կապում է Ուրարտու անվան հետ։*

*Այրարատը տարածվում էր Երասխի միջին հոսանքի ավազանում և Արածանիի վերնագավառում։ Նա շրջապատված էր, արևմուտքում՝ Տայքով և Բարձր Հայքով, հարավում՝ Տուրուբերանով և Վասպուրականով, արևելքում՝ Սյունիքով, իսկ հյուսիսում՝ Գուգարքով։ Արևմուտքում նրա սահմանը կազմում էր Մեծրաց (կամ Տայոց) լեռնաշղթան, հարավում՝ Այծպտկունք գագաթից մինչև Շարիան լեռնաշղթայի հյուսիս-արևմտյան ծայրը, Այրարատի սահմանն անցնում էր Հայկական Պարի ջրբաժան բարձրություններով, ապա Շարիան և Ծաղկանց լեռներով դիմում էր դեպի արևելք՝ Թոնդուրեկ, իսկ այստեղից էլ հասնում էր Երասխ (Արաքս)։ Արևելքում Այրարատի սահմանը կազմում էին Գեղամա լեռները. այս մասում նրա մեջ էր մտնում նաև Շարուրի դաշտը, որը տարածվում էր Ասփա (Արփա) գետի ստորին հոսանքի շրջանում։ Հյուսիսում նրա սահմանները անցնում էին այժմ Փամբակ և Ջլգըր կոչված լեռնաշղթաներով։*

*Այրարատն այդպիսի սահմաններով Մեծ Հայքի կազմում հի-*

շատակված «փոքր աշխարհ»-ների մեջ ամենաընդարձակներից մեկն էր։

Ծայրային լեռնաշղթաներից բացի, նրա հարավային մասում զուգահեռականի ուղղությամբ ձգվում էր Հայկական Պար լեռնաշղթան, որի արևելյան ծայրին բարձրանում են Մեծ և Փոքր Մասիսները։ Հյուսիսային մասում բարձրանում են Արագած և Արայի գագաթները, իսկ արևմտյան մասում ձգվում են մի շարք լեռնաճյուղեր, որոնք երկրի այդ շրջանին տալիս են լեռնային բնույթ։ Սակայն պետք է նշել, որ նշված լեռնաշղթաներն ու առանձին գագաթները Այրարատյան աշխարհի հարթավայրային բնույթը քիչ են փոխում, որովհետև մեծ լեռնաշղթաները ձգվում են նրա սահմանային վայրերով, իսկ Հայկական Պարը, փոքր լեռնաճյուղերն ու առանձին գագաթները միայն առանձին «կղզիներ» են, որոնք վեր են բարձրանում ընդհանուր առմամբ դաշտային ռելիեֆ ունեցող այդ «աշխարհ»-ի այս կամ այն մասում։ Այրարատյան աշխարհում հայտնի էին Կարսի, Բասենի, Շիրակի, Բագրևանդի, Արարատի (իր բազմաթիվ մասերով), Կոգովիտի դաշտերը։ Դրանք խոր հնությունից ի վեր դարձել էին երկրագործության օջախներ և հռչակված էին իրենց արգավանդությամբ։

Այրարատի մի փոքր մասը, որն ընկած էր Հայկական Պարից հարավ, ոռոգվում էր Արածանիով։ Այրարատի մյուս մեծ մասը պատկանում էր Երասխի ավազանին։ Այրարատյան աշխարհում կային մի շարք լճակներ, որոնցից նշանավոր էին Մեծամորի լիճը և Գայլատուն։ Այրարատյան աշխարհում բավական մեծ տարածում են ունեցել ճահիճները՝ հատկապես Կոգովիտ գավառում։

Այրարատյան աշխարհի կլիմայական պայմանները բազմազան են։ Երկրի ռելիեֆի լեռնային լինելու շնորհիվ, այնտեղ կլիման ուղղահայաց ուղղությամբ կազմում է մի շարք գոտիներ՝ կիսաանապատներից (միջին Արաքսի հովիտ) մինչև լեռնային ցուրտ գոտին (Մեծ Մասիսի և Արագածի բարձրադիր շրջանները)։ Ընդհանուր առմամբ կլիման խիստ ցամաքային է։ Տարեկան միջին տեղումների քանակը 350—400 մմ-ից չի անցնում։ Ջերմության տատանումը շատ խիստ է արտահայտված՝ հասնում է 70—72°-ի։

Դեռ խոր հնությունից սկսած, Այրարատյան աշխարհում, չոր կլիմայի պատճառով, ոռոգման նպատակներով կառուցվել են ջրանցքներ, ամբարտակներ, արհեստական լճակներ (Արագածից հարավ, Մեծամոր լճի, Երևանի շրջաններում, Գեղամա լեռների արևմտյան ստորոտներում, վաղեմի Արմավիր քաղաքի մոտ, Սուրմառի շրջանում և այլուր)։ Սակայն ոռոգման բարեկարգ կառու-

ցումների մեծագույն մասը ավերման է ենթարկվել մոնղոլական տիրապետության ժամանակ։

Այրարատյան աշխարհը անտառներով շատ աղքատ է։ Անտառները շատ թե քիչ մեծ տարածում ունեն միայն այժմյան Սարիղամիշի շրջանում, որը հնում կազմում էր Վանանդ գավառի մի մասը, և Վարաժնունիք գավառում (այժմյան Ծաղկաձորն ու Հանքավանի ձորը)։ Այրարատում հնում տնկվել են նաև մի քանի պուրակ-անտառներ՝ Դվինի, Արմավիր քաղաքի մոտ և Բագարանի շրջանում։

Այրարատի ցածրադիր վայրերում բավական տարածված են աղուտները։ Այս գոտու համար բնորոշ են փշաբույսերը։ Սրանից վեր տարածվում են տափաստանները, որոնց բնորոշ բույսերը փետրախոտերն են։ Ավելի վեր, ըստ կարգի, պետք է գար անտառային գոտին, սակայն Այրարատում այդ գոտին արտահայտվում է միայն տեղ-տեղ, այն էլ ոչ թե կատարյալ անտառի ձևով, այլ՝ թփուտներից։ Բարձրադիր գոտում ընկած են ալպյան մարգագետինները, որոնք մեծ տարածում ունեն հատկապես Արագածի և Հայկական Պարի բարձրադիր շրջաններում։

Մշակովի կուլտուրաների մեջ Այրարատում առանձնապես աչքի են ընկել հացահատիկները, բանջարեղենը, բամբակը և քընջութը, այգեգործական կուլտուրաները՝ խաղողը, դեղձը, ծիրանը, տանձը, սալորը և այլն։

Այրարատյան աշխարհում, Հայկական լեռնաշխարհի մյուս շրջանների նման, տարածված են բարեխառն գոտու կենդանիները։ Տնտեսական խոշոր նշանակություն է ունեցել Արարատյան դաշտի ճահճուտներում ապրող որդի մի տեսակը, որից պատրաստել են ընտիր, չգունաթափվող «որդան կարմիր» ներկը։

Այրարատյան աշխարհը հնագույն ժամանակներից աչքի է ընկել իր բնական բազմատեսակ հարստություններով։ Ամենից առաջ նա նշանավոր էր իր սեղանի աղով (Կողբ և Կաղզվան)։ Ներկայումս էլ այդ աղահանքերը չեն կորցրել իրենց նշանակությունը։ Մետաղի հանքային հարստություններով Այրարատյան աշխարհն աղքատ էր։ Այստեղ միայն հիշատակվում են ոսկի, պղինձ և երկաթ։ Ոսկին հանդես է եկել ոչ թե հանքերով, այլ ավազի հետ խառը։ Պղնձի «բով»-երով (հանքերով) հայտնի է եղել Վարաժնունիք (հատկապես՝ Ծաղկաձորը) գավառը։

Այրարատյան աշխարհը շատ ավելի նշանավոր էր շինանյութերով ու հանքային ջրերով։ Այստեղ տարածված են տարբեր գույնի բազմատեսակ տուֆեր, մարմարներ, գրանիտներ, բազալտներ,

ավազ, կավ, կրաքարեր։ Այրարատյան աշխարհում էին գտնվում Հայկական լեռնաշխարհի՝ հնում շատ մեծ հռչակ ստացած, Վարշակի ջերմուկները (այժմյան Դիադինի շրջանում), Արզնիին և հանքային ջրերի այլ վայրեր։

## 2. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

Այրարատը հանդիսացել է հայ ժողովրդի քաղաքական միավորման, տնտեսական կյանքի և մշակույթի կենտրոնը։ Նա հին Հայկական պետության կենտրոնն էր նաև աշխարհագրական առումով։ Մեր մատենագիրները մեծ գովեստով են խոսում Այրարատի մասին՝ համարելով այն «դրախտ», «ամենաբույս», «ամենաբերրի», «գլուխ Հայոց Մեծաց», «Միջնաշխարհ Հայոց» և այլն։ Առանձնապես պատկերավոր է Ղազար Փարպեցու տված նկարագիրը։ Նա Այրարատի մասին գրում է.

«Եւ արդ՝ զայսպիսի զըղձակերտ գաւառ, զչնաշխարհիկ և զամենայլի բստ տուչութեան ամենախնամ արարչին Աստուծոյ, զԱյրարատեան գաւառ, որ է գլուխ աշխարհիս Հայոց, զգաւառն համբաւատենչ, զգաւառն ամենայլի, որ բերէ յինքեան զօրինակ լինութեան...»[1]։

Հայտնի է, որ Հայաստանն իր պատմության ընթացքում ունեցել է բազմաթիվ մայրաքաղաքներ։ Քաղաքական աննպաստ պայմանների հետևանքով Հայաստանում մայրաքաղաքները շատ արագ փոխարինել են մեկը մյուսին։ Այդ էր պատճառը, որ օտարերկրյա որոշ ուսումնասիրողներ Հայաստանը կոչում են «թափառող մայրաքաղաքների երկիր»։ Հայաստանն ունեցել է տասից ավելի մայրաքաղաքներ, որոնց մեծագույն մասը՝ Այրարատյան աշխարհում[2]։ Այսպես, բացի ուրարտական ժամանակաշրջանի Տուշպա (Վան) մայրաքաղաքից և Տիգրան Բ-ի ժամանակ Հայաստանի մայրաքաղաք Տիգրանակերտից, մյուս բոլոր մայրաքաղաքները գտնվում էին Այրարատում։ Դրանք էին՝ Արմավիրը, Երվանդաշատը, Արտաշատը, Վաղարշապատը, Արշակավանը, Դվինը, Բագարանը, Երազգավորսը, Կարսը, Անին և Երևանը։

---

[1] Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց, էջ 23—24։

[2] Նկատի ունենք միայն Մեծ Հայքի կենտրոնական պետության մայրաքաղաքները, այնպես որ խոսքը չի վերաբերում Փոքր Հայքի, Սոփքի, Մեծ Հայքում տարբեր ժամանակներում կազմավորված ֆեոդալական մանր թագավորությունների, ինչպես և Կիլիկյան հայկական թագավորության մայրաքաղաքներին։

*Այրարատը տերիտորիալ այն մեծությամբ, որը նկարագրված է VII դարի «Աշխարհացույց»-ի մեջ, անծանոթ չէ հնագույն մատենագիրներին։ Վերջիններս ծանոթ են Բասեն, Շիրակ, Բագրևանդ գավառներին և Արաքսի հովտին, որի տակ նրանք հասկացել են Արարատյան հարթությունը՝ Ախուրյանի գետաբերանուրդից մինչև Շարուրի դաշտը։ V դարի մեր պատմիչներն Այրարատ ասելով նկատի են ունեցել այն տերիտորիան, որը համապատասխանում է «Աշխարհացույց»-ում նկարագրված Այրարատ աշխարհի արևելյան մասին։ Իսկ Այրարատն այդպիսի սահմաններով կազմում էր Արշակունիների ոստանը՝ արքունական սեփականությունը։ Նույն ժամանակաշրջանում Բագրևանդում իշխում էին Բագրատունիները, Արշարունիքում և Շիրակի մի մասում՝ Կամսարականները, Շիրակի մյուս մասում՝ Դիմաքսյանները, Վանանդում՝ Վանանդի իշխանները։ Հետագա շրջանում, երբ հայ ժողովուրդը կորցրեց իր քաղաքական անկախությունը, Այրարատյան աշխարհի այն մասում, ուր նախկինում իշխում էին Արշակունիները, հանդես եկան նոր նախարարական-ֆեոդալական տներ՝ Ուրծի, Արածի իշխանները, Արագածոտնի մի մասը գրավում են Ամատունիները (սրանք Արագածոտնում կալվածքներ ունեին դեռևս IV դարում՝ Խոսրով Կոտակի թագավորության ժամանակներից), Կոգովիտ գավառն անցնում է Բագրատունիներին, Վարաժնունիքում հանդես են գալիս Վարաժնունիները և այլն։ Այսպիսով, Այրարատը փաստորեն մինչև Հայաստանի երկրորդ բաժանումը (591 թ.) մասնատված էր մի շարք վարչա-քաղաքական միավորների՝ նախարարությունների։ Հայաստանի երկրորդ բաժանումից հետո էլ Այրարատը մնաց մասնատված, սակայն այդ բաժանմամբ նա գրեթե ամբողջությամբ անցավ Բյուզանդական կայսրությանը (միայն արևելյան մի փոքր մասը մնաց պարսկական կողմում)։ Բյուզանդիայի համար Այրարատը՝ Տուրուբերանի հետ միասին, ներկայացնում էր վարչական մի միավոր, անկախ նրանից, որ վերջիններս մասնատված էին մի շարք նախարարությունների։ Այդ է պատճառը, որ «Աշխարհացույց»-ում Այրարատի տակ հասկացվել են ոչ միայն նախկին Արշակունիների արքունական գավառները, այլև 591 թ. բաժանմամբ Բյուզանդիային անցած հնկայական տերիտորիայի հյուսիսային մեծ մասը։*

*Բագրատունիների թագավորության շրջանում Այրարատն ամբողջությամբ մտնում էր նրա տերիտորիայի մեջ։ Սակայն այնուհետ, Բագրատունիների բնդարձակ իշխանությունից բացի, կային տե-*

լական մի շարք իշխանություններ, որոնք զբաղեցնում էին երկրի այս կամ այն մասը։ Ամենից ուժեղը Պահլավունիների իշխանությունն էր, որի իշխանները Բագրատունիների թագավորության վերջին շրջանում կատարում էին սպարապետի պաշտոնը։

Սելջուկները իրենց արշավանքների ընթացքում մեծ հարված հասցրին Այրարատյան աշխարհին։ Սելջուկ-թուրքերի կողմից պարբերաբար կրկնվող արշավանքների հետևանքով Այրարատում ոչնչացան բազմահազար հայեր, ավերվեցին բազմաթիվ գյուղեր ու քաղաքներ։ Սակայն սելջուկների տիրապետությունը կարճատև եղավ։ Վրաց հզորացած պետության օգնությամբ հայերն աստիճանաբար Հյուսիս-արևելյան Հայաստանից դուրս քշեցին սելջուկ-թուրքերին, այնպես որ XIII դարի սկզբներին Հյուսիս-արևելյան Հայաստանն ամբողջությամբ (որի կազմում էր և Այրարատը) ազատագրվեց սելջուկ-թուրքերից։ Սակայն քաղաքական իրադրությունը շատ շուտով փոխվեց։ XIII դարի 20-ական թվականներից սկսած Անդրկովկասի, այդ թվում նաև Հայաստանի վրա են արշավում մոնղոլ-թաթարները, որոնք ավերիչ ու կողոպտիչ մի քանի արշավանքներից հետո իրենց տիրապետությունն են հաստատում Հայաստանում։ Մոնղոլների ու նրանց հաջորդների ժամանակ, Հայաստանի մյուս մասերի նման, Այրարատը ևս ավերվում է։ Ավերվում են նախկինում ստեղծված ոռոգման սիստեմները, ջանքերը կրճատվում են, նախկին առևտրական ճանապարհները կորցնում են իրենց նշանակությունը, քաղաքները, որոնց մի զգալի մասը դեռևս արշավանքների ժամանակ հիմնահատակ կործանվել էր, կորցնում են իրենց նշանակությունը՝ վերածվելով սովորական բնակավայրերի։ Արարատյան դաշտի մեծ մասը նախկին ծաղկած վիճակից աստիճանաբար վեր է ածվում կիսաանապատի։

Այրարատյան աշխարհի բնակչության խտությունը, Հայաստանի մյուս մասերի համեմատությամբ, մեծ էր։ Բնակիչների գերազանց մեծամասնությունը հայեր էին։ Հայերից բացի, Այրարատյան աշխարհում՝ հատկապես քաղաքներում, բնակվել են նաև հրեաներ, ասորիներ, հույներ և պարսիկներ։ Արաբների տիրապետության շրջանում՝ VIII դարի երկրորդ կեսից սկսած, Այրարատի որոշ քաղաքներում բնակություն էին հաստատել զգալի թվով արաբներ, որոնք հիմնականում կատարում էին վարչական աշխատանք և կայազորային ծառայություն։ Ավելի ուշ շրջանում՝ XI—XIII դարերում, Այրարատ են մուտք գործում նաև սելջուկ-թուրքեր, մոնղոլ-թաթարներ և այլ ժողովուրդներ։

## 3. ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

*Այրարատյան աշխարհը պատմության ընթացքում դարձել է հայ ժողովրդի քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքի կենտրոն մասամբ նաև այն պատճառով, որ գտնվում էր Հին Հայաստանի կենտրոնական մասում և շրջապատված էր բարձր լեռնաշղթաներով, որոնք որոշ չափով ապահովում էին նրա անվտանգությունը։ Բայց ամենից կարևորն այն է, որ նրա միջով էին անցնում համաշխարհային տարանցիկ առևտրի կարևոր ճանապարհներ։*

*Հայաստանի ճանապարհների կենտրոնը Այրարատյան աշխարհն էր։ Երկրի ճանապարհների կարևոր հանգուցակետերը՝ Արմավիրը, Արտաշատը, Դվինը և Անին գտնվում էին Այրարատյան աշխարհում։ Ուրարտական շրջանում Այրարատում ճանապարհների կարևոր հանգուցակետը Արգիշտիխինիլին էր (Արմավիրը), որն Ուրարտական պետության անկումից հետո իր տեղը զիջեց Երվանդաշատին (Ախուրյանի գետաբերանի մոտ)։ Հետագայում, երբ Հայաստանը ձեռք բերեց քաղաքական անկախություն, Այրարատյան աշխարհում արագ կերպով բարձրացավ Արտաշեսյանների մայրաքաղաք Արտաշատը։ Մինչև V դարի (մ. թ.) երկրորդ կեսը Արտաշատը Այրարատյան աշխարհով անցնող ճանապարհների սիրտն էր։ Արտաշատից դուրս էին գալիս տարանցիկ առևտրի կարևոր մի քանի ճանապարհներ, որոնք ունեին նաև ստրատեգիական խոշոր նշանակություն։ Դրանցից առանձնապես հիշատակության արժանի են երեքը. ա) Արտաշատ—Սատաղ, բ) Արտաշատ—Տիգրանակերտ և գ) Արտաշատ—Թավրիզ։*

*V դարի երկրորդ կեսից Այրարատյան աշխարհի ճանապարհների գլխավոր հանգույցը դառնում է Դվինը։ Դվինից դուրս էին գալիս հինգ գլխավոր ճանապարհներ, որոնք նկարագրված են «Մղոնաչափք»-ում։ Այդ ճանապարհներն ունեին հետևյալ ուղղությունները՝ 1) Դվին—Կարին—Կողոնիա—Ամասիա—Բյուզանդիոն. 2) Դվին—Խլաթ—Քղիմար—Ուռհա—Դամասկոս. 3) Դվին—Հրազդան գետ—Կոթ ավան (Սևանա լճի հարավային ափին)—Ձորի լեռնանցք—Պարտավ. 4) Դվին—Նախիջևան—Թավրիզ. 5) Դվին—Հրազդան գետ—Կուր—Տփղիս (Թբիլիսի)։*

*Ավելի ուշ շրջանում՝ X դարում, չնայած Դվինը մնում էր որպես տարանցիկ առևտրի ճանապարհների կենտրոն, Այրարատյան աշխարհում բարձրանում է նաև Անին։ Վերջինս իր հերթին մի քանի ճանապարհներով կապված էր ինչպես Հայաստանի տարբեր*

*մասերի, նույնպես և հարևան երկրների ու Սև ծովի նավահանգիստների հետ։ Անիից դուրս եկող տարանցիկ ճանապարհներից կարևոր են հետևյալները. 1) Անի—Տրապիզոն, 2) Անի—Թեոդոսուպոլիս—Ամասիա, 3) Անի—Դվին, 4) Անի—Տփղիս, 5) Անի—Արտանուջ։ Այրարատյան աշխարհով անցնող նշված ճանապարհները, որոնց կարևոր կենտրոնները Դվին և Անի մայրաքաղաքներն էին, արտակարգ մեծ նշանակություն ստացան մանավորապես IX դարի վերջից մինչև սելջուկյան արշավանքները (XI դարի 40-ական թվականները)։ Այդ շրջանում խալիֆայության և Բյուզանդիայի միջև տեղի ունեցող երկարատև պատերազմների պատճառով Միջագետքով, Սիրիայով և Միջերկրական ծովով կատարվող համաշխարհային առևտուրը գրեթե կանգ էր առել։ Հենց այդ պատճառով էլ համաշխարհային առևտրի մեջ անչափ մեծացել էր Հյուսիս-արևելյան Հայաստանի, այդ թվում Այրարատյան աշխարհի դերը։*

*Մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում, տնտեսության ընդհանուր հետադիմության հետ, Այրարատյան աշխարհի նախկին փարթամ քաղաքները և նրանցից դուրս եկող ճանապարհները կորցնում են իրենց տնտեսական նշանակությունը։ Քաղաքների մեծ մասը աստիճանաբար վեր է ածվում սովորական բնակավայրերի, մի մասն էլ ընդմիշտ վերանում է պատմական ասպարեզից։*

## 4. ԳԱՎԱՌՆԵՐԸ

*Այրարատը բաղկացած էր 16—20 գավառից*[1], *որոնք հետևյալներն էին՝ Բասեն, Աբեղյանք, Գաբեղյանք, Հավնունիք, Արշարունիք, Բագրևանդ, Ծաղկոտն, Վանանդ, Շիրակ, Արագածոտն, Ճակատք, Մասյացոտն, Կոգովիտ, Նիգ, Կոտայք, Մազազ, Վարաժնունիք, Ոստան, Ուրծ և Արած։*

### Բասեն, Աբեղյանք, Գաբեղյանք և Հավնունիք

*Բասեն անունը էթնիկական ծագում ունի։ Այստեղ ապրող նույնանուն ցեղախմբի մասին հիշատակում է Քսենոֆոնը (V դ.*

*[1] Հաճախ Շարուրի դաշտը ևս դիտվում է որպես առանձին գավառ, սակայն կարծում ենք, որ այն մտել է Ոստան գավառի մեջ։*

վերջին մ.թ.ա.)։ Հնագույն ժամանակներում Բասենն իր մեջ ընդգրկել է մի լայնածավալ տարածություն։ Նրա կազմի մեջ մտնում էր ոչ միայն «Աշխարհացույց»-ում նկարագրված Բասենը, այլև ամբողջ Վանանդ գավառը (Կարսի և Սարիղամիշի շրջանները), որը կոչվել է Վերին Բասեն։ Հետագայում, ֆեոդալիզմի ձևավորման հետ միասին, այդ գավառը մասնատվել է երկու մասի՝ Բասենի և Վանանդի։ Ավելի ուշ՝ Բասենը բաժանվում է առանձին նախարարությունների՝ Բասենի, ուր իշխում էր Որդունի նախարարական տունը, և Աբեղյանքի, Գաբեղյանքի ու Հավնունիքի, ուր իշխում էին նույնանուն նախարարական տները։ Բասենում իշխող Որդունի նախարարական տունը IV դարում, Խոսրով Կոտակի օրոք (334—338), Ապահունիքի և Հարքի Մանավազյանների հետ ֆեոդալական կռիվներ մղելու պատճառով սրի է քաշվում, իսկ նրա կալվածքները տրվում են Բասենի եպիսկոպոսական թեմին։

Բասենը, Աբեղյանքը, Գաբեղյանքը և Հավնունիքը միասին վերցրած կազմում էին մի բնաշխարհ՝ ֆիզիկա-աշխարհագրական մի շրջան, որը համապատասխանում է այժմյան Բասենի սանջակին։

Բասենը տարածվում էր արևմտյան մասում, նրանից արևելք գտնվում էին Աբեղյանքը և Հավնունիքը։ Վերջին երկուսից առաջինը տարածվում էր Երասխի հյուսիսային կողմում, իսկ երկրորդը՝ հարավային։ Ծայր արևելյան մասում տարածվում էր Գաբեղյանքը, որը սահմանակցվում էր Արշարունիք գավառին։ Բասենն ունի երկրագործության համար նպաստավոր հողա-կլիմայական պայմաններ։ Սակայն այնտեղ, հատկապես Ստորին Բասենում, բավական ընդարձակ տարածություն են գրավում ճահճուտները։

Բասենում հիշատակվում են պատմական մի շարք վայրեր։ Դրանցից են.

**Որդորու և Դու.**—Երկուսն էլ եղել են սովորական գյուղեր։ Որդորուն հանդիսացել է Որդունի նախարարական տան ոստանը։ Այստեղ էր նստում նաև Բասենի եպիսկոպոսը։ Վերը նշված կռիվներից հետո Որդորուն, Որդունի նախարարության մյուս կալվածքների հետ միասին, ամբողջությամբ անցնում է Բասենի եպիսկոպոսական թեմին։ Դու գյուղը գտնվում էր Բասենի արևմտյան մասում՝ Դևեբոյնի լեռների շրջանում։ Այս գյուղը Հայաստանի առաջին բաժանման գծի վրա գտնվող բնակավայրերից մեկն էր։ Ենթադրվում է, որ Որդորու և Դու պատմական գյուղերը համապատասխանում են մեր ժամանակների Փոքր և Մեծ Թու գյուղերին, որոնք այժմ գրեթե ավերակ են։

**Վաղարշավան.**—Սա հավանաբար հիմնադրվել է Հայոց Վա-

*ղարշ Ա (117—140) կամ Վաղարշ Բ (198—215) թագավորների կողմից։ Հիշատակությունների մեջ կոչված է ավան։ Նա գտնվում էր Մուրցի (այժմ՝ Հասանկալա) և Երասխի գետախառնուրդում՝ այժմյան Քեոփրի-քեյի տեղում։ Սակայն որոշ ուսումնասիրողներ ենթադրում են, որ Վաղարշավանը գտնվել է ոչ թե այժմյան Քեոփրի-քեյի, այլ Հասանկալայի տեղում։ Վաղարշավանի տեղում բնակավայր է եղել դեռևս ուրարտական ժամանակներում։*

**Օկոմի.**—*Այս ավանը գտնվում էր Ծիրանաց լեռների շրջանում։ Առաջին անգամ հիշատակվում է XI դարում։ Ըստ այդ հիշատակության, սելջուկներն իրենց առաջին արշավանքի ժամանակ (1048 թ.) կործանում են այն, իսկ բնակիչներին, որոնց թիվը, պատմիչի ասելով, հասնում էր 30 000-ի, բնաջնջում։*

**Բողբերդ.**—*Հայտնի է IV դարից։ Շապուհ Բ-ն դեպի Հայաստան կատարած իր արշավանքի ընթացքում հայերի դիմադրողական ուժը ջլատելու համար Կամսարական իշխանների կանանց գերելով փակում է այս բերդում, որպեսզի նրանց ամուսինները իրենց զորքերով լքեն հայկական միացյալ բանակը։ Սակայն Շապուհը չի հասնում իր նպատակին։ Հայկական զորքերը նրան դուրս են շպրտում հայրենի երկրի սահմաններից։*

*Բողբերդի դիրքը չի ճշտված։ Որոշ ուսումնասիրողներ այն տեղադրում են այժմյան Հասանկալայի տեղում, իսկ որոշ ուսումնասիրողներ էլ՝ Բասենի հյուսիս-արևմտյան սահմանի վրա։ Թվում է, թե վերջինների կարծիքը ավելի ճիշտ է, որովհետև Բողը հանդիսանում էր Հայաստանի առաջին բաժանման գծի վրա գտնվող բերդերից մեկը, հետևապես նա այժմյան Հասանկալայից արևմուտք պետք է լիներ։*

**Ավնիկ.**—*Եղել է ամուր բերդ։ Արիստակես Լաստիվերտցու հիհիշատակության համաձայն, սելջուկները, Տուղրիլի գլխավորությամբ, 1054 թ. գրավեցին և ավերեցին Ավնիկը*[1]*։*

## Արշարունիք

*Ավելի հնում Արշարունիքը հայտնի էր Երասխաձոր անունով։ Այս գավառը սկզբնապես պատկանում էր Արշակունիների արքունական տանը, սակայն հետագայում տրվում է Կամսարական նախարարական տանը։ Ենթադրվում է, որ առաջին նախարարի՝ Արշավիրի անունով էլ գավառը նախկին Երասխաձորի փոխարեն կոչվեց*

[1] *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *Պատմություն, Թիֆլիս, 1912, էջ 100։*

*Արշարունիք։ Տարածվում էր Երասխ և Ախուրյան գետերի կազմած արևմտյան անկյունում։*

*Արշարունիքում էին գտնվում Կաղզվանի հայտնի աղահանքերը։*

*Արաբական տիրապետության ժամանակաշրջանում Հայաստանի բազմաթիվ այլ նախարարական տների հետ միասին աստիճանաբար իրենց քաղաքական ազդեցությունը կորցնում են և Կամսարականները։ VIII դարի վերջին նրանք ստիպված են լինում Շիրակի և Արշարունիքի իրենց կալվածքները դրամով վաճառել Բագրատունիներին։*

*Արշարունիքը Այրարատի առավել նշանավոր գավառներից էր։ Այստեղ, դեռևս հնագույն ժամանակներում, կառուցվել են մի քանի քաղաքներ։ Արշարունիքը առանձնապես կարևոր դեր է խաղացել Բագրատունիների թագավորության շրջանում։*

*Այս գավառում գտնվող պատմական վայրերից հարկ ենք համարում նշել հետևյալները.*

**Երվանդաշատ.**—*Հին Հայաստանի մայրաքաղաքներից մեկն է։ Գտնվում էր Երասխի և Ախուրյանի գետախառնուրդում։ Մովսես Խորենացու հիշատակության համաձայն, այս քաղաքը կառուցվել է Երվանդ Դ-ի օրոք, որը նախորդել է Արտաշես Ա-ին և եղել է Երվանդյան զինաստիայի վերջին թագավորը։ Խորենացին վկայում է, որ Հայաստանի մայրաքաղաք Արմավիրի օդն ու կլիման վատառողջ լինելու, Երասխն իր հունը փոխելու և քաղաքի վրա արևելյան ցեղերի հաճախակի հարձակումների պատճառով Երվանդ Դ-ն արևմուտքում կառուցում է մի քաղաք, որը դարձնում է մայրաքաղաք։ Նոր կառուցված այդ քաղաքը Երվանդն իր անունով կոչում է Երվանդաշատ*[1]*։*

*Երվանդաշատի դիրքն ամուր էր, նա տեղադրված էր բարձր լեռան վրա։ Չվստահելով միայն բնական ամրությանը, Երվանդը պարսպապատել է տալիս իր կառուցած մայրաքաղաքը, որի միջնաբերդը գտնվում էր ժայռի գագաթին։*

*Սակայն, ինչպես երևում է, Երվանդաշատը երկար չի մնում որպես մայրաքաղաք. Արտաշես Ա-ն, Մեծ Հայքի անկախությունը հռչակելուց հետո, որոշ ժամանակ անց՝ մայրաքաղաք է դարձնում իր օրոք կառուցված Արտաշատը։*

*Երվանդաշատը Արտաշատի և Տիգրանակերտի նման եղել է հելլենիստական տիպի քաղաք։ Չնայած II դարի (մ.թ.ա.) առա-*

---

[1] *Տե՛ս* Մ. Խորենացի, *Պատմութիւն Հայոց. Թիֆլիս, 1913, էջ 160—161։*

չին կեսում նա դադարեց մայրաքաղաք լինելուց, այնուամենայնիվ, երկար դարեր Երվանդաշատը մնում էր որպես Հայաստանի խոշոր քաղաքներից մեկը։ IV դարին վերաբերող վկայություններից երևում է, որ այդ շրջանում Երվանդաշատն ուներ մի քանի տասնյակ հազար բնակիչ։ Այս քաղաքը մեծ հարված է ստանում Արշակ Բ-ի օրոք Պարսկաստանի կողմից կատարված հարձակումների հետևանքով։ IV դարի վերջերից սկսած Երվանդաշատն աստիճանաբար կորցնում է իր նախկին նշանակությունը՝ վերածվելով սովորական ֆեոդալական բերդաքաղաքի։

**Երվանդակերտ.**—Կառուցվել է նույն Երվանդ Դ-ի օրոք։ Գտնվում էր Երվանդաշատից ոչ հեռու, դեպի արևելք՝ Երասխի բարձրադիր ձախ ափին։ Երվանդակերտը եղել է ամուր բերդ և կառուցվել է Երվանդաշատ մայրաքաղաքի արևելյան մատույցները պաշտպանելու համար։ Երվանդակերտի մասին Խորենացու հիշատակությունները ցույց են տալիս, որ այն եղել է շատ գեղեցիկ։

Խորենացին Երվանդակերտը նկարագրում է իրեն հատուկ պատկերավոր ոճով։ Բերենք նրա խոսքերը. «Քաղցր է ինձ ասել և յաղագս գեղեցիկ դաստակերտին Երուանդակերտի, զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղեցիկ և չքնաղ յօրինուածովք։ Քանզի զմիջոց հովտին մեծի լնու մարդկութեամբք և պայծառ շինուածովք, լուսաւոր որպէս ական բիբ. իսկ շուրջ զմարդկութեամբն՝ ծաղկոցած և հոտարանաց կազմութիւն, որպէս շուրջ զբբովն զայլ բոլորակութիւն ական։ Իսկ զբազմութիւն այգեստանոյ, իբր զարտևանաց խիտ և գեղեցիկ ծիր, որոյ հիւսիսային կողմանն դիր կարակնաձև՝ արդարև գեղաւոր կուսից յօնից դարևանդաց համեմատ։ Իսկ ի հարաւոյ հարթութիւն դաշտաց, ծնօտից պարզութեան գեղեցկութիւն. իսկ գետն բերանացեալ դարաւանդօք ափանցն՝ զերկթերթիւն նշանակէ շրթանցն։ Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն գոզցես ի բարձրաւանդակ թագաւորանիստն զհայեցուածսն ունի. և արդար և բերրի և թագաւորական դաստակերտն»[1]։ Երվանդակերտի ավերակները առ այսօր պահպանվում են։

**Բագարան.**—Այս քաղաքը ևս կառուցվել է Երվանդ Դ-ի օրոք։ Սա գտնվում էր Երվանդաշատից ոչ հեռու, նրանից մոտ 5 կմ հյուսիս՝ Ախուրյանի աջ ափին։ Խորենացին վկայում է, որ Բագարանի կառուցումից հետո Արմավիրից այստեղ են տեղափոխվում հեթանոսական կուռքերը, այդ պատճառով էլ քաղաքը կոչվում է Բագարան («աստվածարան»)։ Կարելի է ենթադրել, որ Բագարանի մոտ տնկված «Ծննդոց» անտառն ունեցել է կրոնական նշանակություն։

[1] Մ. Խորենացի, *Պատմութիւն Հայոց*, Թիֆլիս, 1913, էջ 162—163։

Հավանաբար նա փոխարինել է Արմավիրի «Սոսյաց» պուրակին, որի ծառերի տերևների շարժումից քուրմերը «գուշակություններ» էին անում։

Բագարանի նշանակությունը բարձրանում է հատկապես IX դարի 2-րդ կեսից սկսած, երբ նա դառնում է Բագրատունյաց թագավորության մայրաքաղաքը։ Սակայն շատ շուտով Բագարանը մայրաքաղաքի իր դերը զիջում է Երազգավորսին։ Այնպես որ Բագարանը մայրաքաղաք էր միայն Աշոտ Ա-ի (885—890) օրոք։ Բագարանի ավերակները, հատկապես գերեզմանոցը, մինչև օրս էլ նշմարվում են։

**Արտագերք կամ Արտագերս.**—Հին Հայաստանի անառիկ բերդերից մեկն էր։ Հիշատակված է թե՛ հայ, թե՛ օտար պատմիչների և աշխարհագիրների երկերում։ IV դարում Արշակ Բ-ն Կամսարականների կալվածքների և մյուս բերդերի հետ միասին հարքունիս է գրավում նաև Արտագերսը, այն վերակառուցելով և դարձնելով արքունի բերդ-գանձարաններից մեկը։ Երբ 368 թ. Շապուհ Բ-ն Արշակ Բ-ին Տիզբոն է կանչում և նենգորեն Անհուշ բերդում բանտարկելուց հետո մի ստվարաթիվ բանակ է ուղարկում Հայաստանն ավերելու և գրավելու, Փառանձեմ թագուհին և թագաժառանգ Պապը արքունական գանձերով և 11 000 բերդապահ զորքով ամրանում են Արտագերս բերդում։ Բերդականները Փառանձեմ թագուհու գլխավորությամբ ավելի քան մի տարի (368—369) հերոսաբար դիմադրում են պարսկական զորքերին, որոնք ավերելով Հայաստանի մեծ մասը, եկել պաշարել էին Արտագերսը։ Պապին հաջողվում է պաշարումից դուրս գալ և փախչել հռոմեացիների մոտ, իսկ թագուհին, իշխանները և բերդապահ զորքը սովի, համաճարակի և գինամթերքի պակասության պատճառով ստիպված են լինում հանձնվել (369)։ Պարսիկները գրավելով Արտագերսը, կողոպտում են արքունական գանձերը և գերի վերցնում Փառանձեմին, որին շուտով տանջամահ են անում։ Այս դեպքից հետո Արտագերսն այլևս դադարում է բերդ լինելուց։ Նրա աշխարհագրական դիրքը դեռևս չի ճշտված։ Ոմանք այն նույնացնում են Բագրատունիների թագավորության ժամանակաշրջանի Կապույտ բերդի հետ, որ անհավանական է։

**Կապույտ բերդ.**—Գտնվում էր այժմյան Կաղզվանի մոտ, Արաքսի հովտում։ Հռչակված էր իր ամրությամբ։ Այս բերդում տեղի են ունեցել քաղաքական մի շարք դեպքեր։ Դրանցից առանձնապես հիշատակության արժանի է Բագրատունի Սմբատ Ա-ի օրոք տեղի ունեցածը։ Ատրպատականի արաբ էմիր Յուսուֆը Հայաստանի քա-

ղաքական անկախությունը վերացնելու և այն էմիրությանը ենթարկելու համար մի քանի արշավանքներ է կատարում դեպի Հայաստան։ Դիվանագիտական նախապատրաստություններից և երկրի ներսում դաշնակիցներ ձեռք բերելուց հետո Յուսուֆը 909 կամ 910 թ. մի մեծ բանակի գլուխ անցած մտնում է Հայաստան և ավերում նրա հյուսիսային ու հյուսիս-արևելյան շրջանները։ Սմբատ Ա-ն ստիպված է լինում իր ձեռքի տակ եղած փոքրաթիվ զորքի հետ միասին ամրանալ Կապույտ բերդում։ Թշնամին շրջապատում է Կապույտ բերդը։ Սակայն բերդականները մեկ տարի հերոսաբար դիմադրում են։ Միայն սովի ու ջրի պակասության պատճառով Սմբատը ստիպված է լինում անձնատուր լինել։ Յուսուֆը նրան գերում է և փակում Դվինի բերդում, իսկ 914 թ. Երնջակ բերդի մոտ տանջամահ է անում, ապա մարմինը բերելով Դվին, կարգադրում է խաչի վրա գամել՝ բնակչությանը սարսափի ենթարկելու համար։

Արշարունիքում եղած վանքերից նշանավոր էին Կապույտ Քարը և Կամրջաձորը, որոնք կառուցվել են X դարում։ Դրանցից հատկապես երկրորդը կարևոր դեր է խաղացել հայ միջնադարյան մշակույթի պատմության մեջ։

## Բագրևանդ

Բագրևանդը տարածվում էր Արածանիի վերնագավառում՝ Հայկական Պարի, Ծաղկանց և Դիադինի լեռների միջև։ Հնում Բագրևանդը գրավել է ավելի մեծ տերիտորիա։ Այդ ժամանակներում նրա մեջ է մտել նաև Ծաղկոտն գավառը։ Բագրևանդի տերիտորիայի մեծ մասը կազմում էր այժմյան Ալաշկերտի դաշտը, որը հայտնի էր իր բերրիությամբ։ Կարծիք կա, որ Բագրևանդը եղել է Բագրատունիների տոհմական գավառը, և Բագրևանդ ու Բագրատունի անունները կապ ունեն իրար հետ։

Այս գավառի հիշատակված վայրերից ուշադրության արժանի են հետևյալները.

**Վաղարշակերտ.**— Իբրև բերդ գոյություն է ունեցել դեռևս ուրարտական ժամանակաշրջանում։ Հետագայում բերդի շուրջը ծավալվել է համանուն քաղաքը, որի կառուցումը վերագրվում է Հայոց Վաղարշակ թագավորին։ Ուրարտական այլ բերդերի ավերակների նման Վաղարշակերտի բերդի ավերակներն էլ սովորաբար կոչվում են Թոփրախ-կալա (հողե բերդ)։ Գտնվում է Շարիան գետի ձախակողմյան վտակներից մեկի վրա։

**Բագավան**.— *Բառացի նշանակում է դիցավան։ Առաջին հիշատակություններում կոչված է քաղաքագյուղ և ավան, իսկ հետագա հիշատակություններում՝ գյուղ։ Գտնվում է Նպատ լեռան հյուսիսարևմտյան ստորոտում՝ Արածանիի ափին։ Այժմ էլ գոյություն ունի և կոչվում է Ուչքիլիսե։ Այստեղ է գտնվում Ս. Հովհաննեսի վանքը։ Ըստ ավանդության, այստեղ է առաջին անգամ Նավասարդի տոնը տոնվել։ Մի այլ ավանդության համաձայն, իբր, այստեղ է մկրտվել Տրդատ Գ-ն իր զորքով, որից հետո քրիստոնեությունը տարածվել է ամբողջ Հայաստանում։*

**Ձիրավ**.— *Դաշտ է, որտեղ 371 թ. տեղի է ունեցել արյունահեղ ճակատամարտ հայկական զորքի (որին օժանդակում էր նաև հռոմեական մի զորամաս) և պարսկական մեծաթիվ զորքերի միջև։ Ճակատամարտը վերջանում է հայրենի երկրի անկախության համար մարտնչող հայերի կատարյալ հաղթանակով։ Պարսկական զորքերը դուրս են շպրտվում Հայաստանի սահմաններից և Պապ թագավորը վերջնականապես հաստատվում է Հայոց գահի վրա։*

## Ծաղկոտն

*Ինչպես նշվեց, Ծաղկոտն գավառը հնում կազմում էր Բագրևանդի բաղկացուցիչ մասը։ Նա տարածվում էր Ծաղկանց լեռների շրջանում։ Սկզբում պատկանում էր Գնունիների նախարարական տանը, իսկ հետագայում, հավանաբար Արշակ Բ-ի օրոք, անցնում է Արշակունիների արքունիքին։ Լեռնային զով կլիմա ունենալու պատճառով, թե՛ Արշակունիների թագավորության և թե՛ մարզպանների տիրապետության շրջանում՝ հայկական զորքերն իրենց ճամբարային շրջանը անց էին կացնում Ծաղկոտն գավառում։*

*Ծաղկոտնի պատմա-աշխարհագրական վայրերից են.*

**Զարեհավան**.— *Հայաստանի հնագույն քաղաքներից մեկն էր։ Հավանաբար գտնվում էր Բագավանի մոտ՝ Թավրիզ—Կարին—Տրապիզոն ճանապարհի վրա։ Փավստոս Բուզանդի[1] վկայություններից երևում է, որ Զարեհավանը IV դարում եղել է բավականին փարթամ մի քաղաք։ Այստեղ հայերից բացի բնակվում էին նաև հրեա առևտրականներ ու արհեստավորներ։ Սակայն նույն դարի 60-ական թվականներին պարսկական զորքերը, Հայաստանի մի շարք այլ քաղաքների հետ միասին, ավերում են Զարեհավանը։ Շապուհ Բ-ն քաղաքի բնակչության մեծ մասին, հատկապես արհեստավոր-*

[1] *Փ. Բուզանդը Ծաղկոտն գավառի անունը չի նշում, իսկ Զարեհավանը հիշատակում է որպես Բագրևանդ գավառում գտնվող քաղաք։*

ներին ու առևտրականներին գերելով, քշում է Պարսկաստանի խորքերը։ Դրանից հետո Զարեհավանը վեր է ածվում մի սովորական գյուղի։

Զարեհավանում է ծնվել միջնադարյան Հայաստանի սոցիալական խոշոր շարժման՝ թոնդրակեցիների շարժման հիմնադիրն ու առաջին ղեկավարը՝ Սմբատը, որն իր ծննդավայրի անունով կոչվել է Սմբատ Զարեհավանցի։

Շահապիվան.— Վանք և բնակավայր։ Աշխարհագրական ճշգրիտ դիրքը մեզ համար մնում է անհայտ։ Հավանաբար գտնվել է Բագավանի մոտերքում։ Շահապիվանում 443 թ. գումարվել է եկեղեցական ժողով, որը հաստատել է մի շարք օրենքներ ու կանոններ։ Այդ օրենքները ուղղված էին V դարում տարածված աղանդավորական-սոցիալական շարժման՝ մծղնեության դեմ։

Անգղ.— Բերդ և գյուղաքաղաք։ Աշխարհագրական դիրքը չի ճշտված։ Անգղը հայ ժողովրդի պատմության մեջ նշանավոր է դարձել 450 թ. տեղի ունեցած դեպքերով։ Այդ թվին, ինչպես հայտնի է, պարսից Հազկերտ Բ արքան Տիզբոն գնացած հայ նախարարների հետ Հայաստան է ուղարկում պարսկական հատուկ զորագունդ և բազմաթիվ մոգեր։ Սակայն պարսկական զորագնդի և մոգերի մուտքը Հայաստան առաջին իսկ պահից առաջացնում է դիմադրական շարժում։ Եվ ահա առաջինը ոտքի են կանգնում Անգղ գյուղաքաղաքի ու նրա շրջակայքի բնակիչները։ Ընդհարումը տեղի է ունենում Անգղում, որտեղ պարսիկ մոգերը կանգնեցրել էին կրակապաշտական տաճար։ Ապստամբ ռամիկ ժողովուրդը հարձակվում է պարսիկ զորքերի և մոգերի վրա և դուրս քշում նրանց։ Անգղում տեղի ունեցած այս դեպքը ազդանշանն էր ազատագրական այն հսկա պայքարի, որ հայ ժողովուրդը երկար ժամանակ մղեց Պարսկաստանի դեմ։

Ծաղկոտն գավառում էր գտնվում Վարշակի ջերմուկը (այժմյան Դիադին գյուղաքաղաքի մոտ)։ Հիշատակություններից երևում է, որ այս ջուրը դեռևս հնագույն ժամանակներից տեղացիներն օգտագործել են բուժման նպատակներով։ Ժողովուրդն այդ տաք և բուժիչ հատկություններ ունեցող աղբյուրների մասին ստեղծել է մի քանի ավանդություններ։

## Վանանդ

Վանանդ գավառը տերիտորիայով համընկնում է այժմյան Կարսի և Սարիղամիշի շրջաններին։ Ունի առողջարար օդ և զով

*կլիմա։ Ձմռանն այստեղ լինում են սաստիկ ցրտեր։ Վանանդն ունի լավ արոտավայրեր, խոտհարքներ և հացահատիկային կուլտուրաների համար լավագույն հողեր։ Վանանդում իշխում էին նույնանուն իշխանները։*

*VIII դարի վերջերից այս գավառին տեր են դառնում Բագրատունիները։*

*Աշոտ Գ-ի կողմից Կարսում կառավարիչ նշանակված նրա եղբայր Մուշեղ Բագրատունին 961 թ. իրեն հռչակում է թագավոր։ Դրանով էլ հենց հիմնադրվում է Կարսի կամ Վանանդի թագավորությունը, որն իր մեջ ընդգրկում էր Վանանդ գավառն ամբողջությամբ։ Վանանդի թագավորությունն այդ ժամանակներում, Հայաստանի հյուսիսային և հյուսիս-արևելյան շրջաններում գոյություն ունեցող հայկական մյուս թագավորությունների նման, ենթարկվում էր Բագրատունիների կենտրոնական թագավորությանը։ Բագրատունյաց թագավորության անկման շրջանում Վանանդը ենթարկվում է Բյուզանդիային, իսկ 1065 թ. գրավվում է սելջուկների կողմից։ Թամար թագուհու օրոք Վանանդը իր Կարս քաղաքով շատ կարճ ժամանակով միացվում է Վրաց Բագրատունիների թագավորությանը։*

*Վանանդի պատմական վայրերից նշանավոր է Կ ա ր ս քաղաքը։ Սրա անունը էթնիկական ծագում ունի։ Ինչպես Կարս, այնպես էլ Կարին անունները կապված են հնագույն ժամանակներում այդ կողմերում բնակվող կարինիտներ ցեղախմբի անվան հետ, որը հիշատակված է Քսենոֆոնի մոտ։ Հին շրջանի մեր մատենագիրները Կարսը կոչում են բերդ («Կարուց բերդ»)։ X դարի երկրորդ քառորդից սկսած այն անվանվում է ամուր բերդ և քաղաք։ Հենց այդ ժամանակից էլ Կարսը դառնում է Բագրատունյաց թագավորության մայրաքաղաք (928—961)։ Իբրև մայրաքաղաք այն արագ թափով բարեկարգվում է։ Այդ ժամանակներում են կառուցում Կարսի Կաթողիկե եկեղեցին և հռչակավոր բերդը։ Կարսի զարգացումը շարունակվում է նաև հետագա ժամանակներում՝ մինչև մոնղոլական արշավանքները։ Կարսը իր բնական բերդի շնորհիվ, որն է՛լ ավելի էր ամրացվել արհեստական կառուցումներով՝ հաստապատ պարիսպներով, աշտարակներով և այլն, հռչակված էր իբրև անառիկ բերդաքաղաք։ Լինելով սկզբում Բագրատունյաց կենտրոնական թագավորության, իսկ 961 թ. Վանանդի թագավորության մայրաքաղաք, նա միաժամանակ հանդիսանում էր առևտրի ու արհեստագործության խոշոր կենտրոն։ XI դարի պատմագիր Արիստակես Լաստիվերտցին մեծ հիացմունքով է խոսում Կարսի*

*մասին։ Պատմագրի ասածներից երևում է, որ Կարսը առևտրական ճանապարհներով սերտ հարաբերություններ ուներ ինչպես Սև ծովի առափնյա քաղաքների, այնպես էլ Հայաստանի ու հարևան այլ երկրների քաղաքների հետ*[1]։

*Կարսը XI—XII դարերի Հայաստանի խոշորագույն քաղաքներից մեկն էր։ Նրա բնակչության թիվը հավանաբար 50 000-ից անցնում էր։ Իսկ սա այդ դարերի համար չափազանց մեծ թիվ է։*

*Կարսը մոնղոլական տիրապետության հենց սկզբից աստիճանաբար կորցնում է իր նշանակությունը։ Սակայն մինչև օրս էլ նա գոյություն ունի։ Կարսը գտնվում է Կարս գետի միջին հոսանքի շրջանում, նրա ձախ ափին։ Նրա անունն աղավաղելով դարձրել են Ղարս։*

## Շիրակ

*Շիրակ անվան առաջացման վերաբերյալ մի ավանդություն է պահպանվել Մովսես Խորենացու «Հայոց պատմության» մեջ, ըստ որի այն, իբր, կապված է ավանդական չատակեր Շարայի անվան հետ*[2]։ *Մեր ժամանակների հայագետ բանասերները ենթադրում են, որ Շիրակ անունը կապված է կիմերական սիրակներ կոչված ցեղախմբի անվան հետ։*

*Շիրակը գրավում էր բավականաչափ ընդարձակ տարածություն։ Նա փռված էր Ախուրյան գետի երկու ափերին՝ նրա վերին հոսանքից մինչև ստորին հոսանքն ընկած շրջաններում։ Այնպես որ այժմ ֆիզիկական աշխարհագրության մեջ Շիրակ կոչվող դաշտը նախկինում կազմում էր Շիրակ գավառի միայն մի մասը։*

*Շիրակը դաշտային գավառ էր, հայտնի էր բերրի հողերով և զով կլիմայով։ Այստեղ առանձնապես զարգացած էր հացահատիկային կուլտուրաների մշակությունը։*

*Արշակունիների թագավորության շրջանում Շիրակը հիմնականում պատկանում էր Կամսարականներին, սակայն այնտեղ կալվածքներ ունեին նաև Դիմաքսյաններն ու Սահառունիները։*

*Արաբական տիրապետության շրջանում՝ հատկապես VIII դարում Կամսարական իշխանական տունը կանգնում է ոչնչացման վտանգի առաջ, ուստի ստիպված է լինում VIII դարի վերջերին իր կալվածքները, այդ թվում և Շիրակը, վաճառել Բագրատունիներին։*

---

[1] *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *Պատմութիւն, Թիֆլիս, 1912, էջ 91։*

[2] *Տե՛ս* Մովսես Խորենացի, *Պատմութիւն Հայոց, 1913, էջ 43։*

*IX դարի երկրորդ կեսից սկսած Շիրակը դառնում է Հայաստանի քաղաքական ու տնտեսական կյանքի կենտրոնը։ Այստեղ էին գտնվում Բագրատունիների թագավորության շրջանի Երազգավորս և հռչակավոր Անի մայրաքաղաքները, ինչպես և մի քանի մեծահռչակ վանքեր, որոնք դարձել էին այդ ժամանակաշրջանի մշակույթի օջախներ։*

*Պատմա-աշխարհագրական առումով Շիրակի նշանավոր բազմաթիվ վայրերից անհրաժեշտ ենք համարում կանգ առնել հետևյալների վրա.*

**Անի.**— *Միջնադարյան Հայաստանի այս մեծահռչակ քաղաքը, որը տեղադրված էր Ախուրյանի աջ ափին, մինչև X դարի 2-րդ կեսը եղել է սովորական բերդ։ Նրա մասին առաջին անգամ հիշատակվում է V դարում։ Անի բերդը այդպես մնում է մինչև X դարը, այսինքն՝ մինչև այն ժամանակ, երբ Շիրակը դառնում է Հայաստանի տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքի կարևոր կենտրոնը։*

*Անին արագորեն սկսում է զարգանալ հատկապես Հայաստանի կենտրոնական թագավորության մայրաքաղաք դառնալուց հետո (961 թ.)։ Այնուհետև՝ 40—50 տարվա ընթացքում Անին դառնում է ոչ միայն Հայաստանի ամենամեծ քաղաքը, այլև Մերձավոր Արևելքի խոշորագույն քաղաքներից մեկը։*

*Անիի արագ զարգացումը պետք է բացատրել ոչ միայն այդ ժամանակվա Հայաստանի ընդհանուր տնտեսական վերելքով, քաղաքական նպաստավոր պայմաններով և նրանով, որ Անին երկրի մայրաքաղաքն էր, այլև նրանով, որ Հայկական պետության մեջ նա ուներ շատ հարմար դիրք՝ գտնվում էր Բագրատունիների թագավորության գրեթե կենտրոնում և մի շարք հարմար ճանապարհներով կապված էր ինչպես Հայաստանի տարբեր մասերի, այնպես էլ հարևան երկրների խոշոր քաղաքների հետ։ Անիի առևտրական-տնտեսական հարաբերությունները չէին սահմանափակվում երկրի ներսում, նա այդպիսի կապեր ուներ նաև Վրաստանի, Աղվանքի, Ատրպատականի, Պարսկաստանի, Արևմտյան Հայաստանի, Սև ծովի առափնյա շրջանների քաղաքների, Գալիցիայի, Լեհաստանի և Հարավային Ռուսիայի հետ։*

*Դրանք էին այն նախապայմանները, որոնց շնորհիվ Անին արագ թափով բարձրացավ։*

*Միջնադարյան Հայաստանի քաղաքների մեջ Անին ամենից լավ է ուսումնասիրված։ Նրա ուսումնասիրությամբ զբաղվել են Ն. Մառը, Թ. Թորամանյանը, Հ. Օրբելին, Լեոն, Լինչը և շատ*

ուրիշներ։ Անին ունեցել է միջնադարյան քաղաքներին հատուկ կառուցվածք. բաղկացած էր միջնաբերդից, շահաստանից և արվարձաններից։ Անիի միջնաբերդը տեղադրված էր քաղաքի հարավ-արևմտյան մասում, մի ժայռոտ բլրի վրա։ Միջնաբերդի ներսում էին գտնվում թագավորի, նրա ընտանիքի ու շքախմբի պալատներն ու ապարանքները, ինչպես և բաղնիքն ու մայր եկեղեցին։

Միջնաբերդի հյուսիս-արևելյան կողմում փռվող սարահարթի վրա տարածված էր բուն քաղաքը՝ շահաստանը։ Նրա շահաստան կոչվող մասը ևս միջնաբերդի նման շրջապատված էր բարձր պարիսպներով, որոնք ունեցել են աշտարակներ։ Միջնաբերդի պարիսպը կոչվում էր ներքին կամ փոքր պարիսպ, իսկ շահաստանինը՝ մեծ կամ արտաքին։ Եթե միջնաբերդում բնակվում էին բարձր ազնվականությունն ու նրա շքախումբը կազմող բերդապաշտպան կայազորը, ապա շահաստանի հիմնական բնակիչները առևտրականներն ու արհեստավորներն էին։ Անին ունեցել է առևտրի համար հատուկ հրապարակ-շուկա։ Առևտրականներն այստեղ զբաղեցրել են հատուկ թաղ, որը հայտնի էր իր շենքերի շքեղությամբ։ Դրսից եկած առևտրականներին սպասարկելու և նրանցից առավել օգուտ քաղելու համար անեցի մեծահարուստները, նույնիսկ թագավորները և իշխանները այստեղ կառուցել էին բազմաթիվ իջևաններ ու հյուրանոցներ։ Անիի առևտուրն իր նշանակալի մասով մեծածախ էր և կրում էր տարանցիկ բնույթ։ Անիում հետզհետե հանդես են գալիս մեծ կապիտալներ ունեցող վաճառականներ։ XIII դարում դրանց տիպիկ ներկայացուցիչներն էին՝ Տիգրան Հոնենցը և Ավետենց Սահմադինը, որոնք ըստ վկայությունների, իրենց ձեռքում էին կենտրոնացրել հսկայական կալվածքներ և դրամ։ Նրանք ունեին հյուրանոցներ, իջևաններ, բաղնիքներ, ջրաղացներ, ձիթհանքեր և այլն։

Անիում կարևոր դեր էին խաղում նաև արհեստավորները։ Այս քաղաքը դարձել էր արհեստագործության խոշորագույն կենտրոն։ Անիում XIII դարի սկզբներին գոյություն ուներ ավելի քան 40 տեսակի արհեստ։ Արհեստները քաղաքում բաշխված էին ըստ ճյուղերի. նրանցից յուրաքանչյուրի համար գոյություն ուներ առանձին շարք, փողոց կամ թաղամաս։ Անիում ավելի շատ տարածված էին զինագործությունը, դարբնությունը, ոսկերչությունը, մանածագործությունը, կաշեգործությունը, որմնադրությունը, բրուտագործությունը, քարտաշությունը, թամբագործությունը, պայտարությունը և այլն։ Գրավոր հիշատակություններից և կատարված պեղումների արդյունքներից պարզվում է, որ XII—XIII դդ. Անիում,

ինչպես և Հայաստանի այդ ժամանակվա մյուս քաղաքներում, արհեստավորները համախմբված էին արհեստակցական «եղբայրությունների»՝ համքարությունների մեջ։

Անիի արվարձաններում բնակություն էին հաստատել չքավորները և ընչազուրկները։ Նրանք մեծ մասամբ ապրում էին խղճուկ խրճիթներում և գետնափոր հյուղակներում։ Իրենց գերակշիռ մասով նրանք զբաղվում էին գյուղատնտեսությամբ և սևագործ աշխատանքով։

XI դարի սկզբից Անիում արդեն գոյություն ուներ քաղաքային ինքնավարություն, որի գլուխ էր կանգնած «երիցանին»՝ քաղաքի ավագների խորհուրդը։ Քաղաքի կառավարմանը մասնակցում էին բարձր ազնվականության ներկայացուցիչներն ու եպիսկոպոսը։ Անիի քաղաքապետը Բագրատունիների թագավորության շրջանում նշանակվում էր Բագրատունի թագավորի, իսկ Զաքարյանների իշխանության ժամանակաշրջանում՝ Զաքարյան իշխանների կողմից։

Անիի բնակչության թիվը XI—XII դարերում հասել էր մոտ հարյուր հազարի, գուցե և ավելի։ Քաղաքական վտանգավոր պահերին Անին ապաստան էր դառնում նաև իր շրջակայքի բնակիչների համար։ Նման դեպքերում նրա բնակչության թիվը անհամեմատ մեծանում էր։

Անիի քաղաքական պատմությունը չափազանց անկայուն է եղել։ Բագրատունիների թագավորության անկումից հետո (1045 թ.) նա արտաքին նվաճողների կողմից մի շարք անգամ ենթարկվել է ավերածությունների և մի քանի անգամ անցել ձեռքից ձեռք։ Սակայն մինչև մոնղոլական ծանր լծի հաստատումը Հայաստանում Անիի զարգացումը, ընդհանուր առմամբ, շարունակվում էր։

1236 թ. մոնղոլները Չարմաղանի գլխավորությամբ գրավում են Անին։ Քաղաքի պաշտպանները, որոնք համառ դիմադրել էին զավթիչներին, ենթարկվում են խոշտանգումների. նրանց մի զգալի մասը ոչնչացվում է, քաղաքում կատարվում են մեծ ավերածություններ։

Մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում, երկրի տնտեսական ընդհանուր անկման հետ միասին, Անին արագ կերպով կորցնում է իր նշանակությունը, անկում են ապրում արհեստագործությունն ու առևտուրը։ Քաղաքի բնակչությունը բռնում է արտագաղթի ուղին։ Այդ բոլորին ավելանում է 1319 թ. աղետաբեր երկրաշարժը, որի հետևանքով փլատակների են վերածվում Անիի հիասքանչ կառուցումները։ Իր նշանակությունը կորցրած Անին այդ երկրաշարժից հետո վեր է ածվում մի խղճուկ գյուղի։

*Անիի ճարտարապետական կոթողները, որոնց ավերակներն են միայն պահպանվել մինչև մեր օրերը, հանդիսանում են հայ ժողովրդի ճարտարապետական բարձր մշակույթի գրավականը։ Անիի կարևոր կոթողներից կարելի է հիշատակել նրա ներքին և արտաքին պարիսպները, ջրմուղը, Ախուրյանի վրա կառուցված կամուրջները, Գագիկ Ա-ի օրոք (989—1020) կառուցված արքունական պալատը, Մայր եկեղեցին, Գագկաշեն տաճարը, Հովվի եկեղեցին, Մանուչեի մզկիթը և այլն։*

Երազգավորս.— *Քաղաքագյուղ էր։ Տեղադրված էր Ախուրյան գետի աջ ափին, այժմյան Լենինական քաղաքից հարավ-արևմուտք։ Սրա մասին եղած առաջին հիշատակությունը վերաբերում է X դարին։ Սկզբում հայտնի էր Երազգավորս անունով, իսկ հետագայում կոչվել է Շիրակավան։ Բագրատունի Սմբատ Ա-ի (890—914) և Աշոտ Բ-ի (Երկաթ, 914—928) օրոք Հայաստանի մայրաքաղաքն էր։ Չնայած դրան, Երազգավորսն առանձին զարգացում չի ունեցել, մնացել է իբրև փոքրիկ քաղաք։*

Կումայրի.— *Եղել է գյուղ։ Բանասերները ենթադրում են, որ Կումայրի անունը կապված է կիմերների անվան հետ։*

*Կումայրի անշուք գյուղը պատմության մեջ առաջին անգամ նշանավոր է դառնում հայ ժողովրդի՝ արաբական տիրապետության դեմ 774—775 թթ. մղած ազատագրական պատերազմների ժամանակ։ Ժողովրդական-ազատագրական այս շարժման ազդանշանը տրվում է Կումայրիում՝ Արտավազդ Մամիկոնյանի գլխավորությամբ։*

*Կումայրի անունը հետագայում աղավաղման ենթարկվելով դարձել է Գյումրի, իսկ Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց հետո կոչվեց Ալեքսանդրապոլ (այժմյան Լենինական քաղաքը) և դարձավ բերդաքաղաք։ Կումայրի-Գյումրին ընդհուպ մինչև XIX դարի կեսերը մնում էր իբրև մի անշուք բնակավայր։ Նույն դարի երկրորդ կեսից նա դառնում է արհեստագործության մի աշխույժ կենտրոն։*

*Շիրակը նշանավոր է եղել իր շքեղ վանքերով։ Շիրակում էին գտնվում Մարմաշենի (Կումայրիից հյուսիս-արևմուտք), Արգինայի (Երազգավորսի մոտ, նրանից քիչ արևմուտք), Հոռոմոսի (Անիի մոտ, նրանից քիչ հյուսիս-արևելք, Ախուրյանի աջ ափին), Տեկորի (Անիից հարավ-արևմուտք), Մրենի (Ախուրյանի ստորին հոսանքի շրջանում, նրա աջ ափին), Հառիճի (Արթիկի մոտ, նրանից հարավ-արևելք), Արթիկի, Թալինի և Դպրևանի հայտնի վանքերը։ Թվարկված վան-*

քերը խոշոր դեր են խաղացել միջնադարյան Հայաստանի մշակույթի պատմության մեջ։ Դրանց մեծ մասը կառուցվել է X—XI դարերում և ճարտարապետական կարևոր հուշարձաններ են, որոնք կանգուն կամ ավերակների ձևով պահպանվել են մինչև մեր օրերը։

## Արագածոտն

*Արագածոտն գավառի սահմաններն անորոշ են։ Պատմական քարտեզների վրա Արագածոտնը երբեմն տեղադրվում է միայն Արագած լեռան հարավային լանջերին։*

*Արագածոտնի տերիտորիան ամենից ճիշտ որոշել է Ալիշանը[1]։ Ըստ նրա, Արագածոտն գավառի հյուսիսային սահմանը հանում էր Ապարան գետի ակունքների շրջանը, հարավային սահմանը՝ Երասխ, իսկ արևմուտքից ու արևելքից սահմանակցված էր Շիրակ և Կոտայք գավառներին։*

*Արագածոտնը ունի բնական բազմապիսի պայմաններ։ Նրա հյուսիսային կեսը զբաղեցնում է Արագած լեռն իր դարավանդներով, իսկ հարավայինը՝ Արմավիրի և Վաղարշապատի շրջանները (այժմյան Հոկտեմբերյանը և Էջմիածինը), որոնք հարթավայրային են։*

*Այս գավառը Արշակունիների թագավորության շրջանում ամբողջապես պատկանում էր արքունիքին։ Արշակունիների անկումից հետո այն մասնատվում է առանձին նախարարական տների միջև, ընդ որում այստեղ լայնածավալ կալվածքներ ուներ նաև Էջմիածնի վանքը։ Հայաստանում արաբական տիրապետության անկումից հետո Արագածոտնը կազմեց Անի-Շիրակի թագավորության բաղկացուցիչ մասը։*

Արագածոտնի պատմական նշանավոր վայրերից են.

**Արմավիր**.— *Աշխարհի հնագույն քաղաքներից մեկն էր։ Գտնվում էր այժմյան Հայկական ՍՍՀ Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր գյուղի (Ղուրդուղուլի) մոտ։*

*Արմավիրը կառուցվել է Արգիշտի Ա-ի օրոք՝ VIII դարում (մ.թ.ա.) և ուրարտական ժամանակաշրջանում կոչվել է Արգիշտիխինիլի («Արգիշտիի քաղաք»)։ Արգիշտիխինիլին դառնում է Ուրարտական պետության երկրորդ մայրաքաղաքը, նրա հյուսիսային մարզերի կենտրոնը։ Սակայն Ուրարտական պետության անկման շրջանում՝ VII դարից սկսած՝ սկյութական արշավանքների հե-*

[1] *Տե՛ս նրա «Այրարատ» աշխատությանը կցված քարտեզը։*

տանքով Արգիշտիխինիլին կորցնում է ոչ միայն իր հյուսիսային երկրամասերի կենտրոն լինելու նշանակությունը, այլև սկյութների կողմից ենթարկվում է ավերման։ V կամ IV դարում (մ.թ.ա.) այդ քաղաքը նորից վերաշինվում է Երվանդյանների կողմից և դառնում Երվանդյանների Արարատյան «թագավորության» մայրաքաղաքը։ Մայրաքաղաք լինելու հետ միասին Արմավիրը նաև այդ ժամանակվա Հայաստանի հեթանոսական կրոնի կենտրոնն էր։ Նա իբրև մայրաքաղաք մնում է մինչև III դարի վերջերը (մ.թ.ա.)։ Երվանդյանների վերջին թագավորը, որը նախորդել է Արտաշեսյան դինաստիայի հիմնադիր Արտաշես Ա-ին, երկրի աթոռանիստն է դարձնում իր կառուցած նոր քաղաքը՝ Երվանդաշատը[1]։ Այդ ժամանակից սկսած Արմավիրը դադարում է մայրաքաղաք լինելուց և բավական երկար ժամանակ պատմիչների կողմից հիշատակվում է որպես «լքված մայրաքաղաք»։ Չնայած դրան, Արմավիրը հետագա դարերում, ընդհուպ մինչև III—IV դարերը համարվում էր հին Հայաստանի մեծ քաղաքներից մեկը։ Խորենացու մի հիշատակությունից երևում է, որ Արմավիրի արքունական կառուցվածքները պահպանվել էին մինչև Արշակ Բ-ի թագավորության ժամանակները։

Արմավիրը՝ բլրի վրա գտնվելու պատճառով՝ երբեմն կոչվել է Բլուր։ Այժմ հազիվ են նշմարվում նրա ավերակները։

Արմավիրում հայտնաբերված նյութական կուլտուրայի մնացորդները և ուրարտական արձանագրությունները արժեքավոր սկզբնաղբյուրներ են թե՛ ուրարտական ժամանակաշրջանի և թե՛ հին Հայաստանի պատմության առանձին հարցերի լուսաբանման համար։ Նրա ավերակների շրջանում այժմ Հայկական ՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի կողմից պարբերաբար կատարվում են պեղումներ։

Վաղարշապատ.— Գտնվում էր այժմյան էջմիածին քաղաքի տեղում։ Իբրև բնակավայր գոյություն է ունեցել հնագույն ժամանակներից։ Հնում կոչվում էր Վարդգեսավան։ Արշակունի Վաղարշակ Ա թագավորը (117—140) վերակառուցելով, մեծացնելով և պարսպապատելով այն, դարձրեց իր մայրաքաղաքը՝ կոչելով Վաղարշապատ[2]։ Վաղարշապատն ունեցել է և այլ անուններ՝ Նոր Քաղաք (Կայնոպոլիս), Քաղաքամայր, Արտեմիդա։ Արշակունիների թագավորության շրջանում, երկրորդ դարից սկսած, Արտաշատի հետ միասին, մայրաքաղաքի դեր է խաղում և Վաղարշապատը։

[1] Տե՛ս Մովսես Խորենացի, Պատմություն Հայոց, Թիֆլիս, 1913, էջ 160—161։

[2] Նույն տեղը, էջ 198։

Վաղարշապատի մասին կան բազմաթիվ հիշատակություններ։ Այդ հիշատակություններից պարզվում է, որ նա գրավել է բավականաչափ ընդարձակ տարածություն։ Դա երևում է նրանից, որ ա) քաղաքը կոչվել է «Քաղաքուղաշտ», բ) տարածվել է մինչև Զվարթնոց տաճարը (որը այժմ էջմիածին քաղաքից մոտ երեք կմ արևելք է գտնվում) և գ) Քասախ գետը հոսում էր նրա միջով, մինչդեռ այդ գետը այժմյան էջմիածնի արևմտյան մասով է անցնում։ Վաղարշապատի փռվածությունը հետևանք էր ոչ թե քաղաքի արտակարգ բազմամարդության, այլ այն բանի, որ, լինելով ֆեոդալական տիպի քաղաք, այստեղ բնակչության մի զգալի մասն զբաղվել է երկրագործությամբ ու այլ գյուղատնտեսական աշխատանքներով. քաղաքի ներսում էր գտնվում նրանց ցանքսերի ու այգիների զգալի մասը։

Վաղարշապատը պաշտպանական տեսակետից ուներ աննպաստ դիրք։ Այդ պատճառով էլ պարսպից բացի, նրա շուրջը փորված էր խոր և բավականաչափ լայն փոս, որը քաղաքական վտանգավոր պահերին լցնում էին ջրով։ Քաղաքն ուներ մի քանի դարպասներ։ Դրանցից արևելյանը կոչվում էր Արեգի դուռ։ Քաղաքի հարավային կողմում փռված էր մի ընդարձակ ճահիճ։ Վերջինս փաստորեն մայրաքաղաքի կառափնարանն էր, որտեղ ի կատար էր ածվում մահապատժի ենթարկվածների դատավճիռը։

Վաղարշապատն Արշակունիների անկումից հետո որոշ չափով կորցնում է իր նշանակությունը։ Արաբական տիրապետության շրջանում նա միանգամայն աննշան էր դարձել, իսկ X—XIII դարերում նորից բարձրանում է։

Վաղարշապատի՝ քաղաքացիական բնույթի կառուցումներից ոչինչ չի մնացել մինչև մեր օրերը, այստեղ եղած արքունական և իշխանական ապարանքների, հյուրանոցների, բաղնիքների, կամուրջների ու այլ կառուցումների հետքերն անգամ չկան։ Հակառակ դրան, չափազանց լավ են պահպանված քրիստոնեական կրոնի հետ կապված կառուցումները։ Այդ պետք է բացատրել նրանով, որ ա) Վաղարշապատը գրեթե միշտ լինելով Հայաստանի կրոնական կենտրոն, այնտեղի եկեղեցիները պարբերաբար ենթարկվել են վերանորոգման և բ) ինչպես հայտնի է, երկիր ներխուժած թշնամիները, քաղաքացիական շենքերի համեմատությամբ, սովորաբար ավելի քիչ էին ավերում կրոնի հետ կապված կառուցումները։

Վաղարշապատի եկեղեցիներից նշանավոր են՝ Մայր եկեղեցին, որը հետագայում կոչվեց էջմիածին, և Հռիփսիմեի, Գայանեի



10—1402

ու Շողակաթի եկեղեցիները։ Ըստ հիշատակությունների, էջմիածինը կառուցվել է IV դարի սկզբներին, իսկ Գայանեն ու Հռիփսիմեն՝ VII դարում։ Հետագայում դրանք ենթարկվել են վերանորոգման։ Այսպես, օրինակ, էջմիածին տաճարը հիմնականում վերանորոգման է ենթարկվել V դարի երկրորդ կեսին՝ Վահան Մամիկոնյանի օրոք. VII դարի սկզբում, Կոմիտաս կաթողիկոսի օրոք տաճարի փայտյա գմբեթը քանդում են, կառուցում նորից՝ քարով։ Նույն դարում տաճարին կից կառուցվում է մենարան, որը հիմնական վերանորոգման է ենթարկվում 1441 թ.։ Մենարանից բացի, էջմիածին տաճարին կից եղել են բազմաթիվ այլ շենքեր ու խուցեր։ Էջմիածինը կաթողիկոսական վանք լինելով հանդերձ, միաժամանակ հին Հայաստանի խոշոր ֆեոդալական կենտրոններից մեկն էր։ Էջմիածնի կալվածքներն առանձնապես մեծ չափերի էին հասնում վանքի շրջակայքում և Դարանաղի, Եկեղյաց, Տարոն ու Բագրևանդ գավառներում։ Արաբական տիրապետության շրջանում և IX—XIII դարերում էջմիածինը որոշ չափով կորցնում է իր, այսպես կոչված, համահայաստանյան նշանակությունը։ Այդ շրջանում կաթողիկոսական աթոռը հաճախ փոխադրվում է այլ վանքեր և, բացի դրանից, ի հակակշիռ էջմիածնի կաթողիկոսության, երկրի այլ մասերում ևս կազմավորվում են առանձին կաթողիկոսություններ, իբրև արդյունք ֆեոդալական մասնատվածության։

Էջմիածնի դերը բարձրանում է հատկապես XV դարից սկսած, երբ 1441 թ. նա դառնում է ամենայն Հայոց կաթողիկոսի աթոռանիստը։

Իր ճարտարապետական ուրույն կառուցվածքով հայտնի է Զվարթնոց տաճարը։ Սա կառուցվել է Ներսես Տայեցի կաթողիկոսի օրոք (641—661)՝ 652 թ.։ Էջմիածնից հեռու է ընդամենը մոտ 3 կմ։ Զվարթնոցը հանդիսանում է ճարտարապետական հրաշակերտներից մեկը։ Նա VI—VII դարերի Հայաստանի ճարտարապետության գլուխգործոցն է։ Հոյակապ սյունաշարքը և ճոխ քանդակները մի առանձին հմայք են տվել հայ հին ճարտարապետական այդ եզակի կառուցվածքին։ Զվարթնոցը (որ բառացի նշանակում է հրեշտականոց) եղել է եռահարկ, խաչաձև հատակագծով և ներկայացրել է ճարտարապետական բարդ կառուցվածք։

Զվարթնոցի ավերակներն ու նրանց կից նորակառույց թանգարանը դարձել են ՍՍՀ Միության տարբեր մասերից եկող զբոսաշրջիկների և ճարտարապետների այցելության սիրելի վայրերից մեկը։ Տաճարը ճարտարապետական առումով հիմնովին ուսում-

նաsիրել է հայ ճարտարապետության պատմության խոշորագույն մասնագետ Թորոս Թորամանյանը։

**Օշական և Փարպի.**— Երկուսն էլ գյուղեր են, այժմ էլ գոյություն ունեն և գտնվում են Աշտարակի շրջանում։ Դրանց մասին եղած առաջին հիշատակությունը վերաբերում է V դարին։ Օշականում է թաղվել IV դարի վերջի և V դարի առաջին կեսի հայ մեծ լուսավորիչ, հայկական գրերի ստեղծող Մեսրոպ Մաշտոցը, որը մահացել է 440 թ.։ Իսկ Փարպի գյուղում ծնվել է V դարի պատմագիր Ղազար Փարպեցին, որը Վահան Մամիկոնյանի պատվերով գրել է V դարի ազատագրական շարժումների պատմությունն ընդգրկող իր «Հայոց պատմություն» աշխատությունը։

Վաղարշապատում գտնվող էջմիածին, Գայանե, Հռիփսիմե, Շողակաթ տաճարներից բացի, Արագածոտն գավառում կային նաև այլ վանքեր ու տաճարներ։ Դրանցից հատկապես ուշադրության արժանի են Աշտարակ գյուղի Կարմրավոր եկեղեցին, Սաղմոսավանքը՝ Արայի լեռնագագաթից արևմուտք, Քասախ գետի աջ ափին, և այլն։

**Դողս.**— Այս գյուղում, որն այժմ էլ գոյություն ունի և գտնվում է էջմիածնի շրջանում՝ էջմիածին քաղաքի հյուսիսային կողմում, 895 կամ 896 թ. տեղի է ունեցել մի խոշոր ճակատամարտ, որը մղվում էր Բագրատունի Սմբատ Ա թագավորի և Ատրպատականի արաբ էմիր Աֆշինի զորքերի միջև։ Դողսի ճակատամարտում, որտեղ Սմբատ Ա-ի զորքերի շարքում կռվում էին նաև հյուսիսային ցեղերի կողմից ուղարկված օգնական զորքեր, հայերը տանում են փայլուն հաղթանակ։ Աֆշինը՝ Հայաստանի այդ ոխերիմ թշնամին, ստիպված է լինում դիմել խաղաղ բանակցությունների։

**Ամբերդ և Հովհաննավանք.**— Հայտնի դարձան Զաքարյանների իշխանության շրջանում։ Առաջինը հանդիսանում էր Վաչուտյանների իշխանանիստ-բերդը, իսկ երկրորդը՝ նրանց կուլտուրական կենտրոնը։ Հովհաննավանքի տեղում կառուցումներ են կատարել դեռևս V դարից։ Ամբերդը XI—XIII դարերում բավական խոշոր բնակավայր էր։ Նրա ավերակները այժմ էլ պահպանվում են Արագածի հարավային լանջին, Ամբերդ գետակի բարձրադիր ափին։

## Ճակատք

Այս գավառը շրջապատված էր Արագածոտն, Արշարունիք, Բագրևանդ, Կոգովիտ և Մասյացոտն գավառներով։ Տերիտորիայով համապատասխանում է այժմյան ամբողջ Կողբի, Սուրմալուի և

ծգրիրի շրջաններին։ Ճակատքի հարավային և արևմտյան մասերը լեռնոտ են, մինչդեռ հյուսիսային շրջանները, որոնք տարածվում են Արաքսի աջ ափի ուղղությամբ, հարթավայրային են և հայտնի են իրենց բերրի հողերով։ Գավառն ունի չոր կլիմա։ Առանց արհեստական ոռոգման, դաշտային մասում գրեթե անհնար է որևէ կուլտուրա աճեցնել։

Գավառի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր են Կողբը և Սուրմարին։ Կողբը, որը նշանավոր է իր հարուստ աղահանքով և այժմ էլ գոյություն ունի, մարդկությանը հայտնի է խոր անցյալից՝ քարեդարյան ժամանակաշրջանից։ Կողբը IX—X դարերից սկսած, գյուղից վեր է ածվել գյուղաքաղաքի։ Սուրմարիի (այժմ՝ Սուրմալու) մասին եղած առաջին հիշատակությունը վերաբերում է XI դարին։ Ըստ այդ հիշատակության, Սուրմարին այդ շրջանում եղել է բերդաքաղաք։ Պատմագիրներից ոմանք այն հիշատակում են սուրբ Մարի անվամբ և համարում են քաղաք։

## Կոգովիտ

Կոգովիտ գավառը սահմանափակված էր բնական արգելապնեշով՝ լեռներով։ Կոգովիտն իր տերիտորիայով համապատասխանում է այժմյան հին Բայազետի շրջանին։ Այս գավառի մի զգալի մասը պատած է ճահիճներով։ Նրա մեջ մտնում էին Գայլատու (այժմ՝ Բալըղ-գյոլ) լիճը և Կոգովիտ կոչված շամբը՝ ծանծաղ լճակը, այժմյան Բայազետից հյուսիս։

Արշակունիների թագավորության ժամանակ Կոգովիտը պատկանում էր արքունիքին, իսկ նրա անկման շրջանում անցավ Բագրատունիներին։ IX դարում Կոգովիտը միացվում է Վասպուրականին։

Կոգովիտում եղած պատմական վայրերից առավել նշանավոր են Արշակավան քաղաքը և Դարույնք ու Արծափ բերդերը։

**Արշակավան**.—*IV դարում Հայկական պետության քաղաքական դրությունը չափազանց լարված էր։ Հայաստանի անկախությանն սպառնում էին նրա արևելյան և արևմտյան աշխարհակալ պետությունները՝ Սասանյան Պարսկաստանն ու Հռոմը։*

*Այդպիսի պայմաններում հայկական կենտրոնական միապետական պետության ուժեղացման խնդիրը դարձել էր դարի պատմական հույժ կարևոր հարց։*

*Արշակ Բ-ն՝ այդ հեռատես թագավորը, արտաքին վտանգը վերացնելու համար բոլոր միջոցները գործադրում էր նախարարնե-*

րի կենտրոնախույս տրամադրությունները կոտրելու և կենտրոնացված ուժեղ պետություն ստեղծելու համար։

Եվ ահա այդ նպատակով Արշակ Բ-ն 50-ական թվականների վերջին Կոգովիտ գավառում՝ Թավրիզ—Դարոյնք—Կարին—Տրապիզոն տարանցիկ ճանապարհի վրա, հիմնադրում է Արշակավան քաղաքը։ Արքայական հատուկ հրովարտակով Արշակավանում բնակվելու իրավունք է տալիս տերերից փախած «ծառաներին», խոստ հարստահարվող պարտապաններին և առհասարակ բոլոր նրանց, ովքեր ենթակա էին հետապնդման ու հալածանքի։ Արշակը ձգտում էր քաղաքի բնակչությանը որոշ արտոնություններ տալով՝ նախարարների դեմ մղվող պայքարում նրանց իր հենարանը դարձնել։

Պատմագիրների վկայության համաձայն, կարճ ժամանակամիջոցում Արշակավանը դարձավ շատ խոշոր և բազմամարդ քաղաք։ Նրա բնակչության հասցեին նույն պատմագիրները՝ ֆեոդալիզմի այդ գաղափարախոսները, տեղում են ամեն տեսակի հայհոյանքներ։ Դա միանգամայն տրամաբանական է, որովհետև Արշակավանի բնակչության հիմնական մասը բաղկացած էր ֆեոդալ նախարարների հարկային ծանր լծից փախած շինականներից և «ծառա»-ներից։

Թագավորի այդ միջոցառումից դժգոհ նախարարները խռովություն բարձրացրին և իրենց միացյալ զորքով հարձակվեցին Արշակավանի վրա, կոտորեցին բնակիչներին ու քաղաքը հիմնահատակ ավերեցին։ Դրանից հետո Արշակավանն այլևս չվերականգնվեց։ Այսպիսով, նա ընդամենը ունեցել է 5—6 տարվա կյանք։

**Դարոյնք.**—Կոգովիտ գավառի ամենանշանավոր բերդն էր։ Մինչև V դարի սկզբները պատկանում էր Արշակունիներին և հանդիսանում էր արքունական ամրոց-գանձարաններից մեկը։ Այնուհետև նա անցավ Բագրատունիների, ապա Արծրունիների ձեռքը։ Դարոյնքում տեղի են ունեցել քաղաքական մի շարք դեպքեր։ Նա գտնվում էր այժմյան հին Բայազետի տեղում։ Իր հարմար դիրքի շնորհիվ (գտնվում էր Թավրիզից դեպի Կարին տանող և Այրարատյան աշխարհն Արածանիի հովտի հետ միացող ճանապարհների խաչմերուկում) Դարոյնքը ոչ միայն սոսկ ֆեոդալական բերդ էր, այլ նաև կարևոր վաճառատեղի։

**Արծափ.**— Բերդ, գտնվում էր Դարոյնքից հյուսիս-արևմուտք, այժմյան Իգդիրից հին Բայազետ տանող ճանապարհի արևմտյան կողմում։ Այս բերդի մոտ 650 թ. Թեոդորոս Ռշտունին հայկական մի փոքրիկ զորագնդով ոչնչացրել է արաբական 3000 հոգուց բաղ-

*կացած բանակը, որը կազմում էր Հայաստան ներխուժած արաբական մեծաթիվ զորքերի մի մասը։*

## Մասյացոտն

*Իր անունն ստացել է համանուն լեռնազագաթների անունից։ Տարածվում էր Մեծ և Փոքր Մասիսների հրաբխային զանգվածների շրջանում։ Խիստ լեռնային գավառ է, ունի սուր կլիմա։*

*Մասյացոտնի պատմական վայրերից նշանավոր է Ակոռի գյուղը։ Սասանյան Պարսկաստանի դեմ ծավալված ժողովրդական-ազատագրական երկրորդ ապստամբության ժամանակ (481—484) այստեղ հայկական մի փոքրիկ զորամաս 481 թ. փայլուն հաղթանակ տարավ Ճշնամու մի քանի հազար զինվորներից բաղկացած խոշոր զորագնդի դեմ։ Հենց այդ կարևոր դեպքով էլ Ակոռի անշուք գյուղը նշանավորվեց հայ ժողովրդի պատմության մեջ։*

*Ակոռի գյուղը գտնվում էր Մեծ Մասիսի հյուսիս-արևմտյան լանջին։ Նա հիմնովին կործանվեց 1840 թ. Մասիսի շրջանում տեղի ունեցած երկրաշարժի հետևանքով։ Ներկայումս նրա գտնված տեղից ոչ հեռու գոյություն ունի մի այլ գյուղ, որը ևս կոչվում է Ակոռի։ Պատմական Ակոռի գյուղը վերջինից տարբերելու համար ընդունված է կոչել Հին Ակոռի։*

## Ոստան

*Այրարատի նշանավոր գավառներից մեկն էր։ «Ոստան» բառը ուներ «իշխանանիստ»-ի կամ «թագավորանիստ»-ի նշանակություն։ Եվ քանի որ այստեղ իրար շատ մոտիկ գտնվում էին Արտաշատ և Դվին մայրաքաղաքները, հավանաբար հենց այդ պատճառով է նրանց շուրջը տարածվող գավառը կոչվել Ոստան։*

*Ոստանը տարածությամբ մեծ չէր, գրավում էր միայն Ազատ գետի միջին և ստորին հոսանքների հովիտը, որը շոգ և չոր կլիմա ունի։ Հավանաբար Ոստանի մեջ մտնում էր նաև Շարուրի դաշտը, որը տարածվում է Արփա գետի ստորին հոսանքի շրջանում։*

*Ոստանի պատմական նշանավոր վայրերն են Արտաշատը և Դվինը։*

**Արտաշատ.**— *Հայաստանի հանրահռչակ այս քաղաքը, որը փոխարինել է Արմավիրին և Երվանդաշատին, կառուցվել է 170—160-*

*ական թվականներին՝ Արտաշես Ա-ի օրոք (189—160 թթ. մ.թ.ա.) և նրա անունով էլ կոչվել է Արտաշատ[1]։*

*Արտաշատի մասին վկայություններ ունեն հունական և հռոմեական պատմագիրները։ Արժեքավոր շատ տեղեկություններ են հաղորդում նաև հայ պատմիչները։ Սակայն, չնայած այդ ամենին, Արտաշատի պատմության մի շարք հարցեր մինչև օրս էլ մնում են չլուսաբանված, անգամ վերջնականապես չի ճշտված նրա աշխարհագրական դիրքը։*

*Արտաշատի մասին եղած գրավոր վկայություններից երևում է, որ նա գտնվում էր Արաքսի և Ազատի գետախառնուրդում՝ այժմյան Խորվիրապի շրջակայքում։ Նրա միջնաբերդը տեղադրված էր բլրի վրա, որի շուրջը երեք կողմից՝ ծունկ կազմելով հոսում էր Արաքսը, իսկ ցամաքից բերդի պաշտպանությունն ուժեղացնելու համար փորված է եղել խրամ, որն արտաքին հարձակումների դեպքում լցրել են ջրով։ Նրա միջնաբերդը, հավանաբար, կոչվել է Խորվիրապ։ Քաղաքի առջև, Արաքս գետի վրա կառուցված էր մի մեծ կամուրջ, որով քաղաքը կապվում էր Արաքսի աջ ափի հետ։ Այս կամուրջով էր անցնում Արտաշատ—Տիգրանակերտ ճանապարհը։*

*Արտաշատը գտնվում էր Արևելքն Արևմուտքի հետ կապող տարանցիկ ճանապարհի վրա։ Հետագայում (I դ. մ.թ.ա.) նա բարեկարգ ճանապարհով կապվեց նաև նոր կառուցված Տիգրանակերտ մայրաքաղաքի հետ։ Այդ գլխավոր ճանապարհներից բացի, Արտաշատը հանգույց էր մի շարք այլ ճանապարհների, որոնք նրան կապում էին Հայկական պետության տարբեր մասերի, ինչպես և հարևան երկրների հետ։*

*Հիմնադրման ժամանակվանից մինչև I դարի սկզբները (մ.թ. ա.), չնայած Հռոմի, երբեմն էլ Պարթևական Պարսկաստանի կողմից մի շարք արշավանքներ և հարձակումներ են կատարվում Հայաստանի և նրա մայրաքաղաք Արտաշատի վրա, այնուամենայնիվ, վերջինս զարգանում և փարթամանում է։*

*Արտաշատը եղել է հելլենիստական տիպի քաղաք։ Նրա բնակչության մեծամասնությունն զբաղվում էր արհեստներով և առևտրով։ Քաղաքն իր ծաղկման շրջանում ունեցել է բազմահազար բնակիչներ։ Հայերից բացի, այստեղ բնակություն էին հաստատել*

[1] *Ենթադրվում է, որ Արտաշատի կառուցման գործում իր խորհուրդներով մասնակցություն է ունեցել կարթագենացի զորավար Հաննիբալը, որը բարեկամական կապեր ուներ Արտաշես Ա-ի հետ։*

*նաև հրեաներ, ասորիներ ու այլ ժողովուրդներին պատկանող առևտրականներ և արհեստավորներ։*

*Արտաշատում անտիկ շրջանում կար մշտական թատրոն։ Հայ մշտական թատրոնի մասին եղած առաջին գրավոր հիշատակությունը (I դար մ.թ.ա.), որ հասել է մեզ, վերաբերում է Արտաշատի թատրոնին։ Արտաշատի թատրոնում ներկայացվում էին և՛ հին հունական, և՛ հայ հեղինակների ողբերգությունները։*

*59 թ. գարնանը հռոմեական զորավար Կորբուլոնը, որը արշավել էր Հայաստան և գրավել Արտաշատը, կրակի է մատնում Հայաստանի այդ հռչակավոր մայրաքաղաքը և իր զորքով շարժվում դեպի Տիգրանակերտ։ Սակայն Արտաշատը երկար չի մնում ավերված վիճակում։ Արշակունյաց թագավորության հիմնադիր Տրդատ Ա-ի (66—100) օրոք նա նորից վերականգնվում է։ Տրդատ Ա-ն Հռոմ կատարած ճանապարհորդության ժամանակ կարողանում է Ներոն կայսրից (54—68) Կորբուլոնի ավերած Արտաշատի վերականգնման համար ստանալ մի պատկառելի գումար՝ 50 միլիոն դրախմա (մոտ 20 միլիոն ռուբլի ոսկով)։ Վերականգնված Արտաշատը փորձում են ի պատիվ Ներոնի կոչել Ներոնիա, բայց իզուր, քաղաքը շարունակվում է կոչվել իր կառուցողի անունով։*

*II—IV դդ. ևս Արտաշատը մի քանի անգամ ենթարկվում է հռոմեացիների ու պարսիկների հարձակումներին։ Այնպես որ նա մի շարք անգամ ենթարկվել է մասնակի ավերումների։ Բայց մինչև V դարի 2-րդ կեսը Արտաշատը մնում է որպես Հայաստանի խոշորագույն քաղաք և, որոշ ընդհատումներով՝ մայրաքաղաք։*

*V դարի կեսերից իր դիրքն Արտաշատը աստիճանաբար զիջում է իրենից ոչ հեռու գտնվող, Հայաստանի նոր մայրաքաղաք Դվինին։ Վերջինս Արտաշատի համեմատությամբ ուներ դիրքային առավելություն։ Բացի դրանից, Արտաշատի մոտակայքում առաջացել էին ճահիճներ, որոնք քաղաքի օդը դարձնում էին վատառողջ։ Այդտեղի բնակչությունը հետզհետե տեղափոխվում է Դվին, և Արտաշատը վեր է ածվում հասարակ բնակավայրի։*

*Հայաստանի վաղեմի մայրաքաղաքից համարյա ոչինչ չի հասել մեզ։ Նրա կառույցների հետքերն անգամ չեն մնացել։ Կարծում ենք, որ դրա պատճառը այս շրջանում տեղի ունեցած ուժեղ երկրաշարժերն են ու Արաքսի հեղեղումները, որոնք կրկնվել են պարբերաբար։*

Դվին.—*Հայաստանի այս մայրաքաղաքը գտնվում էր Ազատ գետի ստորին հոսանքի շրջանում, Արտաշատից ոչ հեռու։*

*Մովսես Խորենացին «Դվին» անվան վերաբերյալ ունի երկու*

հիշատակություն։ Մեկում պատմահայրը հաղորդում է, որ քաղաքը Դվին է կոչվել այն բլրի անունով, որի վրա կառուցվեցին արքունական ապարանքները, իսկ մյուս հիշատակության մեջ նշում է, որ Դվին պարսկերեն պարզապես նշանակում է բլուր։

Դվինը հիմնադրվել է IV դարում՝ Խոսրով Կոտակի օրոք (330—338)։ V դարի կեսերից Դվինը դառնում է Հայաստանի մայրաքաղաք և սկսում է արագ թափով զարգանալ։ VII—IX դարերում նա արդեն համարվում էր Հայաստանի խոշորագույն քաղաքը։ Դվինի զարգացումը ընթանում էր ի վնաս Արտաշատի, որի բնակչության մեծ մասը տեղափոխվում է Դվին։

Արաբական տիրապետության շրջանում (VII—IX դդ.) Դվինը հանդիսանում էր ամբողջ Էրմենիա փոխարքայության մայրաքաղաքը[1]։

Դվինն իր գոյության ընթացքում բազմիցս ենթարկվել է օտար նվաճողների հարձակումներին ու ավերածություններին։ Առաջին մեծ հարվածը նա ստացել է արաբական առաջին արշավանքի ժամանակ՝ 640 թ., երբ արաբական ավարառու զորքը գրավելով Դվինը, կողոպտում է այն, ենթարկում ավերման, ոչնչացնում 35 000 բնակիչ և գերեվարում 12 000 մարդ, վերադառնում է խալիֆայության կենտրոնը։ Արաբների կողմից նման տիպի հարձակումները շարունակվում են նաև հետագայում։

Արաբական տիրապետության սկզբնական շրջանում Դվինը վեր է ածվում տոսկ բերդաքաղաքի, չնայած որ մի ամբողջ փոխարքայության կենտրոնն էր։ Նա կորցրել էր արհեստագործության և առևտրի բնագավառում ունեցած իր նախկին նշանակությունը։

Սակայն Դվինի այս հետադիմությունը երկար չի տևում։ Արաբական աշխարհակալ տերության մեծագույն մասում խաղաղություն սահղծվելու շնորհիվ շուտով ոչ միայն վերականգնվում է Դվինի նախկին նշանակությունը, այլև Հայաստանում նա դառնում է առևտրի և արհեստագործության խոշորագույն կենտրոնը։

IX դարում Դվինում տեղի ունեցած երկու ուժեղ երկրաշարժերը (862 և 893 թթ.) մեծ վնասներ են պատճառում քաղաքին ու նրա բնակչությանը, սակայն երկրաշարժի հետևանքներն արագ կերպով վերացվում են։

X—XI դարերում Դվինը մտնում էր Բագրատունիների թագավորության մեջ։ Դվինում նստում էին արաբական էմիրները, երբեմն էլ քաղաքը ենթարկվել է Գողթնի էմիրներին, բայց դրանք

[1] Դվինը արաբական աշխարհագիրների և պատմագիրների մոտ սովորաբար կոչվում է Դաբիլ։

բոլորն էլ Բագրատունիների վասալներն էին։ Բագրատունիների թագավորության անկումից հետո Դվինը ենթարկվում է սելջուկներին, իսկ սրանց պետության քայքայման շրջանում միացվում է Զաքարյան Հայաստանին։

Դվինն առևտրական լայն կապեր ուներ Հայաստանի տարբեր շրջանների, Վրաստանի, Աղվանքի և Ատրպատականի, ինչպես և հեռավոր այլ երկրների հետ։ Դվինից դուրս էին գալիս տարանցիկ մի քանի ճանապարհներ։ Այստեղ առևտուր էին անում ոչ միայն հայ, այլ նաև արաբ, պարսիկ, վրացի և այլազգի առևտրականներ։

Դվինը հայտնի է եղել իր արհեստներով։ Արհեստների մեջ հատկապես աչքի են ընկել ջուլհակությունը, բրուտագործությունը, մետաղամշակությունը, ներկարարությունը, կաշեգործությունը, փայտամշակությունն ու շինարարության հետ կապված արհեստները։ Քաղաքի շրջակայքում ցանվել է բամբակ, որի մի մասը արտահանվել է զանազան երկրներ։

Դվինի բնակչության թիվը քաղաքի ծաղկման շրջանում հասել է մոտ 100 000-ի։

Դվինն ունեցել է նույնպիսի կառուցվածք, ինչպիսին Անին, միայն այն տարբերությամբ, որ Դվինի միջնաբերդը գտնվում էր քաղաքի կենտրոնում, իսկ Անիինը, ինչպես նշվեց, տեղանքից ելնելով կառուցված էր քաղաքի մի ծայրում։ Անիի նման, Դվինն էլ իր նշանակությունը կորցնում է մոնղոլական տիրապետության շրջանում։

Դվինի ճարտարապետական կոթողներից կարելի է հիշատակել նրա պարիսպները, արքունական ապարանքները, սուրբ Գրիգորի եկեղեցին, որը սկզբում եղել է փայտաշեն (կառուցվել է V դարում), իսկ VII դարում՝ քարակերտ։ Դվինում տեղի են ունեցել եկեղեցական մի շարք ժողովներ։ Դրանցից առանձնապես նշանավոր է 554 թ. ժողովը, որտեղ ընդունվեց (ավելի ճիշտ վերականգնվեց) հայոց նոր տոմարը։ Այս ժողովի որոշմամբ 552 թ. համարվեց հայկական տոմարի սկիզբը կամ հայոց առաջին տարին։ Տոմարական հարցից բացի, այդ ժողովը զբաղվեց նաև նեստորականության և պավլիկյանների հարցերով։

Սովետական տարիներին Դվինի տեղում պարբերաբար կատարվել են և շարունակվում են հնագիտական պեղումները, որոնց շնորհիվ վերականգնված է վաղեմի քաղաքի պլանը, հայտնաբերված են մեծաքանակ մետաղե և կավե իրեր, գործիքներ, զենքեր, կավե և հախճապակե ամանեղեն, ինչպես և զանազան երկրների

գրամներ։ Դվինում հայտնաբերված նյութական կուլտուրայի մնացորդները, պատմական գրավոր հիշատակությունների հետ միասին, ծառայում են որպես փաստեր ոչ միայն Դվինի, այլև միջնադարյան Հայաստանի մյուս քաղաքների պատմությունը լուսաբանելու համար[1]։

## Մազազ

Մազազը սկզբնապես կազմում էր Ոստան գավառի մի մասը։ Հետագայում՝ V դարից նա հիշատակվում է որպես առանձին գավառ։

Մազազը գրավում էր Ազատ գետի վերին հոսանքի շրջանները։ Ունի լեռնային ռելիեֆ։

Գավառի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր են Գառնին և Գեղարդա վանքը։

Գառնի բերդը և հեթանոսական տաճարը, որոնց ավերակները գտնվում են Ազատ գետի աջ ափին, հանդիսանում են անտիկ շրջանի հայկական շինարարական արվեստի դասական կոթողներ։ Գառնին առանձնապես հռչակված էր իր ամուր դիրքով։ Բերդի շուրջը փռված է եղել բավական խոշոր բնակավայր, այդ պատճառով էլ հիշատակությունների մեջ հաճախ այն կոչված է քաղաք։ Գառնին Արշակունի թագավորների ամուր դաստակերտներից մեկն էր։ Այստեղ էր պահվում Արշակունյաց արքունական գանձերի մի մասը։

Պահպանվել են Գառնիի հսկա պարիսպների և հեթանոսական շքեղ տաճարի ավերակները։ Գառնիի տաճարը մեր պատմիչները հաճախ հիշատակում են «Տրդատի թախտ» և «Սարավույթ Տրդատայ» անուններով։

Պարզված է, որ Գառնիի հեթանոսական տաճարը կառուցվել է I դարում։ Տաճարը չորս կողմերում ունեցել է շքեղ սյուներ, որոնց թիվը հասել է 24-ի։ Նա ամբողջովին կառուցված է բազալտե սրբատաշ հսկա քարերից, որոնց վրա արված են հիացմունք առաջացնող բազմաբովանդակ քանդակներ։

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտը եռանդուն կերպով պեղումներ է կատարում ավերակների շրջանում։ Պեղման հետևանքով ամբողջովին բացված է բերդի հզոր պաշտպանական սիստեմը և տարբեր ժամանակներին պատկանող մի քանի շերտեր։ Հայտնաբերված են նյու-

[1] Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Երևան, 1952։

թական մշակույթի շատ մնացորդներ՝ բաղնիքի շենքի մոզայիկ հատակը, զանազան իրեր, զարդեր, գործիքներ և այլն։

Գառնիի բերդը կառուցված է 5—6 տոննա և ավելի քաշ ունեցող քարերից, որոնք իրար հետ միացված են երկաթե կապերով և ամրացված են արճճի ձուլվածքով։ Պարիսպների աշտարակների թիվը հասնում է 14-ի։ Սրանք գտնվում են իրարից 10—12 մետր հեռավորության վրա։ Արհեստական այդ հզոր ու բարդ կառուցումները բնական ամուր դիրքի հետ միասին Գառնիի բերդը դարձրել էին այն ժամանակվա ռազմական տեխնիկայի համար անմատչելի մի հանգույց։

Գառնիից ոչ հեռու, դեպի հյուսիս-արևելք գտնվում է Գ ե ղ ա ր դ ա վ ա ն ք ը[1] (կամ Ա յ ր ի վ ա ն ք), որը մինչև օրս էլ գոյություն ունի։ Գեղարդա վանքի կաթողիկե եկեղեցին կառուցվել է X—XI դարերում, իսկ ժայռափոր տաճարը և մյուս շինությունները՝ XIII դարում։ Իր կառուցվածքի բնույթով եզակի տեղ է գրավում հայ ճարտարապետության պատմության մեջ։ Այս վանքի հետ է կապված XIII դարի պատմագիր Մխիթար Այրիվանեցու գործունեությունը։ Վանքի տաճարները ներկայումս կանգուն են։ Գեղարդա վանքն այժմ բարեկարգ ասֆալտապատ ճանապարհով միացված է Երևանի հետ։

## Կոտայք

Կոտայք գավառը բաղկացած է այժմյան Կոտայքի ու Հրազդանի շրջանների տերիտորիաներից և Արտաշատի ու Էջմիածնի շրջանների մի մասից, որն ընկած է Հրազդան գետի հովտում։ Կոտայք անունը հնագույն ծագում ունի և կապված է նույնանուն ցեղանվան հետ։

Կոտայքը ռելիեֆի տեսակետից բաժանվում է երկու մասի՝ հյուսիս-արևելյան և հարավ-արևմտյան։ Դրանցից առաջինն ունի լեռնային ռելիեֆ և համեմատաբար զով կլիմա, իսկ հարավ-արևմտյանը՝ դաշտային ռելիեֆ և շոգ կլիմա։

Կոտայքում էր գտնվում **Երևանը**։

Երևան անունը կապված է ուրարտական Էրեբունի կամ Էրեվունի բերդանվան (այժմյան Արին բերդի տեղում) հետ։

Վերջին տասնամյակի ընթացքում Երևանի շրջակայքում հայտնաբերված են ուրարտական ժամանակաշրջանին վերաբերող մի քանի բերդերի հետքեր (Շենգավիթում, Նորագավիթում, Ծիծեռնա-

[1] Ըստ ավանդության այս վանքում էր պահվում այն գեղարդը, որով իբր խոցել են Քրիստոսին։

կաքերդում, Արին բերդում և Կարմիր բլուրի շրջանում)։ Այդ բերդերից ամենանշանավորները եղել են Արին բերդի տեղում եղած էրեբունի և Կարմիր բլուրի վրա եղած Թեյշեբաինի բերդերը։ Սովետական տարիներին այդ բերդերի շրջանում ամեն տարի կատարվում են պեղումներ, որոնց հետևանքով հայտնաբերված են բազմատեսակ և բազմաթիվ անոթներ, տնային գործածության իրեր, զենքեր, հացահատիկներ, զարդարանքներ և այլն։

Թեյշեբաինիի, էրեբունիի, ինչպես և մյուս ուրարտական բերդերի մնացորդների առկայությունը Երևանի շրջակայքում ցույց է տալիս, որ վերջինս ուրարտական ժամանակաշրջանում եղել է ամրացված մի հանգույց։

Երևանի մասին մեր մատենագրության մեջ առաջին գրավոր հիշատակությունը վերաբերում է VII դարի սկզբներին։ Երկրորդ վկայությունը վերաբերում է արաբների կողմից Հայաստան կատարված առաջին կողոպտիչ-հետախուզական արշավանքների շրջանին՝ VII դարի 40-ական թվականներին։ Այս վկայությունից պարզվում է, որ Երևանն այդ ժամանակ ունեցել է բավականին ամուր բերդ։

Նույն ժամանակաշրջանի, ինչպես և VIII դարի այլ հիշատակություններից կարելի է ենթադրել, որ Երևանը VII—VIII դարերում մեծ ավան է եղել։ IX—X դարերին, ինչպես և ավելի ուշ ժամանակներին վերաբերող հիշատակություններում Երևանը կոչված է «մեծ ավան», «քաղաքագյուղ» և այլն։

Երևանի դերը մեծանում է հատկապես այն ժամանակներից, երբ նրա հարևան Դվինը կորցնում է իր նշանակությունը՝ 1440 թ. սկսած Երևանը դառնում է Արևելյան Հայաստանի գլխավոր կենտրոնը, և դա է պատճառը, որ այդ ժամանակից ի վեր նա հիշատակվում է իբրև «Այրարատյան աշխարհի մայրաքաղաք»։

## Նիգ

Տարածվում էր Քասախ գետի վերին հոսանքի շրջանում։ Պատմական Նիգ գավառը տերիտորիալ տեսակետից համապատասխանում է այժմյան Ապարանի շրջանին և Հրազդանի մի մասին։

Այս գավառն Արշակունիների թագավորության շրջանում պատկանում էր արքունիքին։ Դրան հաջորդող հետագա դարերի ընթացքում նրա վարչական վիճակը մնում է մթության մեջ։ Բագրատունիների թագավորության շրջանում Նիգում իշխում էին Պահլավու-

*նիները։ Ավելի ուշ այստեղ կալվածքներ ձեռք բերեցին նաև Վաչուտյաններն ու Պռոշյանները։*

*Գավառի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր են.*

Կեչառուք *կամ* Կեչառիս.—*Գյուղ և վանք։ Գտնվում է այժմյան Ծաղկաձորում։ Վանքի կառուցվածքները բավական լավ դրությամբ պահպանվել են մինչև մեր օրերը։*

*Այս վանքը կառուցվել է XI դարում՝ Պահլավունի իշխանների կողմից։ Գլխավոր եկեղեցին, որը կրում է ս. Գևորգ անունը, քառակուսի հատակագծով մի հոյակապ կառուցվածք է և պահպանվել է մինչև օրս։ Նրան կից կառուցված են նաև այլ եկեղեցիներ ու շենքեր։ Վանքի պատերին կան բազմաթիվ արձանագրություններ, որոնք հիմնականում վերաբերում են XI—XIV դարերին։ Տաճարները շարված են սրբատաշ քարերով, պատերին կան քանդակներ, վանքը պարսպապատ է։*

*Կեչառուքի վանքն ունեցել է հսկայական կալվածքներ, որոնք նրան տրվել էին Պահլավունի, Վաչուտյան և Պռոշյան իշխանների կողմից։*

*Կեչառուքը միջնադարյան Հայաստանի նշանավոր դպրոցներից մեկն էր։ Սրա հետ է կապված Խաչատուր Կեչառեցու (XIII դ. վերջին և XIV դ. սկզբներին) գործունեությունը։*

Բջնի *մասին առաջին անգամ հիշատակում է Ղազար Փարպեցին։ Ըստ այդ հիշատակության, Բջնին V դարի 2-րդ կեսին ավան էր։ Հավանաբար հենց այդ ժամանակներից էլ այստեղ կառուցված է եղել բերդ կամ ամրոց։*

*X դարից սկսած Բջնին դառնում է Պահլավունի իշխանների ոստանը, իշխանանիստը։ Այդ դարին վերաբերող վկայություններում Բջնին կոչված է քաղաք կամ բերդաքաղաք։ XI դարի սկզբներին նա դարձավ նաև եպիսկոպոսանիստ։*

*Գրիգոր Մագիստրոսը, որը Բջնիի անունով կոչվում է նաև Գրիգոր Բջնեցի, 1031 թ. այստեղ կառուցում է մի հոյակապ եկեղեցի և նրան տալիս է հսկայական կալվածքներ՝ այդ մասին եկեղեցու վրա փորագրել տալով մի ընդարձակ արձանագրություն։ Սակայն Պահլավունիների տիրապետությունն այստեղ երկար չի տևում։ XI դարի կեսերից Բջնիի փոխարեն նրանք կալվածքներ են ստանում Հարավային Հայաստանում։*

*Սելջուկյան կարճատև տիրապետությունից հետո Բջնիում որպես տերեր հանդես են գալիս Իվանե Զաքարյանը և նրա ժառանգները։*

*Բջնի բերդի և քաղաքի ավերակները մինչև օրս էլ գոյություն*

ունեն։ Դրանք գտնվում են Արզական գյուղի մոտ, Հրազդանի բարձրադիր աջ ափին, անմատչելի սարահարթի վրա։ Եկեղեցին կանգուն է։

**Ջկնավանառ.**—*Ճակատամարտի վայր։ Այստեղ 910 թ. ճակատամարտ տեղի ունեցավ հայկական զորքերի և Ատրպատականի Յուսուֆ էմիրի առվարաթիվ բանակի միջև, որին իրենց զորքերով միացել էին նաև Վասպուրականի Գագիկ և Գուրգեն իշխանները։*

*Հայկական զորքն այս ճակատամարտում պարտություն է կրում, որից հետո Յուսուֆի հրոսակները մի քանի տարի շարունակում են ասպատակել Հյուսիսային Հայաստանը։*

## ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆ

### 1. ԱՆՈՒՆԸ, ԴԻՐՔԸ, ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

*Տուրուբերանն իբրև «աշխարհ»-ի անուն հազվադեպ է հիշատակվում։ Մեր հին մատենագիրներից այդ անունը հիշատակում են միայն Եղիշեն, Մովսես Խորենացին և «Աշխարհացույց»-ի հեղինակը՝ Անանիա Շիրակացին։ Գործ է ածվել երկու ձևով՝ Տուրուբերան և Տարուբերան։ Ըստ որում Անանիա Շիրակացին, զգալով որ այդ անունը քիչ գործածական է և անծանոթ շատերի համար, անմիջապես ծանոթացնում է, որ Տուրուբերանը հենց Տարոնի աշխարհն է («կողմն Տարօնոյ»)։ Այնպես որ, այս երկրի համար ավելի գործածական է եղել «Տարոնի աշխարհ» անունը։*

*Տուրուբերանն իբրև վարչա-տերիտորիալ միավոր, այն սահմաններով, որոնցով նկարագրված է «Աշխարհացույց»-ում, կարող էր գործածական լինել միայն Հայաստանի երկրորդ բաժանումից հետո (591 թ.)։ Մինչ այդ վարչա-տերիտորիալ այդպիսի միավորի մասին գաղափար լինել չէր կարող, որովհետև Տուրուբերանը մասնատված էր մի քանի նախարարությունների, որոնք ունեին հավասար իրավունքներ, և նրանցից ամեն մեկը մի վարչա-քաղաքական միավոր էր։ Իհարկե, այդ նախարարությունները պահպանվեցին նաև 591 թ. բաժանումից հետո, սակայն Արածանիի վրա ընկած այդ ամբողջ երկիրը, Այրարատի հետ միասին, քաղաքականապես ենթարկվեց մի այլ պետության՝ Բյուզանդական կայսրությանը։ Իսկ Կայսրության համար այս երկիրը ամբողջությամբ վերցրած մի վարչա-տերիտորիալ միավոր էր, անկախ նրանից, որ մասնատված էր բազմաթիվ նախարարությունների։*

Տուրուբերան անվան ծագումը մութ է։ Այդ հարցում բանասերները առայժմ սահմանափակվում են սոսկ ավանդությունների վկայակոչումով։

Տուրուբերանը Մեծ Հայքի կենտրոնական երկրներից («աշխարհ») մեկն էր։ Նա շրջապատված էր Այրարատ, Վասպուրական, Մոկք, Աղձնիք, Չորրորդ Հայք և Բարձր Հայք «աշխարհ»-ներով։ Նրա սահմանները հյուսիսում կազմում էին Հայկական Պար և Ծաղկանց լեռնաշղթաները, հարավում՝ Հայկական Տավրոսը, արևելքում՝ Վանա լիճը և Բերկրի ու Պառնաց գետերի ջրբաժան լեռները, իսկ արևմուտքում՝ Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթայի արևելյան հատվածից սկսվող և դեպի հարավ տարածվող Սերակի լեռները։ Այդպիսի սահմաններում նա իր մեջ ընդգրկում էր Արածանիի միջին հոսանքի ավազանը և Արաքսի վերնագավառը։

Այդ ընդարձակ երկիրը ֆիզիկա-աշխարհագրական տեսակետից բաղկացած է տարբեր բնույթի ռելիեֆ և կլիմայական, հողային ու բուսական պայմաններ ունեցող բազմաթիվ շրջաններից։ Այստեղ կան և՛ սարահարթեր, և՛ բարձրադիր լեռնային շրջաններ, և՛ ընդարձակ դաշտեր։ Ընդհանուր առմամբ երկրի մեծագույն մասը դաշտային է։ Բարձրադիր լեռնաշղթաներն ու առանձին լեռնային զանգվածները (Հայկական Պար, Հայկական Տավրոս, Սիփան, Նեմրութ, Բյուրակն և այլն) գտնվում են նրա սահմանագլխային մասերում և շատ քիչ են խախտում երկրի ընդհանուր հարթ ռելիեֆը, իսկ երկրի կենտրոնական մասերում ձգվող լեռնաշղթաներն ու բլրաշարքերը, գրեթե առանց բացառության, ունեն աննշան բարձրություն։ Դրանց շնորհիվ երկիրը մասնատված է առանձին դաշտերի և հովիտների, որոնք ընկած են Արածանիի և նրա վտակների վրա։ Տուրուբերանի մեջ էին մտնում այնպիսի արգավանդ դաշտեր, ինչպիսիք են՝ Դութաղը, Մանազկերտը, Բուլանըղը, Մուշը, Խնուսը և Տվարածատափը (Կարայազ)։ Տուրուբերանի մեջ էր մտնում նաև Բյուրակնյան հրաբխային բարձրավանդակը, որը հայտնի է իր փարթամ արոտավայրերով ու սառնորակ աղբյուրներով։ Երկրի միջով հոսում է Արածանին իր բազմաթիվ վտակներով, որոնք հարթ ռելիեֆի պայմաններում տեղ-տեղ (Մուշ, Խնուս, Մանազկերտ) առաջացրել են ընդարձակ ճահիճներ։ Երկրի կլիմայական պայմանները ընդհանուր առմամբ խիստ են։ Բացառությամբ որոշ շրջանների (Բյուրակն, Տվարածատափ և այլն) կլիման ցամաքային է։ Այդ պատճառով էլ Մուշում, Բուլանըղում, Մանազկերտում և այլ վայրերում արհեստական ոռոգումը հնագույն ժամանակներից ի վեր կենսական հարց է եղել։ Դարերի ընթացքում

բնակչությունն իր արտադրողական ուժերի հնարավորությունների չափով ձգտել է արգավանդ, բայց տեղումներով աղքատ այդ դաշտերը բերքատու դարձնելու համար ստեղծել ոռոգման ցանց։ Հենց այստեղ (Մանազկերտի դաշտում, Արճեշ քաղաքի մոտերքում, Մուշում և այլն) կառուցվել են մի շարք ջրանցքներ և ամբարտակներ, սակայն դրանք հագեցնում էին ծարավ դաշտերի միայն մի փոքր մասը։

Անտառներով աղքատ երկիր է։ Ցածրադիր վայրերում մեծ տարածում ունեն փշաբույսերը, փետրախոտերը և ճահճախոտերը, իսկ բարձրադիր լեռնային շրջաններում՝ ալպյան գոտուն պատկանող բույսերը։

Տուրուբերանում գյուղատնտեսական տարածված զբաղմունք են եղել հացահատիկների մշակությունը, այգեգործությունը, բանջարաբուծությունը, անասնապահությունը, մեղվաբուծությունը և ձկնորսությունը, որի համար հիմք էին հանդիսանում Վանա լիճը և Արածանի գետը։

«Աշխարհացույց»-ի համաձայն, երկիրը հարուստ էր երկաթով և նավթով։ Պետք է ասել, որ սրանցով չեն սահմանափակվում Տուրուբերանի հարստությունները։ Այստեղ եղել է նաև սեղանի աղ, ծծումբ և բնական այլ հարստություններ։

## 2. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

Տուրուբերանը Հին Հայաստանի կենտրոնական «աշխարհ»-ներից մեկն էր և խոշոր դեր է խաղացել հայ ժողովրդի պատմության մեջ՝ սկսած հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը։

Այս երկիրը, որ Սելևկյանների տիրապետության վերջին շրջանում մտնում էր Մեծ Հայքի սատրապության մեջ, Հայկական անկախ պետության առաջացման հենց սկզբից կազմեց նրա բաղկացուցիչ մասը և մինչև վերջ էլ մնաց նրա կազմում։

Հայաստանի առաջին բաժանմամբ (387) Տուրուբերանը մնաց Արևելյան Հայաստանի կազմում, իսկ 591 թ. բաժանումով, Այրարատի արևմտյան մեծագույն մասի հետ միասին, անցավ Բյուզանդական կայսրության գերիշխանության տակ և այդ դրությամբ մնաց մինչև արաբական արշավանքները։

IV—VII դդ. Տուրուբերանը մասնատված էր մի շարք նախարարությունների՝ Տարոն (այստեղ սկզբում իշխում էին Սլկունիները, իսկ հետագայում՝ Մամիկոնյանները), Բզնունիք, Հարք,

Ապահունիք, Խոռխոռունիք և այլն։ Նախարարական տների կազմը IV—VII դդ. ենթարկվեց մեծ փոփոխությունների։ Փոփոխություններ տեղի ունեցան նաև նախարարական կարգի ներսում. նախարարությունները աստիճանաբար վերածվեցին կիսանկախ իշխանությունների։

Արաբական ավերիչ արշավանքները և նրանց հաջորդող խալիֆայության ծանր լուծը ճակատագրական նշանակություն ունեցան Տուրուբերանի աշխատավոր բնակչության, ինչպես նաև հայ ազնվականության համար։

Ջբավականանալով ազատագրական ապստամբությունների դաժան ճնշումով և ազնվականության մեծագույն մասի ոչնչացումով, Արաբական խալիֆայությունը, Հայաստանում իր համար հուսալի հենարան ստեղծելու նպատակով, VIII դարից սկսած այստեղ տեղափոխեց արաբական մի քանի ցեղեր՝ կայսիկներ, ութմանիկներ, և բնակեցրեց Հայաստանի տարբեր մասերում։ Խալիֆայության այդ քաղաքականության հետևանքով IX դարում Հայաստանում արդեն ձևավորվել էին արաբական մի քանի իշխանություններ՝ էմիրություններ, որոնց մեջ ամենից ընդարձակը (չհաշված Աղձնիքի էմիրությունը) արաբական կայսիկ ցեղի էմիրությունն էր։

Կայսիկների էմիրությունը սկզբնական շրջանում իր մեջ ընդգրկում էր միայն Մանազկերտ քաղաքն ու նրա շրջակայքը։ Սակայն հետզհետե նա լայնացրեց իր սահմանները։ X դարում նրա սահմանները տարածվում էին Ծաղկանց լեռների արևմտյան լանջերից մինչև այժմյան Ճապաղջրի (հնում՝ Հաշտյանք) արևմտյան սահմանները և Թեոդոսուպոլսի մոտերքից մինչև Տարոնի հյուսիսային սահմանը[1]։ Բագրատունիների թագավորությունը իրեն ենթարկեց Կայսիկների էմիրությունը՝ դարձնելով այն իր վասալ իշխանություններից մեկը։

Արաբական տիրապետության շրջանում դրությունն այլ էր Տուրուբերանի հարավային մասում՝ Տարոնում։ Մինչև 774—775 թվականների արաբական տիրապետության դեմ ուղղված համաժողովրդական ապստամբությունը Տարոնում իշխում էին Մամիկոնյանները։ Սակայն Արաբական խալիֆայությունը վերոհիշյալ ապստամբությունը ճնշելու հետ միասին ոչնչացրեց ապստամբությանը մասնակցած մի շարք իշխանական տներ, այդ

---

[1] Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Ատլաս «Հայ ժողովրդի պատմության» գրքի, Առաջին մաս (Հրատ. 1951), Երևան, 1952, «Հայաստանը X դարի վերջին և XI դարի սկզբին» քարտեզը։

թվում և Մամիկոնյան իշխանական տունը։ Դրանից հետո Մամիկոնյան սերնդի մնացորդների մի մասը ամրացավ Սասունում, իսկ մյուս մասն անցավ Բյուզանդական կայսրության սահմանները։ Տարոնի նրանց կալվածքներին տեր դարձան հզորացող Բագրատունիները։ Վերջիններս այստեղ աստիճանաբար հիմք դրեցին մի մեծ իշխանության, որը Տարոնից բացի իր մեջ էր ընդգրկում նաև Բզնունիք և Խորխոռունիք գավառները։ Տարոնի այս իշխանությունը ևս ենթարկվեց Անի-Շիրակի թագավորությանը։ Իսկ Խութը այդ ժամանակներում միացած էր Սասունին, որը դարեր շարունակ պահպանեց իր ինքնուրույնությունը։

Այսպես ուրեմն, IX դարում Տուրուբերանը վարչա-քաղաքական տեսակետից բաժանված էր երեք մասի՝ Կայսիկների էմիրության, որի մեջ բնակչության ճնշող մասը դարձյալ հայերն էին, Տարոնի Բագրատունյաց իշխանության և Խութի, որը, ինչպես ասացինք, մտնում էր Սասունի իշխանության մեջ։ Դրանցից առաջին երկուսը Բագրատունիների թագավորության շրջանում հանդիսանում էին Անի-Շիրակի կենտրոնական թագավորության վասալները։ Հավանաբար Սասունի իշխանությունը ևս ենթակա էր Անի-Շիրակի թագավորությանը։

Հզորացած Բյուզանդական կայսրությունը X դ. երկրորդ կեսից Հայաստանի և Վրաստանի նկատմամբ սկսում է վարել ագրեսիվ քաղաքականություն։ Առանձին իշխանությունների և մանր ֆեոդալական թագավորությունների մասնատված, բայց անտեսապես և քաղաքականապես հզորացող այդ երկրներն անհանգստացնում էին Բյուզանդիային։

Առաջին հերթին նրա զոհն է դառնում Հարավային Հայաստանը։ Բյուզանդական կայսրությունը X դարի երկրորդ կեսին, գործի դնելով իր խարդախ դիվանագիտությունն ու ստվարաթիվ բանակը, զավթում է Հարավային Հայաստանի մի խոշոր մասը, այդ թվում և Տուրուբերանը։ Միայն Խութը, որ Սասունի հետ միասին կազմում էր մի իշխանություն, չենթարկվեց Բյուզանդիային և պայքարով պաշտպանեց իր անկախությունը։

Տուրուբերանը Կայսրության կազմում էլ մնաց մինչև սելջուկյան արշավանքները, ավելի ճիշտ, մինչև Ալփ-Արսլանի արշավանքը (1064 թ.)։ Հայաստանի մյուս մասերի նման Տուրուբերանը ևս ընկավ սելջուկյան տիրապետության տակ։ Սելջուկյան պետության տրոհման շրջանում Հարավային Հայաստանում կազմավորվեց մի խոշոր էմիրություն, որը XI դարի վերջից մինչև XIII դարի սկզբները իր մեջ էր ընդգրկում ամբողջ Տուրուբերանը, Վասպուրակա-

նի մեծագույն մասը և մասամբ Բարձր Հայքը։ Այս էմիրությունը, որի բնակչության ճնշող մեծամասնությունը կազմում էին հայերը, կոչվում էր Շահարմենների սուլթանություն։

Տուրուբերանի բնակչությունը հիմնականում կազմում էին հայերը։ Սակայն այստեղ կային նաև այլ ժողովուրդների ներկայացուցիչներ, որոնք գլխավորապես ապրում էին քաղաքներում՝ հրեաներ, հույներ, ասորիներ և այլք։ Ինչպես նշվեց վերևում, VIII դարից սկսած այստեղ բնակություն են հաստատում նաև արաբական ցեղերը, իսկ XI դարից՝ սելջուկ-թուրքերը։ Չնայած այդ բոլորին, Տուրուբերանի բնակչության ճնշող մեծամասնությունը հնագույն ժամանակներից սկսած մինչև առաջին համաշխարհային պատերազմը կազմում էին հայերը։

Տուրուբերանը հին Հայաստանի խիտ բնակեցված շրջաններից մեկն էր։ Այստեղ տարբեր ժամանակներում հիշատակվում են մի շարք քաղաքներ՝ Մանազկերտ, Արճեշ, Արծկե, Խլաթ, Մուշ և այլն, որոնց մի մասը մինչև օրս էլ գոյություն ունի։ X—XIII դարերում Տուրուբերանի բնակչության թիվը ամենայն հավանականությամբ, մեկ միլիոնից պակաս չէր։

## 3. ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

Ընդհանուր առմամբ ունենալով հարթավայրային ռելիեֆ և կենտրոնական դիրք գրավելով Հայկական լեռնաշխարհում, Տուրուբերանը Այրարատի և Վասպուրականի նման դարձել էր տարանցիկ առևտրի կապող օղակներից մեկը։ Տուրուբերանի վրայով անցնող ճանապարհներից առանձնապես մեծ կարևորություն ունեին երկուսը. ա) Կարին (Թեոդոսուպոլիս)—Մանազկերտ—Խլաթ—Բաղեշ (այժմ՝ Բիթլիս)—Մծբին ճանապարհը, որը Մծբինում միանում էր Արևելքն Արևմուտքի հետ միացնող հարավային մեծ ճանապարհին, իսկ վերջինս դուրս էր գալիս Պարսկաստանից և, Մոսուլի, Մծբինի ու Եդեսիայի վրայով անցնելով, հասնում էր Միջերկրական ծովի արևելյան ափերը, բ) Արտաշատ—Մանազկերտ—Տիգրանակերտ ճանապարհը։ Սրա Մանազկերտ—Տիգրանակերտ հատվածը արաբական տիրապետության շրջանում մեծ չափով կորցրեց իր նշանակությունը։

Հիշատակված այս երկու ճանապարհներն էլ գործում էին հնագույն ժամանակներից։ Իրենց նշանակությունը նրանք պահպանեցին գրեթե մինչև XIV դարը։

*XIV դ. Տուրուբերանի համար մեծ կարևորություն է ստանում Թավրիզից և Վանից եկող ճանապարհը, որն անցնում էր Վանա լճի առափնյա քաղաքներով։*

*Տուրուբերանի մի քանի գավառների՝ հատկապես Բզնունիքի համար ջրային ճանապարհ էր ծառայում Վանա լիճը։*

### 4. ԳԱՎԱՌՆԵՐԸ

*Ըստ «Աշխարհացույց»-ի, Տուրուբերանը բաղկացած էր 16 գավառից։ Պահպանելով «Աշխարհացույց»-ի կարգը, հիշատակենք Տուրուբերանի գավառները. Խութ, Ասպակունիք, Տարոն, Արշամունիք, Մարդաղի, Դասնավորք, Տվարածատափ, Դալառ կամ Գովառ, Հարք, Վարաժնունիք, Բզնունիք, Երևարք կամ Երիվարք, Աղիովիտ, Ապահունիք, Կոր կամ Կորի և Խորխոռունիք։*

### Խութ, Արշամունիք և Ասպակունիք

*Խութը («Խոյթ») Սասունի արևելյան հարևանն էր։ Նա գտնվում էր Հայկական Տավրոսի շրջանում՝ Տարոնից հարավ-արևելք։ Խիստ լեռնային մի փոքրիկ երկիր է, որն ունի ցուրտ կլիմա և ժլատ բնություն։ Այստեղ մինչև IV դարի երկրորդ կեսն իշխում էին տեղական իշխանները։ IV դարի երկրորդ կեսից Խութը միացված էր Տարոնի Մամիկոնյանների իշխանությանը, իսկ արաբական տիրապետության շրջանում և ավելի ուշ՝ Սասունի հետ կազմում էր մի իշխանություն։ Խութի բնակիչները իրենց հարևան Սասունի բնակիչների նման աչքի են ընկել քաջությամբ և անվեհերությամբ։ Նրանք դարեր շարունակ համառ պայքար են մղել իրենց անկախության համար։ Խութեցի էր Հովնանը, որը IX դարի կեսերին Հայաստանում արաբական լծի դեմ ծավալված ժողովրդական-ազատագրական շարժման նշանավոր ղեկավարներից մեկն էր։*

*Արշամունիք (կամ Աշմունիք) գավառը տարածված էր Տարոնի արևելյան մասում, իսկ Ասպակունիքը լեռնային մի փոքրիկ հովիտ էր՝ Խութի մոտ։*

### Տարոն

*Տարոնը Տուրուբերանի ամենագլխավոր գավառն էր, այդ պատճառով էլ, ինչպես վերևում նշվեց, ամբողջ Տուրուբերանը սովո-*

բաբար հայտնի էր նաև Տարոն անունով։ Տարոնը մեծ հռչակ ուներ ամբողջ Հայաստանում։

Տարոնը մի բարեբեր երկիր է։ Նա Մերձավոր Արևելքի երկրագործության հնագույն կենտրոններից մեկն է։

Այրարատի նման Տարոնն էլ իր արգավանդության շնորհիվ գովերգվել է մեր հին պատմագիրների կողմից։ Ահա թե ինչ է գրում նրա մասին Զենոբ Գլակ պատմագիրը.

«Բարի է երկիրս և վայրքս, և անուշ օդս բազմաջուր, դաշտաձև, և շուրջ զլեռամբքս ամրոցք բազումք. երկիրս խոտաբեր և մեղրաբուխ, և որպէս մանանայն իջանէր յերկնից այդ առ Հրեայս, նոյնպէս և աստ ի մերում երկրիս ի վերայ անտառացն իջանէ քաղցըր առաւել քան զմեղր, որ կոչի գազպայէն... Այս երկիրս ամենայն բարութեամբ լի է, աջողակ և առողջ»[1]։

Տարոնը տարածվում էր Մեղրագետի (Մշո գետ, այժմ Կարասու) ավազանում և Արածանիի երկու ափին։ Արևմուտքում սահմանակցվում էր Չորրորդ Հայքին, իսկ հարավում՝ Աղձնիքին։ Բավական ընդարձակ մի երկիր էր։ Այժմյան Մուշի շրջանը կազմում էր նրա միայն մի մասը։

Ըստ Խորենացու հաղորդած տեղեկությունների, հնում Տարոնը բաժանված էր երկու մասի՝ արևելյան և արևմտյան։ Արևելյան մեծ մասում իշխում էր Սլկունի նախարարական տունը, իսկ արևմըտյանում՝ Վահունի քրմական տունը։ IV դարում (հավանաբար Խոսրով Կոտակի օրոք) Տարոնի այս մասը, որը նախկինում պատկանում էր Սլկունիներին, անցնում է Մամիկոնյանների իշխանության, իսկ արևմտյան մասը՝ Աշտիշատը իր շրջակայքով, Հայաստանում քրիստոնեությունը պետական կրոն ընդունվելուց հետո, անցնում է կաթողիկոսական տանը՝ Գրիգոր Լուսավորչի տոհմին։ V դարում կաթողիկոսական այս կալվածքները, Սահակ Պարթևի մահից հետո (439 թ.), ժառանգում են Մամիկոնյանները, իսկ Տարոնի արևմտյան ծայրամասը գրավում են Պալունիները։

Տարոնի Մամիկոնյանները վարում էին Հայաստանի սպարապետության պաշտոնը, իսկ Մամիկոնյան տան նախարարը անմիջապես իշխում էր Տայքում[2]։

---

[1] Յովհաննու Մամիկոնէանի, Պատմութիւն Տարօնոյ, Վենետիկ, 1832, էջ 49։

[2] Հայտնի է, որ Տայքում էին գտնվում Մամիկոնյանների հայրենական կալվածքները։ Իսկ նրանց Տարոնի կալվածքները, ամենայն հավանականությամբ, եղել են պայմանական կալվածքներ։ Այդ կալվածքները Արշակունի թագավորների կողմից նրանց էր տրված իբրև վարձատրություն՝ երկրի սպարապետության պաշտոնը կատարելու դիմաց։

*VIII դարի երկրորդ կեսին Մամիկոնյանների Տարոնի կալվածքներն աստիճանաբար անցնում են Բագրատունիներին։*

*Տարոնը Հին Հայաստանի խիտ բնակեցված գավառներից մեկն էր։*

*Տարոնում կային պատմա-աշխարհագրական բազմաթիվ վայրեր՝ բերդեր, ավաններ, վանքեր, գյուղեր և այլն։ Դրանցից միայն հիշատակվածների թիվը (մինչև XIII դարին վերաբերող գրավոր աղբյուրներում) 150-ից անցնում է, իսկ սովորաբար պատմագիրներն ու աշխարհագիրները հիշատակել են գերազանցապես այն վայրերի անունները, որոնք շատ թե քիչ նշանավոր դեր են խաղացել պատմության մեջ։*

*Նշենք Տարոնի պատմական վայրերից մի քանիսը.*

**Աշտիշատ**.—*Հիշատակվում է նաև Հաշտիշատ ձևով։ Գտնվում էր Տարոնի արևմտյան մասում՝ Արածանիի աջ ափին։ Հեթանոսական շրջանում եղել է Հայաստանի կրոնական գլխավոր կենտրոնը։ Այդ ժամանակաշրջանում այստեղ գտնվում էին երեք նշանավոր մեհյաններ, որոնցից մեկը նվիրված էր Վահագն աստծուն և կոչվում էր Վահեվահյան մեհյան, երկրորդը նվիրված էր Վահագնի տարփածուին՝ Աստղիկ աստվածուհուն և կոչվում էր Սենյակ Վահագնի, իսկ երրորդը կրում էր Անահիտ աստվածուհու անունը։ Մեհյաններում դրված են եղել նշված աստվածների արձանները։*

*Քրիստոնեությունը պետական կրոն ընդունելու ժամանակ Աշտիշատի նշված մեհյանները կործանվեցին, և նրանց տեղում հիմնըվեց վանք, որին տրվեցին նախկին մեհյանապատկան կալվածքներն ու գանձերը։ Աշտիշատը դարձավ կաթողիկոսի աթոռանիստը, իսկ դրա շուրջը տարածվող ընտիր հողերը՝ նրա սեփականությունը։ Ինչպես վերը նշվեց, V դարի 30-ական թվականների վերջերին Լուսավորչի կաթողիկոսական տանը պատկանող այս կալվածքներն իբրև ժառանգություն տրվեցին Մամիկոնյաններին, որովհետև Սահակ Պարթևի մահով (439 թ.) վերացավ այդ տունը, իսկ վերջինս իր մահից դեռևս առաջ Աշտիշատի կալվածքները կտակել էր իրենց տան հետ բարեկամական կապերով կապված Մամիկոնյաններին։*

*Աշտիշատում տեղի են ունեցել եկեղեցական երեք ժողովներ, որոնցից առանձնապես նշանավոր է 354 թ. ժողովը։*

*354 թ. Աշտիշատի ժողովը, որը գումարել էր Ներսես կաթողիկոսը, քննարկեց թե՛ կրոնական և թե՛ աշխարհիկ հարցեր։ Աշխարհիկ կյանքին վերաբերող նրա քննարկած հարցերն հետագայում ունեցան կուլտուրական-առաջադիմական նշանակություն։*

**Գլակա վանք.**— *Գտնվում է Աշտիշատից ոչ հեռու, եղել է հեթանոսական մեհյանատեղի, քրիստոնեությունն ընդունելուց հետո, Աշտիշատի նման, սա ևս դարձել է վանք։ Այս վանքն ուներ նաև երկու այլ անուններ՝ ս. Կարապետ և Իննակնյան։ Դրանց մեջ ամենից գործածականը ս. Կարապետ անունն է։*

*Վանքը կառուցվելուց հետո նրան են տրվում այն ընդարձակ կալվածքները, որոնք մինչ այդ պատկանում էին նրա տեղում եղած նախկին մեհյանին։ Գլակա վանքը մեծ ուխտատեղի էր*[1]*։*

*Հիշատակությունների համաձայն, այս վանքը երկրաշարժի և արտաքին հարձակումների պատճառով մի քանի անգամ ավերվել է, բայց նորից վերականգնվել։ Այժմ ավերակները պահպանվում են։*

**Մուշ.**—*Հին բնակավայր է, բայց հայտնի է դարձել X դարից։ Մի քանի հիշատակություններում կոչված է քաղաք, իսկ մի քանիսում՝ ավան։ Երբեմն ուղղակի անվանված է Քաղաք, ըստ երևույթին հաշվի առնելով այն, որ տեղացիները Քաղաք ասելով հասկանում էին Մուշը, որը գավառի գլխավոր քաղաքն էր։*

*Մուշը այժմ էլ գոյություն ունի և գտնվում է համանուն շրջանում՝ Արևելյան Եփրատի ձախ ափից ոչ հեռու։ Մուշ անվան առաջացման մասին տեղի ժողովուրդը պահպանել է հնագույն ծագումի մի բանաստեղծական ավանդություն։*

**Ողական.**— *Ամրոց։ Գտնվում էր Արածանիի վրա, նրա այն մասում, որտեղ գետը, ճեղքելով Տարոնի հյուսիսային կողմով ձգվող լեռնաշղթան, դուրս է գալիս Մուշի դաշտը։*

*Ողականը հին Հայաստանի ամուր բերդերից մեկն էր։ Նա Տարոնի ամենանշանավոր բերդն էր և համդիսանում էր Հայաստանի սպարապետի աթոռանիստը։ Նրա պարիսպների, աշտարակների և այլ շինությունների հետքերը պահպանվել են մինչև մեր օրերը։*

**Հացեկաց գյուղ.**— *Այս գյուղում է ծնվել Մեսրոպ Մաշտոցը։ Հացեկաց գյուղը մինչև առաջին համաշխարհային պատերազմը գոյություն ուներ և գտնվում էր Հացիկ (Խասիկ) գյուղից ոչ հեռու։*

**Խորնի.**—*Երբեմն համարված է գյուղ, իսկ երբեմն էլ՝ «ավանագյուղ»։ Աշխարհագրական դիրքը հայտնի չէ, ենթադրվում է, որ այստեղ է ծնվել V դարի խոշոր պատմագիր Մովսես Խորենացին*[2]*։*

---

[1] *Ավանդության համաձայն, իբր, այս վանքն էր սալիս աշուղության և լարախաղացության ձիրքը։*

[2] *Որոշ ուսումնասիրողներ էլ ենթադրում են, որ Մ. Խորենացին ծնվել է ոչ թե Տարոնի այս գյուղում, այլ Սյունիքի Խորեան գյուղում։ Ըստ երևույթին վերջին տեսակետն ավելի հավանական է։*

## Մարդաղի, Դասնավորք, Տվարածատափ և Գալար

*Այս գավառները տարածվում էին Վարաժնունիքից և Հարքից հյուսիս՝ գրավելով Բյուրակնի արևմտյան սահմանից մինչև այժմյան Էլմալի գետի արևմտյան ջրբաժան լեռներն ընկած շրջանները։*

*Մարդաղի գավառը (այս անունը կապում են մարդերի՝ մարերի անվան հետ) տարածվում էր Բյուրակնի հյուսիսային լանջերին՝ Արաքսի ակունքների շրջանում։ Նրանից դեպի արևելք հերթականությամբ տեղադրված էին Դասնավորք՝ Արաքսի հովտում, Տվարածատափը (այժմյան Կարայազը) և Գալարը (կամ Գովառ)՝ Էլմալի գետի հովտում։ Դրանցից միայն Տվարածատափն ուներ հարթ ռելիեֆ, իսկ մյուս երեքը լեռնային գավառներ էին։ Բոլորն էլ ունեն բարձր դիրք, ստանում են բավարար քանակությամբ տեղումներ, աչքի են ընկնում սառնորակ աղբյուրներով, փարթամ արոտավայրերով և խոտհարքներով։*

## Վարաժնունիք, Հարք և Ապահունիք

*Վարաժնունիքը, Հարքը և Ապահունիքը միմյանց սահմանակից էին։ Ընդհանուր առմամբ, երեքն էլ ունեն հարթ ռելիեֆ և նրանց կլիման ցամաքային է։*

*Պատմական հին քարտեզներում, գրեթե առանց բացառության,* **Վարաժնունիքի** *դիրքը սխալ է նշանակված։ Վարաժնունիքն իր տերիտորիայով համապատասխանում է այժմյան Խնուսի շրջանին, որը գրավում է համանուն գետի վերին հոսանքի ավազանը և շրջապատված է Բյուրակնից դեպի արևելք ձգվող երկու աղեղնաձև լեռնաբազուկներով։ Վարաժնունիքի*[1] *գլխավոր բերդը Խնուսն էր։*

*Վարաժնունիքից հարավ, Արածանիի երկու ափերին տարածվում էր* **Հարք** *գավառը։*

*Հարքն սկզբում կազմում էր Մանավազյանների նախարարությունը։ Սակայն IV դարի առաջին կեսում, Խոսրով Կոտակի օրոք, Մանավազյանների և Որդունիների նախարարական տները, որոնք ֆեոդալական արյունահեղ պայքար էին մղում միմյանց դեմ, ոչըն-*

---

[1] *Հին Հայաստանում Վարաժնունիք անունը կրող երեք գավառներ են եղել. մեկը գտնվում էր Այրարատում, մյուսը՝ Վասպուրականում, իսկ երրորդը՝ Տուրուբերանում։ Դրանք պետք է իրարից տարբերել։*

չացվում են, իսկ նրանց կալվածքները տրվում են եպիսկոպոսական թեմերին։

Հավանաբար հնագույն շրջանում Հարքը ավելի մեծ տերիտորիա է ընդգրկել։ Նրա մեջ են մտել, Հարքից բացի, նաև Ապահունիքը, Խոռխոռունիքը, Բզնունիքը։ Հարքի հետագա մասնատումը անշուշտ արդյունք էր ֆեոդալական հարաբերությունների ձևավորման։

Հարքի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր էր Մ ա ն ա զ կ ե ր տ քաղաքը, որը գտնվում էր Հարքի և Ապահունիք գավառի սահմանագլխին։ Այդ պատճառով էլ որոշ հեղինակներ Մանազկերտը համարում են ոչ թե Հարքի, այլ Ապահունիքի մեջ մտնող քաղաք։

Մանազկերտ քաղաքը հիմնադրվել է հնագույն ժամանակներում՝ IX դ. վերջին կամ VIII դ. սկզբներին (մ.թ.ա.)։ Ենթադրվում է, որ Մանազկերտ անունը կապված է ուրարտական Մենուա թագավորի անվան հետ։ Մանազկերտն իբրև քաղաք մինչև օրս էլ գոյություն ունի և գտնվում է Վանա լճից հյուսիս-արևմուտք՝ Արածանիի ձախ ափին։

Քաղաքն ունեցել է ամուր բերդ։ Մանազկերտի մասին առանձնապես հաճախ է հիշատակվում արաբական և սելջուկյան տիրապետությունների ժամանակաշրջանում։ Նա հանդիսանում էր IX դարում կազմավորված Կայսիկների էմիրության կենտրոնը։

Մանազկերտում տեղի են ունեցել քաղաքական մի շարք դեպքեր։ Սելջուկյան զորավար Տուղրիլը 1054 թ. պաշարում է քաղաքը և ամեն միջոց գործադրում է այն գրավելու համար, սակայն նրա բոլոր ջանքերն ապարդյուն են անցնում։ Քաղաքի պաշտպանները ետ են մղում սելջուկների գրոհները։

1071 թ. օգոստոսին Մանազկերտի մոտ տեղի է ունենում մեծ ճակատամարտ, մի կողմից՝ սելջուկների, որոնց գլխավորում էր Ալփ-Արսլան զորավարը, իսկ մյուս կողմից՝ բյուզանդական 100 000-անոց բանակի միջև, որին գլխավորում էր Ռոմանոս Դիոգենես կայսրը։ Բյուզանդական բանակն այս ճակատամարտում խայտառակ պարտություն է կրում, իսկ կայսրը գերվում է։ Սելջուկները գրավում են հայկական հարուստ Մանազկերտ քաղաքը, կողոպտում և սրի քաշում բնակչության մի զգալի մասին։

Հարքում էր գտնվում Հ ե ր ե ա ն գյուղը։ Այստեղ է ծնվել VI դարի հայ նշանավոր փիլիսոփա Դավիթ Անհաղթը։

**Ապահունիքը** տարածվում էր Հարքից հյուսիս-արևելք՝ Արա-

ծանրի երկու ափերին։ Այս գավառում էր գտնվում Թ ո ն դ ր ա կ կամ Թ ո ն դ ր ա կ ս գյուղը։

Թոնդրակ գյուղը նշանավոր դեր է խաղացել IX—XI դարերի սոցիալական շարժումների ժամանակ. նա հանդիսացել է ազանդավորական-սոցիալական շարժման առաջին ու գլխավոր կենտրոնը, որի անունով էլ այդ շարժումը պատմության մեջ կոչվել է թոնդրակյան շարժում։

## Աղձնիք, Բզնունիք, Կոր, Խորխոռունիք և Երիվարք

Սրանք տարածվում էին Վանա լճի հյուսիսային և արևմտյան կողմերում։

**Աղիովիտը** գտնվում էր Ապահունիքից արևելք՝ Վանա լճի հյուսիսային ափին։ Աղիովիտում, ինչպես և նրա հարևան Վասպուրականի Առբերանի և Չորրորդ Հայքի Հաշտյանք գավառներում, ընդարձակ կալվածքներ ունեին Արշակունի արքունական տան կրտսեր անդամները, իսկ գավառի մյուս մասը, ամենայն հավանականությամբ, պատկանում էր Գնունի նախարարական տանը։

Աղիովիտի պատմական վայրերից նշանավոր են Զարիշատը, Արճեշը և Մեծոփան։

**Զ ա ր ի շ ա տ ը** հնագույն շրջանում Հայաստանի հելլենիստական տիպի քաղաքներից մեկն էր։ Գտնվում էր Արտաշատ—Տիգրանակերտ ճանապարհի վրա։ Պարսիկները IV դ. 60-ական թվականներին ավերեցին Զարիշատը։ Դրանից հետո երկար ժամանակ նա մնաց որպես խղճուկ մի բնակավայր։ XV դ. Զարիշատը որոշ չափով աշխուժանում է, մասնակիորեն վերականգնվում։

Ենթադրվում է, որ **Ա ր ճ ե շ ը** հիմնադրվել է դեռևս ուրարտական ժամանակաշրջանում։ Նրա անունը կապում են ուրարտական Արգիշտի Բ թագավորի անվան հետ։ Արճեշը գտնվում էր Վանա լճի արևմտյան ափին։ Մեր մատենագիրների մոտ Արճեշի մասին կան բազմաթիվ հիշատակություններ։ VII դ. առաջին քառորդում Արճեշը, որը ժամանակավորապես գրավել էին պարսիկները, ավերման ենթարկվեց բյուզանդական Հերակլ կայսրի կողմից, սակայն հետագայում նորից վերականգնվեց և զարգացման նոր շրջան ապրեց XI—XIII դդ.։ Հին Արճեշի ավերակներն այժմ անցել են Վանա լճի ջրերի տակ, որովհետև լճի ջրերը անցյալ դարի վերջին և մեր դարի սկզբներին զգալիորեն բարձրացել են։

**Մ ե ծ ո փ ա** վանքը գտնվում էր Արճեշ քաղաքի մոտ։ Այն որ-

պես Հայաստանի մշակույթի կենտրոններից մեկը՝ հայտնի դարձավ XV դարում։ Այստեղ ապրել և գործել է XIV գ. վերջի և XV դ. առաջին կեսի պատմագիր Թովմա Մեծոփեցին, որը միջնադարյան հայ ամենահայտնի հեղինակներից մեկի՝ Գրիգոր Տաթևացու (1346—1411 թթ.) արժանավոր աշակերտներից էր և հանդիսանում է իր դարի միակ պատմագիրը։ Թովմա Մեծոփեցու պատմական երկը[1] կարևոր աղբյուր է Հայաստանի ու նրա հարևան երկրների վրա Լենկթեմուրի կատարած ավերիչ արշավանքների ժամանակաշրջանի պատմության համար։ Նա, ի միջի այլոց, գործուն մասնակցություն է ունեցել կաթողիկոսական աթոռը Սսից Էջմիածին տեղափոխելու գործում։

**Բզնունիք** գավառը տարածվում էր Վանա լճի արևմտյան առափնյա շրջաններում։ Կազմում էր մի առանձին նախարարություն, որտեղ իշխում էին Բզնունիները։ Այդ նախարարությունը IV դ. վերացվեց, որովհետև նրա նախարարը՝ Դատաբեն, ապստամբելով Արշակունյաց թագավորության դեմ, իր զորքով անցել էր պարսիկների կողմը և վերջիններիս հետ միասին ավերում էր հարավային Հայաստանի մի քանի գավառները։ Ուստի հայկական արքունական զորքերը Առեստավանի մոտ (Վանա լճի հյուսիսային ափին՝ այժմյան Բենդիմահի գետի գետաբերանի մոտ), պարտության մատնելով դավաճանին, գլխատեցին։ Դատաբեի գլխատմամբ էլ Բզնունյաց նախարարական տունը դադարում է գոյություն ունենալուց, իսկ նրա կալվածքները, ամենայն հավանականությամբ, տրվում են Բզնունյաց եպիսկոպոսական թեմին։

Բզնունիքի պատմական վայրերից նշանավոր էին Խլաթ և Արծկե քաղաքները, որոնք մինչև օրս էլ գոյություն ունեն։ Խլաթը (այժմ՝ Ախլաթ) գտնվում է Վանա լճի հարավ-արևմտյան, իսկ Արծկեն՝ արևմտյան ափին։

Խլաթը բազմամարդ, ամուր և պարսպապատ քաղաք էր։ Այն իր պատմության ընթացքում մի քանի անգամ ավերվել է, բայց նորից վերականգնվել է շնորհիվ իր հարմար դիրքի։ Խլաթը հատկապես շատ տուժեց Ջալալ էդ-դինի և մոնղոլների արշավանքներից, ինչպես նաև 1246 թ. տեղի ունեցած երկրաշարժից, որը ունեցել է աղետաբեր հետևանքներ։ Արիստակես Լաստիվերտցին մեծ գովեստով է խոսում Խլաթի մասին։

[1] Տե՛ս Թ. Մեծոփեցի, Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց, Փարիզ, 1860։

Արծկեն Ասողիկի մոտ հիշատակվում է որպես գյուղ, իսկ մյուս պատմագիրները համարում են քաղաք։ Լաստիվերտցու ասելով, XI դարում Արծկեն գտնվում էր ոչ թե լճափին, այլ ուղղակի լճի մեջ։ Նա հաղորդում է, որ քաղաքը լճափից բաժանված էր մի մեծ ծանծաղուտով։ Դրանից պետք է ենթադրել, որ Արիստակես Լաստիվերտցու ապրած ժամանակաշրջանում Վանա լճի մակարդակը խիստ բարձրացել էր[1]։

## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ

### 1. ԱՆՈՒՆԸ, ԴԻՐՔԸ, ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

V դարի մեր պատմագիրների մոտ Վասպուրական անունը չի հիշատակված, իսկ դրան հակառակ, չափազանց շատ է նշվում նրա մի շարք գավառների (Տոսպ, Ռշտունիք, Արտազ, Աղբակ և այլն) անունները։ Այլ կերպ էլ լինել չէր կարող, որովհետև Վասպուրականը որպես վարչա-քաղաքական միավոր այն սահմաններով, ինչ որ նկարագրված է «Աշխարհացույց»-ում, արդյունք էր Հայաստանի 591 թ. բաժանման։

Վասպուրական անունը հավանաբար հին պարսիկներից փոխառված բառ է և բաղկացած է վասպուր[2] (հայերեն՝ իշխանական, ազնվական) արմատից և երկիր ցույց տվող ական վերջավորությունից։ Ըստ այնմ էլ Վ ա ս պ ո ւ ր ա կ ա ն նշանակում է ազնվական երկիր, իշխանական երկիր։

Վասպուրականն ընկած էր Տուրուբերանի, Այրարատի, Սյունիքի, Պարսկահայքի, Կորճեքի, Մոկքի և Աղձնիքի միջև։

Նրա սահմանները, երկրի քաղաքական դրության անկայուն

---

[1] **Կոր** կամ **Կորի** կոչված գավառը վարչա-տերիտորիալ միավոր չէր, նա սոսկ աշխարհագրական-տերիտորիալ միավոր էր և մտնում էր Բզնունյաց նախարարության մեջ։ Նրա աշխարհագրական դիրքը չի ճշտված։

**Երիվարք** տարածվում էր Վանա լճի հարավ-արևմտյան ափին և սահմանակից էր Աղձնիքին։

**Խոռխոռունիք** գավառի դիրքը ևս վերջնականապես չի ճշտված։ Ենթադրվում է, որ նա տարածվում էր Վանա լճից արևմուտք՝ այժմյան Նազիկ լճի շրջակայքում, որ կազմում էր ներկայիս Բուլանըղի մի մասը։ Խոռխոռունիք գավառն առանձին նախարարություն էր։ Այստեղ իշխում էին Խոռխոռունի նախարարները, որոնք Արշակունիների արքունիքում վարում էին թագավորի թիկնապահ զորքի հրամանատարության (մաղխազության) պաշտոնը։

[2] «Վասպուրս»-ներ էին կոչվում Պարսկաստանի ազնվական ամենաբարձր յոթ ընտանիքների անդամները։

*լինելու պատճառով, տարբեր ժամանակներում կրել են զգալի փոփոխություններ։ Վասպուրականը, «Աշխարհացույց»-ի տվյալներով, ուներ հետևյալ սահմանները. արևմուտքում՝ Վանա լիճն ու Մասիս Թոնդուրեկ ձգվող լեռնաշարքը, հարավում՝ Հայկական Տավրոսի այն հատվածը, որը ձգվում է Ընձաքիարս (այժմ՝ Կապուտկող) գագաթից դեպի արևելք, արևելյան սահմանն անցնում էր մոտավորապես Ուրմիա լճի ու Տիգրիսի և Ուրմիա լճի ու Արաքսի ջրբաժան բարձրություններով, իսկ հյուսիսում Վասպուրականն իր մեջ ընդգրկում էր Նախիջևան և Գողթն գավառները, որոնք ընկած էին Արաքսի ձախ կողմում։*

*Ֆիզիկա-աշխարհագրական տեսակետից Վասպուրականը մասնատված է բազմաթիվ շրջանների, որոնցից յուրաքանչյուրը ունի ռելիեֆի, կլիմայի, ջրագրության, հողերի և բուսական աշխարհի յուրահատուկ պայմաններ։*

*Երկրում փռված են մի քանի ընդարձակ դաշտեր, որոնք ունեն խիստ ցամաքային կլիմա, առանձնապես նշանավոր են Հայոց ձորի (Խոշաբի հովտում), Արճակի (Արճակ լճի շրջակայքում), Աբաղայի (Բերկրի գետի ձախ կողմում), Մակուի և Նախիջևանի դաշտերը։ Այդ դաշտերում արհեստական ոռոգումն ապահովելու դեպքում կարելի է աճեցնել բազմատեսակ կուլտուրաներ։*

*Արհեստական ոռոգման համար Վասպուրականն ունի հոսող ջրի մեծ պաշար։ Նրա միջով են անցնում Արաքսի, Տիգրիսի և Վանա լճի ավազաններին պատկանող բազմաթիվ գետեր և հորդաբուխ աղբյուրներից կազմված առվակներ։*

*Վասպուրականը անտառներով աղքատ է։ Համեմատաբար ընդարձակ անտառներ կան նրա հարավային և հարավ-արևմտյան լեռնային շրջաններում։*

*Վասպուրականն ունի նավթ, պղինձ, կապար, երկաթ, աղ և այլ հանածոներ։ Նրա լճերը (հատկապես Վանա լիճը) և գետերը հանդիսանում են ձկնորսության հարուստ ավազաններ։*

## 2. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

*Վասպուրականը հին Հայաստանի ամենաընդարձակ նահանգն («աշխարհ») էր։ Հնագույն ժամանակներում ամբողջապես մտնում էր Ուրարտական պետության մեջ, կազմելով նրա հիմնական մասը։*

*Արտաշեսյանների թագավորության շրջանում (մ.թ.ա. 189—մ.թ. 1 թթ.) Վասպուրականի հարավային շրջանները Պարսկահայ-*

քի հետ միասին կազմում էին Նոշիրական կամ Նոր Շիրական բդեշխությունը։

Հայաստանի թե՛ առաջին (387 թ.) և թե՛ երկրորդ բաժանման (591 թ.) ժամանակ Վասպուրականը մտավ Սասանյան Պարսկաստանի գերիշխանության ենթակա Արևելյան Հայաստանի կազմի մեջ։

IV դարին վերաբերող վկայություններից պարզվում է, որ Վասպուրականն արդեն մասնատվել էր մի շարք նախարարությունների։ Սակայն այս լայնածավալ երկիրը հիմնականում գտնվում էր չորս հզոր նախարարական տների ձեռքին։ Դրանք էին՝ Մարդպետունի, Արծրունի, Ամատունի և Ռշտունի նախարարական տները։ Մարդպետունիներն իշխում էին Վասպուրականի հյուսիս-արևմտյան գավառներում։ Վերջիններս միասին, բացառությամբ Արտազի, ընդհանուր անունով կոչվում էին Մարդպետական աշխարհ։ Սակայն Մարդպետունի նախարարական տան գոյությունը երկար չտևեց։ Այդ նախարարական տունը, որն ամենից մոտ էր կանգնած Արշակունիների արքունիքին և վարում էր մարդպետի պաշտոնը (մարդպետը հանդիսանում էր արքունի գանձերի, ունեցվածքի և կանանոցի գլխավոր կառավարիչը), V դարի առաջին կեսին, Արշակունիների թագավորության անկման հետ միասին, վերանում է քաղաքական ասպարեզից, իսկ նրա իշխանության տակ գտնվող բոլոր գավառները՝ Մարդպետական աշխարհը, անցնում է Արծրունիների ձեռքը։

Արծրունի նախարարները սկզբնական շրջանում իշխում էին միայն Մեծ Աղբակ գավառում, իսկ Մարդպետական տան անկումից հետո, ինչպես վերևում ասացինք, տեր են դառնում նաև ամբողջ Մարդպետական աշխարհին։ Ամատունիներն իշխում էին Արտազում (այժմյան Մակուի շրջանը)։ Արշակունիների անկումից հետո նրանք կալվածքներ ձեռք բերեցին նաև Այրարատի Արագածոտն գավառում։ Ռշտունիներին էր պատկանում երկու գավառ՝ Ռշտունիքը (Վանա լճից հարավ) և Տոսպը (Վան քաղաքի շրջակայքը)։

Նշված բոլոր նախարարություններից բացի, Վասպուրականում կային բազմաթիվ այլ մանր նախարարական տներ՝ Անձևացիք, Տրպատունիք, Երվանդունիք և այլն։

VIII—IX դարերում, Արաբական խալիֆայության դաժան քաղաքականության հետևանքով, Հայաստանի մյուս մասերի նախարարությունների հետ միասին, ճակատագրական հարված են ստանում նաև Վասպուրականի նախարարություններից շատերը։ Հարվածն այնքան ուժեղ էր, որ նրանց մի զգալի մասը իսպառ վերա-

ցավ պատմական ասպարեզից, իսկ մյուս մասն էլ մեծ չափով կորցրեց իր նախկին դիրքը և քաղաքական ու ռազմական հզորությունը՝ վերածվելով մանր ու թույլ իշխանությունների։ Վասպուրականի նախարարությունների մեջ այդ տեսակետից միայն բացառություն կազմեց Արծրունիների Նախարարությունը։ Չնայած Արծրունիները ևս մի քանի անգամ, հատկապես Բուղայի արշավանքների ժամանակ, խիստ տուժեցին Խալիֆայության կազմակերպած ավերիչ արշավանքներից ու ջարդերից, այնուամենայնիվ, կարողացան ոչ միայն պահպանել իրենց գոյությունը, այլև մեծապես հզորացան՝ հարևան նախարարական տների ոչնչացման ու թուլացման հետևանքով։ VIII—IX դարերում Արծրունիները անչափ ընդարձակում են իրենց իշխանության սահմանները՝ ի հաշիվ պատմական ասպարեզից վերացած նախարարությունների և այն նախարարությունների, որոնք աստիճանաբար կորցնում էին իրենց նախկին դիրքն ու հեղինակությունը։ IX դարի 2-րդ կեսին Արծրունիներն իրենց ձեռքն էին վերցրել ոչ միայն ամբողջ Վասպուրականը (բացառությամբ Նախիջևան և Գողթն գավառների, որոնցից առաջինը Վասպուրականից անջատվել է 693 թ., իսկ երկրորդը՝ 737 թ.), այլև վերջինիս էին միացրել Մոկաց աշխարհն ամբողջությամբ և Կորճեքի ու Պարսկահայքի մի շարք գավառներ։ X դարի սկզբին Արծրունիներն իրենց իշխանության մեջ առան նաև Այրարատի Կոգովիտ, Տուրուբերանի Աղիովիտ (Վանա լճի հյուսիսային կողմում), Բզնունիք, Կոր և Խոռխոռունիք գավառները։

IX դարի վերջերից սկսած Նախիջևանը դառնում է կռվածաղիկ Արծրունիների և Սյունեցիների միջև։ Նրանցից յուրաքանչյուրը ձգտում էր ինքը տեր դառնալ այդ վաճառաշահ քաղաքին։ Այդ պատճառով Նախիջևանը մերթ միացվում էր Վասպուրականին, մերթ՝ Սյունիքին։

908 թ. Վասպուրականի Գագիկ Արծրունի իշխանը, ապստամբելով Բագրատունիների կենտրոնական թագավորության դեմ, Ատրպատականի արաբ էմիր Յուսուֆի օժանդակությամբ իրեն հռչակում է Վասպուրականի անկախ թագավոր։

Սակայն Վասպուրականի թագավորությունը մինչև վերջ էլ մնում է իբրև Բագրատունիների կենտրոնական թագավորության վասալ, ինչպիսիք էին Սյունիքի, Վանանդի, Լոռու թագավորությունները և երկրի այս կամ այն մասում իրենց գոյությունը պահպանած հայկական իշխանություններն ու Հայաստանի տերիտորիայում կազմավորված արաբական էմիրությունները։

922 թ. հաստատված խաղաղությունը, որը տևում է մոտ մեկ

դար, Հայաստանի մյուս շրջանների նման, Վասպուրականի համար ևս ունենում է բարեբար, մեծ ազդեցություն։ Այդ ժամանակաշրջանում Վասպուրականը տնտեսության և մշակույթի բնագավառում մեծ զարգացում է ապրում։ Զարգանում է նրա առևտուրը, ծաղկում են քաղաքները, բացվում են բազմաթիվ դպրոցներ, որոնցից մի քանիսը դառնում են կուլտուրայի խոշոր կենտրոններ։

Վասպուրականի թագավորությունն իր գոյությունը պահպանում է 110 տարուց ավելի (908—1021)։ Այս թագավորությունը, իր արևմտյան հարևան Տարոնի իշխանության և Տայքի կյուրոպաղատության նման, զոհ է դառնում Բյուզանդական կայսրության։ Վերջինս նախ գրավում է Տարոնի իշխանությունը, ապա՝ Տայքի կյուրոպաղատությունը (1001)։ Դրանից հետո հերթը հասնում է Վասպուրականի թագավորությանը։ Բուլղարական պատերազմում հաղթելուց հետո Վասիլ Բ կայսրը ձեռնամուխ է լինում Վասպուրականի գրավմանը։ 1016—1021 թթ. Վասպուրականը մի քանի անգամ հարձակման է ենթարկվում արևելյան ցեղերի կողմից։ Վասպուրականն ընկնում է քաղաքական աննպաստ դրության մեջ։ Մի կողմից արևելյան ցեղերի հարձակումները, մյուս կողմից էլ Բյուզանդական կայսրության ճնշումները ստիպում են Վասպուրականի վերջին թագավոր Սենեքերիմին՝ իր լայնածավալ թագավորությունը հանձնել Բյուզանդիային (1021 թ.), իսկ դրա դիմաց, իբրև «հատուցում», ստանալ Փոքր Հայքի Սեբաստիա (Սվազ) քաղաքն իր շրջակայքով։ Այսպիսով, 1021 թ. վերանում է Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը, երկիրը կցվում է Կայսրությանը որպես նրա արևելյան պրովինցիաներից (թեմերից) մեկը։

Սենեքերիմ թագավորի հետ միասին Սեբաստիա են տեղափոխվում մի շարք ազնվականներ ու իշխաններ, ինչպես նաև հազարավոր ռամիկ բնակիչներ։

Պատմական աղբյուրների համաձայն, Սենեքերիմ թագավորի օրոք (968—1021) Վասպուրականում եղել է 72 բերդ ու ամրոց, 10 քաղաք, 4000 գյուղ և 115 վանք, որոնք բոլորն էլ 1021 թ. անցան Բյուզանդիային։

Վասպուրականը Բյուզանդական կայսրության կազմում երկար չմնաց, 1040-ական թվականների վերջերին վրա հասան սելջուկյան ավերիչ արշավանքները, որոնց հետևանքով սելջուկներն իրենց տիրապետությունը հաստատեցին նաև Վասպուրականում։ Սելջուկյան աշխարհակալ պետության մասնատման շրջանում (XI դարի վերջից սկսած) Վասպուրականը Մոկքի, Տուրուբերանի և Բարձր Հայքի հարավային գավառների հետ միասին կազմեց Շահ-

*արմենների էմիրությունը, որի մի զգալի մասը հայ-վրացական զորքերը սելջուկներից ազատագրեցին XIII դարի սկզբներին։*

*Վասպուրականում հնագույն ժամանակներում բնակվում էին մի քանի ցեղախմբեր, որոնց մեջ ամենահզորը, զարգացածը և մարդաշատը ուրարտացիներն էին։ Ուրարտական պետության անկումից հետո հիշատակվում է մատիեններ ցեղախումբը, որը ամենայն հավանականությամբ հանդիսանում էր նախկին խուրրի-միտանիների անմիջական հետնորդը։*

*Հայ ժողովրդի կազմավորումից հետո Վասպուրականում, հայերից բացի, բնակվում էին նաև հրեաներ, հույներ և ասորպատականցիներ։ VIII—IX դարերից այստեղ բնակություն են հաստատում որոշ թվով արաբներ և քրդեր։ Քրդական տարրը Վասպուրականում սկսում էր ավելի ուժեղանալ XI—XII դարերից։*

*Վասպուրականի բնակչության թիվն իր առավելագույն չափին հասել է X դարի վերջին և XI դարի սկզբներին։ Նրա բնակչության թիվն այդ ժամանակաշրջանում հասնում էր ավելի քան մեկ միլիոնի։ Բնակչության խտությունը տարբեր մասերում եղել է տարբեր։ Վասպուրականի ամենից խիտ բնակեցված շրջանները մերձվանյան գավառներն էին։*

*Բնակչության հիմնական զբաղմունքը գյուղատնտեսության երկու կարևորագույն ճյուղերն էին՝ երկրագործությունն ու անասնապահությունն իրենց բազմաթիվ ենթաճյուղերով։ Կարևոր տեղ էին գրավում նաև արհեստագործությունն ու առևտուրը, ինչպես և ձկնորսությունն ու որսորդությունը։*

## 3. ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

*IX—VI դդ. (մ. թ. ա.) Ուրարտական պետության մայրաքաղաք Տուշպան (Վան) հանդիսանում էր Հայկական լեռնաշխարհի կարևորագույն ճանապարհների խոշորագույն հանգույցը։ Նա առևտրական և ռազմական ճանապարհներով կապված էր ինչպես իր հարավային հարևան Ասորեստանի, նույնպես և Մարաստանի հետ։ Տուշպան մի շարք ճանապարհներով միանում էր նաև Արածանիի ու միջին Արաքսի հովտաններ վրա ընկած շրջանների հետ։*

*Ուրարտական պետության անկումից հետո Վասպուրականի հնագույն ճանապարհները չկորցրին իրենց առևտրա-տնտեսական նշանակությունը։*

*Վասպուրականի վրայով էր անցնում Արևելքն Արևմուտքի հետ*

կապող տարանցիկ առևտրական ճանապարհի կարևոր ճյուղերից մեկը, որն ուներ հետևյալ ուղղությունը՝ Թավրիզ—Դիլման—Սալմաստ—Բարդուղիմեոսի վանք (այժմյան Բաշկալայից հյուսիսարևելք)—Վան—Բերկրի—Արճեշ—Մանազկերտ։ Այս ճանապարհի նշանակությունը հատկապես մեծանում է X—XI դարերում, սակայն, ի տարբերություն Այրարատով անցնող ճանապարհի, որը մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում դադարեց որևէ դեր խաղալուց, Թավրիզ—Մանազկերտ ճանապարհը իր նշանակությունը որոշ չափով պահպանեց նաև հետագա դարերում, մասնավորապես XVI դարում։ Վասպուրականի համար խոշոր նշանակություն ունեին նաև Գողթնի ու Նախիջևանի վրայով անցնող Թավրիզ—Հեր (Խոյ)—Դարույնք տարանցիկ ճանապարհները, որոնք Վասպուրականի տերիտորիայում ճյուղավորվում էին մի շարք երկրորդական ճանապարհների և ձգվում դեպի երկրի տարբեր մասերը։

## 4. ԳԱՎԱՌՆԵՐԸ

Ըստ VII դարի «Աշխարհացույց»-ի Վասպուրականը բաղկացած էր 35 գավառներից, բայց «Աշխարհացույց»-ում հիշատակված է նրանցից միայն 32-ը։

Վասպուրականի գավառները հետևյալներն են՝ Ռշտունիք, Տոսպ, Բզնունիք, Արճիշակովիտ կամ Արճիշառովիտ, Աղիովիտ, Կուղանովիտ, Առբերանի, Գառնի կամ Դառնի, Բուժնունիք, Առնոյոտն, Անձևացիք կամ Անձավացիք, Ատրպատունիք կամ Տրպատունիք, Երվանդունիք, Մարդաստան, Արտազ, Ակե, Մեծ Աղբակ, Անձահիձոր կամ Անձախիձոր, Թոռնավան կամ Թորնավան, Ճվաշռոտ, Կրճունիք, Մեծնունիք, Պալունիք[1], Գուկան կամ Դոկան, Աղվանդռոտ կամ Աղանդռոտ, Պատսպարունիք կամ Պատսպատունիք, Արտաշեսյան, Արտավանյան կամ Արգավանան, Բաքան կամ Բագան, Գաբիթյան կամ Գավիթյան, Գազրիկան կամ Գազրիկանք, Տայգրյան կամ Տագրյան, Վարաժնունիք կամ Վարժնունիք, Գողթն և Նախճավան։

[1] Վասպուրականի Պալունիքը չպետք է շփոթել Տարոնի Պալունիքի հետ։

Անանիա Շիրակացին լավ ծանոթ է եղել Վասպուրականի միայն 18 գավառներին, իսկ մյուսներին, հատկապես նրանց աշխարհագրական դիրքին, անծանոթ էր։

Այդ պարզ երևում է նրանից, որ «Աշխարհացույց»-ում Վասպուրականի 18 գավառները թվարկված և նկարագրված են հաջորդական կարգով՝ հարավից հյուսիս ուղղությամբ, երեք շարքով։

Առաջին շարքի մեջ են մտնում հետևյալ 6 գավառները. Ռշտունիք, Տոսպ, Բզնունիք, Արճիշակովիտ, Աղբերանի և Գառնի։ Այսպիսով, առաջին շարքն սկսվում է Վանա լճից հարավ գտնվող Ռշտունիքով և վերջանում Գառնիով, որը սահմանակցվում է Այրարատի Կոգովիտ գավառին։

Երկրորդ շարքի գավառները տեղադրված են առաջին շարքում հիշատակված գավառներից անմիջապես արևելք և դարձյալ թվարկված են հարավից հյուսիս ուղղությամբ։ Այս շարքում թվարկված է յոթ գավառ։ Դրանք են՝ Բուժնունիք, Անձևացիք, Առնոյոտն, Տրպատունիք, Երվանդունիք, Մարդաստան և Արտազ։

Իսկ երրորդ շարքի գավառները գտնվում են երկրորդ շարքի գավառներից արևելք։ Այս շարքում նույնպես գավառների թվարկությունը կատարված է հարավից հյուսիս ուղղությամբ։ Երրորդ շարքի մեջ ընդամենը թվարկված է հինգ գավառ։ Դրանք են՝ Ակե, Մեծ Աղբակ, Անձահիձոր, Թոնրավան և Ճվաշռոտ։ Վերջինս տարածվում էր Արաքսի աջ կողմում, և հյուսիսում նրա սահմանը կազմում էր Արաքս գետը։

Վասպուրականի 18 գավառների այդպիսի հաջորդական թվարկումը, որը կատարված է «Աշխարհացույց»-ում, հնարավորություն է տալիս նրանց աշխարհագրական դիրքն ավելի դյուրությամբ որոշելու։

Վասպուրականի մյուս 17 գավառները «Աշխարհացույց»-ում հիշատակված են ոչ թե հաջորդական կարգով, այլ խառնիճաղանջ։

Կանգ առնենք Վասպուրականի առավել նշանավոր մի քանի գավառների վրա։

### Ռշտունիք կամ Ըռշտունիք

Ռշտունիք անունը Ուրարտու անվան հայկական ձևն է։

Այս լեռնային գեղատեսիլ գավառը տարածվում էր Վանա լճի հարավային առափնյա շրջաններում նրա և Հայկական Տավրոսի

*չրաժան բարձրությունների միջև։ Ռշտունիքի մեջ էր մտնում Աղթամար կղզին, որը գտնվում է լճի հարավային ափի մոտ։ Երկրի մի զգալի մասը պատած է սաղարթավոր անտառներով։ Ունի բերրի հող և նպաստավոր կլիմայական պայմաններ գյուղատնտեսության, հատկապես այգեգործության զարգացման համար։*

*Ռշտունիքը Տոսպի հետ միասին կազմում էր Ռշտունյաց նախարարությունը, որը կարևոր դեր խաղաց հատկապես VII դարում։ IX դարում այս գավառը Վասպուրականի բազմաթիվ այլ գավառների հետ միասին ենթարկվեց Արծրունյաց իշխանությանը։*

*Ռշտունիքում հիշատակվում են բազմաթիվ պատմական վայրեր, որոնցից մի քանիսը կարևոր դեր են խաղացել հայ ժողովրդի պատմության մեջ.*

**Ոստան**.— *Ավան։ Երբեմն կոչվում է քաղաք։ Գտնվում էր այժմյան Ոստանի տեղում՝ Արտոս լեռան հյուսիս-արևմտյան ստորոտին։ Արտոս լեռն ու Վանա լիճը լրացնում էին ֆեոդալական այս փոքրիկ քաղաքի հիասքանչ տեսարանը։ Ոստանի կլիմայական պայմանները մեղմ և բարենպաստ են։*

*Իբրև Ռշտունյաց իշխանանիստ ավան, ունեցել է իր բերդը, որը պատած է եղել ամուր պարիսպներով։ Ոստանում շինարարական մեծ աշխատանքներ են կատարվել հատկապես Թեոդորոս Ռշտունի իշխանի (VII դար) և Գագիկ Ա Արծրունի թագավորի (908—943) օրոք։ Այդ ժամանակներում վերանորոգվել են Ոստանի եկեղեցիները, բերդերը, պարիսպները և այլն։ Գագիկի օրոք Ոստանում կատարված կառուցումների մասին մեծ հիացմունքով է խոսում Արծրունիների տան պատմիչ Թովմա Արծրունին*[1]։

*Ոստանը չնայած առաջնակարգ քաղաք չէր, բայց իր արտակարգ նպաստավոր դիրքի շնորհիվ դարձել էր առևտրական կենտրոն։ Նա բարեկարգ ճանապարհով արևելքում կապվում էր Արտամետի և Վանի, իսկ արևմուտքում՝ Բաղեշի հետ։ Ոստանը լճափին չէր, բայց այդ չէր խանգարում, որ նա լճով կապվեր մոտակա բնակավայրերի հետ։ Այն ամբողջապես թաղված էր մրգատու այգիների մեջ։*

**Նարեկա վանք**.— *Այս վանքի մոտ եղել է և համանուն գյուղ։ Գտնվում էր Ոստանից արևմուտք՝ լճից 5—6* կմ *վրա։*

*Նարեկա վանքը, ըստ երևույթին, գոյություն է ունեցել հնուց ի վեր, սակայն արմատական վերակառուցման է ենթարկվել X դարում և հենց այդ դարում էլ դարձել է Հայաստանի մշակութային*

---

[1] *Տե՛ս* **Թովմա Արծրունի**, *Պատմութիւն տանն Արծրունեաց, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 292։*

*օջախներից մեկը։ Այս վանքը առանձնապես նշանավոր դարձավ նրանով, որ այստեղ ապրել ու ստեղծագործել է միջնադարյան հայ մշակույթի խոշորագույն ներկայացուցիչներից մեկը՝ Գրիգոր Նարեկացին (951—1003)։ Նարեկա վանքն ունեցել է իր բարձր տիպի դպրոցը, երաժշտական դասարանը և այլն։*

*Պատմական տեղեկությունների համաձայն, Նարեկա վանքում որոշ ժամանակ ուսանել է նաև VII դարի հռչակավոր գիտնական Անանիա Շիրակացին։*

**Աղթամար.**—*Աղթամար փոքրիկ կղզին, ինչպես նշվեց, գտնըվում է Վանա լճի հարավային ափի մոտ։ Բզնը կողմերից նրա լանջերը ժայռոտ են, այդ պատճառով էլ համարվել է անմատույց և ծառայել է որպես ամրոց։ Դեռևս IV դարին վերաբերող վկայություններից երևում է, որ Աղթամարում պաշտպանական նպատակներով կատարվել են կառուցումներ։ Աղթամարի և լճափի միջև եղել է նավարկություն։ Ռշտունյաց իշխանները քաղաքական աննպաստ պահերին, թողնելով իրենց իշխանանիստ Ոստանը, ամրացել են Աղթամարի ամրոցում։ Աղթամարի ստրատեգիական այդ հարմար դիրքն էր նկատի ունեցել VII դարի հայրենասեր իշխան Թեոդորոս Ռշտունին, այն դարձնելով իր զորակայանը։*

*Չնայած այս բոլորին, Աղթամարը մինչև X դարը մնում էր որպես սովորական մի ամրոց և սովորական բնակավայր։*

*X դարում, Գագիկ Ա Արծրունու օրոք, Վանում, Ոստանում և այլ մասերում կատարվող շինարարության հետ միաժամանակ, ավելի մեծ թափով և լայն ծավալով կառուցողական աշխատանքներ են կատարվում նաև Աղթամարում։ Կղզու վրա Գագիկը փաստորեն մի ամբողջ քաղաք է կառուցել տալիս։ Աղթամար քաղաքի կառուցումն ուներ այն նպատակը, ինչ որ կղզու վրա շինված բերդը։ Արտաքին հարձակումների ժամանակ նա պետք է ծառայեր իբրև ապաստարան շրջակա գավառների բնակիչների համար։ Գագիկն ամբողջ կղզին շրջապատել է տալիս բարձր ու հաստ պարիսպներով, որոնց հիմքը դրվում է ծովի անդունդների մեջ լցված քարակարկառների վրա։ Կղզում բարձրացող մեծ ժայռը պատել է տալիս այգիներով և ծաղկանոցներով։ Կառուցվում են բազմաթիվ շքեղ շենքեր, բարեկարգ նավահանգիստ, ամբարատակ և այլն։ Սակայն Աղթամարի շինությունների մեջ ամենից վեհաշուքը՝ Գագիկի կառուցած տաճարն էր։ Աղթամարի հրաշակերտ եկեղեցին, որի ճարտարապետը եղել է Մանվելը, միջնադարյան հայկական ճարտարապետության գլուխգործոցներից մեկն է։ Արծրունյաց ֆեոդալական*

տան պատմիչ Թովմա Արծրունին մեծ հիացմունքով է խոսում Աղթամարի տաճարի մասին[1]։

Աղթամարի այս վանքը XII դարի սկզբում դարձավ կաթողիկոսանիստ։

Աղթամարի քաղաքացիական և պաշտպանական բնույթի կառուցվածքներից գրեթե ոչինչ չի պահպանվել, իսկ տաճարը խարխլված վիճակում մինչև այժմ էլ կանգուն է։

Աղթամարի մյուս կարևոր կառույցը Արծրունիների արքայական հոյակապ պալատն էր, որից այժմ ոչինչ չի պահպանվել։

## Տոսպ

Տոսպ անունն առաջացել է ուրարտական Տուշպա մայրաքաղաքի անունից։ Երբեմն այս գավառը կոչվել է նաև Վանտոսպ՝ Վան քաղաքի այստեղ գտնվելու և գլխավոր քաղաք հանդիսանալու պատճառով։

Տոսպը տարածվում էր Վանա լճի հարավ-արևելյան առափնյա շրջաններում։ Նա պարզապես իր մեջ ընդգրկում էր Վան քաղաքի շրջակայքը, որը հնագույն շրջանում հանդիսանում էր ուրարտական Բիաինա երկրի կենտրոնական մասը։ Ունի տաք և չոր կլիմա։ Արհեստական ոռոգման դեպքում այստեղ փարթամորեն աճում են արժեքավոր բազմաթիվ կուլտուրաներ։

Տոսպի պատմական վայրերից նշանավոր են Վանը, Արտամետը և Վարագա վանքը։

**Վան.**—Հայաստանի հնագույն քաղաքներից մեկն է, եթե չասենք՝ ամենահինը։

Վան քաղաքը գոյություն է ունեցել դեռևս IX դարում (մ. թ. ա.)։ Նա մ. թ. ա. IX—VI դարերում Ուրարտական պետության մայրաքաղաքն էր։ Ուրարտացիներն այն կոչում էին Տուշպա, իսկ նրանց հաջորդող հայերը՝ Վան, որը, նորագույն ուսումնասիրությունների համաձայն, ուրարտական Բիաինա անվան հայկական ձևն է։ Այժմ էլ գոյություն ունի, գտնվում է Վանա լճի արևելյան ափին։

Տուշպան (Վանը), լինելով Ուրարտական լայնածավալ պետության մայրաքաղաքը, միաժամանակ հանդիսանում էր նրա տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքի կենտրոնը։ Իբրև այդպիսին, Տուշպայի վրա հատուկ ուշադրություն են դարձրել ուրարտական թագավորները։ Նրանք առաջին հերթին հոգ են տարել

[1] Տե՛ս Թովմա Արծրունի, Պատմություն տանն Արծրունեաց, էջ 296։

քաղաքի պաշտպանունակությունը ապահովելու համար։ Այդ նպատակով կառուցել են Տուշպայի քարակտուր բերդը, որը տեղադրված էր Վանում ժայռաձև բարձրացող լեռան վրա և Հին Արևելքի երկրներում հռչակված էր իր անմատչելիությամբ։ Բերդի չորս կողմը պատած էր ուրարտական շինարարական արվեստին հատուկ, հսկայական մեծություն ունեցող քարերից շարված հաստապատ պարիսպներով։

Վանի ուրարտական բերդը, որը հետագայում էլ պահպանեց իր գոյությունը, Թովմա Արծրունու մոտ կոչված է Ամրական Քարանձավ, իսկ երբեմն էլ ուղղակի՝ Անձավ։

Քաղաքի շուրջը փորված էր խոր փոս, որը արտաքին հարձակումների ժամանակ լցրել են Մենուայի ջրանցքի ջրով։

Ուրարտական թագավորներն իրենց պետության մայրաքաղաք Տուշպայում կառուցել են ավել արքունական հոյակապ ապարանքներ, տաճարներ, ժայռափոր ընդարձակ սրահներ, գանձարաններ և այլն։ Տուշպայի համար առանձնահատուկ նշանակություն ուներ Մենուայի ժամանակ կառուցված 80 կմ երկարություն ունեցող ջրանցքը։

Հայկական ավանդությունը, որն առաջին անգամ գրի է առել Մովսես Խորենացին, ուրարտական ժամանակաշրջանի այդ կառուցվածքները վերագրում է ասորեստանյան առասպելական թագուհի Շամիրամին։ Ըստ ավանդության, Վան քաղաքի հիմնադիրը հենց ինքը Շամիրամն է։ Միջնադարյան մեր պատմագիրներից ոմանք, հետևելով նշված ավանդությանը, Վանը երբեմն կոչում են նաև «Քաղաք Շամիրամայ», իսկ երբեմն էլ՝ «Շամիրամակերտ»։

Տուշպան արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոն էր։ Այստեղ ուրարտական ժամանակաշրջանում առանձնապես մեծ զարգացում էին ստացել մետաղամշակման հետ կապված արհեստները (զինագործություն, դարբնություն, պայտարություն, ոսկերչություն և այլն), բրուտագործությունը և շինարարական արհեստները։

Ուրարտական պետության անկման հետ միասին Տուշպան կորցրեց իր նախկին նշանակությունը, սակայն ոչ միայն չվերացավ պատմական ասպարեզից, այլև հետագայում ապրեց զարգացման նոր ժամանակաշրջաններ։

III—I դարերում (մ.թ.ա.) Վանը, Հայաստանի հելլենիստական քաղաքների՝ Երվանդաշատի, Արտաշատի, Տիգրանակերտի և մյուսների հետ բավական առաջադիմեց։ Այդ շրջանում, հատկապես I դարում (մ. թ. ա.), Տիգրան Բ-ի և Արտավազդ Բ-ի օրոք, հրա-

կայական չափով մեծանում է նրա բնակչության՝ առանձնապես արհեստավորների և առևտրականների թիվը։ Վանն առևտրական ճանապարհներով կապվում է Հայաստանի երկու մեծահռչակ մայրաքաղաքների՝ Արտաշատի և Տիգրանակերտի հետ, Արևելքում առևտրական գործարքներ է կատարում Առաջավոր Ասիայի առևտրական քաղաքների հետ։

Զարգացման նոր աստիճանի են հասնում Վանի հին՝ ուրարտական ժամանակաշրջանի արհեստները՝ զինագործությունը, ոսկերչությունը, արծաթագործությունը, դարբնությունը, բրուտագործությունը և այլն։ Զարգանում են արհեստների նոր տեսակներ։

Վաղ ֆեոդալիզմի ժամանակաշրջանում (IV—IX դդ.), չնայած Վանը մնում էր իբրև Հայաստանի խոշորագույն քաղաքներից մեկը, սակայն իր առևտրով ու արհեստագործությամբ բավական հետագիմել էր, դարձել տիպիկ ֆեոդալական քաղաք։ IV դարի 60-ական թվականներին Վանն ավերման ենթարկվեց Հայաստան արշաված պարսկական զորքերի կողմից, և երկար ժամանակ պահանջվեց պարսկական զորքերի կատարած ավերումների հետևանքները վերացնելու համար։

Վանն իր զարգացման բուռն վերելքն է ապրում X—XIII դդ., մի ժամանակաշրջան, երբ Հայաստանի քաղաքներն աստիճանաբար սկսեցին բաժանվել գյուղից և դառնալ առևտրի ու արհեստագործության խոշոր կենտրոններ։ Այս շրջանում արհեստագործության զարգացմանը զուգընթաց արտակարգ կերպով ընդլայնվում են նրա առևտրական կապերը։ Վանից արտահանվող ապրանքների մեջ հատուկ տեղ է գրավում տառեխ ձուկը։

Քաղաքի արևելյան մասում տարածված էր Այգեստան կոչվող թաղը, իսկ լճափին գտնվող Ավանց գյուղը նրա համար ծառայում էր իբրև նավահանգիստ, որով Վանը կապվում էր լճի առափնյա քաղաքների հետ։

IX դարի 2-րդ կեսին Վանն զգալի չափով բարեկարգվում է Դերենիկ Արծրունի իշխանի կողմից։ Իսկ X դարի առաջին կեսին այն հիմնական վերակառուցման է ենթարկում Գագիկ Արծրունին։ Վանը Վասպուրականի թագավորության ամենամեծ քաղաքն էր։

Սելջուկյան արշավանքների ընթացքում Վանն ավերվեց, ենթարկվեց կողոպուտի և ի վերջո իր նշանակությունը կորցրեց մոնղոլական տիրապետության ու հետագա շրջանում։

Ուրարտական պետության պատմությունն ուսումնասիրելու նպատակով, Վանի բերդում, որն այժմ թուրքերը կոչում են Թոփրախ-կալա, կատարված են հնագիտական հետազոտություններ։

Պեղումների ընթացքում, ուրարտական արձանագրություններից բացի, հայտնաբերված են նյութական կուլտուրայի բազմատեսակ և բազմաթիվ արժեքավոր մնացորդներ, որոնք այդ դարաշրջանին վերաբերող՝ Հայաստանի մյուս մասերում հայտնաբերված նյութական կուլտուրայի մնացորդների և վիմագիր արձանագրությունների հետ միասին բավականաչափ նյութ են տալիս Ուրարտական պետության քաղաքական, տնտեսական և մշակույթի պատմությանը։ Սակայն պետք է նշել, որ Վանի շրջանում պեղումներն այնպիսի խորությամբ ու ծավալով չեն կատարվել, ինչպես Երևանի մոտ գտնվող Կարմիր բլուրի և Արին բերդի շրջանում։

**Արտամետ.**—Ավան, երբեմն ուղղակի կոչվել է Ավան գյուղ։ Հայաստանի կանգուն մնացած հնագույն բնակավայրերից մեկն է։ Գտնվում է Վան քաղաքից հարավ-արևմուտք, լճափին, այժմ նրա տեղում է համանուն աննշան գյուղը։

Արտամետի բնությունն ունի անզուգական գեղեցկություն։ Նրա հյուսիսային կողմում ծփում են Վանա լճի ջրերը, իսկ հարավում բարձրանում են Հայկական Տավրոսի մի քանի լեռնագագաթներ։ Ամբողջ ավանը թաղված էր պտղատու այգիների մեջ։

Աշնան ամիսներին Արտամետի օդը բուրում էր այգիների ընտիր խնձորների անուշ հոտով։

Արտամետը հեթանոսական շրջանում եղել է Անահիտ աստվածուհու անվան հետ կապված մեհենատեղի։

**Վարագա վանք.**—Նախքան վանք հիմնվելը, այստեղ գտնվում էր հեթանոսական մեհյան։ Վարագա վանքի տեղում սկզբնական շրջանում կառուցվում է մի անշուք եկեղեցի, իսկ հետագայում՝ IX դարի վերջերին կամ X դարի սկզբներին հիմնվում է վանքը։ Հենց այս ժամանակ էլ Վարագա վանքը դառնում է մշակույթի կենտրոններից մեկը։ Նրան կից կար դպրոց և հարուստ մատենադարան (ձեռագրատուն)։ Վարագում շինարարական մեծ աշխատանքներ են կատարվել Վասպուրականի վերջին թագավորի՝ Սենեքերիմի օրոք, սակայն հենց նույն թագավորն էլ, երբ 1021 թ. տեղափոխվում է Սեբաստիա՝ իր հետ է տանում նաև Վարագի հոգևորականներին, նրա ամբողջ գանձերն ու հարուստ մատենադարանը։

## Առբերանի գավառ

Տարածվում էր Վանա լճի հյուսիսային կողմում՝ այժմյան Բենդիմահի կամ Բանդիմահի (Բերկրի) գետի հովտում։ Հետագայում այս գավառը կոչվեց իր գլխավոր քաղաքի՝ Բերկրիի անունով։ Առ-

բերանից հյուսիս՝ Բենդիմահի գետի ակունքների շրջանում տարածվում էր Գառնի գավառը, որը Կոգովիտից բաժանված էր Թոնդուրեկի լեռնասխտեմով։

Առբերանիին արևմուտքում սահմանակից էր Տուրուբերանի Աղիովիտ գավառը, այդ էր պատճառը, որ որոշ հեղինակների մոտ վերջինս ևս դասված է Վասպուրականի կազմում։

Գավառի պատմա-աշխարհագրական նշանավոր վայրը Բերկրի քաղաքն էր, որն այժմ էլ գոյություն ունի իբրև մի անշուք բնակավայր և գտնվում է Բենդիմահի գետի ստորին հոսանքի շրջանում։ Բերկրին եղել է բերդաքաղաք։ Նրա մասին բազմաթիվ հիշատակություններ ունեն մեր պատմագիրները։ Բերկրի քաղաքի մասին եղած հիշատակություններն ավելի հաճախ են դառնում հատկապես X—XI դարերում, մի ժամանակաշրջան, երբ Բերկրիում տեղի են ունենում քաղաքական մի շարք իրադարձություններ։

Բերկրին առաջնակարգ քաղաք չի եղել, նա ֆեոդալական տիպի բերդաքաղաք էր և սելջուկյան նվաճումներից հետո մնաց Շահարմենների տիրապետության տակ։

Վասպուրականի մի շարք պատմական վայրերի գավառները մնում են անհայտ։ Այդպիսի վայրերի թվին է պատկանում նաև Ամյուկ բերդը։ Վերջինիս մասին եղած վկայություններից երևում է, որ նա գտնվում էր Վանա լճի հյուսիս-արևելյան առափնյա շրջանում։

## Անձևացիք կամ Անձավացիք

Այս գավառը կազմում էր մի նախարարություն, որտեղ իշխում էր համանուն նախարարական տունը։

Գտնվում էր Արևելյան Տիգրիսի (Բոհտան-սուի) ծայր վերնագավառում։ Անձևացիքից հարավ գտնվում էին Բուժնունիքն ու Առնոյոտնը, իսկ հյուսիս՝ Խոշաբ գետի վերին ու միջին հոսանքների ավազաններում՝ Տրպատունիքն ու Երվանդունիքը։ Խոշաբի հովիտը կոչվում էր Հայոց ձոր, որտեղ, ըստ ավանդության, Հայկ նահապետը սպանեց բռնակալ Բելին (Գերեզմանք բլրի վրա)։

Անձևացիքը լեռնային գավառ է։ Բանասերներից ոմանք նույնիսկ նրա անվան՝ Անձավացիք-ի ծագումը կապում են ռելիեֆի լեռնային բնույթի հետ։ Տեղացիները սովորաբար կոչում էին Քարգահ։

Անձևացիքում հիշատակվում են մի շարք վայրեր։ Դրանցից նշանավոր են Կ ա ն դ ո ւ ր կամ Կ ա ն դ ո ւ ա ռ ամուր բերդը՝ այժմյան Կանգավա քաղաքի տեղում, և Հ ո գ յ ա ց վ ա ն ք ը Արևելյան Տիգրիսի բարձրադիր ափին։

## Մարդաստան և Արտազ

Մարդաստան գավառը տարածվում էր Արճակ լճից մինչև Արտազ գավառն ընկած շրջաններում։

Արտազ գավառն իր տերիտորիայով համապատասխանում է այժմյան Մակուի շրջանին, որը տարածվում է Մասիսից հարավարևելք։ Նա գրավում էր այժմյան Զանգիմար (Դեղին) գետի միջին և ստորին հոսանքի շրջանը։ Պատկանում էր Ամատունիներին, իսկ հետագայում անցավ Արծրունյաց իշխանների ձեռքը։

Խորենացու հիշատակության համաձայն, Արտազն ավելի հին ժամանակներում կոչվում էր Շավարշան կամ Շավարշական[1]։

Արտազում գտնվող մի քանի վայրեր նշանավոր դարձան V դարի ժողովրդա-ազատագրական պատերազմների ժամանակ՝ ուղղված Սասանյան Պարսկաստանի տիրապետության դեմ։ Այդ վայրերն են՝ Ա վ ա ր ա յ ր ի դաշտը և Ն ե ր ս ե հ ա պ ա տ ու Ե ղ ի ն գ գյուղերը։

Ավարայրը մի ոչ մեծ դաշտ էր (Ղազար Փարպեցին հիշատակում է նաև համանուն գյուղ), որը տարածվում էր Տղմուտ գետի վերին հոսանքի հովտում։ Ավարայրը կազմում էր այժմյան Մակուի դաշտի այն մասը (Մակու քաղաքից արևմուտք), որը հայտնի է Ավաջիղ անունով։ Այստեղ 451 թ. մայիսի 26-ին տեղի ունեցավ ճակատամարտ հայկական ազատագրական բանակի, որը գլխավորում էր քաջ սպարապետ Վարդան Մամիկոնյանը, և պարսկական ստվարաթիվ զորքի միջև, որը Մուշկան Նյուսալավուրտ զորավարի գլխավորությամբ արշավել էր Հայաստան՝ հայ ժողովրդի ազատագրական պայքարն արյան մեջ խեղդելու համար։

451 թվականի այս ճակատամարտը պատմության մեջ հայտնի դարձավ Ավարայրի ճակատամարտ անունով։

**Ներսեհապատ** գյուղ։ Պատմական աղբյուրներից հայտնի է դառնում, որ Ներսեհապատը գտնվել է Ավարայր գյուղի մոտերքում։ Այստեղ մի մեծ ճակատամարտ է տեղի ունեցել 481—484 թթ. ապստամբության ժամանակ։ Ճակատամարտը տեղի է ունեցել

---

[1] Տե՛ս **Մ. Խորենացի**, *Պատմութիւն Հայոց*, էջ 153։

482 թ. ապրիլ ամսին և տևել է մի ամբողջ օր։ Վահան Մամիկոնյանի գլխավորած հայկական ազատագրական բանակը այս կռվում կատարյալ հաղթանակ է տարել պարսկական բանակի դեմ, որը թվական տեսակետից մեծ չափով գերազանցում էր հայկական զորքերին։ Պարտության մատնված պարսիկները դիմել են փախուստի։

Եղինդ գյուղ։ Գոյություն ուներ հնուց ի վեր։ Այս գյուղում էր գտնվում Վահան Մամիկոնյանի ճամբարն այն ժամանակ, երբ նա Նիխորի հետ վարում էր Նվարսակի հաշտության նախնական բանակցությունները։ Այժմ էլ գոյություն ունի այս գյուղը, գտնվում է Մակուից մի քանի կիլոմետր հեռավորության վրա և կոչվում է Երինդ։

Մակու քաղաք։ Հնում եղել է բերդաքաղաք։ Հավանաբար հանդիսանում էր Ամատունիների ոստանը։ Պատմական անուղղակի փաստերից կարելի է ենթադրել, որ Մակուն ավելի հին ժամանակներում կոչվել է Շավարշան կամ Շավարշական։ Այս քաղաքն այժմ էլ գոյություն ունի և մտնում է Իրանի մեջ։

## Աղբակ

Կոչվել է նաև Մեծ Աղբակ, ի տարբերություն Փոքր Աղբակի, որը մտնում էր Կորճեքի մեջ։

Աղբակը կազմում էր Արծրունիների հայրենական գավառը։ Ուներ երկրագործության համար լավագույն հողեր։ Նա իր տերիտորիայով համապատասխանում է այժմյան Բաշկալայի շրջանին։

Աղբակով էր անցնում Թավրիզ—Վան ճանապարհը։

Աղբակը պաշտպանական տեսակետից ուներ հարմար դիրք, որովհետև շրջապատված էր բարձր լեռնաշղթաներով։

Աղբակի պատմական վայրերից նշանավոր է Հ ա դ ա մ ա կ ե ր տ կամ Ա դ ա մ ա կ ե ր տ ոստանը։ Այժմ էլ այդ քաղաքը գոյություն ունի և կոչվում է Բաշկալա։ Աղբակի մյուս հայտնի վայրը Բարդուղիմեոսի վանքն է, որի ավերակները գտնվում են այժմյան Բաշկալա քաղաքից ոչ հեռու։

Աղբակից հարավ գտնվում էր Ա կ ե գավառը՝ նույնանուն քաղաքով։

## Անձախիձոր, Թոնրավան և Ճուաշռոտ

*Անձախիձոր կամ Անձահիձոր գավառը տարածվում էր Հերից արևմուտք՝ այժմյան Կոտուր գետի միջին հոսանքի շրջանում։ Այս գավառում էր գտնվում Կ ո տ ո ր ամուր բերդը (այժմ՝ Կոտուր, համանուն գետի վրա)։*

*Անձախիձորից արևմուտք, այժմյան Կոտուր և Մեհմեդիկ գետերի վերին հոսանքների վրա ընկած շրջաններում տարածված էր Թ ո ն ր ա վ ա ն կամ Թ ո ռ ն ա վ ա ն գավառը, որը հայտնի էր իր Սևան և Նկան բերդերով։ Սևանը, որն այժմ կոչվում է Սեյվան-կալա, գտնվում է Արճակ լճի մեջ թափվող Մեհմեդիկ գետի վրա։ Պատմական Նկանի տեղում ևս այժմ կա մի գյուղ, որը կոչվում է Նագան։*

*Ճուաշռոտ կամ Ճվաշռոտ գավառը տարածվում էր Հերից արևելք և հյուսիս-արևելք ընկած շրջաններում։ Այստեղ հիշատակվում են պատմական մի քանի վայրեր, որոնց աշխարհագրական դիրքը չի ճշտված։*

## Գողթն

*Տարածվում էր Արաքսի ձախ կողմում՝ գրավելով Ջուղայի, Ագուլիսի և Օրդուբադի շրջանները։ Կազմում էր մի առանձին նախարարական տուն, բայց աշխարհագրական և եկեղեցական առումով երբեմն մտնում էր Սյունիքի, երբեմն էլ Վասպուրականի մեջ։ IX—X դարերում այստեղ գոյություն ուներ արաբական էմիրություն, որը որոշ ժամանակով իր սահմանների մեջ առավ, Գողթնից բացի, նաև այլ շրջաններ։*

*Գողթնը հայտնի էր իր խաղողի ու մրգատու այգիներով և գինեգործությամբ. Նշանավոր էր նաև իր գուսաններով։ Նրանք մեծ դժվարությամբ ընդունեցին քրիստոնեական կրոնը։ Այդ է պատճառը, որ քրիստոնեական եկեղեցու սպասարկու հայրերը մեծ ատելությամբ են արտահայտվել Գողթնի բնակիչների վարք ու բարքի մասին, նրանց անվանելով անդարդ ու անհոգ գողթանցիներ։*

*Գողթնի պատմական վայրերից նշանավոր են Ջ ո ւ ղ ա ավանը և Օ ր դ վ ա թ (այժմ՝ Օրդուբադ քաղաքը) ու Մ ս ր վ ա ն ի ս գյուղերը։ Ենթադրվում է, որ Մսրվանիս գյուղն իր անունը ստացել է Մեսրոպ Մաշտոցի անունից, որը Գողթնում եղած ժամանակ ապրել ու գործել է այդ գյուղում։*

## Նախճավան

*X դարից սկսած կոչվել է Նախիջևան։ Տարածվում էր Համանուն քաղաքի շրջակայքում։ Մինչև Արշակունիների թագավորության անկումը պատկանում էր Մարդպետունի նախարարական տանը, իսկ նրանից հետո Նախճավանում փոխեփոխ իշխում էին մերթ Սյունյաց, մերթ Արծրունյաց նախարարները։*

*Գավառը հայտնի էր իր Նախճավան քաղաքով (այժմյան Նախիջևանը)։ Նախճավանը հնագույն քաղաքներից մեկն է։ Նա հայտնի էր իր արհեստներով և առևտրով։ Գտնվելով Արևելքն Արևմուտքի հետ կապող տարանցիկ գլխավոր ճանապարհի վրա, Նախճավանն ինքը ևս ակտիվ կերպով մասնակցում էր այդ առևտրին, բացի այդ, նա հավաքակայան էր Սյունիքից արտահանվող ապրանքների համար։*

*Նախճավանի մասին հարուստ նյութեր կան ոչ միայն մեր, այլև օտար պատմագիրների ու աշխարհագիրների երկերում։ Արաբական աշխարհագիրների ու պատմագիրների մոտ Նախճավանը կոչված է Նաշավա։*

*Նախիջևանի մասին ստեղծվել են մի շարք ավանդություններ և առասպելներ։ Այս քաղաքն ունի քաղաքական և տնտեսական հարուստ պատմություն։ Մի քանի անգամ նա հիմնահատակ ավերման է ենթարկվել օտար զավթիչների կողմից, բայց նորից վերականգնվել է, բռնելով զարգացման ուղի։*

## ՍՅՈՒՆԻՔ

### 1. ԱՆՈՒՆԸ, ԴԻՐՔԸ, ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

*Սյունիք աշխարհը հնում հայտնի էր երկու անունով՝ Սյունիք և Սիսական։ Նրա այս երկու անունների միջև եղած կապը մինչև օրս դեռևս վերջնականապես չի պարզաբանված։ Անառարկելի է միայն այն, որ «Սիսականը» ծագել է ավելի ուշ։ Սյունիք անունը ծագել է հնագույն ժամանակներում։ Նա ունի էթնիկական ծագում։*

*Պարսկական և արաբական սկզբնաղբյուրների մեջ «Սյունիք» երբեք չի հիշատակված։ Առաջիններն այդ երկիրն ամենուրեք կոչում են Սիսական, իսկ երկրորդները՝ Սիսաջան։*

*Սյունիքը տարածվում էր հին Հայաստանի հյուսիս-արևելյան*

մասում։ Նա սահմանագծված էր Այրարատ, Վասպուրական, Արցախ, Ուտիք և Գուգարք աշխարհներով։

IX դարի սկզբին Սյունիքի շատ թե քիչ հաստատուն սահմաններն անցնում էին հետևյալ բնագծերով. հյուսիս-արևմտյան մասում նա Այրարատյան աշխարհից բաժանված էր Գեղամա լեռներով, հարավ-արևմտյան սահմանն անցնում էր Վայոց ձորի (այժմ՝ Հայոց ձոր) լեռնաշղթայից դեպի հարավ տարածվող լեռնաճյուղերի հարավային ծայրերով՝ հյուսիս-արևմուտքից հարավ-արևելք ուղղությամբ, գրեթե ուղիղ գծով, մինչև Երնջակ գետի (Ալինջա-չայ) միջին հոսանքը, ապա այնտեղից թեքվում էր դեպի հյուսիս-արևելք՝ անցնելով Երնջակ և Գիլան գետերի ջրբաժանով, մինչև մոտավորապես Սյունյաց (Զանգեզուրի) և Բարկուշատ լեռների հատման կետը, իսկ այստեղից էլ նրա սահմանն ուղղվում էր դեպի հարավ, անցնելով Սյունյաց լեռնաշղթայի ջրբաժան բարձրություններով, Գողթն ավանի մոտ հասնում էր Երասխ։ Գողթնից սկսած դեպի արևելք՝ մինչև Երասխի ու Աղավնո (Հագարի) գետերի գետախառնուրդը (այժմյան Խուդափիրինի կամուրջի մոտ) Սյունիքն Ատրպատականից բաժանված էր Երասխ գետով։ Արևելյան կողմում Սյունիքի սահմանն անցնում էր Աղավնո գետով՝ սկսած գետախառնուրդից մինչև ակունքների շրջանը։

Սյունիքի սահմանն Աղավնո գետի ակունքների մոտ թեքվում էր գրեթե դեպի արևմուտք և հասնում Սյունյաց լեռների հյուսիսային հատվածին։ Այնուհետև նա նույն լեռնաշղթայի ջրբաժան բարձրություններով ուղղվում էր դեպի հյուսիս և հասնում Սևանա լեռնաշղթային, իսկ այստեղից էլ վերջինիս կատարներով դիմում էր դեպի հյուսիս-արևմուտք, փակելով Գեղամա (Սևանա) լճի ավազանը հյուսիս-արևելյան կողմից։ Ծայր հյուսիս-արևմտյան մասում Սյունիքը շփվում էր Այրարատի Վարաժնունիք (Ծաղկաձոր) գավառին։

Նկարագրված սահմանների մեջ ընդգրկված երկիրը՝ Սյունիքը, խիստ լեռնային է։

Սյունիքը տարածվում էր Փոքր Կովկաս լեռնասիստեմի հարավ-արևելյան հատվածի շրջանում։ Փոքր Կովկասն իր այս մասում արձակում է բազմաթիվ լեռնաճյուղեր, որոնք հատվելով իրար հետ, երկիրը վեր են ածել բազմաթիվ փակ շրջանների։ Սյունիքի կլիմայական պայմանները բազմազան են. այնտեղ արտահայտված են մերձարևադարձային կլիմայական գոտուց սկսած (Մեղրի գետի հովիտ, Ողջի (Կապան) գետի միջին և ստորին հոսանքի շրջանները և այլն) մինչև բարձր լեռնային ցուրտ գոտիները (Որոտանի վերին

հոսանքի շրջանը, Գեղամա լճի ավազանի մեծ մասը, Սյունյաց լեռների բարձրադիր շրջանները և այլն)։ Ընդհանուր առմամբ, Սյունիքում լինում են խիստ ցրտեր և տեղում է առատ ձյուն։ Դրա հետևանքով միջին դարերում գործող ճանապարհների մեծ մասը ձմռանը փակվել և դարձել է անանցանելի։ Հայկական լեռնաշխարհի մյուս շատ շրջանների համեմատությամբ Սյունիքը ստանում է բավական քանակությամբ մթնոլորտային տեղումներ՝ մանավանդ նրա լեռնային շրջանը։ Սյունիքը ջրառատ երկիր է։ Այստեղ կան բազմաթիվ արագավազ գետեր և մի շարք լճեր, որոնց թվում՝ Գեղամա (Սևանա) լիճը։

Սյունիքի մի զգալի մասը ապառաժոտ տարածություն է, բայց այստեղ կան այնպիսի շրջաններ, որոնք հողա-կլիմայական տեսակետից շատ նպաստավոր են երկրագործության, այդ թվում և այգեգործության համար (Որոտանի միջին և ստորին հոսանքի ավազանը, Ողջի և Արփա գետերի հովիտները)։ Սյունիքի բնական պայմաններն է՛լ ավելի նպաստավոր են անասնապահության համար։ Այստեղ լայն տարածում ունեն խոտհարքները (հատկապես Գեղամա լճից հարավ-արևելք ընկած մասերում) և ալպյան մարգագետինները (Գեղամա լեռների, Վարդենիսի և Սյունյաց լեռների բարձրադիր շրջաններում)։ Սյունիքում կան բավականաչափ անտառապատ տարածություններ։ Անտառներում կան մրգատու վայրի ծառեր՝ ընկուզենի, տանձենի, խնձորենի, սալորենի և այլն։

Սյունիքը հին և միջնադարյան Հայաստանի՝ բնական հարստություններով առավել աչքի ընկնող մասերից մեկն էր։ Այստեղ հնագույն ժամանակներից ի վեր հայտնի են եղել մի շարք «բով»-եր, պղնձի և այլ գունավոր մետաղների ելքեր, որոնք ենթարկվել են շահագործման։ Մյուս հարստություններից, չհաշված շինանյութերը և վերջին ժամանակներում հետազոտված նոր հանքավայրերը, որոնցով այնքան հարուստ է Սյունիքը, այստեղ կան ընկուզենու փայտ, ձուկ, հանքային բազմաթիվ աղբյուրներ և այլն։

## 2. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

Սյունիքը սկզբից ևեթ մտել է Հայկական պետության մեջ։ IV դարից սկսած այն հիշատակվում է որպես առանձին հզոր նախարարություն։ Այստեղ իշխում էին Սյունյաց իշխանները։ Սյունյաց նախարարական տունը վաղ ժամանակներից սկսած բաժանված էր երկու ճյուղի, որոնցից մեկը տիրում էր Գեղամա լճի ավազանում և

*կոչվում էր «Հայկազուն», իսկ մյուսը գահերեց ճյուղն էր, որն իշխում էր Սյունիքի մեծ մասի վրա և միաժամանակ հանդիսանում էր ամբողջ Սյունիքի տերը։*

*Սյունյաց նախարարությունը, համեմատած Հայաստանի մյուս նախարարությունների հետ, ավելի կենտրոնախույս էր։ Նա ամեն մի առիթ օգտագործում էր կենտրոնական պետությունից անջատվելու համար։ Կարծում ենք, որ Սյունիքի այդ արտակարգ կենտրոնախույս ձգտումներն արդյունք էին այն բանի, որ՝*

*ա) Սյունիքը Այրարատի նկատմամբ, որը հանդիսանում էր հայ պետության կենտրոնը, ուներ իշխող դիրք։ Նա իրենից ներկայացնում էր բնական ամրոցներով հարուստ մի երկիր, որը փակում էր Արևելքից եկող զանազան ժողովուրդների մուտքը դեպի հին Հայաստանի միջնաշխարհը՝ Այրարատ։*

*բ) Սյունյաց նախարարությունը ռազմական տեսակետից հզոր էր. նրա հեծյալների թիվը հասնում էր 19 400-ի և, բացի այդ, գրավում էր հսկայական մի երկիր։ Ուրեմն նա պակաս հզոր չէր և տնտեսապես։ Ռազմական և տնտեսական այդ առավելությունները, անշուշտ, այնպիսի ազդակներ էին, որոնք տեղի իշխաններին հիմք էին տալիս կենտրոնական պետության նկատմամբ կենտրոնախույս տենդենցներ ունենալու։ Սյունյաց նախարարը Արշակունիների արքունիքում գրավում էր առաջին աթոռը։ Նա հայկական նախարարների մեջ մարզպանների տիրապետության շրջանում ամենից բարձրը գահն էր գրավում նաև Տիզբոնի արքունիքում։*

*գ) Սյունիքը, մեծ մասամբ ծայրամասային և խիստ լեռնային երկիր լինելով, Հայաստանի կենտրոնական շրջանների հետ անհամեմատ ավելի թույլ կապեր ուներ։ Այս հանգամանքը ևս ազդում էր նրա ֆեոդալական կենտրոնախույս տենդենցների ուժեղացմանը։*

*571—640 թթ. Սյունիքը վարչական տեսակետից դուրս է գալիս Հայաստանի կազմից և իր հարկերն սկսում է մուծել Ատրպատականի մարզպանությանը։ Սակայն այդ անջատումը արտահայտվում էր միայն հարկային դիվանի՝ Դվինից Փայտակարան տեղափոխումով. փաստորեն քաղաքականապես ու տնտեսապես նա Հայաստանի մարզպանության բաղկացուցիչ մասն էր։*

*Սյունյաց իշխանները, Բագրատունիների և Արծրունիների նման, արաբական տիրապետության շրջանում կարողացան ոչ միայն պահպանել իրենց գոյությունը, այլև ավելի ընդարձակեցին իրենց կալվածքներն ու ֆեոդալական-նախարարական իրավունքները՝ դառնալով արդեն իրենց երկրի կատարյալ իշխանները։*

X դարում Սյունիքում կատարվում են տերիտորիալ և վարչաքաղաքական մեծ փոփոխություններ։ Նախկինում Սյունիքի մեջ մտնող Գեղամա լճի ամբողջ ավազանն ամբողջապես անցնում է Բագրատունիների ձեռքը։ Ֆեոդալիզմի զարգացման այս շրջանում, կենտրոնական պետության նկատմամբ ունեցած կենտրոնախույս ձգտումներից բացի, իշխանությունների միջև ֆեոդալական երկպառակություններն ու կալվածքների համար մղվող պայքարը համարյա ընդունում են պարբերական բնույթ։ Հենց այս ժամանակ է, որ մեծ հակասություն է առաջանում Սյունյաց և Արծրունյաց իշխանների միջև՝ Նախիջևանի շուրջը։ Սրանցից յուրաքանչյուրն ուզում էր ինքը տեր դառնալ Նախիջևան քաղաքին ու նրա շրջակայքին։ Արծրունյաց իշխաններն իրենց այդ ձգտումը փորձում էին արդարացնել նրանով, որ, իբր, Նախիջևանն իրենց հայրենական քաղաքն է, իսկ Սյունյաց իշխանները Վասպուրականի ու Սյունիքի միջև արդարացի սահմանը համարում էին Երասխ գետը և պահանջում՝ Նախիջևանը միացնել Սյունիքին։ Քանի որ Սյունիքի առևտրի մեծ մասը այդ դարերում կատարվում էր Նախիջևանի վրայով, ուստի Սյունյաց իշխաններն ամեն կերպ ձգտում էին այն իրենց ձեռքում պահել։ Դրա կարիքը խիստ կերպով զգացվում էր, որովհետև այստեղ չկային խոշոր քաղաքներ և բարեկարգ ճանապարհներ։ Նախիջևանը դարձել էր կռվածաղիկ երկու հարևան իշխանությունների՝ Վասպուրականի ու Սյունիքի միջև։

Բագրատունի թագավորները, օգտվելով հարմար առիթից, իրենց կողմն էին գրավում հիշյալ նախարարություններից որևէ մեկին և արքայական հրովարտակով Նախիջևանը պարգևում էին այն նախարարությանը, որը կենտրոնական թագավորությանն ավելի հնազանդ էր և վերջինիս համար ծառայություններ էր մատուցում։

Յուսուֆն իր արշավանքների ժամանակ Նախիջևանը տալիս է Արծրունիներին։ Նույն Յուսուֆը 913 թ. գրավում և Գողթնում կազմակերպված արաբական էմիրությանն է տալիս Երնջակ բերդն ու նրա շուրջը տարածվող համանուն գավառը, որը մինչ այդ մտնում էր Սյունիքի կազմի մեջ։

Այսպիսով, X դարի հենց սկզբներին նախկին բուն Սյունիքի կազմից դուրս են մնում Գեղամա լճի ամբողջ ավազանը (Գեղարքունիք և Սոդք գավառները) ու Երնջակ գավառը, չհաշված Նախիջևանը, որը երբեք հաստատուն կերպով չի մտել Սյունիքի մեջ։ *

Վարչական այսպիսի կազմով Սյունիքը X դարում բաժանված էր չորս մասի՝ 1) Վայոց ձոր և Ճահուկ գավառները բաժին էին ընկել Սմբատ իշխանին, որը միաժամանակ հանդիսանում էր ամ-

բողջ Սյունիքի տերը, 2) Սյունիք (Ծղուկք) և Բաղք գավառներն ու նրանց շրջակայքի որոշ շրջանները հանդիսանում էին Սյունյաց տեր Սմբատի եղբայրների՝ Սահակի ու Բաբգենի բաժինը, 3) Հաբանդ գավառում իշխում էր Փիլիպպեն, 4) Սահակի ու Բաբգենի բաժնի մեջ մտնող Բաղք գավառի որոշ շրջաններում իշխում էին Ձագիկյանները։

970 թ. Սյունիքում կազմավորվում է ֆեոդալական մի թագավորություն։ Այդ թագավորությունը պատմության մեջ հայտնի է մի քանի անուններով՝ «Կապանի թագավորություն», «Սյունիքի թագավորություն», «Սյունյաց և Բաղաց թագավորություն»։

Սյունիքի թագավորության տերիտորիան սկզբնական շրջանում բավականաչափ լայն էր։ Նա իր մեջ էր ընդգրկում VII դարի «Աշխարհացույց»-ի մեջ նկարագրված Սյունյաց աշխարհի մեծագույն մասը։ Նրանից դուրս էին մնում միայն Գեղամա լճի ավազանը, որը, ինչպես նշվեց, մտնում էր կենտրոնական թագավորության մեջ ու գտնվում էր անմիջապես Հայկազուն իշխանների տիրապետության ներքո, և Երնջակ գավառը, որը Յուսուֆի կողմից միացված էր Գողթնի էմիրությանը։

Սակայն Սյունիքի թագավորությունը շուտով կորցնում է իր տերիտորիաների մի զգալի մասը։ Բագրատունի Գագիկ Ա թագավորը 1003 թ. Սյունիքի թագավորությունից գրավում և կենտրոնական թագավորությանն է միացնում Վայոց ձորն ու նրա շրջակայքի մի քանի գավառները[1]։

Այդ գրավումներից հետո Սյունիքի թագավորությունը մնաց նախկին Սյունյաց աշխարհի միայն մեկ երրորդը՝ նրա հարավարևելյան մասը։ Նա իր մեջ ընդգրկում էր Բաղք, Կապան, Արևիք, Կովսական և Հաբանդ գավառներն ամբողջությամբ ու Ծղուկք գավառի հարավային մասը։

Սյունիքի թագավորության մեջ կային 43 բերդ, 48 վանք և 1008 (1400) գյուղ[2]։

Լինելով հին և միջնադարյան Հայաստանի արևելյան սահմանային աշխարհներից մեկը և ստրատեգիական տեսակետից իշխող դիրք ունենալով Այրարատի նկատմամբ, բնականաբար, Սյունիքը պետք է ամրացվեր։ Եվ իրոք, մեր պատմիչները Սյունյաց երկրի անմատչելիությունը ցույց տալու համար հաճախակի այն կոչում

[1] Տե՛ս Ստեփանոս Տարօնեցւոյ Ասողական Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 256 և 283։

[2] Տե՛ս Օրբելյան, էջ 334 և «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ», Վենետիկ, 1862, էջ 140—141։

են «անառիկ», «անձուկ» և այլն։ Այդ ածականները պայմանավորված են ոչ միայն երկրի զգալի մասի անտառապատ լինելով և խիստ լեռնային ռելիեֆով, այլև այն բազմաթիվ բերդերի ու ամրոցների առկայությամբ, որոնցից շատերը (Երնջակ, Որոտն, Բաղաբերդ և այլն) հուշակված էին դեռևս V դարից սկսած։

Սյունիքի դիրքի ստրատեգիական առավելությունները չէին կարող վրիպել նաև Սասանյան Պարսկաստանի արքունիքի ուշադրությունից։ X դարի սկզբների արաբական հեղինակ Իբն-ալ-Ֆաքիհն իր «Գիրք երկրների մասին» աշխարհագրական բնույթի աշխատության մեջ վկայում է, որ Խոսրով Անուշիրվանը Սիսաջանում (Սյունիք) կառուցել է տվել մի շարք բերդեր և ամրոցներ, որոնց թվում և մեզ հայտնի Շահապունիքը (այժմյան Շահրուզ) և Վայոց ձորը (նրա մոտ՝ «Վայ»)[1]։

Սյունիքի թագավորության մայրաքաղաքը սկզբնական շրջանում Շաղաթ գյուղաքաղաքն էր (այժմյան Սիսիանի շրջանի Շաղաթ գյուղի մոտ), իսկ X դարի վերջերին մայրաքաղաք դարձավ Կապանը։ Նա իր հզորության ղագաթնակետին հասավ XI դարի երկրորդ կեսին, սակայն նույն դարի վերջից սկսած ստիպված էր համառ մարտեր մղել սելջուկյան նվաճողների դեմ։ Սելջուկներին հաջողվում է 1103 թ. ավերել թագավորության մայրաքաղաք Կապանը, ապա մեկը մյուսի ետևից գրավել նրա տերիտորիաները։ 1170 թ. սելջուկները գրավում են Սյունիքի թագավորության վերջին բերդը՝ Բաղաբերդը, որը 1103 թ. սկսած դարձել էր մայրաքաղաք։ Բաղաբերդի գրավմամբ Սյունիքի թագավորությունը պատմական ասպարեզից վերանում է։ Այս թագավորությունը, Մեծ Հայքի հայկական մյուս թագավորությունների համեմատությամբ, ամենից երկար պահպանեց իր գոյությունը։ Սյունիքի իշխանները, գլխավորապես Օրբելյաններն ու Պռոշյանները, շատ չանցած, Զաքարյանների օժանդակությամբ երկրում հաստատում են իրենց իշխանությունները։ Բայց շուտով վրա են հասնում մոնղոլական և թուրք-թաթարական ավերիչ արշավանքների ժամանակները, և Սյունիքն Անդրկովկասի մյուս մասերի հետ միասին ենթարկվում է ավերածությունների ու թալանի, իսկ նրա բնակչության մի զգալի մասը գերեվարվում և ոչնչացվում է։

Սյունիքի բնակչության բացարձակ մեծամասնությունը կազմում էին հայերը, սակայն հայերից բացի, այստեղ քիչ թվով բնակվում էին և այլ ժողովուրդներ, հատկապես հրեաներ, ինչպես նաև

[1] Տե՛ս *Караулов*, Сведения арабских писателей о Кавказе, Армении и Азербайджане. Сборник материалов..., вып. XXXI, Тифлис, 1902, էջ 15–17։

*վաչկատուն այլ ցեղեր, որոնք այստեղ էին գալիս ամառվա ամիսներին իրենց հոտերով և նախիրներով։ Հետագայում՝ XI—XIII դարերում սելջուկների և մոնղոլների արշավանքների ընթացքում Սյունիք են թափանցում և այլազգի ժողովուրդներ։*

*Սյունիքի բնակչության հիմնական զբաղմունքը կազմում էին գյուղատնտեսության երկու կարևոր ճյուղերը՝ երկրագործությունն ու անասնապահությունը։ Կարևոր տեղ էին գրավում նաև արհեստները, առևտուրը, մասամբ որսորդությունը (հատկապես ձկնորսությունը) և զինվորական ծառայությունը։ Սյունիքի բնական խիստ պայմաններն ու լեռնային բնույթը նրա բնակչության մեջ պատվաստել էին անվեհերություն, անվախություն և քաջություն։ Արաբական աղբյուրները սյունեցիներին (սիսաջանցիներին՝ ինչպես կոչում են նրանց) հաճախակի որակում են իբրև քաջ ռազմիկներ։*

*Երկրի ներսում զինվորական ծառայություն կատարելուց բացի, սյունեցիներից բաղկացած մի մեծ կայազոր գտնվում էր Դերբենդում, որին Սասանյան Պարսկաստանի կողմից հանձնարարված էր փակել Դերբենդի անցքը Արևելաեվրոպական հարթավայրի հարավային տափաստաններում հաստատված ռազմատենչ ցեղերի առջև[1]։*

### 3. ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

*Հին և միջնադարյան Հայաստանի տարանցիկ գլխավոր ճանապարհները, որոնք Արևելքը կապում էին Արևմուտքի հետ, անցնում էին գերազանցապես Արևմտյան Տիգրիսի, Արածանիի և Երասխի հովիտներով։ Հայաստանի ոչ բոլոր մասերն ունեին հարմար ճանապարհներ։ Այդպիսի մասերի թվին էր պատկանում նաև Սյունիքը։*

*Միջին դարերում Հայաստանում գործող համեմատաբար բարեկարգ ճանապարհներից միայն երկուսն էին, որ առնչվում էին Սյունիքի հետ։ Դրանցից մեկը Դվին—Նախիջևան—Օրդուբադ—Վարդանակերտ—Փայտակարան—Կասպից ծով նշանավոր ճանապարհն էր, որն անցնում էր Սյունիքի մոտով։ Սյունիքի իշխանանիստ Շաղատ գյուղաքաղաքը, այն ժամանակվա առումով, բավականին բարեկարգ մի ճանապարհով միացած էր այդ տարանցիկ*

---

[1] *Տե՛ս* *С. Т. Еремян,* Сюния и оборона сасанидами кавказских проходов, „Известия АН Арм. ССР". № 7 (12), 1941, *էջ* 33—40։

ճանապարհին՝ Նախիջևանում։ Շաղատ—Նախիջևան ճանապարհը Սյունիքի համար ուներ տնտեսական խոշոր նշանակություն, որով նա կապվում էր Դվին—Փայտակարան և Դվին—Նախիջևան—Թավրիզ նշանավոր տարանցիկ ճանապարհների հետ։

Մյուս գլխավոր ճանապարհը Դվին—Բերդկունք—Պարտավ տարանցիկ ճանապարհն էր։ Ի տարբերություն Դվին—Փայտակարան ճանապարհի, այս ուղին անցնում էր ոչ թե Սյունիքի մոտով, այլ նրա բուն տերիտորիայով։

Նշված ճանապարհը Դվինից դուրս էր գալիս երկու ճյուղով։ Նրանցից մեկը, որը ավելի հին էր, գնում էր Հրազդանի ափերով (այժմյան Երևան—Սևան գծով), ապա թեքվում դեպի հարավարևելք՝ մինչև Բերդկունք (որի ավերակները այժմ էլ պահպանվել են և գտնվում են Կամո քաղաքից 6,5 կմ հյուսիս՝ Սևանա լճի ափին), իսկ Բերդկունքից Սևանա լճի ափով շարունակվում էր դեպի արևելք և հասնում Կոթ ավանը (Գեղարքունիք)։

Երկրորդ ճյուղը, որը հանդիսանում էր գլխավոր ճանապարհը արաբական տիրապետության և նրան հաջորդող ժամանակաշրջանում, Դվինից դուրս գալով նախ հասնում էր Սիսաջան կայանը[1], ապա այստեղից ուղղվում էր դեպի հյուսիս՝ Արփա գետի հոսանքով, և Սելիմի լեռնանցքով հասնում Կոթ, Ձոդ և, վերջապես, այստեղից էլ՝ Հաթերքի (Տրտու գետի ձախ ափին) և Կաղանկատուի վրայով՝ Պարտավ (Բերդա) քաղաքը։

Դվին—Պարտավ այս ճանապարհը, ինչպես նշվեց, անցնում էր Սյունիքով։ Նա Սյունիքի հյուսիս-արևմտյան մեծ մասը մի կողմից կապում էր Հայաստանի մայրաքաղաք Դվինի, իսկ մյուս կողմից՝ Աղվանքի Պարտավ մայրաքաղաքի հետ. XI դարի 2-րդ կեսից սկսած այս ճանապարհը կորցնում է իր նախկին նշանակությունը։

Սյունիքի ներքին շրջանները ևս տեղական նշանակություն ունեցող ճանապարհներով կապված էին իրար հետ։

Պետք է նշել, որ Սյունիքի բոլոր ճանապարհները, գրեթե առանց բացառության, ձմռան ամիսներին փակվում էին։ Նրանք, չհաշված Դվին—Պարտավ և Դվին—Նախիջևան ճանապարհները, իրենց նշանակությամբ չէին կարող համեմատվել միջնադարյան Հայաստանի կենտրոնական և հարավային մասերով անցնող բարեկարգ ճանապարհների հետ։ Այնպես որ Լեոն ճիշտ է, երբ Սյունիքի ճանապարհները համարում է միայն «կածաններ»[2]։

[1] Կարծում ենք Սիսաջանը տեղադրել է այժմյան Նորաշենի մոտերքում։
[2] Լեո, Հայոց պատմություն, հ. Ա. Թիֆլիս, 1917, էջ 159։

*Ըստ «Աշխարհացույց»-ի, Սյունիքը բաղկացած էր 12 գավառից։ Սյունիքում նույնքան գավառներ է հիշատակում նաև XIII դարի պատմագիր Ստ. Օրբելյանը, բայց դրա հետ միաժամանակ նա հաղորդում է, որ Սյունիքի նախկին գավառներից մի քանիսը մասնատվել են, իսկ մի քանիսն էլ ստացել նոր անուններ։*

*Սյունիքի գավառները հետևյալներն էին.*

*Ա ր և ի ք, Կ ո վ ս ա կ ա ն, Ձ ո ր ք, Բ ա ղ ք, Ծ ղ ու կ ք, Հ ա բ ա ն դ, Ե ր ն ջ ա կ, Ճ ա հ ու կ, Ա ղ ա հ ե ջ ք, Վ ա յ ո ց ձ ո ր, Գ ե ղ ա ր ք ու ն ի ք և Ս ո դ ք։*

## Ա ր և ի ք

*Սա Սյունիքի ամենահարավային գավառն էր։ «Արևիք» անունը հնագույն ծագում ունի։ Այս անունն ամենայն հավանականությամբ կապված է նույնանուն ցեղի կամ Արև աստծու անվան հետ։*

*Արևիքը Սյունիքի ամենափոքրիկ գավառներից մեկն է։ Տերիտորիան համարյա համընկնում է Մեղրի գետի ավազանին, նրա միայն մի փոքր մասը տարածվում է դեպի արևելք՝ Կովսականի կողմերը, այս մասերում իր մեջ ընդգրկելով մի քանի փոքրիկ ձորահովիտներ։*

*Արևիքը հնում կազմում էր Գողթնի մի մասը, իսկ հետագայում նրանից անջատվելով՝ միացել է Սյունիքին։*

*Այս գավառը 1226 թ. ավերման է ենթարկվել էմիր Հարունի կողմից։ Վերջինս դեռ 1158 թ. գրավել էր Մեղրին։*

*Արևիքի պատմա-աշխարհագրական մի քանի վայրերը սերտ կերպով կապված են միջնադարյան Սյունիքի պատմության հետ։ Դրանցից կարևոր ենք համարում նշել հետևյալները.*

**Մեղրի.**—*Համապատասխանում է այժմյան Մեղրու շրջկենտրոնին, որը գտնվում է Արաքսից մի քանի* կմ *հյուսիս՝ նույնանուն գետի վրա։ Եղել է ավան։ X—XII դարերում Մեղրիում գոյություն ուներ բերդ, որի մնացորդները պահպանված են մինչև մեր օրերը և գտնվում են Մեղրու շրջկենտրոնի հյուսիսային բարձրության վրա։*

*Ավելի ուշ ժամանակներում Մեղրին որպես մեծ ավան բաժանվել է երեք թաղի՝ մեծ, փոքր և միջին։*

**Կարճավան.**—*Ավան։ Համապատասխանում է այժմյան Մեղրու շրջանի Կարճևան գյուղին, որը գտնվում է Մեղրուց 7—8* կմ

արևմուտք՝ Կարճևան գետի հովտում։ Կարճավանի մասին առաջին հիշատակությունը վերաբերում է X դարի սկզբներին։

Կաճավաբերդ.—Գտնվում էր այժմյան Կալեր-Վանքի շրջանում և հանդիսանում էր Սյունիքի թագավորության նշանավոր բերդերից մեկը։

## Կովսական

Կոչված է նաև Կուսական, Կոսական և Գրհամ՝ համանուն գլխավոր բերդի անունով։

Կովսականը հիմնականում տարածված էր այժմյան Ծավ գետի ավազանում և Ողջի գետի աջակողմյան մի շարք վտակների (դրանք են՝ Բեխ, Վաչագան, Գեղանուշ և այլ գետակները) շրջաններում։

Կովսականում մինչև XIII դարը եղած պատմա-աշխարհագրական վայրերից նշանավորը Գ ր հ ա մ բերդն է, որը գոյություն է ունեցել X—XII դարերում։ Այդ բերդը հավանաբար գտնվում էր այժմյան Ղափան—Մինջևան երկաթգծի Շաբլու կամ Շարիբլու կայարանի դիմաց, Ողջի գետի ձախ կողմում, նրանից ոչ հեռու։

## Զորք

Զորք փոքրիկ գավառը տարածվում էր Կապան գետի վերին հոսանքի շրջանում։ XI դարից սկսած կոչվեց Կապան, այնտեղ գտնվող Կապան քաղաքի անունով, իսկ ավելի ուշ շրջանում՝ Բաղաբերդ։

Զորքը Սյունիքի ամենալեռնոտ շրջանն է։ Նրա մի զգալի մասը այժմ էլ ծածկված է խիտ անտառներով։

Սյունիքի թագավորության գոյության ընթացքում Զորքը դարձել էր նրա կենտրոնական շրջանը՝ ոստանը։

Զորքում կային պատմա-աշխարհագրական մի շարք նշանավոր վայրեր։ Դրանցից կարելի է հիշատակել հետևյալները.

Գեղի.—Գտնվում է նույնանուն գետի միջին հոսանքում՝ նրա աջ ափին։ Այժմ նրա տեղում Ղափանի շրջանի մեջ մտնող Գեղի գյուղն է։

Գեղին Զորք գավառի ամենամեծ բնակավայրն էր, եթե չհաշվենք Կապան քաղաքը։

*Սյունիքի թագավորության շրջանում Գեղիում կար և՛ վանք, և՛ բերդ, որոնց մնացորդներից շատ քիչ բան է պահպանվել մինչև մեր օրերը։*

**Ծլորուտ բերդ.**—*Հանդիսանում էր Սյունիքի թագավորության նշանավոր բերդերից մեկը։ Այս բերդը գտնվում էր այժմյան Ղափանի շրջանի Վերին Հանդ և Լեռնաձոր գյուղերի մոտ։ Մինչև օրս էլ նրա մնացորդները նշմարվում են Վերին Հանդ գյուղից մոտ 1 կմ հյուսիս գտնվող լեռան լանջերին։*

**Բաղաբերդ.**—*Հայաստանի հնագույն բերդերից մեկն էր։ Նա իր ամուր դիրքի շնորհիվ դեռ վաղ ժամանակներից (V դարից) ի վեր հռչակված էր որպես անմատչելի բերդ։ Արտաքին վտանգների դեպքում հաճախակի ապաստան էր դառնում շրջակայքի բնակիչների համար։*

*Բաղաբերդի նշանակությունը ավելի մեծացավ հատկապես թագավորության ժամանակներում, երբ քաղաքական աննպաստ պայմանների պատճառով այստեղ էին կենտրոնացվել Տաթևի և երկրում եղած մյուս վանքերի հսկայական հարստությունները ու բազմահազար ձեռագրերը։ 1103 թ., Կապան քաղաքի ավերումից հետո, Բաղաբերդը դառնում է Սյունիքի թագավորության մայրաքաղաքը։ 1170 թ. սելջուկները, գրավելով Բաղաբերդը, այստեղ ամբարված հսկայական հարստությունները ենթարկում են ավարի, իսկ ավելի քան 10 000 ձեռագրերը ոչնչացնում։ Դրանից հետո Բաղաբերդն այլևս չի վերականգնվում։*

*Բաղաբերդի ավերակները մինչև օրս էլ պահպանված են։ Նրա ավերակները գտնվում են այժմյան Ողջի գետի և նրա ձախակողմյան Գիրաթաղ վտակի անկյունում, այժմյան Օխչի գյուղից, խճուղու ուղղությամբ, 17 կմ արևելք, Դավիթբեկ բանավանի մոտ։ Ավերակներից պարզ երևում է, որ Բաղաբերդն ունեցել է կրկնակի պարիսպներ՝ իրենց աշտարակներով։ Բավական հորդաբուխ մի աղբյուր, որն այժմ դուրս է գալիս Ողջի գետի անմիջապես ափին, ժողովրդական զրույցների համաձայն, մի ժամանակ տարված է եղել բերդի ներսը։ Տեղացիների մոտ մինչև օրս պահպանվել են Բաղաբերդի հետ կապված մի քանի ավանդություններ։*

**Վահանա վանք.**—*Գտնվելիս է եղել այժմյան Ղափանի շրջանի Աչըղլու և Շիհարշիկ գյուղերի դիմաց, Ողջի գետի աջ կողմում, մի անտառապատ ձորում։ Այս վանքը կառուցվել է Վահան իշխանի կողմից (911 թ.)։ Վանքը կառուցվելուց հետո նրան է արրվում մի հսկայական կալվածք, որ տարածվում էր նրա շուրջը։ Ավելի ուշ ժամանակներում՝ XI դարի 2-րդ կեսում, Վահանա վանքի*

մոտ կատարվում են նոր կառուցումներ. մեծ եկեղեցուց 25 մետր հեռու կառուցվում է մի ավելի փոքր եկեղեցի, որի կիսականգուն պատերին նույնպես զգացվում է, որ վերջինս իր գեղեցկությամբ գերազանցել է մեծին։ Նրա արևելյան պատի ներսի կողմում, հիմքին մոտ գտնվող քարերից մեկի վրա մինչև օրս էլ պահպանվել է 1086 թ. վերաբերող մի արձանագրություն, որտեղ խոսվում է այդ եկեղեցու կառուցման մասին։

Երկու եկեղեցիներն էլ այժմ փլված են։

**Կապան քաղաք.**—Եթե չհաշվենք Նախիջևանը, որը երբեմն կարճ ժամանակներով մտել է Սյունիքի մեջ, ապա ամբողջ Սյունիքում Կապանը միակ քաղաքն էր։

Կապանը գտնվում էր այժմյան Ղափան—Քաջարան խճուղու կիսաճանապարհին, Աչըղլու գյուղի դիմաց, Ողջի (հնում Կապան) գետի բարձրադիր աջ ափին, որը տեղացիներն անվանում են «Տանձուլենջ»։

Կապանի մասին առաջին հիշատակությունը վերաբերում է V դարի վերջերին։ Ըստ երևույթին, այդ ժամանակ Կապանը սովորական մի բնակավայր էր։ X դարից սկսած մատենագիրների մոտ Կապանն արդեն հիշատակվում է որպես քաղաք։ Կապանը X դարի վերջին (հավանաբար 998—1001 թթ. սահմաններում) դարձել էր Սյունիքի թագավորության մայրաքաղաքը։

Կապանն ուներ դիրքային մի շարք առավելություններ։ Նրա արևմտյան կողմում գտնվող Բաղաբերդ և Բաղակու քար բերդերը ապահովում էին քաղաքի անվտանգությունն արևմտյան և հյուսիս-արևմտյան կողմերից։ Քաղաքի հյուսիսային կողմով անցնում էր Կապան գետը, որն այդ մասում առաջացրել էր խոր կիրճ՝ խիտ զառիվեր և անտառապատ լանջով, իսկ դիմացը մի քանի հարյուր մետրի հասնող ժայռ էր։ Հարավային կողմում ձգվում էին Արևիքի բարձրաբերձ և ժայռոտ լեռները, որոնք անմատչելի էին դարձնում քաղաքը հարավային կողմից։ Այդ է եղել պատճառը, որ քաղաքը հարավային և հյուսիսային կողմերից հարկ չի եղել պարսպապատելու, իսկ արևմտյան կողմից նա ապահովված էր Բաղաբերդ և Բաղակու քար ամուր բերդերով։ Համեմատաբար դյուրին էր քաղաք մտնել արևելյան կողմից, այդ պատճառով էլ քաղաքի այս մասը պարսպապատված է եղել։ 1103 թ. Կապանն ավերման է ենթարկվում սելջուկների կողմից։ Այնուհետև Կապանը մի քանի դար շարունակում է իր գոյությունը, բայց արդեն իբրև ոչ թե քաղաք, այլ սովորական բնակավայր։ Կապան անունը հետագայում պահ-

պանվեց Ղափան ձևով, որն արդեն շրջանի, երկրի անուն է և տարբեր ժամանակներում ունեցել է տարբեր մեծություն։

Կապանը եղել է ֆեոդալական ոչ մեծ քաղաք։ Նրա բնակչությունն ըստ երևույթին միատարր չի եղել։ Նա ուներ հրեաների հատուկ թաղ։

Վաղեմի Կապան քաղաքից այժմ շատ քիչ բան է պահպանված։ Նրա արևելյան կողմի պարսպի հետքերը հազիվ նշմարվում են, իսկ աշտարակներից նկատելի են չորսը, որոնցից մնացել են միայն հիմքերը՝ 2—2,5 մետր բարձրությամբ։ Աշտարակների հետքեր կան նաև քաղաքի արևմտյան կողմում։ Ավելի աննախանձելի է բուն քաղաքից պահպանված ավերակների վիճակը։ Քաղաքի բռնած տարածության գրեթե կեսը, դարերի ընթացքում հերկման ենթարկվելով, վեր է ածվել միապաղաղ դաշտի, իսկ մյուս կեսը ծածկված է խիտ և անանցանելի անտառով։

## Բաղք

Այս գավառը X—XII դարերում ուներ ավելի մեծ տերիտորիա, քան հնում։

Բաղքը սահմանափակված էր հարավից Կովսականով, արևմուտքից՝ Ձորքով և Ծղուկքով, հյուսիսից՝ Հաբանդով, իսկ արևելքից՝ Ազավնո (Հագարի) գետով։ Տաթևի վանքին տրվող հարկի հին ցուցակում Բաղքը բաժանված է երկու մասի՝ արևմտյան և արևելյան։ Նրա արևմտյան մասը կոչված է «Բաղք գավառ», իսկ արևելյանը՝ «Միւս Բաղք», որը կոչվում էր նաև Քաշունիք։

Տաթևի եպիսկոպոսական թեմի հին հարկացուցակում Բաղքի տակ (Բաղք և Քաշունիք գավառները միասին վերցրած) հիշատակված է 93 գյուղ։ Դրանցից հիշատակության արժանի են Ա չ ա ղ ո ւ ն (այժմ՝ Աչըղլու), Շ ե կ ք ը (Շհարջիկ), Կ ա վ ա ր տ ը (Կավարտ), Խ ո տ ա ն ա ն ը (Խոտանան), Տ ո ր թ ն ը (Տորթնի), Կ ա տ ա ր ը (Կատարը անմարդաբնակ է), Ն ո ր ա շ ե ն ի կ ը (Նորաշենիկ), Ե ր ի ց ա վ ա ն ք ը (Արծվանիկ), Տ ա ն ձ ա վ ա յ ր ը (Տանձավեր), Վ ա ժ ո ն ի ք ը (Ուժանիս), Ա գ ա ր ա կ ը (Ագարակ) և այլն։ Հիշատակված բոլոր գյուղերը այժմ էլ գոյություն ունեն և գտնվում են Ղափանի շրջանում։

Բաղքում եղած մի շարք վայրերի պատմա-աշխարհագրական դիրքը դեռևս չի ճշտված։ Դրանց թվում են այնպիսի նշանավոր

վայրեր, ինչպիսիք են Անդոկի, Բարկուշատի, Քաշաթաղուց, Պահու բերդերը և այլն։

## Ծղուկք կամ Սյունիք

Ծղուկք գավառը սահմանափակված էր արևելքից՝ Աղահեջքով և Հաբանդով, արևմուտքից՝ Ճահուկով և Վայոց ձորով, որոնց հետ ունեցած սահմանն անցնում էր Սյունյաց լեռների ջրբաժան գծով, հարավից՝ Բաղք, Ձորք, Գողթն ու Երնջակ գավառներով, որոնց հետ բնական սահման էին ծառայում Բարկուշատի լեռները։ Հյուսիսում Ծղուկքի հարևանը Արցախի Մար գավառն էր։

Ծղուկք անունը հավանաբար էթնիկական ծագում ունի։

Սյունյաց իշխանների ոստանն այստեղ գտնվելու շնորհիվ այս գավառը հաճախ կոչվում էր նաև Սյունիք կամ Սիսական։ X—XI դարի մեր պատմիչների մոտ վերջին անուններն ավելի հաճախ են հիշատակվում, քան Ծղուկքը։ XIII դարից ի վեր Ծղուկք գավառը հաճախ կոչվել է նաև Որոտան։

Ծղուկքի Շ ա ղ ա տ գյուղաքաղաքը հանդիսանում էր Սյունյաց իշխանների իշխանանիստը, ինչպես և Սյունիքի եպիսկոպոսանիստը։ Եպիսկոպոսական աթոռն այստեղ մնաց IV-ից մինչև VIII դարի վերջերը կամ IX-ի սկիզբը, այսինքն՝ մինչև այն ժամանակ, երբ Սյունիքի տեր Վասակն իր իշխանանիստը տեղափոխեց Վայոց ձորի Եղեգիս ավանը։ Հենց այդ ժամանակներից սկսած Շաղատը դադարում է եպիսկոպոսանիստ լինելուց. դրանից շատ չանցած եպիսկոպոսական աթոռը հաստատվում է Տաթևում։

Շաղատի վարդապետարանից էին դուրս եկել Սյունյաց Պետրոս եպիսկոպոսը՝ Քերթող մականվանված (V դարի վերջ), Ստեփանոս Իմաստասերը և ուրիշներ։

Շաղատը մեր պատմագիրները հաճախակի կոչում են քաղաքավան։ Մինչև IX դարի սկիզբը Սյունիքի «գահագլուխ» իշխանների աթոռանիստն էր։

Պատմական Շաղատն ուներ դիրքային որոշ առավելություններ։ Նախ՝ նա գտնվում էր Սյունյաց աշխարհի գրեթե կենտրոնում, երկրորդ՝ նրա մոտով էին անցնում Սյունիքում հայտնի երկու ճանապարհները, որոնցից մեկը տանում էր Վայոց ձոր և Այրարատ, իսկ մյուսը՝ Նախիջևան և Վասպուրական։

Շաղատն ունեցել է իր բերդը, որի մնացորդներն այժմ էլ նըշ-

մարվում են այժմյան Սիսիանի շրջանի Շաղատ գյուղի արևելյան մասում բարձրացող երկու բլուրների լանջերին։

Ծղուկքի մյուս պատմական վայրերից նշանավոր էին.

**Որոտն**.—Գյուղ, բերդ և վանք։ Խորածորի գետաբերանի և Վաղուդի գյուղի միջև, Որոտան գետի ձախ ափին գտնվում են Սյունյաց աշխարհի նշանավոր վայրերից մեկի՝ Որոտն վանքի, իսկ բարձրադիր աջ ափին՝ Որոտն բերդի ավերակները։ Որոտնը հնում ավելի հայտնի էր միայն իր բերդով, իսկ հետագայում, հատկապես XIV և XV դարերում, հռչակվում է նաև իր վանքով։

Որոտն բերդը դեռևս V դարից սկսած հանդիսանում էր հին Հայաստանի նշանավոր բերդերից մեկը։ Նա գտնվում էր Սյունիքի թագավորության հյուսիսային սահմանամերձ մասում։ Կապան քաղաքը ավերվելուց հետո սելջուկները 1104 թ. գրավում են Որոտնը։ 1211—1219 թթ. Որոտն բերդը իր շուրջն ընկած գավառի հետ միասին գրավում են Զաքարե և Իվանե եղբայրները։ Մոնղոլթաթարների կողմից երկիրը նվաճելու ժամանակ Սմբատ Օրբելյան իշխանը, մոնղոլական զորավար Բաչուի համաձայնությամբ, նորից իր ձեռքն է վերցնում Որոտան երկիրը և Որոտն բերդը՝ հանձնելով այն իր եղբայր Տարսայիճին։

Որոտն բերդի ավերակները գտնվում են նույնանուն վանքից ոչ հեռու, անմիջապես գետափին բարձրացող լեռան վրա, որի երեք կողմերը պատած են գահավեժ ժայռերով։ Բերդի բաց կողմում պահպանված են պարսպի մնացորդները։ Այս նույն կողմում ջուր բերելու նպատակով փորված է եղել մի ստորերկրյա անցք, որն այժմ քանդված է։

Պատմական Որոտն գյուղի ավերակները գտնվում են բերդի ստորոտին Մելիք Թանգու կառուցած կամուրջից քիչ վերև, Որոտան գետի ձախ ափին, իսկ այդ ավերակներին կից էլ այժմյան Ուռուտ գյուղն է։ Որոտն բերդից հարավ-արևմուտք՝ մի ձորակի այգևետ ու գեղեցիկ լանջին, գտնվում է Որոտն վանքը։ Վանքի պարսպի մի զգալի մասը կազմում են բնական ժայռերը։ Վանքի հատակը ամբողջապես ծածկված է տապանաքարերով։ Նրա հարավային մասում բարձրացող սյուն-գավազանն այժմ ընկած է։ Վանքի տաճարներն այժմ գտնվում են կիսակործան վիճակում։ Բակում կա գերեզմանոց։

**Տաթև**.—Ծղուկք գավառի մի մասը կազմող Տաթևի շրջանը գտնվում էր նրա արևելյան կողմում։ Այժմ նա մտնում է Գորիսի շրջանի մեջ։

Տաթևի շրջանն ամբողջությամբ կազմում էր Տաթևի վանքի սեփականությունը։

Վանքն այդ լայնածավալ կալվածքին տեր էր դարձել ոչ միանգամից։ Դեռևս մինչև մեծ եկեղեցին կառուցելը, Տաթևի վանքն արդեն իր ձեռքն էր վերցրել Տաթևի շրջանի մի զգալի մասը։ Երբ մեծ եկեղեցու կառուցումն ավարտվում է (906 թ.), վանքի կալվածքներն ավելի են լայնացվում և դրանք որպես Տաթևի վանքի ժառանգական սեփականություն հաստատվում են Բագրատունի Սմբատ Ա թագավորի, Հովհաննես կաթողիկոսի (Դրասխանակերտցու), Սյունյաց տերերի, Գագիկ Արծրունու և մի շարք այլ իշխանների ու հոգևորականների կողմից։

Տաթևի շրջանում գտնվում էին մի շարք գյուղեր՝ Հարժիք, Արծիվ, Բերդկանքենչի, Տամալեկ, Արիտ, Տաթև, Ցուրաբերդ, Խոտ, Խոտանան, Սառնաքար, Բնունիք և այլն, որոնք պատկանում էին վանքին։

Բացի Տաթևի շուրջը տարածվող շրջանից, վանքը բազմաթիվ սեփական գյուղեր ուներ նաև Սյունյաց աշխարհի զանազան մասերում։ Տարբեր ժամանակներում Տաթևի վանքին նվիրված գյուղերի և կալվածների թիվը (ներառյալ նաև Տաթևի շրջանում գտնվող գյուղերը և կալվածները) հասնում էր 47-ի։

Սակայն դրանցով չէին սահմանափակվում Տաթևի վանքի հարստությունն ու եկամուտները։ Տաթևի վանքը հսկայական չափերի հասնող հարկեր էր վերցնում Սյունյաց աշխարհի բոլոր գավառներից, անկախ նրանից՝ նրանք քաղաքականապես միաձույլ էին, թե՝ ոչ։

Տաթևի եպիսկոպոսական թեմն ավելի հարուստ էր, քան Հայաստանի մյուս բազմաթիվ եպիսկոպոսությունները։ Այնպես որ, Տաթևի վանքը դարձել էր միջնադարյան Հայաստանի խոշորագույն ֆեոդալներից մեկը։ Այդ էր պատճառը, որ X դարի սկզբներին Սյունիքում ծագած գյուղացիական ապստամբությունը, որ երկար ժամանակ պարբերաբար կրկնվում էր, ուղղված էր առաջին հերթին Տաթևի վանքի դեմ, որը, խլելով Ցուրաբերդ, Տամալեկ, Ցողունի և այլ գյուղերի հողերի մի մասը, միաժամանակ փորձում էր կախման մեջ դնել դրանց բնակիչներին։

Տաթևի վանքը գտնվում է համանուն գետակի աջ ափին, մի փոքրիկ բարձրավանդակի վրա, Տաթև գյուղի մոտ։

Տաթևի վանքի մեծ եկեղեցին կառուցվել է 895—906 թթ.՝ 11 տարվա ընթացքում, և մինչև օրս էլ կանգուն է։ Բայց տարբեր ժամանակներում մի քանի անգամ ենթարկվել է վերանորոգման։ Կա-

*թողիկե եկեղեցուն կից կառուցել են նաև ամբարանոցներ (պահեստներ), գործարաններ (արհեստանոցներ), գրատներ, սրճատներ, Սյունյաց իշխանների և եպիսկոպոսների համար դամբարանների տեղ և այլն։ Ճարտարապետական տեսակետից այս վանքը մի բարդ կոմպլեքս է. ունի բազմաբովանդակ ու նուրբ քանդակներ։ Առանձնապես մեծ վարպետությամբ են կատարված գլխավոր մուտքի կամարի քանդակները։*

*Տաթևը միջնադարյան Հայաստանի խոշոր դպրոցներից և մշակույթի կենտրոններից մեկն էր։ Նրա գրադարանում կային բազմահազար ձեռագրեր, որոնց մեծ մասը, սակայն, ոչնչացվել է արտաքին նվաճողների կողմից։*

*Տաթևը եղել է ոչ միայն սոսկ վանք, այլև ամրոց։ Նա կառուցված է լեռնային անմատչելի վայրում, որը մեծ մասամբ ծածկված է սավերախիտ անտառներով։*

*Տաթևի վանքը Հայաստանի միջնադարյան ճարտարապետական կարևոր կոթողներից մեկն է։ Տաթևի վանքը խնամքով պահպանվում է մեր պետական մարմինների կողմից։*

**Մեծ Անապատ և Թանահատի վանք.**—*Մեծ կամ Հարանց անապատը գոյություն ունի XI—XII դարերից. նրա տեղը ավելի ուշ ժամանակներում՝ XVII դարում, կառուցվում է նորը։*

*Հարանց անապատը գտնվում էր Տաթևի ձորի և Որոտան գետի միախառնվելու տեղում՝ Տաթևի ձորի ձախ ափին, «Սատանի կամուրջ»-ի մոտ, հիշյալ գետի շնորհիվ առաջացած մի լեզվակի վրա։ Այս անապատը կառուցված է սրբատաշ քարից և առջևում ունի գավիթ։ Նրա շուրջը պատած է կրաշաղախ և լայնանիստ պարիսպով, որն ունի իր աշտարակները։ Այն կանգուն վիճակում պահպանվել է մինչև օրս։ Հարանց անապատի դիրքն ավելի գեղեցիկ է, իսկ նրա տաճարն ավելի մեծ ու վեհ է, քան Սյունիքի շատ վանքերի տաճարները։*

*Տաթևի վանքից հյուսիս-արևելք՝ Որոտան գետի մոտ, նույնանուն լեռան վրա են գտնվում Թ ա ն ա հ ա տ ի վանքի ավերակները։ Այս վանքը կառուցվել է հավանաբար IV դարի վերջերին, նրա տեղում ավելի հնում եղել է հեթանոսական մեհյան։ Սակայն Թանահատի վանքը նշանավոր է դառնում ավելի ուշ՝ VIII դարի առաջին կեսում։ Սյունիքի նշանավոր մյուս վանքերի՝ Տաթևի, Մեծ Անապատի, Նորավանքի և ուրիշների պես Թանահատի վանքը եղել է և՛ դպրոց, և՛ մատենագրության կարևորագույն օջախներից մեկը։*

**Սյունիքի վանք և բերդ.**—*Սյունիքի վանքը և բերդը գտնվում էին այժմյան Սիսիանի շրջկենտրոնում։ Սյունիքի վանքը կառուցվել*

է VI դարում և մինչև օրս էլ կանգուն է։ Կառուցված է սև տուֆից։ Այս վանքը ևս ճարտարապետական կարևոր կառուցվածք է։ Նրա բակում է գտնվում մի մեծ գերեզմանոց, որի քարերի վրա կան բազմաթիվ հիշատակություններ։ Սյունիքի բերդի ավերակներն ավելի վատ են պահպանված։ Դրանք հազիվ են նշմարվում։

## Հաբանդ

Հաբանդ գավառը, ինչպես երևում է, հին ժամանակներում շատ քիչ է ծանոթ եղել մեր պատմիչներին։

«Աշխարհացույց»-ի մեջ հիշատակված է երկու Հաբանդ։ Դրանցից մեկը գտնվում էր Սյունիքում, իսկ մյուսը՝ Արցախում։

Արցախի Հաբանդ գավառն անմիջապես սահմանակից էր Սյունիքի Հաբանդին։

Արևելյան կողմում Հաբանդի սահմանն անցնում էր Հագարի գետով, արևմտյան կողմում նա շփվում էր Ծղուկքի Տաթև և Որոտան շրջանների հետ։ Հյուսիսում նրա սահմանն Աղահեջքի հետ անցնում էր Հագարի գետի Աղոտլան վտակի աջ ափով տարածվող լեռներով, իսկ հարավային կողմում՝ Բարկուշատ և Որոտան գետերի ջրբաժան լեռներով, որտեղ Հաբանդը սահմանակցվում էր Բաղք-Քաշունիքի և Բաղք-Աճանանի հետ։

Ավանդության համաձայն Ձագիկ նահապետը Հաբանդ գավառում կառուցել է մի բերդ և այն անվանել «Ձագեձոր» կամ Հաբանդի բերդ, իսկ այն ձորը, որտեղ գտնվում էր բերդը, իր, նրա անունով էլ կոչվեց «Ձագեձոր»[1]։

Հետագայում Ձագեձոր անունն աղավաղման ենթարկվելով, դարձել է Զանգեզուր, իսկ նրա մյուս անունը՝ Հաբանդը աստիճանաբար հանվել է գործածությունից։

Տաթևի վանքին տրվող հարկի հին ցուցակում Հաբանդ գավառի տակ հիշատակվում է 79 գյուղ։ Սրանցից այժմ միայն մի քանիսն են հայտնի։

Այս գավառում հայտնի են պատմա-աշխարհագրական մի շարք վայրեր, որոնցից անհրաժեշտ ենք համարում նշել հետևյալները.

Հալիս.—Գյուղ։ Կոչվել է նաև Հալե, ավելի ուշ, ինչպես և այժմ՝ Հալիձոր։ Գտնվում է «Սատանի կամուրջ»-ից արևելք, Որոտան գետի ձախ ափին։ Հալիձորը Տաթևի վանքի սեփականությու-

[1] Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 13։

նըն էր։ Այս գյուղը Տաթևի վանքին էր տրված X դարի առաջին քառորդում՝ Համազասպուհու կողմից։

**Շինուհայր և Խոտ.**—Երկուսն էլ գյուղեր են՝ հայտնի X դարից։ Այժմ էլ գոյություն ունեն և գտնվում են Գորիսի շրջանում, Որոտան գետի ժայռոտ ձախ ափին։ Շինուհայրը գտնվում է Հալիձորից հյուսիս-արևելք։ Տաթևի եպիսկոպոսական աթոռին տրվող հարկի հին ցուցակին նայելով պարզ երևում է, որ Հաբանդ գավառի բնակավայրերի մեջ Շինուհայրը (որը ցուցակում գրված է «Շնոյ հերք» ձևով) բոլորից խոշորն է եղել։ X դարում Հաբանդ գավառի մի մասը այս գյուղի անվամբ կոչվում էր Շնհեր։

Շինուհայրից մեկ կիլոմետր հյուսիս-արևելք՝ Որոտան գետի ձախ ափին գտնվում է Խոտ գյուղը, ծածկված թթենիների և խնձորենիների այգիներով։ Այստեղ պահպանվել են XII դարին վերաբերող մի եկեղեցու ավերակներ և գերեզմանաքարեր։

**Ձագեձորի բերդ.**—Ինչպես նշվեց, ավանդությունը Ձագեձոր բերդի կառուցումը և անունը կապում է Ձագիկ նահապետի անվան հետ։ Այս բերդի աշխարհագրական դիրքը հայտնի չէ։ Եղած անուղղակի փաստերը ցույց են տալիս, որ Ձագեձոր բերդը գտնվելիս է եղել այժմյան Գորիսի շրջանի Վերիշեն գյուղի մոտակայքում։

**Տեղ.**—Այս գյուղը Հագարիից և նրա աջակողմյան վտակ Ագողլանից հեռու է հավասար չափով՝ 7—8 կիլոմետր։ Տեղը Օրբելյանի մոտ հաճախ է հիշատակվում։ Նա Սյունիքի թագավորության տերիտորիայի հիշատակված վայրերից ամենաարևելյան բնակավայրն է։ Այժմ էլ գոյություն ունի և մտնում է Գորիսի շրջանի մեջ։ Տեղը գտնվում է նույնանուն գեղադիր սարահարթի վրա։

## Երնջակ

Այս գավառը տարածվում էր Երնջակ (այժմ՝ Ալինջա-չայ) գետի ավազանում։ Նա շրջապատված էր Գողթն, Ճղուկք, Ճահուկ և Նախիջևան գավառներով, հարավում, հավանաբար, նրա սահմանը հասնում էր Երասխ գետին։

Երնջակի հարավային մասը հնագույն ժամանակներից ի վեր հայտնի է եղել իր ընտիր մրգերով՝ ծիրանով, նռով, թուզով, տանձով և այլն։ Այս մասում մշակում էին նաև բամբակ, իսկ հյուսիսային մասում՝ քնջութ, կտավհատ, հացահատիկներ և այլ կուլտուրաներ։

Երնջակ անվան վերաբերյալ Օրբելյանի մոտ բերված է մի ավանդություն, ըստ որի այդ անունը ծագել է իբր Սյունյաց տիկիններից մեկի՝ Երնջիկի անունից։

Երնջակ գավառի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր է Երնջակ բերդը։

Այս բերդը գտնվում էր նույնանուն գետի միջին հոսանքի շրջանում, գրեթե հարթ տարածության մեջ վեր խոյացած մի ապառաժոտ ժայռի կատարին, որն իշխում էր իր շրջապատի վրա։ Երնջակը Սյունիքի «անմատույց» բերդերից մեկն էր։ Ըստ երևույթին, Սյունիքի գահագլուխ իշխանների գանձերի մի մասը պահվում էր այս բերդում։

Առանձնապես ուշագրավ է 913 թ. Երնջակի հերոսական պաշտպանությունը, երբ Ատրպատականի էմիր Յուսուֆը ավելի քան մեկ տարի Հայաստանի բազմաթիվ շրջանները ավերելուց հետո, իր ստվարաթիվ բանակով եկել պաշարել էր Երնջակը։ Բերդի պաշտպանները երկար ժամանակ ետ էին շպրտում գրոհող թշնամիներին։ Ապարդյուն են անցնում Յուսուֆի ջանքերը՝ Սմբատ Ա-ի միջոցով բերդեցիներին համոզելու, որ առանց դիմադրության բերդը հանձնեն, որովհետև հայոց շղթայակապ թագավորը ոչ միայն չի կարգադրում բերդը հանձնել, այլև հորդորում է բերդապաշտպան զինվորներին և մյուս քաղաքացիներին, որ շարունակեն դիմադրությունը։ Չնայած այդ բոլորին, երկար պաշարման շնորհիվ Յուսուֆին հաջողվում է գրավել Երնջակ բերդը։ Նա այստեղ պաշարվածների մի մասին ոչնչացնում է, իսկ մյուս մասին, այդ թվում և Սյունյաց իշխանների կանանց, գերեվարում է և տանում Դվին։ Գրավելով Երնջակը, Յուսուֆը այն իր շրջակայքի տերիտորիաների հետ միասին տալիս է Գողթնի արաբական էմիրությանը։

Երնջակի մյուս նշանավոր վայրերը՝ Ջուղան, Շոռոթը, Շահկերտը, Քռնան և այլն, կապված են ավելի ուշ շրջանի հետ։

## Ճահուկ

Ճահուկը գտնվում էր Երնջակից հյուսիս-արևմուտք։ Նա սահմանափակված էր հյուսիսից Վայոց ձորով և Ծղուկքով, հարավարևելքից և հարավից՝ Երնջակով և Նախիջևանով, իսկ արևմուտքից՝ Այրարատի Շարուր գավառով։ Այս գավառը, ինչպես և Աղահեջքը, Սյունիքի գավառների մեջ անհամեմատ ավելի քիչ հայտնի գավառներից է։

*Ճահուկի պատմական վայրերից նշանավոր են.*

**Շահապունիք.**—*Բերդ, որ կառուցվել է VI դարում։ Շահապունիք բերդի անունով Ճահուկ գավառի արևելյան մասը կոչվեց Շահապունիք կամ Շահապունիքի ձոր։ Գտնվում էր այժմյան Շահբուզ գյուղի մոտ, Շահբուզ գետի ստորին շրջանում, մի բարձր լեռան վրա։ Շահապունիք բերդի ավերակները մինչև օրս էլ կան։*

**Ճահուկ.**—*Եղել է գյուղ կամ ավան։ Սրա աշխարհագրական դիրքը ստույգ հայտնի չէ։ Ըստ երևույթին, Ճահուկը համապատասխանում է այժմյան Ջահրիին, որը Նախիջևանի ԻՍՍՀ գյուղերից մեկն է և գտնվում է Նախիջևան գետի միջին հոսանքում՝ նրա աջ կողմում՝ գետից 3—4* կմ *հեռավորության վրա։*

## Աղահեճք

*Աղահեճք գավառի մասին շատ քիչ տեղեկություններ են հասել մեզ։*

*Աղահեճքը եղել է ընդարձակ մի գավառ։ Նա տարածվում էր Սյունիքի հյուսիս-արևելյան մասում և սահմանագծված էր Արցախի Ծար և Սյունիքի Ծղուկք ու Հաբանդ գավառներով։*

*Տաթևի եպիսկոպոսական հարկացուցակում Աղահեճքի տակ հիշատակված են 43 բնակավայրեր։*

*Աղահեճքում այս կամ այն առթիվ հիշատակված վայրերից համեմատաբար նշանավոր են եղել* **Քաշաթաղ** *և* **Խոժոռաբերդ** *բերդերը, որոնց աշխարհագրական դիրքը հայտնի չէ։*

## Վայոց ձոր

*Վայոց ձորը Սյունիքի առավել նշանավոր գավառներից մեկն էր։ Վայոց ձորի և նրանում գտնվող մի շարք վայրերի մասին մեր և օտար աղբյուրներում կան բազմաթիվ հիշատակություններ։ Վայոց ձորն իր մեջ ընդգրկում էր Արփա գետի վերին և միջին հոսանքների ավազանները։ Նա սահմանափակված էր հյուսիսից Գեղարքունիքով և Սոթքով, արևելքից՝ Ծղուկքով և Արցախի Ծար գավառով, հարավից՝ Ճահուկով և Այրարատի Շարուր գավառով, իսկ արևմուտքում նա Այրարատից բաժանված էր Գեղամա լեռների ջրբաժան գծով։ Վայոց ձորը Սյունիքի ամենաընդարձակ գավառներից մեկն էր։ Այն իրենից ներկայացնում էր բոլոր կողմերից լեռնե-*

*րավ պատած մի գոգավորություն և իր տերիտորիայով համապատասխանում է այժմյան Հայկական ՍՍՀ-ի Եղեգնաձորի ու Ազիզբեկովի շրջաններին։*

*Վայոց ձորը Վարդան աշխարհագրի մոտ կոչված է Եղեգյաց ձոր։ Այն լեռնային, ջրառատ գավառ է։ Ունի բերրի հողեր, սառնորակ աղբյուրներ և հանքային ջրեր (այժմյան Ջերմուկը)։ Նա նշանավոր էր և իր մետաղի հանքերով։ Այստեղ կային կապարի, արծաթի և պղնձի մի քանի «բովեր»՝ ելքեր, որոնք շահագործման են ենթարկվել հին ժամանակներից։*

*Մինչև IX դարը Վայոց ձորի մասին եղած տեղեկությունները կցկտուր են։ IX դարի կեսերին Վայոց ձորի Եղեգիս գյուղաքաղաքն է տեղափոխվում Սյունյաց իշխանանիստը։ XI դարի սկզբին Վայոց ձորը Բագրատունի Գագիկ Ա թագավորը միացնում է կենտրոնական թագավորությանը։ Բագրատունիների թագավորության անկումից հետո Վայոց ձորի իշխանները աստիճանաբար կորցնում են իրենց քաղաքական նշանակությունը, իսկ սելջուկ-թուրքերի արշավանքների և տիրապետության հետևանքով նրանք գրեթե չքանում են քաղաքական ասպարեզից։ XIII դարի սկզբներին, երբ հայ-վրացական միացյալ զորքերը ազատագրեցին Հյուսիս-արևելյան Հայաստանը, Վայոց ձորի մեծ մասը Զաքարյանների միջոցով տրըվեց Օրբելյան Լիպարիտ իշխանին, իսկ մյուս մասը՝ Խաղբակյաններին (կամ Պռոշյաններ)։ Օրբելյանները և Խաղբակյանները երկար ժամանակ շարունակում են իշխել Վայոց ձորում։ Օրբելյանների մասին հիշատակությունները մինչև XV դարի կեսերը չեն ընդհատվում։ Հավանական կարելի է համարել, որ Օրբելյաններն ու Խաղբակյանները քաղաքական ասպարեզից վերացել են հենց XV դարի վերջերին։*

*Միջին դարերում Վայոց ձորում բնակավայրերը մեծ թիվ են կազմել։ Տաթևի եպիսկոպոսական հին հարկացուցակում Վայոց ձորի տակ հիշատակվում է 91 բնակավայր, բացի դրանից, X—XIII դարերում Վայոց ձորում հիշատակված են նաև մոտ 15 այլ բնակավայրեր, որոնք չեն մտել նշված հարկացուցակի մեջ։*

*Վայոց ձորում կան պատմա-աշխարհագրական բազմաթիվ վայրեր։ Կանգ առնենք դրանցից մի քանիսի վրա։*

Գնդեվանք.—*Գտնվում էր Արփա գետի վերին հոսանքի շրջանում, նրա ձախ ափին՝ Սյունյաց լեռների արևմտյան լանջերի ընդառնկոլ ձորում, այժմյան Գնդեվազ գյուղի մոտ։ Այս վանքի կառուցումն սկսվել է 936 թվականին և հայտնի չէ, թե երբ է ա-*

վարտվել։ Վանքի մոտ գտնվող նույնանուն գյուղը, ինչպես և Աստղաշար գյուղը, տրվեցին վանքին իբրև սեփականություն։ Ամբողջ ձորը, որտեղ գտնվում էր Գնդեվանքը, վերածվեց վանքապատկան այգու։ Սյունյաց Սմբատ իշխանի կին Սոփին տաճարի վրա թողել է մի բավական ընդարձակ արձանագրություն, որը վերջանում է հետևյալ պատկերավոր խոսքերով. «Մատանի էր անակն Վայոց ձոր, շինեցի զսա (Գնդեվանքը—Թ. Հ.) եւ եդի ակն ի վերայ»[1]։

*Գնդեվանքը* հանդիսանում էր Սյունիքի գրչության կենտրոններից մեկը։ Այստեղ ընդօրինակվել են մի շարք ձեռագրեր։ Ավերակները պահպանվում են։

**Թանատի վանք**.—*Թանատի վանքը* Սյունիքի նշանավոր վանքերից մեկն էր։ Այն գտնվում է այժմյան Եղեգնաձորի շրջանի Վերնաշեն գյուղի հանդում և կանգուն է։ Թանատի վանքը փոքր է, բայց ճարտարապետական տեսակետից ունի յուրահատուկ կառուցվածք։ Նրա պատերի վրա քանդակված են կենդանիներ, թռչուններ, հեծյալի և առյուծի կռվի տեսարաններ։ Հարավային պատի վրա քանդակված է արևի ժամացույց։ Թանատի վանքը առանձնապես հայտնի է իր արձանագրություններով, որոնց մեծ մասը վերաբերում է XIII—XIV դարերին։ Ոմանք այս վանքի մոտ են դնում Գայլեձորի (կամ Գլաձոր) համալսարանը։

**Մոզ ավան**.—*Այս ավանը* գտնվում էր այժմյան Մալիշկա գյուղից (Եղեգնաձորի շրջան) հարավ-արևելք՝ Արփա գետի աջ ափին։

735 թ. Վայոց ձորում տեղի է ունենում աղետաբեր երկրաշարժ, որի հետևանքով Մոզ ավանը կործանվում է, իսկ նրա բնակիչները ոչնչանում են։ Երկրաշարժի հետևանքով առաջացած զոհերի թիվը հասնում է 10 000-ի։ Հնարավոր է, որ այս թիվը չափազանցված լինի, սակայն, այնուամենայնիվ, այդ թիվը ցույց է տալիս, որ Մոզը բավական մեծ ավան է եղել։

Այժմ վաղեմի ավանից գրեթե ոչինչ չի նշմարվում։

**Գայլեձորի դպրոց**.— Կոչվել է նաև Գլաձոր, Գայլաձոր, Աղբերց։ Գտնվում էր Վարդենիս լեռնաշղթայից դեպի հարավ տարածվող լեռնաճյուղերից մեկի վրա, այժմյան Վերնաշեն գյուղի (Եղեգնաձորի շրջանում) մոտ։

Գայլեձորը հռչակված է եղել հատկապես XIII դարի կեսից մինչև XIV դարի կեսը։ Այս ժամանակաշրջանում Գայլեձորը հանդիսանում էր միջնադարյան Հայաստանի նշանավոր դպրոցներից մեկը և մատենագրության կարևոր կենտրոն։ Գայլեձորի դպրոցը եղել է բարձր կարգի դպրոց՝ համալսարան։ Այստեղ են սովորել

[1] Ալիշան, Սիսական, էջ 105։

*բազմաթիվ աշակերտներ, որոնք ստանալով վարդապետի կոչում հոգևոր գործերի հետ միասին զբաղվել են նաև գիտությամբ ու մատենագրությամբ։ Համալսարանից ոչ պակաս նշանավոր է եղել և նկարչական դպրոցը։ Գլաձորի նկարչական դպրոցը հանդիսանում էր միջնադարյան Հայաստանի առավել հռչակված դպրոցներից մեկը։*

*Գլաձորում գրվել են պատմական-բանասիրական բազմաթիվ աշխատություններ։ Այստեղ կատարվում էին նաև թարգմանություններ, մեկնություններ և ընդօրինակություններ։ Գլաձորի վանքըն են ավարտել ու իրենց գործունեությունը ծավալել այնպիսի գործիչներ, ինչպիսիք են՝ Եսայի Նչեցին և նրա աշակերտներ Խաչատուր Կեչառեցին, Մխիթար Ցաղմանցին (1314թ.), Ներսես Մշեցին (1320 թ.), Հովհաննես Սսեցին, Կիրակոս Երզնկացին (1317 թ.), իր ուսուցչից ավելի նշանավոր Հովհաննես Որոտնեցին և շատ շատերը։*

**Եղեգիք ավան և բերդ.**— *Գտնվում էր այժմյան Ալայազ գյուղի մոտակայքում, Արփայի աջակողմյան վտակ Եղեգիս գետակի աջ կողմում, բարձրադիր լեռնալանջի վրա։ Նրա դիրքը շրջապատի նկատմամբ իշխող էր։ Այժմ էլ որոշակի նկատվում են նրա ավերակները, որոնք բռնում են բավական ընդարձակ տարածություն։ Պահպանված են նրա պարիսպները, աշտարակները, կիսակործան որոշ կառույցվածքներ, բազմաթիվ խաչքարեր։ Եղեգիքը IX դարից դարձել էր Սյունյաց գահերեց իշխանների ոստանը՝ աթոռանիստը, այդ պատճառով էլ պատմիչներն այն երբեմն կոչում են «մայրաքաղաք»։*

*Եղեգիքի հիմնադրման ժամանակն անհայտ է։ Հավանաբար նա հնում՝ մինչև Սյունյաց ոստան դառնալը, իրենից ներկայացնում էր սովորական բնակավայր՝ գյուղ։ Հետագայում, երբ կազմավորվեց Սյունիքի թագավորությունը, Սյունյաց իշխանական տան մի ճյուղը մնաց Վայոց ձորում և այդ ճյուղի ոստանը դարձյալ Եղեգիք ավանն էր։ Բագրատունիների թագավորության անկումից հետո Վայոց ձորի տեղական իշխանները կորցնում են իրենց քաղաքական դերը, իսկ նրանց տեղը աստիճանաբար բռնում են Օրբելյանները։ Եղեգիքը դառնում է վերջիններիս ոստանը, իսկ որոշ ժամանակ անց նրանց գլխավոր ճյուղն իր համար ոստան է ընտրում Արփա գյուղը։*

*Թե՛ Սյունյաց նախկին իշխանների և թե՛ նրանց հաջորդող Օրբելյանների ժամանակներում Եղեգիքում կատարվել են հոյակապ կառուցումներ։ Դրանցից ամենաշքեղը Եղեգիքի բերդն էր, որը գտնվում էր ավանի հյուսիսային կողմում։ Բերդը պատած էր*

հզոր պարիսպներով, որոնք ունեին բազմաթիվ աշտարակներ։ Տեղի բնակիչների մոտ պահպանվել է մի ավանդություն, ըստ որի այն կառուցել է Սյունյաց Սմբատ իշխանը․ այդ պատճառով էլ կոչում են նաև Սմբատի բերդ։

Բերդից բացի, հիշատակության արժանի են նաև Եղեգիքի եկեղեցիները, որոնց թիվը հասել է չորսի։

Եղեգիք բերդի հյուսիս-արևմտյան կողմում, նրանից ոչ հեռու, մի բարձր սարահարթի վրա գտնվում էր Ց ա խ ա ց  ք ա ր  հայտնի վանքը, որը կառուցվել է X դարի կեսերին։

Ցախաց քարը միջնադարյան Հայաստանի ճարտարապետական կարևոր կոթողներից մեկն է։ Նրա պատերին քանդակված են կենդանիներ (արծիվ, ցուլ, առյուծ), ունի բազմաթիվ արձանագրություններ։ Նրա ավերակները պահպանվել են։

**Նորավանք**.—Գտնվում է Արփա գյուղից հարավ, այժմյան Ամաղու գյուղի մոտ, անմատույց ձորալանջի վրա։ Նորավանքը միջնադարյան Սյունիքի առավել հռչակված վանքերից մեկն է, որի կառուցման ճշգրիտ թվականը հայտնի չէ։ XII դարից սկսած նրա մասին մի շարք հիշատակություններ կան։ Նա ունեցել է հսկայական կալվածքներ։

Նորավանքը եղել է և եպիսկոպոսանիստ։ Նրա եպիսկոպոսները և մյուս հոգևորականները պայքարել են, որպեսզի պահպանեն իրենց ինքնուրույնությունը Տաթևի նկատմամբ։ Վանքը հայտնի է իր արձանագրություններով, որոնք հետաքրքիր տեղեկություններ են հաղորդում նաև աշխարհիկ կյանքից։ Այստեղ է գործել Սյունյաց իշխանական տան նշանավոր պատմագիր Ստեփանոս Օրբելյանը, որը 1299 թ. այս նույն վանքում ավարտել է «Պատմութիւն նահանգին Սիսական» վերնագիրը կրող իր նշանավոր աշխատությունը։ Ստեփանոս Օրբելյանը թաղված է (նա մահացել է 1304 թ.) այդ վանքի բակում։ Վանքն այժմ կանգուն է։

Վայոց ձորում եղել են պատմական և այլ նշանավոր վայրեր՝ Ս ո ւ լ ե մ ա  բերդը և իջևանատունը, Ա ռ փ ա (Արփա) գյուղը, Խ ո տ ա կ ե ր ա ց  վանքը, Հ ե ր հ ե ր ի  վանքը, Պ ռ ո շ  իշխանի բերդը, Ս ր ա տ ե ս ի  վանքը, Ջ ե ր մ ո ւ կ  բնակավայրը, հին կամուրջները և այլն։ Կարելի է ասել, որ Վայոց ձորը հնություններով ամենահարուստ գավառներից մեկն է ընդհանրապես։

## Գեղարքունիք

Գեղարքունիք գավառը գրավում էր Գեղամա (Սևանա) լճի ավազանի խոշորագույն մասը, իսկ ավազանի մյուս փոքր մասը

կազմում էր Սոդք գավառը։ Գեղարքունիքը տարածվում էր լճի ավազանի հյուսիս-արևմտյան կողմում, իսկ Սոդքը՝ հարավ-արևելյան։ Գեղարքունիքն ու Սոդքը միասին կոչվել են նաև Գեղամա երկիր։

Ավանդությունը Գեղարքունիք անունը կապում է ավանդական Գեղամի անվան հետ։

Սևանա լիճն իր մեծ մասով պատկանում էր Գեղարքունիք գավառին։

Գեղամա երկրի քաղաքական վիճակի մասին արժանահավատ վկայությունները սկսվում են VIII դարից։ IX դարում, երբ հայ ժողովուրդը նվաճում է քաղաքական անկախություն, այդ երկիրը միացվում է Բագրատունիների կենտրոնական իշխանությանը։

Սելջուկների տիրապետությունը Գեղամա երկրում կարճատև եղավ։ Հայ-վրացական միացյալ զորքերը՝ Զաքարյան զորավարների գլխավորությամբ, Գեղամա երկիրը XII դարի վերջերին մաքրում են սելջուկներից։ Այստեղ իրենց իշխանությունն են հաստատում Զաքարյանները և նրանց ազգական Դոփյանները։

Գեղարքունիքի պատմա-աշխարհագրական վայրերից անհրաժեշտ ենք համարում նշել հետևյալները.

**Կոթ.**—Ավան, երբեմն կոչվում է նաև գյուղաքաղաք։ Գտնվում էր այժմյան Մարտունու շրջանի Ներքին Գետաշեն (Ներքին Ադիաման) գյուղի տեղում։ Գտնվելով Դվին—Պարտավ ճանապարհի վրա՝ Կոթը IX—X դարերում դարձել էր Գեղամա երկրի առևտրական կարևոր կետերից մեկը։ Նրա զարգացմանը նպաստել է նաև ձկնորսությունը։

**Բերդկունք.**—Գտնվում էր Դվին—Պարտավ տարանցիկ ճանապարհի վրա, լճափին, Կոթից հյուսիս-արևմուտք։ Բերդկունքը, ինչպես և Կոթը, ոչ միայն սոսկ ճանապարհային կայան էր, այլ նաև վաճառատեղի, որտեղ վաճառահանվում էին Գեղարքունիք գավառի տարբեր մասերից բերված ապրանքները։

**Սևան.**—Կղզի։ Սևանա կղզում կառուցված են եղել և՛ ամրոց, և՛ վանք։ Ամրոցը արաբական զորքերի կողմից VIII դարում ավերման է ենթարկվում, սակայն IX դարում Սահակ և Վասակ իշխանների կողմից այն նորից վերականգնվում է։ Սևանա ամրոցը անմատույց է դառնում Աշոտ Բ-ի օրոք (914—928)։

Սևանա վանքը միջնադարյան Հայաստանի խոշոր կալվածատերերից մեկն էր։ Նրա միայն սեփական գյուղերի թիվը վեցից անցնում էր։ Կղզու անունով հետագայում Գեղամա լիճը կոչվեց Սևանա լիճ։

Գեղարքունիք գավառում էին գտնվում Հավուց թառ, Շողագա և Մաքենիս վանքերը։ Դրանց մեջ իբրև մշակութային կենտրոն առավելապես աչքի էր ընկնում Հավուց թառը, որտեղ ընդօրինակվել են մի շարք ձեռագրեր։ Այստեղ XIII դարում կազմակերպված էր երգեցիկ խումբ։

## Սոդք

Տարածվում էր Գեղամա լճի հարավ-արևելյան և արևելյան կողմերում։ Իր տերիտորիայով գրեթե համընկնում է այժմյան Մարտունու շրջանի մի մասին և Բասարգեչարին։ Դաշտային է, արգավանդ հողերով և սառնորակ ջրերով։ Կլիման խիստ է։ Այստեղ հնագույն ժամանակներից շահագործման են ենթարկվել Զոդի լեռնանցքի մոտ գտնվող ոսկու հանքերը։

Սոդքի պատմական վայրերից նշանավոր էր Սոդք ավանը, որը գտնվում էր Դվին—Պարտավ ճանապարհի վրա և ճանապարհային կայարան լինելուց բացի՝ վաճառատեղի էր։

# ԲԱՐՁՐ ՀԱՅՔ

## 1. ԱՆՈՒՆԸ, ԴԻՐՔԸ, ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Բարձր Հայք անունը մինչև VII դարի «Աշխարհացույց»-ը ոչ մի հեղինակի մոտ չի հիշատակվում։ Ենթադրվում է, որ «Աշխարհացույց»-ի հեղինակը՝ Անանիա Շիրակացին, Մեծ Հայքի այս «աշխարհ»-ը Բարձր Հայք է կոչել պարզապես նկատի ունենալով նրա աշխարհագրական բարձր դիրքը։ Բարձր Հայքը հանդիսանում է մի մեծ ջրաբաշխ, որտեղից սկսվելով Հայկական լեռնաշխարհի գրեթե բոլոր խոշոր գետերը (Արաքս, Եփրատ և այլն) հոսում են տարբեր ուղղություններով։ Անանիա Շիրակացին, երկիրը Բարձր Հայք կոչելով, միաժամանակ ծանոթագրում է, որ այն հենց Կարինի երկիրն է։ Վերջին անունը ավելի գործածական է, քան Բարձր Հայքը։

Բարձր Հայքը տարածվում էր Արևմտյան Եփրատի վերին և միջին հոսանքների ավազանում. Նրա մեջ էր մտնում նաև Ճորոխի վերնագավառը։ Նա հյուսիսից շրջապատված էր Պոնտոսով, հյուսիս-արևելքից՝ Տայքով, արևելքից՝ Այրարատով և Տուրուբե-

*րանով, հարավից՝ Չորրորդ Հայքով, իսկ արևմուտքից՝ Փոքր Հայքով։*

*Նրա սահմանները հյուսիսում կազմում էին Անտիպոնտական լեռները, արևելքում՝ Կարգաբազարի, Դևեբոյնի և Կարագյոլի լեռները, հարավում՝ Բյուրակն-Մնձուրյան լեռնաշղթայի հարավային ղարավանդները, իսկ արևմուտքում՝ Գայլ (Կելկիթ) ու Արևմտյան Եփրատ գետերի ջրբաժան բարձրությունները։*

*Բարձր Հայքը համապատասխանում է այժմյան Էրզրումի վիլայեթի հիմնական մասին։*

*Այս երկիրը, բացառությամբ նրա մի քանի շրջանների, ընդհանուր առմամբ ունի հարթ ռելիեֆ։ Նրա մեջ էին մտնում Էրզրումի, Երզնկայի և Կամախի սարահարթերը, ինչպես նաև Շաղագոմքի, Աշկալայի և Դերջանի դաշտերը։ Նշված հովիտները, սարահարթերն ու դաշտերն ունեն բերրի հող, պիտանի են բազմատեսակ մշակույթների համար։ Էրզրումի սարահարթում մեծ տարածում ունեն ճահիճները։*

*Երկրի միջով հոսում է Եփրատը, որի մեջ Բարձր Հայքի սահմաններում թափվում են մի շարք վտակներ։*

*Բարձր Հայքը առանձնապես նշանավոր է իր սառնորակ աղբյուրներով ու հանքային ջրերով։ Դրանց մեջ զգալի թիվ են կազմում տաք աղբյուրները՝ հատկապես Երզնկայի շրջակայքում։*

*Կլիման խիստ է։ Ամռան ու ձմռան ամիսների ջերմաստիճանների տատանումը մեծ է։ Լինում են խիստ ցրտեր, ձմռանը տեղում է առատ ձյուն՝ անանցանելի դարձնելով լեռնային մի շարք ճանապարհներ։ Լինում են բավարար քանակությամբ տեղումներ։ Մի շարք մշակույթներից կարելի է բերք ստանալ առանց արհեստական ոռոգման։ Չնայած կլիմայի խստությանը, Բարձր Հայքի որոշ շրջաններում (Երզնկայի սարահարթում, Դերջանում, Աշկալայում) կարելի է մշակել բամբակ, բրինձ, մրգատու և խաղողի այգիներ։*

*Բարձր Հայքի զանազան մասերում տարածված են բարեխառն գոտու անտառներ, իսկ բարձրադիր գոտում մեծ տարածում ունեն ալպյան տիպի փարթամ արոտավայրերը։*

*Բարձր Հայքը հայտնի է իր վայրի թռչուններով։*

*Այստեղ կան քարածուխ, նավթի, պղնձի, ոսկու և մի քանի ազահանքեր։ Բնական հարստությունների տեսակետից առանձնապես աչքի է ընկնում Էրզրումի շրջանը, որտեղ կան նավթի, քարածուխ և երկաթի հսկայական պաշարներ։ Երկրի բազմաթիվ տեղերում բխում են հանքային աղբյուրներ։*

*Հնագույն ժամանակներում Բարձր Հայքը Տայքի մի մասի և Փոքր Հայքի հետ միասին կազմում էր Հայասա-Ազզի հայկական ցեղային միության տերիտորիան։*

*Հետագա դարերում, երբ աստիճանաբար կազմավորվեց հայ ժողովուրդը և Հայկական լեռնաշխարհի տարբեր մասերում առաջացան պետական երեք միավորումներ (Մեծ Հայք, Փոքր Հայք և Ծոփք), Բարձր Հայքի տերիտորիայի արևմտյան մեծ մասը մտավ Փոքր Հայքի մեջ, իսկ արևելյան փոքր մասը մնաց այստեղ դեռևս գոյություն ունեցող հայկական առանձին ցեղախմբերի ձեռքին։*

*II դարի սկզբներին (մ.թ.ա.) Մեծ Հայքի թագավոր Արտաշես Ա-ն (189—160, մ.թ.ա.) իր թագավորությանն է միացնում Բարձր Հայքի արևելյան մասը, իսկ նրա հարավային շրջանները միացվում են Ծոփքի թագավորությանը։ Տիգրան Բ-ի օրոք (95—56, մ.թ.ա.) Մեծ Հայքի թագավորությանն է միացվում Բարձր Հայքի նաև արևմտյան մասը։*

*Հայաստանի առաջին բաժանմամբ (387 թ.) Բարձր Հայքն անցավ Հռոմեական կայսրությանը։ Այդ ժամանակից սկսած նա կոչվեց Ներքին (*Armenia interior*) կամ Մեծ Հայք (*Armenia magna*)։ Ներքին Հայքը կազմում էր Հռոմեա-բյուզանդական կայսրությանը ենթակա մի կոմսություն։ Այստեղի գերագույն կառավարիչը կոմեսն էր, որը նշանակվում էր կայսեր կողմից և նստում էր Թեոդոսուպոլիս (Կարին) քաղաքում։ Երկիրը մասնատված էր նախարարությունների՝ ֆեոդալական իշխանությունների, որտեղ իշխում էին հայ նախարարները։ Նախարարներն իրենց ներքին կյանքում ինքնուրույն էին. նրանք օգտվում էին ֆեոդալական բոլոր մենաշնորհումներից, ունեին իրենց սեփական զորքը, յուրաքանչյուրն իր գավառի կատարյալ տերն էր և իշխում էր այնտեղ ժառանգական կարգով։ Ներքին Հայքի վարչական այդ վիճակը արմատապես փոխվում է VI դարում։*

*Հուստինիանոս կայսրի «բարեփոխում»-ների հետևանքով Ներքին Հայքի նախարարները նախ զրկվեցին զորք պահելու իրավունքից (528 թ. ռազմական ռեֆորմով), ապա ժառանգական իրավունքներից, իսկ 536 թ. վարչական ռեֆորմով Ներքին Հայքը, որը մինչ այդ ուներ որոշ ինքնավարություն, հայտարարվեց բյուզանդական պրովինցիա և, նրան միացնելով Սև ծովի առափնյա մի շարք շրջաններ՝ կոչվեց Առաջին Հայք պրովինցիա։*

*VII դարում պատմական ասպարեզ իջած Արաբական խալի-*

ֆայությունը, որը կարճ ժամանակամիջոցում դարձավ մի խոշոր աշխարհակալություն, Բյուզանդական կայսրության հետ մղած պատերազմների ընթացքում, Արևելյան Հայաստանից բացի, գրավում է Արևմտյան Հայաստանի մի խոշոր մասը, այդ թվում և Առաջին Հայքի արևելյան շրջանները՝ Կարին գավառն իր շրջակայքով։ Սակայն Կարին գավառը երկար չի մնում խալիֆայության ձեռքին, շուտով նորից միացվում է Բյուզանդական կայսրությանը և նրա կազմում մնում է մինչև սելջուկյան արշավանքները։

XI դարի 70-ական թվականներին սելջուկները գրավում և իրենց աշխարհակալ պետությանն են միացնում Բարձր Հայքը։ XII դարում, երբ սելջուկյան պետությունը մասնատվեց առանձին էմիրությունների, Բարձր Հայքի հարավային մասերը մտնում էին Հարավային Հայաստանում կազմակերպված Շահարմենների էմիրության մեջ, իսկ այդ էմիրությունն իր գոյությունը պահպանեց մինչև մոնղոլական տիրապետության շրջանը։

Բարձր Հայքի բնակչության հիմնական մասը կազմում էին հայերը։ V—VI դարերից սկսած Բարձր Հայքի տերիտորիայում, հատկապես քաղաքներում և բերդերում, որոշ թիվ էին կազմում հույները։ Արաբական տիրապետության ժամանակաշրջանում Աբասյան դինաստիայի խալիֆները Բարձր Հայքի արևելյան շրջաններում, այսինքն նրա այն մասերում, որոնք գրավված էին խալիֆայության կողմից, բնակեցնում են արաբներ և պարսիկներ։

XI—XII դարերում Բարձր Հայք են մուտք գործում նաև սելջուկ-թուրքերը։ Չնայած այդ բոլորին, երկրի բնակչության ճնշող մեծամասնությունը կազմում էին հայերը։

### 3. ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

Բարձր Հայքում կային մի շարք ճանապարհներ, որոնք ունեին թե՛ ստրատեգիական և թե՛ առևտրական նշանակություն։ Այդ ճանապարհներից առանձնապես կարևոր էին հետևյալները. ա) Տրապիզոն—Կարին։ Կարինում այս ճանապարհը բաժանվում էր երկու ճյուղի, որոնցից մեկը Արևելյան Հայաստանի վրայով գնում էր դեպի Պարսկաստան և ավելի արևելք, իսկ մյուսը՝ Մանազկերտ, ապա Վանա լճի արևմտյան ափով՝ դեպի Միջագետք, բ) Կարին—Բագառիճ—Սատաղ—Սեբաստիա և ավելի արևմուտք։ Այս ճանապարհը նկարագրված է Պետինգերյան քարտեզում։ Վերջինս առևտրական նշանակություն ունենալուց բացի, կարևորագույն ռազմական ճանապարհ էր։

Կարին—Տրապիզոն ճանապարհի միջոցով Հայաստանը կապվում էր Սև ծովի առափնյա շրջանների և նավահանգստային առևտրական քաղաքների հետ, իսկ Կարին—Բագառիճ—Սատաղ—Սեբաստիա ճանապարհով Մեծ Հայքը կապվում էր Փոքր Հայքի ու Կապադովկիայի հետ։

Այս գլխավոր ճանապարհներից բացի, Բարձր Հայքն ուներ մի շարք այլ ճանապարհներ։

Թե՛ վերը նշված տարանցիկ գլխավոր ուղիները, թե՛ տեղական նշանակություն ունեցող ճանապարհները անցնում էին գետահովիտներով ու լեռնանցքներով։ Դրանց մի զգալի մասը ձմռանը անանցանելի էր։

## 4. ԳԱՎԱՌՆԵՐԸ

Ըստ Շիրակացու «Աշխարհացույց»-ի, Բարձր Հայքը բաղկացած էր հետևյալ ինը գավառներից. Դարանաղի, Աղյուծ, Մնձուր, Եկեղյաց, Մանանաղի, Դերջան, Սպեր, Շաղագոմք և Կարին։

«Աշխարհացույց»-ում Բարձր Հայքի գավառները թվարկված են Եփրատի հոսանքին հակառակ ուղղությամբ՝ հաջորդական կարգով՝ արևմուտքից արևելք։ Այդ հանգամանքը դյուրացնում է գավառների աշխարհագրական դիրքը ճիշտ որոշելու։

### Դարանաղի

Այս գավառը գտնվում էր Եփրատ գետի այն մասերում, որտեղ գետը թեքվում է դեպի հարավ։ Իր տերիտորիայով նա համապատասխանում է այժմյան Կամախի շրջանին։ Դարանաղի անունը հնագույն ծագում ունի։

Գավառը նշանավոր է իր սառնորակ աղբյուրներով ու հանքային բազմատեսակ ջրերով։ Իրենից ներկայացնում է հրաբխային սարահարթ, որը տեղ-տեղ փոխվում է լեռնային ռելիեֆի։

Դարանաղիում մեծ տարածություն էին գրավում եկեղեցական կալվածքները։

Գավառի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր են Թորդան գյուղը և Անի ամրոցը։

**Թորդան.**—V դարի մեր պատմիչներից ոմանք համարում են

*ավան, իսկ ոմանք էլ՝ գյուղ։ Թորդանում հեթանոսական շրջանում կար մեհյան, և այդ գյուղն իր շրջակայքով պատկանում էր մեհյանին։ Հետագայում, Հայաստանում քրիստոնեությունը պաշտոնական կրոն դառնալուց հետո, Թորդանի մեհյանը վերածվեց քրիստոնեական եկեղեցու, որին տրվեցին նախկին մեհյանի կալվածքները։ Այս գյուղն ու իր շրջակայքը կազմում էին կաթողիկոսական աթոռի սեփականությունը։ Այստեղ են թաղվել Գրիգոր Լուսավորչի տոհմին պատկանող մի քանի կաթողիկոսներ։*

**Անի.**— *Ամրոց և ավան։ Գտնվում էր Եփրատի ձախ ափին։ Հնում հայտնի էր իբրև անմատչելի ամրոց և հոգևոր կենտրոն։ Հեթանոսական շրջանում այստեղ էր գտնվում հայ հեթանոսական գլխավոր աստծու՝ Արամազդի մեհյանը, որի շուրջը տարածվում էին մեհյանի կալվածքները։ Արտաշեսյանների և Արշակունիների թագավորության շրջանում արքունական գանձերի մի մասը պահվում էր այս ամրոցում։ Քրիստոնեությունն ընդունվելուց հետո Անիի մեհյանը կործանվեց, իսկ նրա կալվածքները տրվեցին քրիստոնեական եկեղեցուն։ Ենթադրվում է, որ այնտեղ եղել են բազմաթիվ ձեռագրեր («մատյաններ»), որոնք ոչնչացվել են քրիստոնեական կրոնի սպասարկուների կողմից։*

*Անին IV դարի 60-ական թվականներին կողոպուտի ենթարկվեց Հայաստան արշաված պարսկական զորքերի կողմից, որոնց գլխավորում էր Շապուհ B-ն։ Արշավանքի ընթացքում պարսիկներն ավերեցին նաև Անիում եղած՝ Արշակունի թագավորների գերեզմանոցը (պանթեոնը)։*

*XII և XIII դարերի պատմագիրներն ու նրանց հաջորդները Անին արդեն հիշատակում են Կամախ անունով, որն այժմ էլ գոյություն ունի։ Կամախ անունը երբեմն նույնացնում են Հայաստան երկրի կենտրոն Կումախայի հետ։*

## Եկեղյաց գավառ

*Այս գավառն իր տերիտորիայով համապատասխանում է այժմյան Երզնկայի սարահարթին։*

*Անտիկ պատմագիրների մոտ Եկեղյաց գավառը հիշատակված է Եկելեսենե կամ Ակիլիսենե անունով։ Հնագույն այդ ժամանակներում այս գավառի տերիտորիան անհամեմատ ավելի մեծ էր։ Նա, բացի բուն Եկեղյաց գավառից, իր մեջ ընդգրկում էր նաև Դարանաղի, Մանանաղի և Դերջան գավառները։*

*Գավառի մի զգալի մասը պատկանում էր հեթանոսական տաճարներին, իսկ հետագայում այն անցավ քրիստոնեական եկեղեցուն*[1]*։ Քրիստոնեական եկեղեցին չբավարարվեց միայն հեթանոսական տաճարների ունեցվածքով, այլ ավելի ընդարձակեց իր կալվածքները՝ գավառի մեծ մասը դարձնելով եկեղեցու սեփականություն։*

*Գավառի պատմական նշանավոր վայրերն են Երիզան (կամ Երեզ) և Թիլը։*

Երիզա.— *Համապատասխանում է այժմյան Երզնկա քաղաքին։ Մինչև XI—XII դարերը եղել է ավան, իսկ դրանից հետո, իր նպաստավոր դիրքի շնորհիվ, վեր է աճել քաղաքի։*

*Երիզան հեթանոսության շրջանում հանդիսանում էր Հայաստանի կրոնական խոշորագույն կենտրոններից մեկը։ Այստեղ էր գտնվում Անահիտ աստվածուհուն նվիրված գլխավոր տաճարը, որը հսկայական կալվածքներից բացի, ուներ նաև մեծ թվով անասուններ ու գանձեր։ Տաճարում դրված էր Անահիտի ոսկեձույլ արձանը։ Առաջին դարում (մ. թ. ա.) հռոմեական զորավար Անտոնիոսը դեպի Հայաստան կատարած իր արշավանքի ընթացքում (34 թ. մ.թ.ա.) կողոպտում է Անահիտի տաճարը։ Նրա կողոպուտի մեջ էր նաև Անահիտ աստվածուհու ոսկեձույլ արձանը։*

*Քրիստոնեական կրոնը Հայաստանում իբրև պետական կրոն ընդունվելուց հետո, բազմաթիվ այլ տաճարների հետ միասին, ավերվեց նաև Երիզայում գտնվող Անահիտի տաճարը։ Նրա փոխարեն այստեղ կառուցվեցին քրիստոնեական եկեղեցիներ, որոնք սեփականացրին տաճարապատկան հողերը, գույքը և գանձերը։*

*Հայտնի է, որ մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում, Հայաստանում տնտեսության անկման հետ միասին, ավելի արագ կերպով անկում է ապրում և քաղաքային կյանքը։ Սակայն նույն ժամանակաշրջանում, գրեթե միայն տարանցիկ առևտրի հետ կապված լինելու շնորհիվ, որոշ քաղաքներ բավականաչափ առաջադիմում են։ Այդ քաղաքների շարքում էր և Երզնկան։ Չնայած այն բանին, որ Երզնկան XIII դարի առաջին կեսում երկու անգամ խիստ ավերվել է (1224 թ. և 1242 թ.), այնուամենայնիվ, մեզ հասած տեղեկությունների համաձայն, Լենկթեմուրի արշավանքներին նախորդող շրջանում նա դարձել էր բավական հարուստ և բարեկարգ մի քաղաք։ Այստեղ զարգացել էին առևտուրը (գլխավորապես տա-*

[1] *Դրանով պետք է բացատրել, որ հեթանոսական շրջանում այս գավառը հաճախ կոչվել է «Անահտական գավառ», իսկ հետագայում, երբ հեթանոսության տեղը գրավեց քրիստոնեությունը, այն երբեմն կոչվում էր «Լուսավորչի գավառ»։*

րանցիկ) և արհեստները։ Երզնկան հայտնի էր իր բամբակյա ընտիր գործվածքներով։ Բնակչության թիվը հասնում էր մի քանի տասնյակ հազարի, որի գերակշիռ մասը կազմում էին հայերը։ Նրա մասին Մարկո Պոլոն խոսում է մեծ գովեստով։

Լենկթեմուրն իր 1394—1395 թթ. արշավանքների ընթացքում գրավում և ավերում է նաև Երզնկան։

Երզնկան խիստ սեյսմիկ շրջան է։ Այստեղ տեղի են ունեցել աղետաբեր երկրաշարժեր։

Թիլ.—Մեր մատենագիրներից ոմանք կոչում են գյուղ, իսկ ոմանք էլ՝ ավան։ Հեթանոսական շրջանում այստեղ էր գտնվում Նանեական տաճարը։ Նանեն համարվում էր մայրության աստվածուհի։ Նանեի տաճարն ավերվեց Երիզայի Անահիտի տաճարի հետ միաժամանակ։ Նրա տեղում կառուցվեց մի եկեղեցի։ Խորենացու հիշատակության համաձայն, այստեղ են թաղված Ներսես Ա կաթողիկոսը և Պապ թագավորը (368—374)։ Այս եկեղեցին VII դարում հիմնահատակ կործանվել է։

## Մանանաղի գավառ

Մանանաղի գավառը հարավից շրջապատված էր Բյուրակն-Մունձուրյան լեռնաշղթայի արևելյան հատվածով, իսկ արևմուտքից, արևելքից և հյուսիսից՝ Եկեղյաց, Կարին և Դերջան գավառներով։ Նա գրավում էր Եփրատի ձախակողմյան վտակ Թուզլու գետի ավազանի մի մասը։ Ընդհանուր առմամբ ունի հարթավայրային ռելիեֆ։ Հայտնի է իր արգավանդ հողերով։ Այստեղ կան մի քանի աղահանքեր։

Մանանաղի անունը հնագույն ծագում ունի։

Այս գավառում հիշատակվում են մի քանի վայրեր՝ Սմբատաբերդ, Տիրի բերդաքաղաք, Կաշե և Աղյուս գյուղեր, Բագմաղբյուր կամ Խաչավան և Ջերմայի գյուղաքաղաք։ Դրանցից Տիրի բերդաքաղաքը, Կաշե և Աղյուս գյուղերն ու Բագմաղբյուր ավանը (այստեղ կար մի՛ մեծ ուխտատեղի) XI դարի սկզբում թոնդրակյան շարժման կենտրոններ էին։

## Դերջան

Արևմուտքում սահմանակից էր Եկեղյաց գավառին, իսկ արևելքում՝ Կարինին։ Դերջանը գրավում էր բավականաչափ ընդար-

*ձակ տերիտորիա։ Նա իր մեջ էր ընդգրկում այժմյան Աշկալայի և Դերջանի դաշտերը։*

*Դերջան անունը Տերջան ձևով մինչև հիմա էլ գործածական է։ Տերջանն էրզրումի վիլայեթի մեջ մտնող սանջակներից մեկն է և շատ ավելի մեծ տերիտորիա է գրավում, քան պատմական Դերջանը։*

*Այն, ընդհանուր առմամբ, դաշտային գավառ էր, հայտնի արգավանդ հողերով։ Նրա միջով էին հոսում Եփրատը և նրա ձախակողմյան վտակ Դերջանը (Թուզլու-չայ)։*

*Դերջանի պատմական վայրերից նշանավոր են Բագառիճը և Խլաձորի վանքը։*

**Բագառիճ.**—*Տարբեր պատմիչների երկերում հիշատակված է նաև Բագառինջ և Բագայառիճ ձևով։ Բագառիճը գյուղ էր, բայց որովհետև գտնվում էր տարանցիկ ճանապարհի վրա, բավականաչափ զարգանում ու խոշորանում է՝ վերածվելով ավանի։ Բագառիճը ճանապարհային կարևոր կայան էր Կարին—Տրապիզոն ուղու վրա։ Հեթանոսական շրջանում այստեղ էր գտնվում Միհր աստծուն նվիրված մեհյանը։*

**Խլաձորի կամ ս. Գրիգորի վանք.**—*Ասողիկի հիշատակության համաձայն, այս վանքը կառուցվել է X դարում։ XI դարում նա կողոպտվում և ավերման է ենթարկվում սելջուկների կողմից, սակայն հետագայում նորից բարձրանում է։*

## Սպեր

*Այս գավառի մասին հիշատակությունները գալիս են շատ հնից։*

*Սպերը հռչակված էր ոսկու իր հարուստ հանքերով, որոնք հայտնի էին ու արդյունահանվում էին հնուց ի վեր։ Սպերը տարածվում էր Ճորոխի վերնագավառում։ Մինչև IX դարը նա պատկանում էր հայ Բագրատունիներին։*

*Սպերի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր են Ս մ բ ա տ ա վ ա ն ը (կամ Շեն Սմբատավանը), որը միաժամանակ բերդ էր, և Ս պ ե ր քաղաքը, որն այժմ էլ գոյություն ունի (Թուրքերը կոչում են Իսպիր) ու գտնվում է Ճորոխ գետի ափին։*

## Կարին

*Կարինը («Կարնոյ գավառ») Բարձր Հայքի ամենանշանավոր գավառն էր։*

*Կարին անունը հնագույն ծագում ունի։ Այն, ինչպես և Կարս անունը, կապվում է հնագույն ժամանակներում Հայկական լեռնաշխարհի այս մասերում բնակություն հաստատած կարինիտ ցեղանվան հետ։ Գավառն իր շրջակայքի հետ միասին առաջին անգամ Մեծ Հայքին է միացրել Արտաշես Ա-ն (189—160, մ.թ.ա.)։*

*Կարինը տարածվում էր Եփրատի վերին հոսանքի շրջանում։ Իր տերիտորիայով համընկնում է այժմյան Էրզրումի շրջանին։*

*Գավառն ունի հարթ ռելիեֆ։ Եփրատն այստեղ առաջացրել է լայնատարած ճահիճներ։ Կլիման խիստ է։ Գիշերվա և ցերեկվա, ինչպես և ձմեռվա ու ամառվա ջերմաստիճանների միջև մեծ տատանում կա։ Ձմեռն ամբողջ գավառը թաղվում է ձյան հաստ շերտի տակ։ Տեղումները բավարար են, արհեստական ոռոգման կարիք քիչ է զգացվում։ Հողն ընդհանուր առմամբ բերրի է և երկրագործական բազմաթիվ կուլտուրաների մշակման համար պիտանի։*

*Էրզրումի սարահարթը նշանավոր է քարածխի, երկաթի, նավթի հանքերով և հանքային հորդաբուխ աղբյուրներով։*

*Գավառի պատմա-աշխարհագրական վայրերից են Կարին և Արծն քաղաքները, Արծաթ ու Բլուրս գյուղերը և Հնձուց վանքը, որը կառուցվել է X դարում։*

**Կարին.**—*Հայկական հին քաղաքներից մեկն է։ V դարից հայտնի է դառնում Թեոդոսուպոլիս կամ Թեոդուպոլիս անունով (արաբական աղբյուրներում կոչված է Կալիկալա)։ XI դարից կոչվեց Արզն Ռում, ապա՝ Արզրում, Էրզրում (Էրզերում)։*

*Կարինը սահմանային կետ էր 387 թ. բաժանման գծի վրա, ուներ կարևոր ստրատեգիական դիրք և գտնվում էր հռոմեական բաժնում։ Թեոդոս կայսեր օրոք քաղաքն արագ թափով վերակառուցվում է, նրա շուրջը պաշտպանական նպատակներով փորվում է խոր փոս, կառուցվում է կրկնակի պարիսպ՝ բարձր աշտարակներով, որոնցից ամենամեծը կոչվում է Թեոդոսի անունով։ Վերակառուցվում է քաղաքի միջնաբերդը, որը կրում է Օգոստոս կայսրի անունը։ Վերակառուցված քաղաքը կայսրը իր անունով կոչում է Թեոդոսուպոլիս։*

*Այստեղ պաշտպանական կառուցումներ կատարվում են նաև Հուստինիանոս կայսեր ժամանակ (VI դար)։*

*Թեոդոսուպոլսի դիրքը, պաշտպանական տեսակետից առավե-*

լություններ ունենալու հետ միասին, նպաստավոր էր տնտեսական-առևտրական կապերի համար։ Հին ժամանակներից ի վեր Նրա վրայով էր անցնում Արևելքն Արևմուտքի հետ կապող կարևոր ճանապարհներից մեկը։ Սակայն, լինելով բերդաքաղաք և գտնվելով սկզբում Պարսկաստանի ու Բյուզանդիայի, ապա Արաբական խալիֆայության ու Բյուզանդիայի սահմանագլխին, դարեր շարունակ նա չկարողացավ հասնել միջնադարյան Հայաստանի առաջնակարգ քաղաքների վարգացման մակարդակին։ Նրա ծաղկման շրջանը կարելի է համարել XI—XIII դարերը՝ մինչև մոնղոլական արշավանքները։ Կարին-Թեոդոսուպոլիսը դարեր շարունակ եղել է Արևմտյան Հայաստանի գլխավոր քաղաքը և վարչական կարևոր կենտրոնը։

Արծն.—Հայաստանի միջնադարյան նշանավոր քաղաքների թվին պատկանող այս քաղաքը բարձրացել է IX դարի վերջերից սկսած և իր զարգացման գագաթնակետին է հասել XI դարի առաջին կեսին։

Հիշատակությունների համաձայն, Արծնը, որը գտնվում էր Թեոդոսուպոլսից ոչ հեռու, Եփրատի աջ ափին, ունեցել է 140—150 հազար բնակիչ։ Արծնը պատկանում էր Հայաստանի խոշոր քաղաքների թվին։ Նա պարիսպներ չուներ։ Ազատ քաղաք էր և առևտրի ու արհեստագործության խոշոր կենտրոն։ XI—XIII դարերի մեր մատենագիրները հիացմունքով են խոսում Արծնի մասին։ Նա անհամեմատ ավելի արագ էր զարգանում, քան իր հարևան Թեոդոսուպոլիս բերդաքաղաքը, որին Արծնի բնակիչները անվանում էին Արզն Ռում, այսինքն՝ ռումների (հույների) Արզն (դրանից էլ մնացել է Կարին-Թեոդոսուպոլսի մյուս անունը՝ Արզրում, Էրզրում)։

Սակայն միջնադարյան Հայաստանի ծաղկած այդ քաղաքի պատմությունն անհամեմատ ավելի կարճ է տևում։ Սելջուկները դեպի Հայաստան կատարած իրենց երկրորդ արշավանքի ժամանակ, 1049 թ., մի շարք այլ բնակավայրերի հետ միասին, գրավում և հիմնահատակ ավերում են Արծն քաղաքը։ Դրանից հետո Արծնը այլևս չի վերականգնվում, Նրա բնակիչների մի մասը տեղափոխվում է հարևան Արզրում, մի մասը ոչնչանում է սելջուկների կողմից, իսկ երրորդ մասը դիմում է դեպի այլ շրջաններ։

Բարձր Հայքի մյուս երեք գավառները՝ Աղյուծը, Մնձուրը և Ճաղագոմքը մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում պատմա-աշխարհագրական տեսակետից կարևոր դեր չեն խաղացել։ Այդ պատճառով էլ նրանք շատ քիչ են հիշատակվում պատմագիրների և աշխարհագիրների կողմից։

# ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ

## 1. ԱՆՈՒՆԸ, ԴԻՐՔԸ, ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Չորրորդ Հայք անունը այս երկրի համար գործածության մեջ մտավ 536 թ. Հուստինիանոս կայսրի կատարած վարչական վերափոխությունից հետո, երբ նա Հայաստանի այս մասը վերածեց բյուզանդական պրովինցիայի և կոչեց Չորրորդ Հայք։ Հնում այս երկիրը կոչվում էր Ծոփք։ Ֆեոդալական հարաբերությունների խորացման և Ծոփքի՝ առանձին նախարարությունների մասնատվելու հետևանքով փոխվեց նաև նրա նախկին ընդհանուր անունը (Ծոփք) և երկիրը կոչվեց Նախարարական Հայաստան կամ Սատրապական Հայաստան, որը 536 թ. անվանվեց Չորրորդ Հայք։

Չորրորդ Հայքը տարածվում էր Արևմտյան Տիգրիսի վերին և Արածանիի ստորին հոսանքի շրջաններում։ Հյուսիսում, հյուսիսարևելքում և արևելքում սահմանակից էր Բարձր Հայքին, Տուրուբերանին և Աղձնիքին, հարավում Միջագետքից բաժանված էր Մասիուսի լեռներով, իսկ արևմուտքում Եփրատ գետով սահմանակցվում էր Փոքր Հայքին ու Կապադովկիային։

Չորրորդ Հայքի ռելիեֆը բազմազան է։ Այստեղ կան և՛ բարձր լեռնաշղթաներ, և՛ լեռնային շրջաններ, և՛ գետահովիտներ, և՛ դաշտեր։ Նա ամբողջությամբ ոռոգվում է Արևմտյան Տիգրիսով ու Արածանիով։

Չորրորդ Հայքի կլիման ևս բազմազան է։ Նրա հարավային մասի՝ Հայկական Տավրոսից հարավ ընկած շրջանների կլիման չոր մերձարևադարձային է, մինչդեռ հյուսիսային մասի կլիման բարեխառն է և ստանում է բավարար քանակությամբ տեղումներ։

Չորրորդ Հայքում առանձնապես բերրի հողեր ունեն Խարբերդի և Բալահովիտի դաշտերը։ Հյուսիսային լեռնային շրջաններում մեծ տարածում ունեն անտառները։

Չորրորդ Հայքը նշանավոր է իր նավթի, պղնձի, կապարի և արծաթի հանքավայրերով։ Նրա պղնձի, կապարի և արծաթի հանքերը մարդկությանը հայտնի են եղել հնագույն ժամանակներից և արդյունահանվել են բավական մեծ քանակությամբ։ Գունավոր մետաղների այդ հանքավայրերը հիմնականում գտնվում են Արևմտյան Տիգրիսի ճյուղերից մեկի՝ Արղանա գետի հովտում։

## 2. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

Այս երկիրը նախաուրարտական և ուրարտական շրջանում մտնում էր Նաիրյան երկրների կազմի մեջ և հայտնի էր Ծուփանի

անունով։ Ուրարտական պետության անկման շրջանում նա միացել էր արմենների ցեղային միությանը։

Աքեմենյանների տիրապետության ժամանակաշրջանում (VI—IV դարեր մ.թ.ա.) հայկական այս երկիրը Հայաստանի մի շարք այլ շրջանների հետ միասին կազմում էր Պարսից աշխարհակալության 13-րդ սատրապությունը, որը Քսենոֆոնի մոտ կոչված է Արևմտյան Հայաստան (Արևմտյան Արմենիա)։

Սելևկյանների տիրապետության շրջանում նա հայտնի էր Ծոփք անունով և կազմում էր Սելևկյան պետության սատրապություններից մեկը։

Մեծ Հայքի նման Ծոփքն էլ Մագնեզիայի ճակատամարտից հետո (190 թ. մ. թ. ա.) դարձավ անկախ թագավորություն։

Սակայն Ծոփքի թագավորությունը երկար չի պահպանում իր ինքնուրույն գոյությունը։ Առաջին դարի սկզբներին (94 թ. մ. թ. ա.) Տիգրան Բ-ն այն միացնում է Մեծ Հայքի թագավորությանը, և Ծոփքը հետագա դարերում էլ մնում է Հայկական պետության կազմում՝ որպես սահմանակալ իշխանություն՝ բդեշխություն։

Մեր թվականության չորրորդ դարին վերաբերող գրավոր վկայություններից երևում է, որ այդ ժամանակ Ծոփքը մասնատված էր վեց նախարարությունների (Շահունյաց Ծոփք, Անձիտ, Բալահովիտ, Հաշտյանք, Անգեղտուն և Մեծ Ծոփք)։

IV դարում Սասանյան Պարսկաստանի կողմից Հայաստանի դեմ մղվող զավթողական պատերազմներից օգտվելով, Հռոմեական կայսրությունը գրավում է Ծոփքը։ Սկզբնական շրջանում՝ ավելի քան 170 տարի Հռոմի (ապա Բյուզանդիայի) տիրապետությունն այս երկրում ուներ սոսկ գերիշխանության բնույթ։ Այդ ժամանակաշրջանում Ծոփքը կոչվում էր Նախարարական Հայաստան։ Այստեղ հայկական նախարարությունները պահպանում էին իրենց ֆեոդալական բոլոր իրավունքներն ու մենաշնորհումները։ Կայսրության կողմից կառավարիչ չէր նշանակվում։ Բյուզանդիայի գերիշխանությունն արտահայտվում էր միայն նրանով, որ հայ նախարարները համարվում էին կայսրի վասալները և պարտավոր էին կայսրության սահմաններն այս մասում պաշտպանել Պարսկաստանի հարձակումներից։

Նախարարական Հայաստանի վարչա-քաղաքական վիճակն արմատապես փոխվեց Հուստինիանոս կայսրի օրոք՝ նրա կատարած ռազմական և վարչական ռեֆորմների ու ժառանգական կարգի մասին տված հրովարտակների հետևանքով։ Հուստինիանոսի այդ «բարեփոխումներով» Նախարարական Հայաստանը վերած-

*վեց Բյուզանդական կայսրության պրովինցիայի՝ Չորրորդ Հայք անունով։ VI դարի վերջերին, Մորիկ կայսեր օրոք, Չորրորդ Հայքի որոշ շրջաններ միացվեցին Հյուսիսային Միջագետք պրովինցիային։*

*VII—XI դարերում Չորրորդ Հայքը դարձել էր Բյուզանդական կայսրության և Արաբական խալիֆայության միջև մղվող պատերազմների թատերաբեմ և հաճախ ձեռքից ձեռք էր անցնում։*

*XI-ից մինչև XIII դարի սկզբները Չորրորդ Հայքը մտնում էր Սելջուկյան պետության մեջ, որը XII դարից մասնատված էր առանձին էմիրությունների և սուլթանությունների, իսկ XIII դարում Հայաստանի մյուս մասերի հետ միասին գրավվում է թաթար-մոնղոլների կողմից։*

*Հին ժամանակներում հայերից բացի, որոնք կազմում էին բնակչության ճնշող մեծամասնությունը, Չորրորդ Հայքում բնակվում էին նաև ասորիներ, հույներ, հրեաներ, կապադովկիացիներ և մասամբ պարսիկներ։ VIII դարից այստեղ մուտք են գործում արաբական, իսկ դրանից ավելի ուշ՝ քրդական ցեղեր։ XI—XIV դարերում Չորրորդ Հայքում բնակություն են հաստատում սելջուկթուրքերը և մասամբ էլ թաթար-մոնղոլները։ Չնայած այլ ժողովուրդների ներհոսքին, այնուամենայնիվ, բնակչության մեծամասնությունը կազմում էին հայերը։*

## 3. ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

*Հին Հայաստանի «աշխարհ»-ների մեջ Ծոփքն ամենից վաղ և ամենից սերտ հարաբերություններ ուներ Արևմուտքի և Արևելքի երկրների հետ։*

*Ծոփքի վրայով էր անցնում Դարեհ Ա-ի ժամանակ (522—484, մ.թ.ա.) կառուցված Պարսից «Արքայական» կոչվող ճանապարհը, որն Աքեմենյանների Սուզա մայրաքաղաքը կապում էր Միջերկրական ծովի ափից ոչ հեռու գտնվող Սարդես քաղաքի հետ։*

*Այս ճանապարհի Ամիդ (Դիարբեքիր)—Խարբերդ—Մելիտինե (Մալաթիա) հատվածն անցնում էր Ծոփքի վրայով, որը հետագա դարերում էլ պահպանեց իր առևտրա-տնտեսական նշանակությունը։ Դրանից բացի, Ծոփքում գործում էին մի քանի տեղական ճանապարհներ։ Իբրև ջրային ճանապարհ օգտագործվում էր Արածանիի ստորին հոսանքը։ Սակայն այստեղ նավարկություն էր կատարվում միայն գետի հոսանքին համընթաց ուղղությամբ։*

*Նշված ճանապարհների, հատկապես Պարսից «Արքայական ճանապարհ»-ի վրա Ծոփքում առաջացել էին մի շարք ճանապարհային կայաններ և մի քանի խոշոր առևտրական քաղաքներ (Արշամաշատ, Արկաթիոկերտ), որոնք միաժամանակ արհեստագործության և մշակույթի կարևոր կենտրոններ էին։*

*Չորրորդ Հայքի ճանապարհները VII—XIII դարերում, արաբա-բյուզանդական հարատև պատերազմների, ապա սելջուկյան ու մոնղոլական ավերիչ արշավանքների պատճառով, կորցրել էին իրենց նախկին նշանակությունը։ Այդ դարերում Չորրորդ Հայքի նախկին բարեկարգ քաղաքները, որոնք դարձել էին արհեստագործության ու առևտրի նշանավոր կենտրոններ, մասամբ ավերվում են, մասամբ էլ վեր են ածվում բերդերի։*

## 4. ԳԱՎԱՌՆԵՐԸ

*Չորրորդ Հայքի գավառները հիմնականում համապատասխանում են այնտեղ եղած նախարարություններին։ Նրանցից ամեն մեկը կազմել է մի նախարարություն։*

*Չորրորդ Հայքը ունեցել է տաս գավառ (ըստ «Աշխարհացույց»-ի՝ ութ)։ Դրանք են՝ Խ ո ր ձ յ ա ն, Հ ա շ տ յ ա ն ք, Պ ա ղ ն ա տ ու ն, Բ ա լ ա հ ո վ ի տ, Մ ե ծ Ծ ո փ ք, Ա ն գ ե ղ տ ու ն, Ա ն ձ ի տ, Փ ո ք ր Ծ ո փ ք (կամ Շ ա հ ու ն յ ա ց Ծ ո փ ք), Դ ե գ ի ք և Գ ո ր ե ք։*

### Անձիտ, Անձիթ կամ Հանձիթ

*Այս գավառի անունը ուրարտական ժամանակաշրջանի ծագում ունի։*

*Տարածվում էր Արածանիի ստորին հոսանքի շրջանում՝ առավելապես նրա ձախ կողմում։ Նա տերիտորիալ տեսակետից համապատասխանում է այժմյան Խարբերդի շրջանին, որը հայտնի է իր բերրի հողերով։*

*Գավառի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր են.*

**Մազարա.**—*Քաղաք։ Հավանաբար գտնվում էր Ծովք լճից արևելք գտնվող լեռնանցքների շրջանում, որոնց վրայով անցնում էր «Արքայական ճանապարհ»-ը։ Մազարան հանդիսանում էր այդ ճանապարհի կարևոր կայաններից մեկը և միաժամանակ ամուր բերդ էր։*

**Խարբերդ** *կամ* **Քարբերդ**.—*Համապատասխանում է այժմյան Խարփութին (Էլյազիգ), որը գտնվում է Եփրատի ստորին հոսանքի ձախ կողմում՝ մի փոքրիկ սարահարթի վրա։ Ըստ հիշատակությունների, X—XIII դարերում եղել է ամուր բերդ։*

**Ռանդա** *կամ* **Հռանդեա**.—*Գտնվում էր Արածանիի ձախ ափին՝ Խարբերդից հյուսիս-արևելք։ Այս վայրը հայ ժողովրդի պատմության մեջ նշանավոր է դարձել նրանով, որ 62 թ. հայ-պարթևական միացյալ զորքերը խայտառակ պարտության մատնեցին հռոմեական ստվարաթիվ բանակին, որի գլխավոր հրամանատարն էր Պետոսը։ Պարտություն կրած հռոմեական զորավարը ստիպված է լինում հաշտություն խնդրել։ Նույն վայրում (Հռանդեայում) 63 թ. կնքվում է դաշնագիր, որով փաստորեն Հայաստանում սկսվում է Արշակունիների թագավորության շրջանը։*

*Ծոփքում հիշատակված են մի շարք վայրեր, որոնց հայտնի չէ, թե որ գավառների մեջ են մտել։ Դրանց շարքին է պատկանում նաև Արշամաշատ նշանավոր քաղաքը։ Սա հավանաբար գտնվում էր Հանձիտ գավառում՝ տարանցիկ ճանապարհի վրա։ Եղել է հելլենիստական տիպի քաղաք՝ առևտրի ու արհեստագործության կարևոր կենտրոն։ Արշամաշատն իր ծաղկման շրջանն է ապրել II դարում (մ. թ. ա.)։*

## Մեծ Ծոփք

*Այս գավառի անունը, ինչպես և Շահունյաց Ծոփք անունը, գործածության մեջ է եղել մոտավորապես IV դարից սկսած, երբ նախկին Ծոփքը արդեն մասնատված էր առանձին նախարարությունների՝ գավառների։*

*Մեծ Ծոփքը տարածվում էր Արղանա գետի ավազանում։ Հավանաբար նա իր մեջ էր ընդգրկում նաև Ամիդի (Դիարբեքիրի) շրջանը։ Սակայն VI դարի վերջերին Ամիդի շրջանը Մորիկ կայսեր կողմից բաժանվում և միացվում է Հյուսիսային Միջագետքի պրովինցիային։ Հավանաբար հենց այդ ժամանակ Մեծ Ծոփքի մյուս մասն էլ միացվում է Աղձնիքին՝ կազմելով վերջինիս Նփրկերտ գավառի մի մասը։*

*Մեծ Ծոփքի պատմական վայրերից են.*

**Բնաբեղ**.—*Բերդ։ IV դարի ամուր բերդերից մեկն էր։ Այդ ժամանակ Բնաբեղը պատկանում էր Արշակունյաց արքունիքին, և այստեղ էր պահվում արքունական գանձերի մի մասը։ Բնաբեղի*

դիրքը չի ճշտված, հավանաբար գտնվում էր Արղանա գետի ափին՝ Տավրոսյան լեռների շրջանում։

**Արկաթիոկերտ**.—*Հելլենիզմի դարաշրջանում եղել է Ծոփքի ծաղկած քաղաքներից մեկը։ Դժվար է իմանալ, թե երբ է հիմնադրվել, սակայն ստույգ հայտնի է, որ III դարի վերջերին և II դարի սկզբներին (մ. թ. ա.) արդեն դարձել էր առևտրի և արհեստագործության կենտրոններից մեկը։*

*Քաղաքի աշխարհագրական դիրքը չի ճշտված։ Հավանաբար գտնվում էր Ծոփքի միջով անցնող վերը նշված ճանապարհի վրա։*

**Արղանա կամ Արղնի**.—*Համապատասխանում է այժմյան Արղանամադանին, որը գտնվում է Արղանա գետի ափին՝ Դիարբեքիրից հյուսիս։ Սա այժմ էլ հայտնի է որպես գունավոր մետաղների, առավելապես պղնձի հարուստ հանքատեղի։ Արղանայի պղնձահանքերը շահագործվել են դեռևս ուրարտական ժամանակներից։*

**Ամիդ**.—*Համապատասխանում է այժմյան Դիարբեքիրին, որը գտնվում է Արևմտյան Տիգրիսի աջ ափին, այնտեղ, որտեղ Տիգրիսը շեղվելով հարավային ուղղությունից, հոսում է դեպի արևելք։*

*Բազմաթիվ աշխարհագիրների, պատմագիրների ու գիտնականների մոտ Ամիդ-Դիարբեքիր քաղաքը շփոթված է Տիգրանակերտ-Մարտիրուպոլսի հետ։ Մինչդեռ դրանք բոլորովին այլ քաղաքներ են։ Տիգրանակերտ-Մարտիրուպոլիսը գտնվում էր Ամիդ-Դիարբեքիրից հյուսիս-արևելք՝ Բաթման գետի աջակողմյան վտակ Ֆարկինի (Ֆարկին-սու) ափին։*

## Անգեղտուն

*Անգեղտունը տարածվում էր Մեծ Ծոփքից արևելք՝ Զիբենե գետի վրա ընկած լեռնային շրջանում, Հայկական Տավրոսի հարավահայաց լանջերին։ Ավանդության համաձայն, այս գավառից էր առասպելական Տորքը, որը կոչվում է Տորք Անգեղ։*

*Անգեղտունը պատկանում էր նույնանուն նախարարությանը։ Նրա գլխավոր բերդը Ա ն գ ե ղ ը կամ Ա ն գ ղ ն էր, որը և հանդիսանում էր Անգղյան նախարարների ոստանը։ Ենթադրվում է, որ այս բերդը հնագույն ժամանակների արմենական ցեղային միության կենտրոնն էր։ Անուղղակի մի քանի վկայություններից կարելի է ենթադրել, որ Անգղ բերդը IV դարում որոշ ժամանակ անցել էր Արշակունյաց արքունիքի ձեռքը։*

## Հաշտյանք

*Տարածվում էր Արածանիի աջ կողմում։ Արևելքում սահմանակից էր Տուրուբերանի Տարոն գավառին, իսկ արևմուտքում՝ Չորրորդ Հայքի Խորձյան և Պաղնատուն գավառներին։ Տերիտորիայով Հաշտյանքը համընկնում է այժմյան Ճապաղջրի շրջանին։*

*Հաշտյանքի մի մասը պատկանում էր Արշակունիների կրտսեր ճյուղին։*

*Գավառի պատմա-աշխարհագրական նշանավոր վայրը* Կ թ ա ռ ի ճ *բերդն էր։ Հուստինիանոս կայսրի հրամանի մեջ, ինչպես և բյուզանդական այլ աղբյուրներում, այս բերդը կոչված է Կիթարիզոն։ Հուստինիանոսի ժամանակ Կթառիճը, որպես սահմանային բերդ, հիմնովին վերակառուցվեց և ամրացվեց՝ վերածվելով բյուզանդական կայազորի կայանի։ Հետագայում բերդի շուրջը ծավալվեց նույնանուն ֆեոդալական փոքր քաղաքը։ Բերդի դիրքը շրջապատի նկատմամբ իշխող էր։ Թաղական հեռու տարածությունից ստորգետնյա ջրանցքներով ջուր էր բերված քաղաքի ներսը։ Հեղեղումներից պաշտպանվելու համար այս գավառի բնակավայրերի զգալի մասը հին ժամանակներից ի վեր պարսպապատել են։*

## Խորձյան

*Տարածվում էր այժմյան Խորձյան գետի վերին հոսանքի շրջանում՝ առավելապես նրա աջ կողմում։ Մեծ մասամբ ծածկված էր խիտ անտառներով։ Գրավում էր այժմյան Դերսիմի մի մասը։*

*Խորձյանի պատմական վայրերից նշանավոր է* Ա ր տ ա լ ե ս *բերդը (գրվում է նաև Արտալեսոն ձևով)։*

*Արտալեսը գտնվում էր Հայաստանի առաջին բաժանման գծի վրա։ Հենց այդ էր պատճառը, որ Հուստինիանոսը առանձնակի ուշադրություն դարձրեց նրա ամրացման վրա։*

*Հավանաբար այս գավառում էր գտնվում նաև* Խ ո ղ ա ն *բնակավայրը, որը Ասողիկի և Արիստակես Լաստիվերտցու մոտ հիշատակված է իբրև քաղաք։*

## Պաղնատուն

*Տարածվում էր Խորձյանից հարավ՝ Արածանիի աջ կողմում։ Գավառի նշանավոր վայրը* Պ ա ղ ի ն *բերդն էր, որը գտնվում էր*

այժմ ավերակ դարձած Պաղին գյուղի տեղում։ Պաղինը Հին Հայաստանի ամուր բերդերից մեկն էր։

Այս գավառից էր Հովսեփը, որը պատկանում էր Սահակի և Մեսրոպ Մաշտոցի կողմից արտասահման կրթության ուղարկված «առաջին թարգմանիչների» թվին։

### Բալահովիտ

Տերիտորիայով Բալահովիտ գավառը համընկնում է այժմյան Բալուի շրջանին, որը տարածվում է Արածանիի հովտում՝ Ճապաղջրի և Խարբերդի միջև։ Դաշտային գավառ է։ Ունի արգավանդ հողեր։ Գավառի և նրա կենտրոնի՝ Բալու քաղաքի անունը կապված է այստեղ հնագույն ժամանակներում բնակված բալ կամ բաղ ցեղի անվան հետ։

Գավառի նշանավոր վայրը Բալու բերդն էր, որն այժմ էլ գոյություն ունի իբրև փոքր քաղաք և գտնվում է Արածանիի աջ ափին։

Ծորրորդ Հայքի մյուս երեք գավառները՝ Փոքր կամ Շահունյաց Ծոփք, Դեգիքը և Գորեքը Հին Հայաստանի քաղաքական և տնտեսական կյանքում ավելի աննշան դեր են խաղացել։ Անգամ հայտնի չէ Դեգիքի և Գորեքի դիրքը։ Դրանց մեջ անհամեմատ ավելի հաճախ է հիշատակվում Շահունյաց Ծոփքի անունը։ Վերջինս համապատասխանում է այժմյան Չմշկածագի շրջանին՝ Խարբերդից հյուսիս։

## ԱՂՁՆԻՔ

### 1. ԱՆՈՒՆԸ, ԴԻՐՔԸ, ՍԱՀՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

Աղձնիք անունը նախահայկական ծագում ունի։ Ուրարտական ժամանակաշրջանում Աղձնիքը մտնում էր Նաիրյան երկրի մեջ և հայտնի էր Ալզի (ըստ ասորեստանյան արձանագրությունների) անունով։ Հենց այդ անունն էլ Աղձնիք ձևով գործածական է դարձել հայերի մոտ։

Աղձնիքի դիրքը որոշված է բավական ճշտությամբ։ Նա տարածվում էր Ծորրորդ Հայքի, Տուրուբերանի, Մոկքի և Միջագետքի միջև՝ Արևմտյան Տիգրիսի միջին և ստորին հոսանքների ավազանում։ Նրա սահմանները կազմում էին հյուսիսում Հայկական Տավրոս լեռները, արևելքում՝ Բաղեշ և Արևելյան Տիգրիս գետերի

ջրբաժան լեռնաշղթաները, հարավում՝ Մասիուս լեռները (Տիգրիսից հարավ), իսկ արևմուտքում՝ Բաթմանա և Ջիբենե գետերի ջրբաժան բարձրությունները։

Աղձնիքը ռելիեֆով և աշխարհագրական մյուս պայմաններով բաժանվում է իրարից խիստ կերպով տարբերվող երկու մասերի՝ հյուսիսային և հարավային։ Հյուսիսային շրջանները ընկած են Հայկական Տավրոսի վրա և ունեն խիստ լեռնային ռելիեֆ ու կլիմայական դաժան պայմաններ։ Այստեղ ձմեռը տևում է ավելի քան յոթ ամիս։ Բոլոր ճանապարհները, առանց բացառության, փակվում են, լինում են դաժան բքեր։

Դրան հակառակ, երկրի հարավային մասն ունի հարթավայրային ռելիեֆ և տաք կլիմա։ Սակայն այստեղ էլ տեղումների աննշան լինելը պահանջում է արհեստական ոռոգում, մի բան, որն զգացել են դեռևս ուրարտացիները և կառուցել են ոռոգման առուներ ու ջրամբարներ։ Արհեստական ոռոգման շնորհիվ այստեղ կարելի է մշակել մերձարևադարձային շատ կուլտուրաներ։

Աղձնիքը հարուստ է գետերով և աղբյուրներով։ Հայկական Տավրոսի հարավհայաց լանջերից սկսվող և Արևմտյան Տիգրիսի մեջ թափվող այդ գետերի թիվը հասնում է մի քանի տասնյակի։

Աղձնիքը հնուց ի վեր հայտնի է եղել որպես հարուստ երկիր։ Այստեղ հիշատակվում է նավթ (Արևմտյան Տիգրիսից հարավ ընկած շրջաններում), երկաթ և կապար։ Երկաթի ու կապարի գլխավոր հանքավայրը գտնվում էր Վանա լճի հարավային ափին՝ Ընձաքիսար լեռան մոտ և կոչվում էր «Երկաթահատ» կամ «Կապարահատ»։ Այս հանքավայրերի շրջանում Աղձնիքը սահմանակցվում էր Վասպուրականի Ռշտունիք գավառին։

## 2. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

Աղձնիքը հայկական հնագույն երկրներից մեկն էր։ Երբ Մեծ Հայքում կազմավորվեց հայկական անկախ պետություն, Աղձնիքը սկզբից ևեթ մտավ նրա կազմի մեջ։

Աղձնիքի դերն ու նշանակությունը մեծացավ հատկապես Տիգրան Բ-ի օրոք (95—56, մ.թ.ա.), երբ այստեղ կառուցվեց Տիգրանակերտ մայրաքաղաքը։ Մայրաքաղաքի կառուցումից հետո ամբողջ Աղձնիքը հայտարարվեց արքունական սեփականություն և դարձավ բդեշխություն, որպիսին մնաց նաև Արշակունիների թագավորության շրջանում։

Ֆեոդալական հարաբերությունների ձևավորման շնորհիվ Աղձնիքի բդեշխներն աստիճանաբար դառնում են խոշոր հայրենատեր կալվածատերեր։ IV դարի ընթացքում նրանք, մի քանի անգամ ապստամբություն բարձրացնելով, փորձում են անջատվել հայկական կենտրոնական պետությունից։ Սակայն նրանց այդ բոլոր փորձերը, մինչև Պապ թագավորի գահակալության շրջանը (368—374), ապարդյուն են անցնում։

Հայաստանի առաջին բաժանմամբ Աղձնիքը, Արևելյան Հայաստանի մյուս մասերի հետ, մտավ պարսկական բաժնի մեջ և իբրև «շահր» միացվեց Սասանյան Պարսկաստանի Արևմտյան քուստակին։ 591 թ. բաժանմամբ Աղձնիքը միացվեց Բյուզանդական կայսրությանը և նրա կազմում մնաց մինչև արաբական արշավանքները։ Արաբները VII դարում այն գրավեցին և միացրին իրենց աշխարհակալ պետությանը։ Արաբական խալիֆայության՝ առանձին էմիրությունների մասնատվելու շրջանում՝ VIII դարի վերջերից, Աղձնիքի արաբական կառավարիչները, Աղձնիքի հետ միացնելով շրջակա մի շարք շրջաններ, այն դարձնում են խալիֆայությունից կիսանկախ վիճակ ունեցող իշխանություն՝ էմիրություն։ Աղձնիքի էմիրությունը IX դարում, մասամբ նաև X դարի սկզբներին, վտանգ էր սպառնում Հայաստանի հարավային շրջաններին, հատկապես Տարոնի Բագրատունիների իշխանությանը։

Սելջուկյան տիրապետության ժամանակաշրջանում Աղձնիքը մտնում էր էյուբյանների պետության մեջ, որը կազմավորվել էր սելջուկների աշխարհակալ պետության քայքայման շրջանում (XII դարի սկզբներին)։ Այդ պետությունը, Աղձնիքից բացի, գրավում էր նաև ամբողջ Հյուսիսային Միջագետքը։

Աղձնիքի բնակչությունը, Չորրորդ Հայքի բնակչության նման, բազմալեզու էր։ Հնում, հայերից բացի, այստեղ բնակվում էին նաև ասորիներ, հույներ, հրեաներ, մասամբ պարսիկներ և այլ ժողովուրդներ։ VII—VIII դարերից Աղձնիք են մուտք գործում արաբներ և քրդեր, իսկ XI դարից՝ սելջուկ-թուրքերը։ Չնայած դրան, բնակչության մեծ մասը շարունակում էին մնալ հայերը։ Պետք է նշել, որ դեռևս արաբական տիրապետության շրջանում Աղձնիքի աշխարհագրական անունները մեծ մասամբ օտարացվում են։ Արաբները կամայական կերպով հայկական անունները հանում են գործածությունից կամ հիմնովին աղավաղում։

Ըստ «Աշխարհացոյց»-ի, Աղձնիքը բաղկացած էր 10 գավառից։ Դրանք են՝ Նփրկերտ, Արզն կամ Արձն, Քեղ, Կեթիկ, Տատիկ, Ազնվաց ձոր, Սերխեթք, Գզեղ, Սալանձոր և Սասուն կամ Սանասուն։

Աղձնիքի գավառների մեջ անհամեմատ ավելի նշանավոր են Նփրկերտը, Արզնը, Սանասունը և Սերխեթքը։

## Նփրկերտ

Նփրկերտ գավառը տարածվում էր Քաղրիդ (Բաթման-սու) գետի միջին և ստորին հոսանքի վրա ընկած շրջաններում։ Հարավում, հավանաբար, նա իր մեջ է ընդգրկել նաև Տիգրիսից հարավ ընկած որոշ շրջաններ։ Ենթադրվում է, որ Նփրկերտը հնագույն շրջանում՝ մինչև Տիգրան Բ-ի գահակալությունը, մտնում էր Ծոփքի մեջ։ Կարելի է ենթադրել, որ Տիգրան Բ-ն 94 թ. (մ. թ. ա.) Մեծ Հայքին միացնելով Ծոփքի թագավորությունը, դրա հետ միասին վերջինից անջատել և անմիջականորեն Մեծ Հայքին է միացրել որոշ շրջաններ, որոնց թվում և Նփրկերտը։

Նփրկերտը տաք և չոր կլիմայով, անտառազուրկ, հարթավայրային գավառ է։ Որոշ չափով լեռնային ռելիեֆ ունի նրա հյուսիսային մի փոքր մասը միայն, որտեղ ձգվում են Իլիջայի ու բարձր լեռները։

Նփրկերտի պատմական վայրերից են՝ Տիգրանակերտը, Թուխը և Կլեսուրը։

**Տիգրանակերտ.**— Հին Հայաստանի բարեկարգ այս մայրաքաղաքը կառուցվել է 70-ական թվականներին (մ. թ. ա.)՝ Տիգրան Բ-ի անմիջական նախաձեռնությամբ։ Նոր կառուցված այդ մայրաքաղաքը Տիգրան Բ-ի անունով կոչվել է Տիգրանակերտ։

Հետագայում այս քաղաքը կրել է և այլ անուններ՝ Մարտիրոսուպոլիս, Մարտիրուպոլիս, Նփրկերտ, Մուֆարկին։

Տիգրանակերտը գտնվում էր Բաթմանա գետի աջակողմյան փոքրիկ վտակներից մեկի՝ Ֆարկին-սուի վրա, նրա գետաբերանից ոչ հեռու, այժմյան Ֆարկին անունով գյուղի մոտ։ Այս գյուղում մինչև օրս էլ պահպանված են Հայաստանի վաղեմի մայրաքաղաքի ավերակները, նրա խարխլված պարիսպներն ու աշտարակները և առանձին խոշոր շինությունների հետքերը։

*Տիգրանակերտի դիրքը նրա կառուցման ժամանակաշրջանում նպաստավոր էր թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական և թե՛ ստրատեգիական տեսակետից։ Նա շատ մոտ էր գտնվում «Արքայական ճանապարհին» և հեշտությամբ կարող էր կապվել ինչպես Միջագետքի, այնպես էլ Արևելքի ու Արևմուտքի երկրների հետ, մի հանգամանք, որը տնտեսական ու կուլտուրական բարերար ազդեցություն պետք է ունենար Տիգրանակերտի զարգացման վրա։ Քաղաքական առումով, նրա դիրքը Արտաշատի համեմատությամբ ուներ այն առավելությունը, որ Տիգրան Բ-ի օրոք այս քաղաքը գտնվում էր Հայկական պետության գրեթե կենտրոնում։ Տիգրանակերտը գտնվում էր բարձրադիր տեղում, հյուսիս-արևելքից, հյուսիսից և հյուսիս-արևմուտքից նա պաշտպանված էր Իլիջայի լեռներով, իսկ հարավի նկատմամբ ուներ իշխող դիրք։*

*Տիգրանակերտը երեք կարևոր ճանապարհների խաչմերուկ էր։ Այդ ճանապարհներից մեկը Տիգրանակերտը միացնում էր Պարսից «Արքայական» կոչված ճանապարհի հետ, երկրորդը Տիգրանակերտից Արտաշատ գնացող բարեկարգ ճանապարհն էր, իսկ երրորդը դուրս գալով Տիգրանակերտից՝ այժմյան Ներջիկի և Շենիկի շրջաններով գնում էր դեպի Արածանիի հովիտը։ Դրանցից վերջինն ուներ առավելապես ստրատեգիական նշանակություն։*

*Տիգրանակերտն իր զարգացման գագաթնակետին է հասել հենց իր հիմնադրի՝ Տիգրան Բ-ի ժամանակ։ Չնայած այն բանին, որ Լուկուլլոսը 69 թ. (մ. թ. ա.) գրավեց և մասնակիորեն ավերեց նորակառույց քաղաքը, այնուամենայնիվ, դրանով չընդհատվեց Տիգրանակերտի զարգացումը։ Նրա կառուցումն ու զարգացումը շարունակվեց նաև Պոմպեոսի արշավանքից հետո (65 թ. մ. թ. ա.)։*

*Տիգրանակերտը եղել է հելլենիստական տիպի քաղաք. նրա բնակչության ճնշող մեծամասնությունը, չհաշված զինվորական ծառայողները և վարչական պաշտոնյաները, զբաղվել է արհեստագործությամբ և առևտրով։ Երկրագործությամբ այստեղ, հավանաբար, շատ քիչ են զբաղվել, այնպես որ բնակչության թվի համեմատ քաղաքը բռնել է ավելի փոքր տարածություն։*

*Տիգրանակերտի բնակչության թվի վերաբերյալ ուղղակի վկայություններ չկան, սակայն կարելի է առանց տարակուսանքի ասել, որ քաղաքի ծաղկման շրջանում այդ թիվը հասել է ավելի քան 100 000-ի։*

*Բնակչությունն ունեցել է խառը ազգային կազմ։ Այստեղ հայերի հետ միասին բնակվում էին նաև հրեաներ, հույներ, ասորիներ, կապադովկիացիներ և այլք։ Դրանց ճնշող մեծամասնությու-*

նը պատկանում էր այն գերիների թվին, որոնց 80—70-ական թվականներին (մ. թ. ա.) Կապադովկիայում, Արևելյան Կիլիկիայում, Սիրիայում, Միջագետքում, Պաղեստինում և Փյունիկիայում վարած պատերազմների ընթացքում Տիգրան Բ-ն գերել ու տեղափոխել էր Հայաստան և բնակեցրել նրա տարբեր մասերում։

Տիգրանակերտում տեղի ունեցած քաղաքական անցքերի առնչությամբ նրա մասին բավականաչափ տեղեկություններ են տալիս հռոմեական և հունական մատենագիրները։

Նրանց նկարագրությունների համաձայն, Տիգրանակերտը շրջապատված էր 50 կանգուն բարձրություն ունեցող պարիսպով։ Այդ պարիսպը այնքան լայն է եղել, որ նրա մեջ շինել են պահեստներ և ձիերի համար ախոռներ։ Քաղաքի ներսում գտնվում էր միջնաբերդը, իսկ պարիսպներից դուրս Տիգրանը կառուցել էր ավել իր փառահեղ պալատը, որը շրջապատված էր պարտեզներով, որսարաններով, որսատեղիներով և ձկնավազաններով[1]։

Տիգրանակերտը ոչ միայն երկրի մայրաքաղաքը, արհեստագործության ու առևտրի կենտրոնն էր, այլև անտիկ շրջանի հայ մշակույթի օջախներից մեկը։ Տիգրանակերտն ունեցել է իր մշտական գործող թատրոնը, որի համար զանազան տեղերից հրավիրված են եղել դերասաններ։ Թատրոնի շենքը եղել է շատ շքեղ։ Նրա հետքերը պահպանվել են մինչև մեր օրերը։

Տիգրան Բ-ից հետո Տիգրանակերտն այլևս այնպիսի բուռն զարգացում չի ունենում։ Դա բացատրվում է ոչ այնքան նրանով, որ Հայաստանի քաղաքական կենտրոնը նորից տեղափոխվում է Արտաշատ, այլ հատկապես նրանով, որ Հռոմի ու Պարսկաստանի միջև պարբերաբար մղվող պատերազմների թատերաբեմ էին դարձել ոչ միայն Հյուսիսային Միջագետքը, այլև Հայաստանի հարավ-արևմտյան շրջանները։ Տիգրանակերտն ավելի աննպաստ պայմանների մեջ ընկավ հատկապես Հայաստանի առաջին բաժանումից հետո (387 թ.)։ Նա գտնվում էր այս բաժանման սահմանային գծի վրա՝ հռոմեական մասում։ Լինելով սահմանային քաղաք, հռոմեացիների կողմից այն վեր է ածվում բերդաքաղաքի։ Այդ ժամանակներից սկսած գործածական է դառնում նրա մյուս անունը՝ Մարտիրուպոլիսը (կամ Մարտիրոսուպոլիս)։ Հետագա դարերում նա է՛լ ավելի է կորցնում իր տնտեսական նշանակությունը։ Կարծում ենք, որ Տիգրանակերտի անկման պատճառը միայն աննպաստ քաղաքական պայմանները չէին, որոնց մասին նշվեց, այլ

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, Երևան, 1943, էջ 167—168։

նաև Հայաստանի ներքին տնտեսական հարաբերությունները։ Ինչպես հայտնի է, Հայաստանը III—IV դարերից թևակոխում է ֆեոդալիզմի շրջանը, մի ժամանակաշրջան, որի համար հատուկ չեն հելլենիստական տիպի քաղաքները։ Եվ իրոք, փաստերը ցույց են տալիս, որ ոչ միայն Տիգրանակերտը, այլև մյուս հելլենիստական քաղաքները, որոնք առաջացել էին նախորդ ժամանակաշրջանում և հանդիսանում էին առևտրի ու արհեստագործության կենտրոններ, ֆեոդալական ինքնաբավ տնտեսության պայմաններում կորցնում են իրենց նախկին նշանակությունը։ Նրանց մի մասը վեր է ածվում ֆեոդալական ամրոցների, մի մասն էլ՝ բերդաքաղաքների։ Զարգացման այդպիսի ուղիով է ընթացել ոչ միայն Տիգրանակերտը, այլ նաև Արտաշատը, Երվանդաշատը, Զարիշատը, Զարեհավանը, Արշամաշատը, Արկաթիոկերտը և հելլենիստական տիպի մյուս քաղաքները։

Արաբական տիրապետության շրջանում Տիգրանակերտը, որն արդեն կոչվում էր Մուաֆարկին (կամ Ֆարկին), նորից աշխուժանում է։ Սակայն դա մասնակի աշխուժացում էր։ Նա այլևս չհասավ իր նախկին զարգացման մակարդակին։ XI դարից սկսած աստիճանաբար կորցնելով իր նշանակությունը, այն վերածվեց անշուք մի բնակավայրի։

**Թուխ.**— Հիշատակվում է իբրև ճակատամարտի վայր։ Այդ ճակատամարտը տեղի է ունեցել 896 թ.՝ հայկական զորքի և Հյուսիսային Միջագետքի ու Աղձնիքի արաբական Ահմադ էմիրի զորքերի միջև։

Թուխը այն գետի անունն է, որի ափին տեղի ունեցավ այդ ճակատամարտը։ Այժմյան աշխարհագրությանն անծանոթ է Թուխ անունը։ Հավանաբար նա Բիթլիս գետի աջակողմյան փոքրիկ վտակներից մեկի անունն էր։

**Կլեսուր.**—Լեռնանցք է՝ Ջիբենե գետի ակունքների շրջանում։ Կլեսուրը գտնվում էր Հայաստանի առաջին բաժանման սահմանի վրա՝ հռոմեական մասում։ Ուներ ստրատեգիական մեծ նշանակություն։ Սահմանի այս հատվածում պարսկական մասից դեպի հռոմեական մասը տանող միակ ճանապարհը անցնում էր Կլեսուրով։ Այս պատճառով էլ հռոմեացիների կողմից ամրացվելով, Կլեսուրը վեր էր ածվել բերդի։

## Արզն

Արզն գավառն ընկած էր Նփրկերտից հարավ-արևելք։ Ամբողջապես իրենից ներկայացնում էր մի հարթություն, որը հոչակված

էր իր արգավանդ հողերով։ Արզն գավառը երկար ժամանակ (հատկապես IV դարում մ. թ.) դարձել էր կռվախնձոր Հռոմի և Պարսկաստանի միջև։ Նա այդ պատերազմների ժամանակ բազմիցս ձեռքից ձեռք է անցել։

Արզնը/հայտնի էր նույնանուն (Արզն) ոչ մեծ քաղաքով, որն այժմ էլ գոյություն ունի և կոչվում է Հազրու։

## Սերխեթք

Ընկած էր Բիթլիս գետի ստորին հոսանքի շրջանում՝ Արզն գավառից անմիջապես արևելք։ Իր տարածությամբ Սերխեթքը Նփրկերտից և Արզնից անհամեմատ փոքր էր։ Վերջիններիս նման նա ևս գտնվում էր Աղձնիքի դաշտային մասում։ Պատմագիրների և աշխարհագիրների կողմից հազվադեպ է հիշատակված։ Այս գավառում էր գտնվում Սղերթ կամ Սերխեթ փոքրիկ քաղաքը, որը միաժամանակ ճանապարհային կայան էր։ Սղերթն այժմ էլ գոյություն ունի որպես բնակավայր և գտնվում է Արևելյան ու Արևմտյան Տիգրիսի միախառնման տեղից ոչ հեռու, Բիթլիս գետի ստորին հոսանքի շրջանում։

## Սանասուն կամ Սասուն

Այս գավառի մասին եղած հիշատակությունները սկսվում են VI դարից (մ. թ.)։ Սկզբնական շրջանում հիշատակվում է Սանասուն անվամբ, իսկ հետագայում՝ Սասուն։

Ըստ ավանդության, այս գավառն իր անունն ստացել է Ասորեստանի Սենեքերիմ թագավորի որդու՝ Սանասարի անունից, որը, ավանդության համաձայն, իր եղբոր հետ փախչելով այստեղ, կառուցել է բերդ և ամեն կողմից այստեղ է հավաքել բազմաթիվ բնակիչներ։

Սասունը տարածվում էր Հայկական Տավրոս լեռների վրա, այդ պատճառով էլ մեր պատմագիրները նրա բնակիչներին երբեմն անվանում են ոչ թե սասունցիներ, այլ՝ «բնակիչք Տորոս լերին»։ Սասունի տերիտորիայի մեծ մասն ընկած էր Բաթմանա գետի վերին հոսանքում։

Արևելքում Սասունին սահմանակից էր Խութը (Խույթ), որը

հում կազմում էր Սասունի բաղկացուցիչ մասը։ Միջին դարերում Խութն ու Սասունը տերիտորիալ միևնույն հասկացությունն էին։

Սասունը խիստ լեռնային գավառ է։ Կլիմայական պայմանները խիստ են։ Ձմեռը տևում է ավելի քան յոթ ամիս։ Տարվա այդ եղանակին տեղում է առատ ձյուն, և երկիրը ծածկվում է ձյան հաստ շերտի տակ։ Լինում են սաստիկ բքեր, որոնց պատճառով նույնիսկ շատ մոտիկ գտնվող բնակավայրերի միջև միանգամայն ընդհատվում է հաղորդակցությունը։ Ունի ժլատ բնություն։ Մշակելի հողերը քիչ են, ընդհատական, մեծ տարածություն են գրավում պաշտամները։ Սասունի բնակլիմայական պայմանները խիստ հակադիր են։ Այստեղ կարելի է հանդիպել մերձարևադարձայինից (գետերի հովիտներում) մինչև լեռնային ցուրտ կլիմայական գոտիների։

Բնակչության հիմնական զբաղմունքը եղել է անասնապահությունը, որսորդությունը և երկրագործությունը։ Հացահատիկներից այստեղ առավելապես մշակվել են գարի, տարեկան և կորեկ։

Երկրի դաժան բնությունը, դժվարին պայմաններում իրենց գոյության համար անհրաժեշտ միջոցներ հայթայթելու քրտնաջան աշխատանքը և ժլատ բնության դեմ մղվող պայքարն ու որսորդական զբաղմունքը սասունցիների մեջ պատվաստել էին ճարպկություն, քաջություն և անվեհերություն։ Նրանք վարժ էին ռազմական արվեստի մեջ։

Սասունի բնակիչները դարեր շարունակ զինված պայքար են մղել ոչ միայն իրենց գավառի, այլև, Հայաստանի մյուս մասերի բնակիչների հետ միասին՝ ամբողջ երկրի անկախության համար։

Սասունցիները հայրենիքի անկախության համար մղվող պայքարի հոյակապ օրինակ ցույց տվեցին 850—855 թթ. ժողովրդական ապստամբության ժամանակ, որն ուղղված էր Արաբական խալիֆայության դեմ։ Նրանք վաղ գարնանը, խութեցի Հովնանի գլխավորությամբ իջնելով Սասունի լեռներից, իրենց հանկարծակի հարձակմամբ գլխովին ջախջախեցին արաբական Յուսուֆ զորավարի ավարառու ստվարաթիվ բանակը։

Այս ապստամբությունն իր վառ արտացոլումն է գտել «Սասունցի Դավիթ» ժողովրդական հերոսական էպոսում, որի հիմնական սյուժեն հայ ժողովրդի մղած դարավոր պայքարն է արաբական տիրապետության դեմ։

IX—X դարերում, հավանաբար, Սասունը ենթարկվում էր Տարոնի Բագրատունիների իշխանությանը, սակայն ուներ և իր տե-

ղական իշխանները, որոնք, ինչպես ենթադրվում է, հանդիսանում էին Մամիկոնյանների մնացորդները։

X—XI դարերին վերաբերող հիշատակությունները ցույց են տալիս, որ Սասունն այդ ժամանակ եղել է ռազմական մի հզոր իշխանություն։ Մատթեոս Ուռհայեցու մի վկայության մեջ ասված է, որ X դարում Թոռնիկ զորավարը Սասունից բյուզանդացիների դեմ դուրս է բերել 50 000 հետևակ զինվոր և 6 000 հեծյալ[1]։

Սելջուկյան տիրապետության շրջանում Սասունի իշխանությունը պահպանեց իր ինքնուրույնությունը։

## ՄՈԿՔ

Մոկք անունը ունի էթնիկական ծագում։

Մոկքը տարածվում էր Աղձնիքից արևելք՝ Հայկական Տավրոսի արևելյան հատվածի ջրբաժան բարձրությունների և Արևելյան Տիգրիսի միջև։ Նա «Աշխարհացույց»-ում նկարագրված Մեծ Հայքի ամենափոքր «աշխարհ»-ն էր։

Մոկքը խիստ լեռնային երկիր է, միայն տեղ-տեղ գետերի ընթացքով ձգված են նեղ և երկար հովիտներ։ Երկիրը ստանում է բավարար քանակությամբ մթնոլորտային տեղումներ։ Նրա մեծ մասը ծածկված է սաղարթավոր փարթամ անտառներով։ Ունի բազմաթիվ գետեր, որոնք, առանց բացառության, սկսվում են Հայկական Տավրոսից և թափվում Արևելյան Տիգրիսը՝ աջ կողմից։ Այդ գետերի ուղղությամբ ձգվող հովիտներն ունեն արգավանդ հողեր և մեղմ կլիմա։ Այստեղ հաջող կերպով աճում են երկրագործական մի շարք կուլտուրաներ։ Երկրում կան գունավոր մետաղների հանքեր։

Մոկքում մեծ քաղաքներ չեն եղել։ Բնակչության գերազանց մեծամասնությունը կազմում էին հայերը։

Երբ կազմավորվեց հայկական ինքնուրույն թագավորությունը, Մոկքը սկզբից ևեթ մտավ Մեծ Հայքի մեջ։ IV դարից սկսած Մոկքն ամբողջությամբ կազմում էր առանձին նախարարություն։ Այստեղ իշխում էին Մոկաց իշխանները։

Հայաստանի թվ՝ 387 թ. և թվ՝ 591 թ. բաժանումների ժամանակ Մոկքը մնաց Հայաստանի մարզպանության կազմում։ Հետագայում, արաբական տիրապետության ժամանակաշրջանում, Մոկքի իշխանությունը ապրում է թուլացման շրջան։ Դրա հետե-

[1] Տե՛ս Մ. Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 207։

վանքով էլ Վասպուրականում իշխող Արծրունիները, որոնք գնալով հզորանում էին, մի շարք այլ գավառների հետ միասին, իրենց են ենթարկում նաև Մոկաց իշխանությունը։ X դարի սկզբներին, երբ կազմվեց Վասպուրականի ֆեոդալական թագավորությունը, Մոկքն ամբողջությամբ մտավ նրա կազմի մեջ՝ հանդիսանալով այդ թագավորության վասալ իշխանություններից մեկը։

VII դարի «Աշխարհացոյց»-ում Մոկքի տակ, արևմուտքից արևելք ուղղությամբ, հիշատակվում է 9 գավառ։ Դրանք են՝ Իշայր, Մյուս Իշայր, Իշուց գավառ, Առվենից ձոր, Միջա, Առանձնակ Մոկք, Արքայից գավառ, Արգաստովիտ և Ջերմաձոր։

Մոկքի գավառների մեջ պատմական տեսակետից համեմատաբար նշանավոր են Առանձնակ Մոկքն ու Ջերմաձորը։ Դրանցից առաջինը գտնվում էր Որբ գետի (այժմ կոչվում է Մոկուս-սու) վրա, իսկ երկրորդը համապատասխանում է հենց այժմյան Ջերմաձորի շրջանին, որը եղել է Մոկքի ամենաարևելյան գավառը։ Ջերմաձորում էր գտնվում Ջրել ամրոցը (այժմյան Մոկուս քաղաքից արևելք)։ Իսկ Առանձնակ Մոկքը հայտնի էր իր Մոկք բերդով և Ամենափրկիչ վանքով, որը ամենայն հավանականությամբ եղել է հենց Մոկք բերդի մոտ՝ այժմյան Մոկուս քաղաքի տեղում։ Մոկք բերդը Մոկաց իշխանների ոստանն էր։

## ԿՈՐՃԵՔ

Այս երկիրը «Աշխարհացոյց»-ի մեջ և մի քանի պատմագիրների մոտ կոչված է Կորճեք (Կորճայք)։ Սակայն ավելի հաճախ հիշատակվում է իր ամենանշանավոր գավառի՝ Կորդուքի անունով։ Վերջին անունը նրա համար ավելի գործածական է եղել, քան Կորճեքը։

Գիտնականներից ոմանք, նկատի ունենալով Կորդուք և Քրդստան անունների նմանությունն ու տերիտորիալ տեսակետից Կորդուքի և այժմյան Քրդստանի նույնությունը, ենթադրում են, որ վերջինս կապված է Կորդուք անվան հետ և նախկին կորդվացիներն էլ իբր հանդիսացել են այժմյան քրդերի նախահայրերը։ Ուսումնասիրողների մյուս մասը մերժում է այդ կարծիքը և գտնում, որ Կորդուք ու Քրդստան և կորդվացիք ու քուրդ անունները իրար հետ կապ չունեն, նրանց նմանությունը պատահական է։ Այս կարծիքին կողմնակից գիտնականները քրդերին չեն համարում նախկին կորդվացի-

ների անմիջական հետնորդները», այլ նրանց վերագրում են այլ ծագում։

Բերված այդ երկու կարծիքներից երկրորդը հիմնավորված է պատմական փաստարկումներով և կարելի է համարել ընդունելի, իսկ առաջին կարծիքը հիմնված է անունների լոկ պատահական նմանության վրա և չունի անհրաժեշտ կռվաններ։

Կորճեքը տարածվում էր Մոկքից և Վասպուրականից հարավ, Ուրմիա լճի և Տիգրիս գետի միջև ընկած շրջաններում։ Իր տերիտորիայով Կորճեքը համապատասխանում է այժմյան Քրդստանի մի մասին, որը լեռնոտ և անտառներով հարուստ երկիր է։ Կորճեքի գրեթե կենտրոնով էր հոսում Տիգրիսի ձախակողմյան ամենախոշոր վտակը՝ Մեծ Զաբը։

Կորճեքի մասին հիշատակություններ կան շատ հնուց։ Առաջին անգամ այս երկրի վերաբերյալ մանրամասն տեղեկություններ հաղորդում է Քսենոֆոնը։ Այդ տեղեկություններից երևում է, որ Կորճեքը հնագույն ժամանակներում բավական զարգացած երկիր էր։ Կորճեքի բնակչությունն զբաղվում էր երկրագործությամբ, անասնապահությամբ, արհեստներով և առևտրով։ Երկրում եղել են մի քանի քաղաքներ ու բերդեր։

Ինչպես երևում է, թե՛ Աքեմենյանների, թե՛ Սելևկյանների և թե՛ Պարթևների տիրապետության ժամանակաշրջանում Կորճեքը պահպանում էր իր ներքին ինքնուրույնությունը։ Աշխարհակալ այդ պետությունների տիրապետությունը Կորճեքում կրում էր գերիշխանության բնույթ։

Տիգրան Բ-ի օրոք Կորճեքը միացվում է Հայկական պետությանը, սակայն նրա կազմում մնում է շատ կարճ։

I—IV դարերում Կորճեքը, Միջագետքի երկրների հետ միասին, կռվախնձոր էր դարձել Հռոմի ու Պարսկաստանի միջև։ Այդ շրջանում նա մի քանի անգամ ձեռքից ձեռք է անցել՝ երբեմն ենթարկվելով Հռոմի, երբեմն էլ Պարսկաստանի գերիշխանությանը։ Կորճեքի որոշ մասեր մտել են Հայկական պետության մեջ։ **363 թ.** պայմանագրով այն ամբողջությամբ մնաց պարսիկներին՝ կազմելով Սասանյան Պարսկաստանի մարզերից մեկը, իսկ հետագայում վերջինիս հետ միասին անցավ Արաբական խալիֆայության տիրապետության տակ։

Ըստ «Աշխարհացույց»-ի, Կորճեքը բաղկացած էր տաս գավառից։ Դրանք են՝ Կորդուք, Կորդրիք, Այավանք, Այտուանք, Այգառք, Մոթողանք, Որսիրանք, Կարապունիք, Ճահուկ և Փոքր Աղբակ։

Նրա գավառների թվարկումը «Աշխարհացույց»-ում կատարված է հաջորդական կարգով, արևմուտքից արևելք ուղղությամբ։ Դրանից երևում է, որ Կորճեքի ամենաարևմտյան գավառը Կորդուքն էր, իսկ ամենաարևելյանը՝ Փոքր Աղբակը։

Կորճեքի գավառներից Կորդուքը, Կորդրիքը, Որսիրանքը և Փոքր Աղբակը Հայաստանի անմիջական հարևաններն էին։ Արտաշեսյանների և Արշակունիների թագավորության շրջանում դրանք մեծ մասամբ միացած էին Հայկական պետությանը։ Դրանք Հայաստանին էին միացված նաև IX—XI դարերում և մտնում էին Վասպուրականի Արծրունյաց իշխանության (908 թվականից՝ թագավորություն) մեջ։

## Կորդուք

Կորդուքը Կորճեքի ամենանշանավոր գավառն էր։ Հյուսիսային կողմում Արևելյան Տիգրիսով (Բոհտան-սու) այն բաժանված էր Մոկքից և գրավում էր Արևելյան Տիգրիսի ու Խաբուր-սուի (Տիգրիսի ձախակողմյան վտակ) միջև ընկած լեռնային շրջանները։

## Կորդրիք

Ավելի հնում այս գավառը հայտնի էր Տմորիք անունով։ Տարածվում էր Կորդուքից արևելք։ Կորդրիքը ուներ բազմաթիվ ամրություններ և դժվարամատչելի էր արտաքին թշնամիների համար։ Ֆիզիկա-աշխարհագրական առումով այս գավառը բաժանված էր երեք մասի՝ Վերին, Միջին և Ստորին կամ Ներքին Կորդրիքների։

## Որսիրանք

Որսիրանք գավառն ընկած էր Տիգրիսի ձախակողմյան վտակ Մեծ Զաբ գետի վրա։ Այս գավառում էին գտնվում Թ վ ա յ գյուղը և Ա ր յ ա ն լիճը։ Սրանց մոտ Վասպուրականի զորքերը 852 թ. մեծ դիմադրություն են ցույց տվել Բուղայի բանակին, որը խալիֆայության կողմից ուղարկված էր՝ Հայաստանում, Վրաստանում և Աղվանքում ծավալված ժողովրդա-ազատագրական ապստամբությունները ճնշելու։

## Փոքր Աղբակ

*Այս գավառն արևելքից հարևան էր Վասպուրականի Մեծ Աղբակ գավառին։ Նրա գրաված տերիտորիայի սահմանները չեն ճշտված։ Այդ է պատճառը, որ տարբեր հեղինակների մոտ դրա մեծությունը տարբեր չափով է տրված։ Միայն անհերքելի է այն, որ այս գավառի մի մասն էր կազմում այժմյան Ջուլամերիկի շրջանը։*

*Գավառի գլխավոր բերդերն էին Ջ ւ մ ա ր ը և Ս ր ի ն գ ը, որոնց մասին գոյություն է ունեցել մի առասպելախառն ավանդություն։*

## ՊԱՐՍԿԱՀԱՅՔ

*Պարսկահայք անունը մեր մատենագրության մեջ առաջին անգամ հիշատակվում է «Աշխարհացույց»-ում։ Իսկ նրա Հեր և Զարեվանդ գավառները հիշատակվում են հին ժամանակներից և շատ հաճախ։*

*Պարսկահայքը գրավել է Ուրմիա լճի արևմտյան և հյուսիսային առափնյա շրջանները։ Նա շրջապատված էր Ուրմիա լճով և Կորճեք ու Վասպուրական «աշխարհ»-ներով։ Պարսկահայքում շատ էին տարածված ցիրը և այծյամը։ Պարսկահայքի Հեր և Զարևանդ քաղաքների բնակչության հիմնական մասը կազմում էին հայերը, իսկ հարավային մնացած գավառներում՝ ատրպատականցիները։*

*Պարսկահայքը թե՛ Արտաշեսյանների և թե՛ Արշակունիների թագավորության շրջանում միացված էր Հայկական պետությանը։ Հայաստանի առաջին բաժանման ժամանակ (387 թ.) այն միացվեց Ատրպատականին և նրա կազմում էլ մնաց մինչև վերջ, բացառությամբ Հեր և Զարևանդ գավառների ու մի քանի այլ շրջանների, որոնք IX—XI դարերում մտնում էին Վասպուրականի իշխանության մեջ։*

*Ըստ «Աշխարհացույց»-ի, Պարսկահայքը բաղկացած էր հետևյալ ինը գավառներից. Ա յ լ ի, Մ ա ր ի, Թ ր ա բ ի, Ա ր ի ս ի, Ը ն ա, Տ ա մ բ ե ր, Զ ա ր ե հ ա վ ա ն, Զ ա ր և ա ն դ կամ Զ ա ր ա վ ա ն դ և Հ ե ր։ Գավառների թվարկումը կատարված է հարավից հյուսիս ուղղությամբ։ Նրանց անունների մեծագույն մասը հնագույն ծագում ունի։*

*Պարսկահայքի գավառներից շատերի դիրքը վերջնականապես չի ճշտված։ Նրանցից մեզ լավ ծանոթ են միայն Հերը և Զարևանդը։*

## Հեր

Հեր գավառը գրավում էր այժմյան Խոյի շրջանը (Ուրմիա լճից հյուսիս)։ Գավառի պատմա-աշխարհագրական նշանավոր վայրերն են Հ ե ր քաղաքը և Ն վ ա ր ս ա կ գյուղը։

Հերը համապատասխանում է այժմյան Խոյ քաղաքին, գտնըվում էր Կոտուր գետի ափին՝ տաշտաձև, փոքրիկ դաշտի կենտրոնում։ Այս դաշտը հենց քաղաքի անվամբ էլ կոչվել է Հերական (կամ Խերական) դաշտ։ Հեր քաղաքն ունեցել է պարսպապատ ամուր բերդ՝ երկաթե դռներով։

Նվարսակ անշուք գյուղը, որը գտնվում էր Հեր քաղաքի մոտ և V—VII դարերում հանդիսանում էր Արևելյան Հայաստանի ու Ատրպատականի միջև սահմանային կետ, V դարում նշանավորվեց որպես հաշտության պայմանագրի կնքման վայր։ Նվարսակի հաշտության պայմանագիրը կնքվել է 484 թ.՝ Վահան Մամիկոնյանի և պարսկական արքունիքի ներկայացուցիչ Նիխոր զորավարի միջև։ Նվարսակի հաշտությունն արդյունք էր հայերի 481—484 թթ. հաղթական ապստամբության։ Այդ պայմանագրով Հայաստանը ներքին կյանքում ձեռք բերեց ինքնուրույնություն։

## Զարևանդ

Այս գավառը հիշատակվում է նաև Զարուանդ և Զարավանդ ձևով։

Զարևանդը տերիտորիայով համապատասխանում է այժմյան Սալմաստի և Դիլմանի շրջաններին, որոնք տարածվում են Ուրմիա լճից հյուսիս-արևմուտք։

Գավառի պատմական վայրերից է Ս ա լ մ ա ս տ ը, որը հիշատակված է դեռևս Փավստոս Բուզանդի մոտ։ Թովմա Արծրունու վկայությամբ, Սալմաստը IX դարում արդեն քաղաք էր և գտնըվում էր Հայաստանի ու Ատրպատականի սահմանագլխին։

## ՓԱՅՏԱԿԱՐԱՆ

Փայտակարան անունը չի ստուգաբանված։

Հնում այս երկիրը հայտնի էր Կազբք (անտիկ մատենագիրների մոտ՝ Կասպիանա) անունով, իսկ երբեմն էլ կոչվել է Բաղասա-

կան աշխարհ։ Կազբբ անունը կապված է համանուն ցեղի հետ, որը բնակվում էր Կասպից ծովի արևմտյան առափնյա շրջաններում (այդ անունով էլ ծովը կոչվել է Կասպից ծով)։

Փայտակարանը տարածվում էր Արաքսի ստորին հոսանքից հարավ ընկած շրջաններում։

Փայտակարանի արևելյան սահմանը հասնում էր Կասպից ծով, մյուս կողմերի սահմանները դեռևս չեն ճշտված։

Այս երկիրը, ինչպես նշված է «Աշխարհացույց»-ում, հայտնի էր իր անբավ բամբակով։ Այստեղ տարածված էր նաև վայրի վարի։

Փայտակարանը տաք և խիստ ցամաքային կլիմա ունի։ Այստեղ հնագույն ժամանակներից սկսած կառուցվել են ջրանցքներ և ամբարտակներ, որոնց միջոցով ոռոգվել է նրա մի զգալի մասը։ Այդ ջրանցքների ու ամբարտակների հետքերը մինչև օրս էլ նշմարվում են Ադրբեջանական ՍՍՀ-ի հարավ-արևելյան շրջաններում։

Փայտակարանը տարբեր ժամանակներում մտել է տարբեր պետությունների կազմի մեջ։ Արտաշեսյանների և Արշակունիների թագավորությունների շրջանում Փայտակարանը որոշ ընդհատումներով կազմում էր Հայկական պետության ենթակա շրջան։ Հայաստանի առաջին բաժանումից հետո նա ընդմիշտ դուրս եկավ նրա պետական կազմից։

Փայտակարանում հայեր գրեթե չէին բնակվում, եթե չհաշվենք Արտաշեսյանների ու Արշակունիների թագավորության ժամանակաշրջանում այստեղ զետեղված հայկական կայազորները և վարչական ծառայողներին։ Հիմնական բնակիչներն էին աղվանները և տարպատականցիները։

Փայտակարանի գավառների թիվը հասնում էր 14-ի։ Դրանք են՝ Հ ր ա ք ո տ, Պ ե ր ո ժ, Վ ա ր դ ա ն ա կ ե ր տ, Յ ո Թ ն փ ո ր ա կ յ ա ն Բ ա գ ի ն ք, Ք ո ե կ յ ա ն, Ո վ ա ի բ ա ղ ա, Ք ա ղ ա ն ռ ո տ, Բ ո ւ ռ ո ս, Պ ի ճ ա ն հ ա ն ի, Ա Թ լ ի, Բ ա գ ա վ ա ն, Ս պ ա ն դ ա ր ա պ ե ր ո ժ, Ո ր մ զ դ ե պ ե ր ո ժ և Ա լ ա վ ա ն։

Ինչպես տեսնում ենք, Փայտակարանի բոլոր գավառների անուններն էլ հայկական չեն։ Նրանք ունեն հնագույն ծագում և, բացառությամբ անձնանունների հետ կապվածների, ժամանակակից լեզուներով հնարավոր չէ մեկնաբանել։ Գավառների մեծագույն մասի աշխարհագրական դիրքը չի որոշված։

Փայտակարանի պատմական վայրերից Փայտակարան քաղաքն ու Վարդանակերտ ավանը, հին Հայաստանի քաղաքական

պատմության հետ առնչվելու շնորհիվ, հաճախ են հիշատակված մատենագիրների մոտ։ Թե՛ Փայտակարան քաղաքի և թե՛ Վարդանակերտ ավանի աշխարհագրական դիրքը վերջնականապես չի ճշտված։ Սակայն հայտնի է, որ Փայտարականը գտնվում էր Կասպից ծովից արևմուտք Կուր և Արաքս գետերի գետաբերանների շրջանում, իսկ Վարդանակերտը տեղադրված էր Արաքսի ձախ ափին՝ Կուրի և Արաքսի գետախառնուրդից ոչ հեռու[1]։

Միջնադարյան մեր մի շարք մատենագիրների և աշխարհագիրների մոտ Փայտակարան քաղաքը շփոթված է Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսիի հետ։ Այդ շփոթությունն առաջին անգամ ստեղծվել է Թովմա Արծրունու մոտ, իսկ հետագայի պատմագիրների և աշխարհագիրների մեծ մասն էլ շարունակել է կրկնել նրա սխալը։

## ԱՐՑԱԽ

Արցախ աշխարհանունը հիշատակված է նաև Արձախ ձևով։ Երբեմն կոչվել է Փոքր Սյունիք, իսկ ավելի ուշ հիշատակված է Խաչեն կամ Խաչենք անունով, որը կազմում էր նախկին Արցախի միայն մի մասը։

Արցախը տարածվում էր Սյունիքից արևելք՝ Կուր և Արաքս գետերի միջև։ Տերիտորիայով համարյա համընկնում է Լեռնային Ղարաբաղին և Միլի տափաստանին։

Հնում Արցախը հայտնի է եղել իր ամրությամբ։ Ռազմական տեխնիկայի տեսակետից համարվել է անմատչելի մի երկիր։ Ունեցել է սաղարթախիտ անտառներ և փարթամ արոտավայրեր։ Հռչակված էր ձիաբուծությամբ։ Այստեղ բուծվող ձիերն իրենց դիմացկունությամբ գերազանցում էին արաբական ձիերին, իսկ արագավազությամբ նրանցից ետ չէին մնում։ Ձիաբուծությունից բացի, Արցախը հայտնի էր նաև իր մրգատու այգիներով և բամբակով, որոնք հիմնականում մշակվում էին նրա հարավ-արևելյան ցածրադիր շրջաններում։ Ունի մետաղի և ոչ մետաղի բնական շատ հումքեր և հանքային ջրեր։ Բնությունը գեղատեսիլ է, սուր հակադրություններով։

Արցախի բնակիչները հիմնականում հայեր էին։ Սակայն հա-

[1] Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Ատլաս «Հայ ժողովրդի պատմություն» գրքի, առաջին մաս, 1951, Երևան, 1952, Հայկական լեռնաշխարհի քարտեզը։

յերից բացի, նրա արևելյան շրջաններում ապրում էին նաև որոշ թվով աղվաններ ու պարսիկներ։

Արտաշեսյանների և Արշակունիների թագավորության շրջանում նա մտնում էր Հայկական պետության մեջ, իսկ 387 թ. բաժանումից հետո Սասանյաններն այն ժամանակավորապես միացրեցին Աղվանքի մարզպանությանը։

IX—XIII դարերում Արցախում, որն այդ շրջանում ավելի հայտնի էր Խաչեն անունով, կային հայկական մի քանի իշխանություններ։ Դրանց իշխանական տերիտորիայի մի զգալի մասը Գագիկ Ա-ն (989—1020) գրավեց և միացրեց Անի-Շիրակի թագավորությանը։

Արցախը մասնատված էր հետևյալ գավառների. Մյուս Հաբանդ, Վակունիք կամ Վայկունիք, Բերձոր կամ Բերդաձոր, Մեծկուանք, Մեծիրանք, Հարճլանք, Մուխանք, Պիանք, Պաձկանք, Սիսական, Կոտակ, Քուստիփառնես, Կողթ և Ծար։

Մյուս Հաբանդումն էր Ամարազ կամ Ամարաս կոչվող գյուղն ու վանքը, որը եպիսկոպոսանիստ էր և գտնվում էր Սյունիքի սահմանի մոտ։ Երկրում պահպանված են մի շարք վանքերի, բերդերի և այլ վայրերի ավերակներ։

## ՈՒՏԻՔ

Հիշատակվում է նաև Ուտի ձևով։ Անունը հնագույն ծագում ունի և կապված է նույնանուն ցեղանվան հետ։

Տարածվում էր Գուգարքի, Սյունիքի և Կուր գետի միջև։ Իր մեջ ընդգրկում էր Թարթառ (Տրտու) գետի միջին և ստորին հոսանքների վրա ընկած շրջանները և Կուր գետի ու Գանձակի լեռների ջրբաժան գագաթների միջև ընկած տերիտորիաները։

Այս երկրի անունը հիշատակվում է հնագույն ժամանակներից։ Նա հայտնի էր իր ամրությամբ, անտառներով և պղնձի հանքերով։

Ռեյնեֆով Ուտիքը խստորեն բաժանվում էր երկու մասի՝ դաշտային և լեռնային։ Դաշտային շրջանները տարածվում էին Կուր և Թարթառ գետերի առափնյա մասերում, իսկ լեռնային գավառները գտնվում էին Փոքր Կովկասի շրջանում։

Ուտիքի բնակչության էթնիկական կազմը միատարր չէր։ Այստեղ բնակվում էին հայեր և աղվաններ։

Ուտիքը Արտաշես Ա-ի օրոք միացվել է Մեծ Հայքի թագավո-

րությանը։ Հետագա դարերում, մինչև Հայաստանի առաջին բաժանումը (387 թ.), որոշ ընդհատումներով Ուտիքը շարունակում էր մնալ Հայկական պետության կազմում։ 387 թ. Ուտիքը անջատում են Հայաստանից և միացնում Աղվանքին։ Հետագայում նրա մի մասը ընդմիշտ մնաց Աղվանքի կազմում։ Սակայն նրա լեռնային մի քանի գավառները (Տավուշը, Գարդմանը և այլն) Հայաստանում Բագրատունիների թագավորության շրջանում միացված էին Հայկական թագավորությանը։

Ուտիքը բաղկացած էր հետևյալ ինը գավառներից («Աշխարհացույց»-ի տեքստում տրված է ութ գավառ). Արանռոտ, Տրի կամ Տոռի, Ռոտպացիան, Աղովե, Տոչկատակ, Գարդման կամ Գարդմանաձոր, Շիկաշեն կամ Շակաշեն, Ուտի Առանձնակ և Տավուշ։

Մի քանի խոսք դրանցից այն գավառների մասին, որոնց դիրքը հայտնի է, և որոնք կարևոր դեր են խաղացել Հայաստանի մասամբ Աղվանից աշխարհի պատմության մեջ։

## Ուտի Առանձնակ

Տարածվում էր Թարթառ գետի հովտում, նրա միջին և ստորին հոսանքների շրջանում։ Ունի հարթավայրային ռելիեֆ և արգավանդ հողեր, սակայն կլիման ցամաքային է։ Ուստի այս շրջանի համար արհեստական ոռոգումը եղել է կենսական անհրաժեշտություն։ Ուտին նահանգի ամենանշանավոր գավառն էր, այդ պատճառով էլ նրա անունը գործածական դարձավ ամբողջ նահանգի համար։

Այս գավառում էր գտնվում Աղվանից աշխարհի Պարտավ (արաբական աղբյուրներում կոչված է Բերդա) հռչակավոր մայրաքաղաքը, որը IX—XI դարերում ապրում էր իր ծաղկման շրջանը։ Այս դարերում Պարտավը դարձել էր Արևելքի խոշորագույն քաղաքներից մեկը։ Նա բարեկարգ ճանապարհներով կապված էր Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսիի, Դվինի և Կասպից ծովի արևմտյան առափնյա շրջանների ու Ատրպատականի քաղաքների հետ։ Արաբական մատենագիրները մեծ գովեստով են խոսում Պարտավի մասին։ XII դարից Պարտավն իր տեղը զիջում է նորակառույց Գանձակին։

Պարտավի ավերակները գտնվում են Թարթառ գետի ստորին

*Հոսանքի շրջանում՝ նրա ափին գտնվող Ադրբեջանական ՍՍՀ-ի շրջանային կենտրոն Բարդայի մոտ։*

*Այս նույն գավառում, Թարթառ գետի ափին՝ նրա միջին հոսանքի շրջանում էր գտնվում Կ ա ղ ա ն կ ա տ ո ւ ավանը, որը Դվին—Պարտավ ճանապարհի կայաններից մեկն էր։ Կաղանկատուավանում է ծնվել Աղվանքի պատմության հեղինակ, X դարի հայ պատմագիր Մովսես Կաղանկատվացին։*

## Գարդմաճ կամ Գարդմանաձոր

*Այս գավառը տարածվում էր այժմյան Շամքոր-չայի վերին հոսանքի շրջանում։ Գավառում եղել է նրա անունը կրող ավան, որի ավերակները գտնվում են այժմյան Գրթմանիկում (Շամքոր-չայի աջակողմյան վտակներից մեկի վրա)։ Լեռնային է ու զգալի մասն անտառապատ։*

*Գարդմանաձորի նշանավոր վայրերից է նաև հայ մատենագիրների կողմից հիշատակված Գ ե տ ա բ ա կ ք կոչվող բերդը և պղնձահանքը (այժմյան Գետաբեկը)։ Այս պղնձահանքերի շահագործումն ունի հնագույն պատմություն, բայց նրա մասին հիշատակությունները հաճախակի են դառնում միայն X—XIII դարերում։*

## Ծիկաշեն կամ Ծակաշեն

*Ենթադրվում է, որ Շակաշեն անունը ծագել է սակերի (սկյութացիներ) անունից։*

*Տերիտորիայով գրեթե համընկնում է այժմյան Ադրբեջանական ՍՍՀ-ի Կիրովաբադի շրջանին։ Գավառի պատմա-աշխարհագրական նշանավոր վայրը Գանձակ քաղաքն է (այժմ՝ Կիրովաբադ), որը կառուցվել է XII դարում և կարճ ժամանակում դարձել Աղվանքի խոշորագույն քաղաքը։*

## Տավուշ

*Այս գավառը բռնում էր այժմյան Ադրբեջանական ՍՍՀ-ի Թովուզ ու Ղազախ և Հայկական ՍՍՀ-ի Շամշադինի շրջանների տերիտորիաները։*

Գավառի պատմա-աշխարհագրական վայրերից նշանավոր են եղել Խաղխաղը (կամ Խալխալ) և Տավուշը։ Տավուշը IX—X դարերում հռչակված բերդ էր։ Այստեղ նստող իշխանները մի քանի անգամ ապստամբություն են բարձրացրել Բագրատունի թագավորների դեմ։ Աշոտ Բ-ն (914—928) զենքի ուժով կոտրում է նրանց դիմադրությունը և գրավում Տավուշ բերդը։

XI դարում Տավուշ բերդը գրավվում է Կորիկյան թագավորության, իսկ XII դարում՝ Զաքարյանների կողմից։

Տավուշի ավերակները, որոնք մինչև օրս էլ նշմարվում են, գտնվում են այժմյան Շամշադինի շրջկենտրոնի՝ Բերդի մոտ՝ մի բարձր ու զառիթափ լեռան վրա։ Նրա շինությունները բռնել են բավական մեծ տարածություն։ Այժմ դրանք բոլորը, գրեթե առանց բացառության, գտնվում են հողի հաստ շերտի տակ։

## ԳՈՒԳԱՐՔ

Գուգարք անունն էթնիկական ծագում ունի և հիշատակվում է հնագույն ժամանակներից ի վեր։

Գուգարքն ընդարձակ մի երկիր էր և ընկած էր Հայաստանի հյուսիսային սահմանագլխին՝ տարածվելով Աղստև գետի հովտից մինչև Տայքի սահմանները։ Նա շրջապատված էր, հյուսիսից՝ Վիրքով (Վրաստան), հարավից՝ Այրարատով, արևմուտքից՝ Տայքով, իսկ արևելքից՝ Ուտիքով։

Գուգարքի հողա-կլիմայական պայմանները բազմազան են։ Ընդհանուր առմամբ նա մի արգավանդ երկիր է և ստանում է բավարար քանակությամբ տեղումներ։ Հարուստ է գետերով, լճերով և հանքային ու սառնորակ աղբյուրներով։ «Աշխարհացույց»-ի հեղինակի վկայությամբ, Գուգարքն աչքի էր ընկնում վայրի մրգերի առատությամբ ու անտառներով։ Գուգարքում եղել են պղնձահանքերի մի շարք «բովեր», որոնց շահագործումն ունի հնագույն պատմություն։

Գուգարքում բնակվում էին հայեր և մասամբ՝ վրացիներ։

Գուգարքը Կղարջքի և Տայքի հետ միասին Հայկական պետությանն է միացվել Արտաշես Ա-ի օրոք (189—160, մ.թ.ա.)։ Դրանից հետո, մինչև Հայաստանի առաջին բաժանումը, մնաց Հայկական պետության կազմում և համարվում էր Հայաստանի հյուսիսային բդեշխությունը։

387 թ. բաժանման ժամանակ Գուգարքը միացվեց Արևելյան

Վրաստանի մարզպանության և նրա հետ միասին անցավ Սասանյան Պարսկաստանի գերիշխանության տակ։ Դրանից հետո նրա մի քանի շրջաններն ընդմիշտ մնացին Վրաստանի կազմում, իսկ երկրի մեծագույն մասը կազմող հայաբնակ շրջանները՝ Տաշիրն ու մյուս գավառները, Հայաստանում Բագրատունիների թագավորության շրջանում միացվեցին Հայկական պետությանը[1]։

Գուգարքը բաղկացած էր ինը գավառներից. Ձորափոր, Կողբափոր, Ծոբափոր, Տաշիր, Թռեղք, Կանգարք, Արտահան, Ջավախք, Կղարջք։ Հաճախ Գուգարքի մեջ են դասում նաև Աշոցք գավառը, որը Ալիշանի մոտ մտցված է Այրարատյան աշխարհի մեջ[2]։

Գուգարքի բոլոր գավառների դիրքը որոշված է բավական ճշտությամբ՝ շնորհիվ այն բանի, որ Անանիա Շիրակացին նրա գավառները թվարկել է հաջորդական կարգով՝ արևելքից արևմուտք ուղղությամբ։

## Ձորափոր

Հնագույն ժամանակներում կոչվում էր ուղղակի Ձոր։ Տարածվում էր Աղստև գետի վերին հոսանքի և նրա աջակողմյան վտակների ավազաններում։ Տերիտորիայով համարյա համընկնում է այժմյան Հայկական ՍՍՀ-ի Կարմիրի և Իջևանի շրջաններին։

Գավառի պատմական նշանավոր վայրերն են Կայեն բերդը և Գետիկի, Հաղարծնի, Մակարա ու Կիրանց վանքերը։ Կայենը գտնվում էր Սևանա լճից հյուսիս, այժմ Արջանոց կոչվող լեռների վրա։ Այս բերդը, որ Զաքարյանների իշխանության տակ էր, 1236 թ. մոնղոլները գրավեցին և ավերեցին։ Հիշատակություններից երևում է, որ Ձորափորն այս բերդի անունով կոչվել է նաև Կայենի գավառ։

Կայենի մոտ էր գտնվում Գետիկի վանքը, որտեղ երկար տարիներ ապրել և գործել է միջնադարյան հայ մատենագրության խոշոր դեմքերից մեկը՝ Մխիթար Գոշը (1130—1213)։ Սաստիկ երկրաշարժի հետևանքով այս վանքը քանդվում է, բայց նրա միաբանները չեն ցրվում և Գոշի խորհրդով Իվանե Աթաբեկից խնդրում են նոր վանք կառուցելու համար իրենց տալ Տանձուտ

[1] Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Լիպարիտ զորավարը և նրա նախորդները (Ն. Մառի անվան կաբինետի «Աշխատություններ», № 2, Երևան, 1947, էջ 110—112)։

[2] Տե՛ս նրա «Այրարատ» աշխատությանը կցված քարտեզը։

*կոչվող վայրը։ Իվանեն բավարարում է նրանց խնդիրքը, և միաբանները Տանձուտում հիմնում են մի նոր վանք՝ Նոր Գետիկը։ Սկզբում այստեղ շինում են երկու փոքր եկեղեցի, ապա 1191—1196 թ. կառուցում են մեծ եկեղեցին։*

*Նոր Գետիկն այժմ վերականգնված է։ Այն գտնվում է Աղստևի աջակողմյան Գետիկ գետի ձախ կողմում, մի գեղատեսիլ ու անտառապատ ձորում, այժմյան Իջևանի շրջանի Գոշ գյուղում։ Այս վանքը հաճախ կոչվում է Մխիթար Գոշի անունով՝ Գոշավանք, որը տեղացիները աղավաղման ենթարկելով՝ անվանում են Ղոշավանք։ Ճարտարապետական բարդ կոմպլեքս է։ Պատերը շարված են սրբատաշ քարերով։ Ունի քանդակներ և արձանագրություններ։*

*Հաղարծնի վանքը կառուցվել է XI դարում։ Այժմ էլ կանգուն է և գտնվում է Դիլիջանից Իջևան տանող ճանապարհի ձախ կողմում՝ մի շատ գեղատեսիլ վայրում։ Ոչ պակաս հայտնի են նաև բարձրաքանդակներով հռչակված Մակարավանքը (այժմյան Աչաջուր գյուղի մոտ) և Կիրանց վանքը, որն աղյուսակերտ է և գտնվում է Սևքար գյուղի անտառամշակման ավանից ոչ հեռու։*

## Տաշիր

*Կոչվել է նաև Տաշիրք, Տաշրատափ։ Տերիտորիայով համապատասխանում է այժմյան Լոռուն (ֆիզիկա-աշխարհագրական առումով, այսինքն՝ ՀՍՍՀ Ալավերդու, Գուգարքի, Կալինինոյի և Ստեփանավանի շրջանները միասին վերցրած)։*

*Սա Գուգարքի ամենաընդարձակ գավառն էր։ IX դարից սկսած այստեղ իշխում էր Բագրատունիների մի ճյուղը, որը շրջակա մի շարք գավառներ միացնելով Տաշիրին, ընդարձակեց իր իշխանության սահմանները։ Բագրատունիների այս ճյուղի ներկայացուցիչ Գուրգենը 978 թ. իրեն հռչակեց թագավոր։*

*Նոր կազմված ֆեոդալական այս թագավորությունը, որը այդ ժամանակվա Հայաստանի տարբեր մասերում եղած հայկական մյուս թագավորությունների նման հանդիսանում էր Անի-Շիրակի վասալը, կոչվեց Տաշիր-Ձորագետի կամ Լոռու թագավորություն։ Նրա մայրաքաղաքը Լոռին էր։*

*Տաշիր-Ձորագետի թագավորությունն իր գոյությունը պահպանեց մինչև XIII դարը։ XI դարի կեսերին նա գրավում էր հսկայական տերիտորիա. նրա սահմանները ձգվում էին Շամքոր քաղաքի մոտերքից մինչև Մթին կամ Խոնավ (Կեչուտ) լեռները։ Գա-*

վառի պատմա-աշխարհագրական վայրերից անհրաժեշտ ենք համարում նշել հետևյալները.

**Լոռի կամ Լոռե**.—Քաղաք։ Կառուցվել է X դարի 2-րդ կեսին։ XI դարում Դավիթ Անհողինի կողմից ավելի բարեկարգվում և ընդարձակվում է այս քաղաքը։ Լոռին Տաշիր-Ձորագետի ֆեոդալական թագավորության մայրաքաղաքն էր։ Նա լեռնային ճանապարհով կապված էր, մի կողմից՝ Անիի, իսկ մյուս կողմից՝ Տփղիսի (Թբիլիսիի) հետ։ Լոռին, Կապանի նման, եղել է ֆեոդալական փոքրիկ քաղաք և հայտնի էր իր ամրությամբ։ Քաղաքը պատած էր բարձր պարիսպով, որը ունեցել է մի քանի աշտարակներ։ X—XIII դարերում Լոռիում մեծ զարկ էին ստացել պղնձահանքի հանույթը, ձուլումն ու մշակումը։ 1236 թ. մոնղոլները գրավեցին և հիմնահատակ ավերեցին Լոռի քաղաքը, որն այդ ժամանակ պատկանում էր Զաքարյան իշխաններից մեկին և վերջինիս աթոռանիստն էր։ Մոնղոլներն այս քաղաքի գրավման ժամանակ թալանել են նրա հարստությունները և հսկայական գումարի հասնող գանձերը։

Լոռի քաղաքի ավերակները գտնվում են Հայկական ՍՍՀ-ի Ստեփանավանի շրջանում, Ստեփանավան քաղաքից մոտ 3 կմ հարավ-արևելք՝ Ձորագետի բարձրադիր ձախ ափին։ Պաշտպանական տեսակետից նա ունեցել է շատ հարմար դիրք։ Լոռին գրավել է եռանկյունաձև մի հարթություն՝ մոտ 20—25 հեկտար տարածությամբ, որի մի կողմով անցնում է Ձորագետը, իսկ մյուս կողմով՝ նրա ձախակողմյան վտակ Միսխանը։ Թե՛ Ձորագետը և թե՛ Միսխանը փորել են խոր և զառիվեր կիրճեր. սրանք քաղաքը երեք կողմից դարձրել են անմատչելի, իսկ չորրորդ կողմից այն պատած է եղել ամուր պարիսպով, որն ունեցել է երկաթե դարպաս։

Քաղաքի ավերակները վատ են պահպանվել։ Համեմատաբար լավ են պահպանվել նրա բաղնիքի, պարսպի և քաղաքացիական բնույթի մի շենքի ավերակները։

**Սանահին, Հաղպատ և Օձուն** վանքերը միջնադարյան Հայաստանի մշակույթի կարևոր կենտրոններից էին։ Սանահինում և Հաղպատում եղել են բարձր տիպի դպրոցներ՝ «վարդապետարան»-ներ, որոնց կից կային հարուստ մատենադարաններ։ Այս վարդապետարաններում սովորում էին աստվածաբանություն, փիլիսոփայություն, մաթեմատիկա, տիեզերագիտություն և այլ առարկաներ։ Սանահինը կառուցվել է 957 թ., իսկ Հաղպատը՝ 967 թ.։ Դրանց կառուցման նախաձեռնողը եղել է Խոսրովանույշ թագուհին՝ Աշոտ Գ-ի կինը։

Հաղպատը միջնադարյան հայ ճարտարապետական արվեստի խոշորագույն կոթողներից մեկն է։ Նրա հիասքանչ քանդակները մինչև օրս էլ հանդիսանում են լավագույն աղբյուր մեր ճարտարապետական մշակույթի զարգացման համար։ Սանահին և Հաղպատ վանքերը գտնվում են Ալավերդու շրջանում. նրանք, որպես անցյալի կարևոր ժառանգություն, Սովետական Հայաստանում եղած հին և միջնադարյան մշակույթի բազմաթիվ այլ կոթողների հետ միասին, պահպանվում են մեր պետության կողմից։ Իր ճարտարապետական կառուցվածքով Սանահինից ու Հաղպատից ետ չի մնում Օձունը, որն ավելի հին է և գտնվում է այժմյան ՀՍՍՀ Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղում։

## ՏԱՅՔ

Տայք անունը հնագույն է և ունի էթնիկական ծագում։ Այն կապված է տաոխներ կամ տայեր ցեղանվան հետ։

Տայքը խիստ լեռնային և անտառապատ երկիր է։ Տարածվում էր Ճորոխի միջին հոսանքի և նրա աջակողմյան վտակների ավազաններում։ Շրջապատված էր արևմուտքից Պոնտոսով, հյուսիսից՝ Լազիկայով և Եգերքով (Աջարիա), հյուսիս-արևելքից ու արևելքից՝ Գուգարքի Կղարջք և Այրարատի Վանանդ գավառներով, իսկ հարավից՝ Բարձր Հայքով և Այրարատի Բասեն գավառով։ Նշված բոլոր կողմերում Տայքն իր հարևաններից բաժանված էր լեռնաշղթաներով։

Լեռնային և անտառապատ այս երկիրը հայտնի էր իր ամրությամբ։ Նա քաղաքական աննպաստ պայմաններում հաճախ դառնում էր հայ թագավորների ու իշխանների ապաստարանը։

«Աշխարհացույց»-ի հեղինակի վկայությամբ, Տայքը հարուստ էր նռով, թուզով և սերկևիլով։

Տայքի մասին առաջին տեղեկությունները հաղորդել է Քսենոֆոնը։ Նրա հիշատակությունների համաձայն, Տայքի (Քսենոֆոնի մոտ՝ Տաոխ) բնակիչները՝ տայեցիները, խիզախ և ռազմասեր ժողովուրդ էին. նրանք, ինչպես և խաղտիքցիներն ու կորդվացիները, չէին ենթարկվում Աքեմենյան Պարսկաստանին և ինքնուրույն էին։

Տայքը Արտաշես Ա-ի օրոք միացվել է Մեծ Հայքի հայկա-

կան թագավորությանը։ Մեծ Հայքին միացվելուց հետո Տայքը նրա կազմում մնաց մինչև արաբական տիրապետության շրջանը։

Տայքի բնակչությունը, Գուգարքի բնակչության նման, ուներ խառն ազգային կազմ։ Այստեղ ապրում էին տարբեր ժողովուրդներ, որոնց բացարձակ մեծամասնությունը, սակայն, հին ժամանակներից ի վեր կազմում էին հայերը։

IV—VIII դարերում Տայքում իշխում էին Մամիկոնյանները։ Այդ շրջանում Տայքը փաստորեն ներկայացնում էր մի վարչա-քաղաքական միավոր՝ մի ֆեոդալական իշխանություն։ Երբ VIII դարի վերջերից Մամիկոնյանները կորցրին իրենց քաղաքական հզորությունը և աստիճանաբար դադարեցին երկրի քաղաքական ու ռազմական կյանքում կարևոր դեր խաղալուց, Տայքի նրանց կալվածքները անցան Բագրատունիներին։

X դարում Տայքի մի մասում և Կղարջքում վրաց Բագրատունիները հիմնում են Բյուզանդիային վասալ մի իշխանություն, որը հայտնի է Տաո-Կլարջեթի կյուրոպաղատություն անունով։ Վրացական այս իշխանությունը երկար ժամանակ ստիպված էր համառ պայքար մղել Բյուզանդիայի դեմ, որն ամեն մի առիթ օգտագործում էր նրա ներքին ինքնավարությունը վերացնելու և կայսրության պրովինցիա դարձնելու համար։ Տաո-Կլարջեթի իշխանությունը հետագայում միացվեց վրաց Բագրատունիների կենտրոնական թագավորությանը, որը XI—XIII դարերում ապրում էր իր բուռն զարգացման շրջանը։

Տայքը բաղկացած էր 8—9 գավառից։ «Աշխարհացույց»-ում նրա գավառները հիշատակված են արևելքից արևմուտք հետևյալ կարգով՝ Կող, Բերդաց փոր, Պարտիզաց փոր, Ճակատք, Բուխա կամ Բոխա, Ոքաղե, Ազորդաց փոր և Արսյաց փոր[1]։

Կողը (վրացերեն՝ Կոլա) տարածվում էր Կուրի ակունքների շրջանում և իր տերիտորիայով գրեթե համընկնում էր այժմյան Գյոլեհի շրջանին։ Այստեղ հիշատակվում է համանուն բերդ, որի աշխարհագրական դիրքը մեզ համար դեռևս մնում է անորոշ։

Կողից անմիջապես արևմուտք տարածվում էր Բերդաց փոր գավառը, իսկ սրանից էլ արևմուտք, այժմյան Օլթի գետի վտակներից մեկի վրա՝ Պարտիզաց փորը։

Ոքաղե կամ Ուխթիք գավառը գրավում էր Օլթի գետի մի-

[1] «Փոր» բառը, որով բարդված են Տայքի և Գուգարքի գավառանունների մեծ մասը, գործ է ածված «ձոր» իմաստով։

ջին Հոսանքի շրջանը։ Այս գավառում էր գտնվում Ո ւ խ ր ի ֆ բեր-դաքաղաքը, որը համապատասխանում է այժմյան Օլթիին։

Տայքի պատմական վայրերից մի քանիսը հայտնի չէ, թե որ գավառներում էին գտնվում։ Այդպիսի վայրերի թվին են պատկանում Ա ր ա հ ե ղ, Ի շ խ ա ն ա ց ու Ո ր ն ջ ա ղ գյուղերը և Ե ր ա-խ ա ն ի, Թ ո ւ խ ա ր ք ու Ճ ա վ ա ճ ի շ բերդերը։ Ինչպես երևում է, Երախանին IV դարում Տայքի Մամիկոնյանների ոստանն էր։

ՉՈՐՐՈՐԴ ԲԱԺԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ VII—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿՆ ՈՒ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ VII ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ IX ԴԱՐԻ ԿԵՍԵՐԸ

### 1. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ

*VII դարի առաջին քառորդում կազմավորված Արաբական խալիֆայությունը 640—650 թթ. երեք ավերիչ արշավանք է կատարում դեպի Հայաստան։ Սակայն մինչև VII դարի վերջերը Հայաստանը շարունակեց պահպանել իր ներքին ինքնուրույնությունը։*

*VIII դարի սկզբին, ավերիչ արշավանքներ կատարելով և ազատագրական շարժումը դաժանորեն ճնշելով, խալիֆայությունն արդեն իր ծանր լուծն է հաստատում Հայաստանում։ Շուտով նա հիմնովին վերակառուցում է Հայաստանի վարչա-քաղաքական սիստեմը։*

*Ըստ դրա խալիֆայության լծի տակ ընկած Հայաստանը, Վրաստանը և Աղվանքը միասին վերցրած կազմեցին մեկ վարչական միավոր՝ փոխարքայություն, որը կոչվեց «Էրմինիա» (Արմենիա)։ Վերջինիս սահմանները հյուսիսում հասնում էին Կովկասյան լեռներին, հարավում՝ Արևելյան Տիգրիսին, արևելքում՝ Կասպից ծովին, իսկ արևմուտքում՝ Սև ծովին, Ճորոխին և Եփրատին։*

*Էրմինիայի բնակչությունը բազմալեզու էր. հայերից, վրացիներից և աղվաններից բացի, այնտեղ ապրում էին նաև այլ ժողովուրդներ։*

*Էրմինիա փոխարքայության կենտրոնը Դվինն էր։ Այստեղ էին նստում խալիֆի կողմից նշանակված փոխարքաները՝ էմիրները*

(ըստ հայ աղբյուրների՝ «ոստիկաններ»), որոնք այդ լայնատարած երկրի գերագույն կառավարիչներն էին։

Էրմենիա փոխարքայությունը բաժանված էր չորս մեծ մարզերի։ Դրանցից առաջինը կազմում էր Աղվանքը, երկրորդը՝ Վրաստանը, իսկ երրորդ և չորրորդ մարզերը կազմված էին Հայաստանի տերիտորիայից, ընդ որում, երրորդ մարզն իր մեջ ընդգրկում էր Արաքսի հովիտը (Նախկին Այրարատ աշխարհը) և Վասպուրականի մեծ մասը, իսկ չորրորդ մարզը՝ Վան քաղաքի շրջակայքը, Բզնունիքը և Արածանիի ավազանում ընկած շրջանները (նախկին Տուրուբերան աշխարհը)։ Սիսաջանը (Սյունիքը) մտցրել էին առաջին մարզի մեջ, որը, ինչպես նշվեց, կազմված էր հիմնականում Աղվանքի տերիտորիաներից։ Նախկին Տուրուբերան աշխարհի Տարոն գավառը (արաբական մատենագիրների մոտ՝ Տարուն) մի ժամանակ կազմում էր առանձին վարչական միավոր, իսկ հետագայում միացվեց այլ միավորի։

Էրմենիայի այդ չորս մարզերի կառավարիչները ստորադրված էին ոստիկան-փոխարքային։ Նրանք իրենց մարզերում հանդիսանում էին նույնպիսի գերագույն պետեր, ինչպես ոստիկան-փոխարքան էր ամբողջ Էրմենիայի մասշտաբով։ Յուրաքանչյուր մարզ իր հերթին մասնատված էր ավելի փոքր միավորների, որոնք նույնպես ունեին իրենց կառավարիչները։

Ընդհանուր գծերով այսպիսի պատկեր էր ներկայացնում Էրմենիա փոխարքայությունում խալիֆայության հաստատած վարչա-քաղաքական սիստեմը։

Խալիֆայությունը, օգտվելով ամեն մի առիթից, իր դաժան միջոցներով ձգտում էր հիմնովին վերացնել տեղական իշխանությունները։ Այսպիսի քաղաքականության հետևանքով VIII դարի երկրորդ կեսին քաղաքական ասպարեզից վերանում են հայկական մի շարք իշխանական տներ՝ Մամիկոնյան, Կամսարական, Ամատունի և այլն։ Դրա հետ միասին, խալիֆայությունը արաբական մի քանի ցեղեր է փոխադրում և բնակեցնում Հայաստանի տերիտորիայում, հույս ունենալով, որ նրանք, միավորվելով առանձին իշխանությունների (էմիրությունների) մեջ, նվաճված երկրում կդառնան իր հենարանը։

Սակայն խալիֆայությունը չէր կարող բավարարվել միայն ռեպրեսիաներով։ Նա Հայաստանում իր տիրապետությունը շատ թե քիչ հաստատուն դարձնելու համար ստիպված էր որոշ զիջումներ կատարել հայկական մի շարք իշխանական տներին։ Այդ զիջումներն արդյունք էին ժողովրդական-ազատագրական այն հուժ-

կու շարժումների ու ապստամբությունների, որոնք ուղղված էին արաբական լծի դեմ և որոնք չդադարեցին ընդհուպ մինչև նրա տապալումը։ Ժողովրդական ազատագրական արյունահեղ պայքարից օգտվելով՝ Բագրատունիները, Սյունյաց իշխանները և Արծրունիները ընդարձակեցին իրենց իշխանությունների սահմանները։ Բագրատունիները, որ նախորդ ժամանակաշրջանում (V—VII դարերում) իշխում էին միայն Սպեր, Բագրևանդ ու Կոգովիտ գավառներում, VIII—IX դարերում աստիճանաբար տեր են դառնում նաև Այրարատի մեծ մասին, Գուգարքի ու Տայքի մի մասին, Գեղամա երկրին և Տարոնին։ Արծրունիները հետզհետե իրենց իշխանությանն են ենթարկում ոչ միայն ամբողջ Վասպուրական աշխարհը, այլև Մոկքն ու նախկին Պարսկահայքի մի քանի գավառներ։ Սյունյաց իշխաններն իրենց ձեռքում պահեցին Սյունիքի մեծագույն մասը. Նրանց իշխանության շրջանակներից դուրս մնաց միայն Գեղամա երկիրը (նախկին Գեղարքունիք ու Սոդք գավառները միասին վերցրած), որը մինչև IX դարի վերջերը դարձյալ նրանց էր պատկանում։

Հայաստանում կազմված արաբական էմիրություններից (իշխանություններից) նշանավոր էին Աղձնիքի և Կայսիկների էմիրությունները։ Դրանցից առաջինն իր մեջ ընդգրկում էր նախկին Աղձնիք աշխարհը՝ առանց նրա Սասուն գավառի, որը Խութի և Տարոնի հետ միասին կազմում էր հայկական մի իշխանություն։ Իսկ երկրորդը՝ Կայսիկների էմիրությունը, տարածվում էր Վանա լճից հյուսիս-արևմուտք։ Այս էմիրության սահմանները ձգվում էին Սիփան լեռնագագաթից մինչև Կարինի մոտերքը և Շարիան լեռներից մինչև այժմյան Բուլանըխի շրջանի հարավային սահմանը[1]։ Արաբական երրորդ էմիրությունը՝ Ութմանիկների էմիրությունը, գրավում էր անհամեմատ փոքր տարածություն. նա իր մեջ էր ընդգրկում նախկին Տուրուբերանի Աղիովիտ և Վասպուրականի Առբերանի գավառները։ Այս էմիրությունը գրեթե միշտ ենթարկված էր Վասպուրականի Արծրունյաց իշխանությանը։

VII—IX դարերում Արևմտյան Հայաստանը, նախորդ ժամանակաշրջանի պես, գտնվում էր Բյուզանդիայի տիրապետության տակ։ Սակայն Արևելյան Հայաստանն Արևմտյան Հայաստանից բաժանող նախկին սահմանագիծը ենթարկվեց զգալի փոփոխության. Արաբական խալիֆայությունը Բյուզանդիայից խլեց նախկինում Արևմտյան Հայաստանի մեջ մտնող Չորրորդ Հայք պրո-

[1] Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Ատլաս «Հայ ժողովրդի պատմության» գրքի, Առաջին մաս (հրատ. 1951 թ.), Երևան, 1952։

վինցիայի մի զգալի մասը (Հաշտյանք, Խորձյան և Պաղնատուն գավառները) և Կարին գավառը, որը շուտով նորից վերագրավվեց Բյուզանդիայի կողմից։ Արևմտյան Հայաստանը ստրատեգիական տեսակետից Բյուզանդիայի համար ուներ առանձնահատուկ նշանակություն. Արևմտյան Հայաստանի (որի կազմի մեջ էին մտնում նախկին Առաջին Հայքը, Երկրորդ Հայքը և Չորրորդ Հայքի մեծագույն մասը), Պոնտոսի և Գամիրքի (Կապադովկիայի) տերիտորիաներից կազմվեց մի ռազմական շրջան՝ թեմ, որը կրում էր «Հայկական թեմ» («Արմենիակոն») անունը[1]։ Հայկական թեմը վերջնականապես կազմակերպվել է VII դարում։ Նրա բնակչության, ինչպես և զորքի մեծագույն մասը կազմում էին հայերը։ Արաբա-բյուզանդական հարատև պատերազմների պատճառով Հայկական թեմի սահմանները անկայուն էին։

## 2. ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

### Գյուղատնտեսություն

Նախորդ ժամանակաշրջանի (V—VII դդ.) համեմատությամբ VII—IX դարերում Հայաստանի գյուղատնտեսությունը ոչ միայն չի առաջադիմում, այլ նույնիսկ ետ է գնում։ Հետադիմության հիմնական պատճառներն էին. ա) խալիֆայության ավերիչ արշավանքները, որոնց հետևանքով զգալի չափով ամայացան Հայաստանի մի շարք գավառներ (հատկապես Այրարատ ու Վասպուրական աշխարհները և Արածանիի վրա ընկած շրջանները), գերեվարվեցին և Հայաստանի սահմաններից դուրս տարվեցին բազմահազար բնակիչներ, բ) Արաբական խալիֆայության՝ հայերին տեղահան անելու և նրանց զբաղեցրած հողերում արաբական ցեղեր բնակեցնելու քաղաքականությունը։ Խալիֆայությունը մի շարք գավառներում (Աաբերանի, Աղիովիտ, Հարք և այլն) բնակեցրեց արաբական ցեղեր, որոնց տրվեցին բնիկ երկրագործ բնակիչների՝ հայ գյուղացիների հողերը։ Ի տարբերություն հայերի, սրանք մեծ մասամբ զբաղվում էին անասնապահությամբ։ Այսպիսով, որոշ գավառներում երկրագործության փոխարեն, որ նախկինում կազմում էր այդ գավառների բնակչության զբաղմունքի գլխավոր ճյուղը, սկսում է գերակշռություն ձեռք բերել անասնապահությու-

[1] Տե՛ս Լ. Գելցեր, Սկզբնաւորութիւնք բիւզանդական բանակաթեմերու դրութեան, Թարգմ. Հ. Գ. Գարանֆիլեան, Վիեննա, 1903, էջ 14։

նը, գ) ծանր հարկահանությունը։ 725 թվականից մտցվեց գլխահարկ, անասնահարկ, հողահարկ։ Այս հիմնական հարկերից բացի, աշխատավոր գյուղացիները հատուկ հարկադրման էին ենթարկվում արհեստական ոռոգման ենթակա հողերի համար։ Այնուհետև, գյուղացին կալվածատիրոջ և պետության համար կատարում էր զանազան պարհակներ և ծանր կոռ, եկեղեցուն վճարում էր «տասանորդ»։ Խալիֆայության հարկային սիստեմն ավելի սաստկացավ VIII դարի կեսերից, երբ պետության գլուխ անցան Աբասյանները։ Հարկերի և տուրքերի հիմնական մասը հավաքվում էր դրամով, իսկ դրամական հարկը մի այնպիսի երկրում, ինչպիսին էր VII—IX դարերի Հայաստանը, կատարյալ ընչազրկության էր հասցնում գյուղացիությանը, որովհետև երկրում թույլ էին զարգացած շուկայական հարաբերությունները և երկրի տնտեսությունն ուներ փակ նատուրալ բնույթ։

Հասկանալի է, որ այդպիսի պայմաններում ուժասպառ եղած, ընչազրկված հայ գյուղացիները չէին կարող շատ թե քիչ հաջող վարել իրենց տնտեսությունները։ Իսկ այդ դարերում Հայաստանում գյուղատնտեսության բնորոշ ու ճնշող ձևը մանր գյուղացիական տնտեսությունն էր։ Տիրակալական խոշոր տնտեսությունները ընդհանրապես քիչ էին և երկրի ընդհանուր դրության վրա էական ազդեցություն չունեին։

Այդ բոլորին ավելանում էին նաև բնության ավերածությունները՝ երաշտը, ցրտահարությունը, կարկուտը և մորեխը։ VII—IX դարերում ոռոգող կառուցումներ չեն կատարվել, ինչպես և շատ քիչ են վերանորոգվել նախկինում կառուցված ջրանցքներն ու արհեստական ամբարտակները։

Գյուղատնտեսության մեջ այս շրջանում համեմատաբար ավելի բարվոք վիճակում էր գտնվում անասնապահությունը։ Անասնապահության մեջ, նախորդ շրջանի պես, շարունակվում էին առաջնակարգ դեր խաղալ մանր ու խոշոր եղջերավոր կիսաքոչվորական անասնապահությունն ու ձիաբուծությունը։

## Արհեստագործություն և արդյունագործություն

Նատուրալ տնտեսության պայմաններում արհեստագործությունը հիմնականում կապված էր գյուղատնտեսության հետ։ VII—IX դարերի Հայաստանում գյուղական արհեստը երկրի տնտեսական կյանքում իր նշանակությամբ խաղում էր ավելի խոշոր դեր,

քան քաղաքային արհեստները։ Դեռ ավելին, այդ տեսակետից քաղաքն ավելի շատ էր կախված գյուղից, քան գյուղը քաղաքից։ Այնպիսի առաջնակարգ արհեստներ, ինչպիսիք էին դարբնությունը, որմնադրությունը, պայտարությունը, «որդան կարմիր» ներկի պատրաստումը, գորգագործությունը, մանածագործությունը, ջուլհակությունը, կավագործությունը իրենց զգալի մասով կապված էին գյուղատնտեսության հետ։

Քաղաքային արհեստը, նախորդ ժամանակաշրջանի համեմատությամբ, VII—IX դարերում շոշափելի առաջադիմություն չկատարեց, որոշ արհեստներ (քարտաշություն և որմնադրություն) նույնիսկ հետադիմեցին։ Քաղաքային արհեստների մեջ նշանավոր էին՝ բրուտագործությունը, մետաքսագործությունը, ներկարարությունը, մահուդագործությունը, ոսկերչությունը և արծաթագործությունը։ Արհեստագործական գործիքները պարզունակ էին։

Այս ժամանակաշրջանում Հայաստանի արհեստավորական արտադրանքներից երկրի սահմաններից դուրս հայտնի էին և առևտրական մեծ համբավ ունեին «որդան կարմիրը», բրդե զգեստները, բարձերը, բազմոցները, մետաքսե դիպակը, գորգերը և այլն։

Խալիֆայությունը երկրի ամբողջ հողի, անտառների և դաշտերի հետ միասին պետական սեփականություն հայտարարեց նաև նրա ընդերքի հարստությունները։ Խալիֆայության տնօրինությանն անցան Հայաստանի բազմաթիվ ու բազմատեսակ հանքերը (աղի, պղնձի, կապարի, երկաթի և այլն)։ Խալիֆայության կողմից հանքերը կապալով տրվում էին անհատ մարդկանց։ Հանքերում ամենուրեք գործադրվում էր հարկադիր աշխատանքի սիստեմը։ Աշխատանքի արտադրողականությունը շատ ցածր էր։ Շահագործման էին ենթարկվում միայն գետնի երեսին մոտ գտնվող հանքային բները։ Ջրի պատճառով երկրի խորքերում գտնվող հանքերը չէին կարող շահագործել։ Մետաղային հանքերի հանույթն ու ձուլումը գոյություն ունեին միայն այն շրջանների հանքավայրերում, որտեղ առկա էին նաև անտառներ, որովհետև ձուլումը կատարվում էր բացառապես փայտածուխով։

## Քաղաքները, ճանապարհները և առևտուրը

Տնտեսության նշանակալի հետադիմությունը պատճառ է դառնում նաև քաղաքային կյանքի անկման։ VII—VIII դարերի արշավանքների հետևանքով ավերվում են Հայաստանի մի շարք քա-

ղաքներ։ Դրանց մի զգալի մասն արաբական երկարյա տիրապետության ընթացքում կորցրեց իր տնտեսական նշանակությունը (Վաղարշապատ, Զարիշատ, Կարին և այլն), իսկ որոշ քաղաքներ էլ ընդմիշտ դադարեցին գոյություն ունենալուց (օրինակ՝ Արտաշատը)։ Նախորդ ժամանակաշրջանի քաղաքներից շատերը վեր են ածվում բերդաքաղաքների և բերդերի, որոնցում տեղավորվում են արաբական կայազորներ (Մուֆարղին, Նաշավա (Նախիջևան), Բերկրի, Կալիկալա (Կարին) և այլն)։ Երկրի մայրաքաղաք Դվինը ևս մեծապես տուժեց արաբական արշավանքներից։ Արաբական զավթիչները 640 թ. իրենց արշավանքի ժամանակ գրավելով Դվինը, մասնակիորեն ավերում են այն։

Չնայած այդ բոլորին, Հայաստանի քաղաքների մեջ VII—IX դդ. Դվինն իր նշանակությամբ գրավում էր առանձնահատուկ տեղ։ Նա ամբողջ Էրմենիա փոխարքայության կենտրոնն էր, և արաբական ոստիկանները որոշ չափով հոգ էին տանում իրենց աթոռանիստը բարեկարգելու համար։ Այստեղ էին կենտրոնացած արաբական կայազորի մի զգալի մասը, խալիֆայության վարչական պաշտոնյաներ, ազնվականներ, տարբեր ազգությունների պատկանող հարուստ վաճառականներ։ Տնտեսական տեսակետից արաբական տիրապետության սկզբնական շրջանում Դվինի նշանակությունը մեծ չէր, բայց VIII դարի վերջերից և, մանավանդ, IX դարի սկզբներից այն համեմատաբար արագ կերպով բարձրանում և դառնում է արհեստագործության ու առևտրի խոշորագույն կենտրոն։

Դվինից բացի հիշատակվում են նաև մի շարք այլ քաղաքներ. Նախիջևան, Բերկրի, Կարին (Կալիկալա), Արզն, Բիթլիս, Միաֆարկին կամ Մուֆարղին, Խլաթ, Արճեշ, Վան և այլն։

Դրանք մեծ մասամբ գավառական տիպի քաղաքներ էին և իրենց նշանակությամբ չէին կարող համեմատվել Դվինի հետ. առևտրական գործառնությունները սահմանափակ էին, իսկ արհեստները՝ թույլ զարգացած։ Միջազգային առևտրին դրանց մասնակցությունը, ընդհանուր առմամբ, պասիվ էր և սահմանափակվում էր հիմնականում տարանցիկ առևտրի քարավանների սպասարկումով։

Հայաստանը VII—IX դարերում առևտրական հարաբերություններ ուներ խալիֆայության մյուս երկրների՝ հատկապես Վրաստանի, Առանի (Աղվանք), Հարավային Ադրբեջանի և Միջագետքի հետ։

Արտաքին առևտրին Հայաստանը մասնակցում էր գյուղատն-

*տեսական ապրանքներով (անասուններ, մրգեր, գինի և այլն) և արհեստագործական զանազան արտադրանքներով («որդան կարմիր» ներկ, մետաքսե ընտիր գործվածքներ, գորգեր)։ Այս շրջանի համար բնորոշ է այն, որ Հայաստանից հացահատիկներ արտահանելու մասին չի հիշատակվում։ Դա պետք է բացատրել երկրագործության ընդհանուր հետադիմությամբ։*

*Հարկերը դրամով գանձելը գյուղացիներին ստիպում էր իրենց ապրուստի վերջին միջոցները վաճառել։ Այնպես որ այդ շրջանում նկատվող ներքին առևտրի որոշ աշխուժացումը հետևանք էր ոչ թե տնտեսական զարգացման և բխում էր ոչ թե երկրի արտադրողական ուժերի զարգացման մակարդակից, այլ արդյունք էր դրամական ծանր հարկերի ու տուրքերի։*

## 3. ՏԵՂԱՇԱՐԺԵՐ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Հիշյալ ժամանակի բնակչության թվի վերաբերյալ ստույգ տեղեկություններ չկան։ Որոշ հեղինակներ, նկատի ունենալով խալիֆայության կողմից էրմինիայից գանձվող գլխահարկի չափը, այնպիսի ենթադրություններ են անում, որոնք, սակայն, մոտավոր գաղափար անգամ չեն տալիս այդ հարցի մասին, որովհետև՝ ա) արաբական աղբյուրների մեջ հիշատակված գլխահարկը գանձվում էր ոչ թե միայն Հայաստանից, այլ ամբողջ էրմինիայից, որի մեջ, ինչպես տեսանք, Հայաստանից բացի մտնում էին նաև Աղվանքն ու Վրաստանի մեծ մասը. բ) գլխահարկ էր վերցվում միայն քրիստոնյաներից, մինչդեռ Հայաստանում այդ դարերում բնակվում էին նաև այլ ժողովուրդներ. բացի դրանից, հոգևորականները ևս մեծ մասամբ ազատված էին հարկից. գ) գլխահարկի ենթակա էին միայն տղամարդիկ, այն էլ այնպիսի տարիքի, որ արաբական հարկահանները համարում էին աշխատունակ. դ) արաբական տիրապետությունից դուրս էր գտնվում Արևմտյան Հայաստանը։*

*Այսպիսով, գլխահարկի չափը չի կարող հուսալի հիմք լինել VIII—IX դդ. Հայաստանի բնակչության ընդհանուր թվի մասին գաղափար կազմելու համար։*

*Սակայն, ինչպես այդ, այնպես էլ պատմագիրների հաղորդած այլ տեղեկությունները ցույց են տալիս, որ Հայաստանում բնակչության խտությունը բավական մեծ էր։ Արաբական աղբյուրների հաղորդած տեղեկություններից երևում է, որ Հայաստանի այն մասում, որը գտնվում էր խալիֆայության տիրապետության տակ, բնակավայրերի թիվը հասնում էր հազարների։*

VIII դարում Հայաստանի բնակչության էթնիկական կազմը կրում է զգալի փոփոխություններ։ Հայկական Տավրոսից հարավ ընկած գավառներում (Նախկին Աղձնիք աշխարհում), Վանա լճից հյուսիս և արևմուտք ընկած շրջաններում և Վանա լճից հարավ-արևելք ընկած լեռնային երկրում, խալիֆայության անմիջական նախաձեռնությամբ, տեղահան են արվում բնիկ բնակիչները, իսկ նրանց տեղը բնակեցվում արաբական ու քրդական ցեղեր։ Արաբական ցեղերը համատարած շրջաններ են գրավում Հայկական Տավրոսից հարավ ընկած գավառներում և Վանա լճից արևմուտք, հյուսիս ու հյուսիս-արևելք ընկած տերիտորիաներում։ Ընդ որում, Վանա լճից հյուսիս և արևմուտք ընկած շրջաններում հաստատվում են կայսիկները, իսկ հյուսիս-արևելք ընկած շրջաններում՝ ութմանիկները։ Սրանք այստեղ կազմում են իրենց իշխանությունները՝ էմիրությունները, որոնց մասին ասվեց վերևում։ Վանա լճից հարավ-արևելք ընկած երկրում հաստատվում են քրդական ցեղեր, որոնք, ըստ երևույթին, ավելի վաղ էին հանդես եկել երկրի որոշ շրջաններում։

Հայաստանի մի շարք քաղաքներում ևս արաբները կազմում էին զգալի թիվ։ Դվինում, Արճեշում, Խլաթում, Կարինում և այլ քաղաքներում բնակվեցին բավական թվով արաբներ։

Այս ժամանակաշրջանի Հայաստանում որոշ չափով աճում է նաև պարսիկների թիվը, որոնք, սակայն, ի տարբերություն արաբների, ավելի քիչ էին և համատարած շրջաններ չէին գրավում։ Նրանք գերազանցապես բնակվում էին քաղաքներում։

Բնակչության ճնշող մասը կազմում էին հայերը։ Քաղաքներում ապրում էր բնակչության միայն մի չնչին մասը։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿՆ ՈՒ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ IX ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ 1045 ԹՎԱԿԱՆԸ

### 1. ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ

Արաբական խալիֆայության ընդհանուր թուլացման պայմաններում Հայաստանի ժողովրդա-ազատագրական շարժումները IX դարի երկրորդ կեսին ավարտվում են հաղթանակով. Հայաստանը ձեռք է բերում իր վաղուց կորցրած քաղաքական անկախությունը։

Անկախություն ձեռք բերած Հայաստանի տնտեսական կյանքում հսկայական տեղաշարժեր են կատարվում։ Զարգանում են

*գյուղատնտեսության բոլոր ճյուղերը, արհեստները, ֆեոդալական քաղաքները, առևտուրը։ Առաջընթաց զգալի քայլեր են կատարվում գրականության, գիտության և, մանավանդ, ճարտարապետության բնագավառներում։ Հայաստանն այդ դարերում թևակոխել էր զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանը, մի դարաշրջան, որը սելջուկյան կարճատև տիրապետությամբ մի փոքր ընդհատվելուց հետո շարունակվեց մինչև XIII դարը՝ մինչև մոնղոլների ավերիչ արշավանքներն ու մոնղոլական ծանր լծի հաստատումը։*

*IX—XI դարերում չհաջողվեց ստեղծել մի միաձույլ պետություն։ Դա պետք է բացատրել նրանով, որ Հայաստանում այդ դարերում այդպիսի պետության ստեղծման համար չէին ստեղծվել համապատասխան տնտեսական և սոցիալական պայմաններ։ Երկիրը գտնվում էր բնատնտեսության շրջանակներում, նրա առանձին մասերի միջև եղած կապերը թույլ էին, միասնական շուկա գոյություն չուներ, ամեն մի իշխանություն և ֆեոդալական թագավորություն ուներ իր մաքսային սահմանները, չափի ու կշռի տեղական տարատեսակները։ Երկրի դրության տերը ֆեոդալական ազնվականությունն էր։*

*Հայաստանը X—XI դարերում մասնատված էր ֆեոդալական մի քանի թագավորությունների և վասալ իշխանությունների։*

*Հայաստանի ֆեոդալական թագավորությունների մեջ կենտրոնականը և իր նշանակությամբ ամենից բարձրը Անի-Շիրակի թագավորությունն էր, որին ձևականորեն ենթարկվում էին նաև մյուսները։*

*Երկրի ներքին վարչա-քաղաքական վիճակի մասին գաղափար կազմելու համար անհրաժեշտ է ներկայացնել այդ ֆեոդալական-պետական միավորներն առանձին-առանձին՝ հետևելով նրանց կազմավորման ժամանակագրական կարգին։*

## Անի-Շիրակի թագավորություն

*Սկզբում, երբ Հայաստանում վերականգնվեց քաղաքական անկախությունը, ամբողջ երկիրը միավորված էր մի պետության մեջ։ Սակայն 908 թ. նրանից անջատվեց Վասպուրականը, 963 թվականին՝ Վանանդը, 970 թվականին՝ Սյունիքը, իսկ 978 թվականին՝ Տաշիր-Ձորագետը։ Դրանցից Վասպուրականն ու Սյունիքը գրեթե անկախ պետություններ էին և քիչ դեպքերում էին ենթարկվում Անի-Շիրակի թագավորությանը, իսկ Վանանդն ու Տաշիր-Ձորա-*

գետր, որոնցում նույնպես թագավորում էին նույն Բագրատունինե-րի տարբեր ճյուղերը, ավելի ամուր կերպով էին կապված Անի-Շիրակի թագավորության հետ։

Անի-Շիրակի թագավորությունն իր տերիտորիայի առավելագույն չափին և հզորության գագաթնակետին է հասնում Բագրատունի Գագիկ Ա-ի օրոք (990—1020)։ Նրա ժամանակ Անի-Շիրակի թագավորության սահմաններն արևելքում հասնում էին Աղվանից Պարտավ քաղաքի մոտերքը, արևմուտքում՝ մինչև Բասեն, հարավում՝ մինչև Մանազկերտ, իսկ հյուսիսում՝ մինչև Շամքոր քաղաքը։ Բացի դրանից, Անի-Շիրակի թագավորությանն էին ենթարկվում և նրա վասալներն էին մի քանի մանր թագավորություններ ու իշխանություններ, որոնց մի մասը (Խաչենի իշխանությունը՝ 1003 թվականից, Կոգովիտի իշխանությունը՝ 1001 թվականից, Բագրևանդի, Գարդմանի իշխանությունները, Գողթնի էմիրությունը) մտնում էր անմիջապես Անի-Շիրակի թագավորության մեջ, իսկ մի քանիսը (Վանանդի թագավորություն, Տաշիր-Ձորագետի թագավորություն, Կայսիկների էմիրություն, Տարոնի իշխանություն) համարվում էին նրա վասալները։ Ձևականորեն Անի-Շիրակի Բագրատունի թագավորները սյուզերեն էին համարվում նաև Վասպուրականի ու Սյունիքի թագավորների համար։

Պետության գլուխ էր կանգնած թագավորը, որը թագադրվում էր ժառանգական կարգով։ Նա անսահմանափակ իրավունքներ ուներ իր վասալների նկատմամբ։ Նա էր պատերազմ հայտարարում և հաշտություն կնքում, նա էր վարում արտաքին քաղաքականությունը, նրա կամքին էին ենթակա բոլորը։

Պետության մեջ կառավարման համար գոյություն ունեին մի քանի «դիվաններ»։ Դրանցից յուրաքանչյուրն ուներ իր գործունեության հատուկ բնագավառը և գլխավորվում էր մի բարձրաստիճան պաշտոնյայի կողմից։ Պետության ամենաբարձր պաշտոններն էին՝ իշխանաց իշխանի, սպարապետի, մութսիբի և մարզպանի պաշտոնները։

Իշխանաց իշխանի պարտականությունների մեջ էին մտնում հարկերի նշանակումն ու նրանց կանոնավորումը, արքայական ընտանիքի բոլոր կալվածքների ու արքունական գանձարանի հսկողությունը, «բերդապահ»-ների (բերդերի կառավարիչների), «քաղաքապետ»-ների (քաղաքի տանուտերերի, բացառությամբ մայրաքաղաքի քաղաքապետի) նշանակումն ու նրանց գործունեությունը հսկելը։

Անի-Շիրակի թագավորության սպարապետը, որ սովորաբար

*կոչվել է «Հայոց սպարապետ», կատարում էր երկրի ռազմական ուժերի գերագույն հրամանատարության պաշտոնը։ Պատերազմների ժամանակ նրան էին ենթարկվում ոչ միայն Անի-Շիրակի, այլև վերջինիս վասալ թագավորությունների ու իշխանությունների զորքերը։ Սակայն գլխավոր հրամանատարի պաշտոնով հանդես էին գալիս նաև Անի-Շիրակի թագավորները։*

*Իրենց ներքին կյանքում Բագրատունի թագավորների վասալներն ունեին տիրակալական լայն իրավունքներ։ Թագավորի գերագույն իրավունքն իր վասալ իշխանների նկատմամբ, մանավանդ հողատիրական կարգի գծով, կրում էր սոսկ իրավական բնույթ։*

*Իշխանները նույնպես ունեին իրենց վասալները։ Իշխանի և իր վասալի միջև եղած հարաբերությունների բնույթը նույնն էր, ինչ որ թագավորի ու իշխանի միջև եղած հարաբերությունների։*

*Վարչա-քաղաքական կարգն այդպիսին էր նաև մյուս ֆեոդալական թագավորություններում։*

*X դարի երկրորդ կեսից հզորացող Բյուզանդիան ագրեսիա է սկսում Անդրկովկասի երկրների, այդ թվում և Հայաստանի դեմ։*

*Օգտվելով Հայաստանի մասնատված դրությունից և ֆեոդալ-իշխանների երկպառակություններից, Բյուզանդական կայսրությունը աստիճանաբար գրավում է նրա առանձին մասերը և XI դարի քառասնական թվականների սկզբներին ուղղակի սպառնում է Անի մայրաքաղաքին։ 1041—1043 թթ. բյուզանդական հսկայական բանակը երեք արշավանք է կատարում Անին գրավելու և Հայաստանի անկախությանը վերջ տալու համար։ Պետական անկախությունն ու հարազատ մայրաքաղաքը պաշտպանելու համար ոտքի են կանգնում Անիի և նրա շրջակայքի բազմահազար բնակիչները։ Զինված ժողովուրդը, սպարապետ Վահրամ Պահլավունու գլխավորությամբ, երեք անգամ ջարդում ու ետ է շպրտում բյուզանդական նվաճողական բանակները։*

*Ժողովուրդը հերոսաբար կռվելով՝ ետ է մղում նաև 1045 թ. ձեռնարկված նոր գրոհները, սակայն վերջ ի վերջո Կայսրությանը հաջողվում է գրավել Անի քաղաքն ու ամբողջ Շիրակի թագավորությունը (1045 թ.)։*

## Վասպուրականի թագավորություն (908—1021)

*Արծրունի նախարարական տոհմն իր գրաված տերիտորիայով մինչև Արշակունիների թագավորության անկումը այնքան էլ խոշոր*

դեր չէր խաղում Հայաստանի քաղաքական կյանքում։ Մոտավորապես V դարի կեսերին, երբ վերացավ Մարդպետունի նախարարական տունը, վերջինիս պատկանող գավառները աստիճանաբար անցան Արծրունի նախարարական տանը։

Արաբական տիրապետության շրջանում Արծրունիներն է՛լ ավելի են ընդարձակում իրենց իշխանության սահմանները։ Տերիտորիալ այդ ձեռքբերումները կատարվում էին ի հաշիվ Վասպուրականի մյուս նախարարական տների (Ամատունիների, Ռշտունիների, Անձևացիների, Տրպատունիների և այլն), որոնք ճակատագրական հարված են ստանում Արաբական խալիֆայության կողմից։

IX դարի առաջին կեսում Արծրունիների իշխանության սահմանները արդեն հասնում էին հյուսիսում Արաքս գետին, հարավում՝ Մեծ Զաբ գետին, արևելքում՝ Ուրմիա լճին, իսկ արևմուտքում՝ Վանա լճին։

Սակայն նշված սահմանների մեջ ընդգրկված ամբողջ տերիտորիան համատարած կերպով դեռևս չէր մտնում Արծրունիների իշխանության մեջ։ Նրա առանձին շրջաններում գոյություն ունեին խալիֆայության կողմից հաստատված արաբական իշխանություններ (էմիրություններ)։ Այսպես, օրինակ, գոյություն ունեին Ամյուկի ու Վարագի և Հեր ու Զարևանդի էմիրությունները, որոնք գրավում էին բավական ընդարձակ շրջաններ։

IX դարի երկրորդ կեսում Վասպուրականի Արծրունյաց իշխանությունը իր ձեռքն էր վերցրել ոչ միայն ամբողջ Վասպուրականը (բացառությամբ Նախիջևան և Գողթն գավառների), այլ նաև Մոկաց աշխարհն ամբողջությամբ և Կորճեքի ու Պարսկահայքի մի շարք գավառներ։ X դարի սկզբին Վասպուրականի իշխանությունն իրեն միացրեց նաև Այրարատի Կոգովիտ և Տուրուբերանի Աղիովիտ, Բզնունիք, Կոր և Խոռխոռունիք գավառները։

Վասպուրականի Արծրունիների իշխանությունը կատարյալ ֆեոդալական մի պետություն էր ներկայացնում։ Պետության գլուխ կանգնած էին Արծրունի տան ներկայացուցիչները, որոնք ունեին մի շարք վասալ իշխանություններ՝ Անձևացիք, Մոկք, Ակե, Ամյուկի և Վարագի էմիրություններ և այլն։ Սակայն այդ պետական միավորման իրավունքները մինչև 908 թվականը սահմանափակ էին, և նա ամբողջապես իր հերթին մտնում էր Բագրատունիների թագավորության մեջ՝ վասալ իշխանության իրավունքներով։

IX դարի վերջերից Նախիջևանը դառնում է կռվածաղիկ Արծրունի և Սյունյաց իշխանների միջև։ Նրանցից յուրաքանչյուրը ձգտում էր ինքը տեր դառնալ այդ վաճառաշահ քաղաքին։ Դրա հետև-

*վանքով նա մերթ միացվում էր Վասպուրականին, մերթ էլ՝ Սյունիքին։*

*908 թ. Վասպուրականի Գագիկ Արծրունի իշխանը, ապստամբելով Բագրատունիների կենտրոնական թագավորության դեմ, Ատրպատականի էմիր Յուսուֆի օժանդակությամբ իրեն հռչակում է Վասպուրականի անկախ թագավոր։*

*Վասպուրականի Արծրունյաց թագավորությունն իր գոյության միայն առաջին 14 տարիների ընթացքում (908—922) մնաց կենտրոնական թագավորությունից անկախ։ 922 թվականից սկսած, մինչև իր անկումը՝ Վասպուրականի թագավորությունը Անի-Շիրակի թագավորության վասալն էր։*

*922 թ. հաստատված խաղաղությունը, որը տևեց մոտ մեկ դար, Հայաստանի մյուս մասերի նման, Վասպուրականի համար ևս ունեցավ բարերար մեծ ազդեցություն։ Այդ ժամանակաշրջանում Վասպուրականը տնտեսության և կուլտուրայի բնագավառում մեծ զարգացում ապրեց։ Զարգացան նրա գյուղատնտեսությունը, արհեստները, առևտուրը, ծաղկեցին քաղաքները (Վան, Ոստան, Բերկրի, Արճեշ, Խլաթ, Մանազկերտ)։ Վասպուրականում բացվեցին մի շարք դպրոցներ (Վարագում, Աղթամարում և այլուր), որոնցից մի քանիսը դարձան միջնադարյան հայկական մշակույթի խոշոր կենտրոններ։*

*XI դարի առաջին երկու տասնամյակներում, սակայն, Հայաստանի մյուս մասերի և Վրաստանի արևմտյան իշխանությունների նման, Վասպուրականը ևս ընկավ քաղաքական աննպաստ դրության մեջ։ Բուլղարական պատերազմում հաղթելուց հետո բյուզանդական կայսր Վասիլ Բ-ն ձեռնամուխ եղավ Վասպուրականի գրավմանը։*

*1021 թ. վերացավ Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը, երկիրը միացվեց Բյուզանդիային՝ որպես նրա արևելյան պրովինցիաներից (թեմերից) մեկը։*

*Վասպուրականի թագավորության անկումը և նրա միացումը Բյուզանդիային մեծ հարված էր Հայաստանի համար։*

## Վանանդի կամ Կարսի թագավորություն (963—1065)

*VIII դարի վերջերին Վանանդ գավառին տեր են դառնում Բագրատունիները։ Երբ Հայաստանը ձեռք բերեց քաղաքական անկա-*

խություն, Վանանդն սկզբից ևեթ մտավ Բագրատունիների թագավորության մեջ և կազմեց նրա բաղկացուցիչ մասը։

Կարսի կառավարիչ Բագրատունի Մուշեղը 963 թ. իրեն հռչակում է թագավոր։ Աշոտ Գ-ն երկպառակություններից խուսափելու համար ստիպված ճանաչում է նրա թագավորությունը։

Հայ ժողովրդի պատմության մեջ այս թագավորությունը սովորաբար կոչվում է կամ նրա մայրաքաղաք Կարսի կամ նրա հիմնական տերիտորիան կազմող Վանանդ գավառի անունով։

Սկզբնական շրջանում այս թագավորությունն իր մեջ ընդգրկում էր միայն Վանանդ գավառը։ Սակայն հետագայում նրա տերիտորիան զգալի չափով ընդարձակվում է հարևան մի շարք շրջանների հաշվին։ Վանանդի թագավորության տերիտորիան առավելագույն չափին է հասնում Աբաս թագավորի օրոք (984—1029), որը Վանանդից բացի, իր մեջ էր ընդգրկում նաև Արշարունիքն ու Ստորին Բասենն ամբողջությամբ և Աշոցքի մի մասը։ Այնուամենայնիվ, Կարսի թագավորությունն իր առավելագույն տարածությամբ ավելի քան երեք անգամ փոքր էր Վասպուրականի թագավորությունից։

Հայկական ֆեոդալական մյուս վասալ թագավորությունների նման, Վանանդի թագավորությունը ևս միշտ չէ, որ հաշտ ու հանգիստ է եղել Անի-Շիրակի թագավորության հետ։ Երբեմն նա ըմբոստացել է (հատկապես առաջին թագավորի՝ Մուշեղի օրոք, 963—984) և փորձել է լիակատար անկախություն ձեռք բերել։ Սակայն այդ նրան չի հաջողվել, և նա միշտ էլ մնացել է որպես կենտրոնական թագավորության վասալ։

Աբասի օրոք զգալի շինարարական աշխատանքներ են կատարվում Վանանդում՝ հատկապես Կարս մայրաքաղաքում։ Երկրի պաշտպանությունն ուժեղացնելու համար ամրացվում են նրա բերդերը՝ Կարսի բերդը և Կապույտ բերդը (վերջինս գտնվում էր Արշարունիք գավառում)։

Վանանդի թագավորությունը իր գոյությունը պահպանում է մինչև 1065 թվականը։

## Սյունիքի կամ Կապանի թագավորություն (970—1170)

970 թ. Սյունիքում կազմավորվում է ֆեոդալական մի թագավորություն՝ Սյունիքի կամ Կապանի թագավորությունը։

Նրա տերիտորիան սկզբնական շրջանում բավականաչափ լայն էր՝ իր մեջ ընդգրկում էր VII դարի «Աշխարհացույց»-ում նկարագրված Սյունիք աշխարհի մեծագույն մասը։ Թագավորության սահմաններից դուրս էին միայն նախկին Սյունիքի Գեղամա (Սևանա) լճի ավազանը և Երնջակ գավառը։

Սակայն Սյունիքի թագավորությունը, շատ չանցած, կորցնում է իր տերիտորիաների մի զգալի մասը։ Բագրատունի Գագիկ Ա թագավորը 1003 թ. Սյունիքի թագավորությունից գրավում և Անի-Շիրակի թագավորությանն է միացնում Վայոց ձորն ու նրա շրջակայքի մի քանի գավառները։

Դրանից հետո Սյունիքի թագավորության մեջ մնում է նախկին Սյունյաց աշխարհի միայն մոտ մեկ երրորդը՝ նրա հարավարևելյան մի քանի գավառները։ Այդ ժամանակից սկսած Սյունիքի թագավորության սահմաններն արևմուտքում կազմում էին Սյունյաց լեռների հարավային մասը, հարավում՝ Արաքս գետը, արևելքում՝ Աղավնո (Հագարի) գետը, իսկ հյուսիսում այդ սահմանն անցնում էր Հագարի գետի Աղողլան վտակի և Որոտան գետի ջրբաժան լեռներով, ապա ուղղվում դեպի արևմուտք և հասնում Սյունյաց լեռների հետ։ Սյունիքի թագավորությունը նշված սահմաններում իր մեջ ընդգրկում էր Բաղք, Կապան, Արևիք, Կովսական ու Հաբանդ գավառները՝ ամբողջությամբ, և Ծղուկք գավառի հարավային մասը։

Նկարագրված սահմանները, որոնք վերաբերում են XI դարին, ներկայացնում են Սյունիքի թագավորության տերիտորիայի առավելագույնը՝ հետագա ժամանակների համեմատությամբ։

Սյունիքի թագավորության մեջ կային 43 բերդ, 48 վանք և 1008 (1400) գյուղ։

Սյունիքի թագավորության մայրաքաղաքը սկզբնական շրջանում Շաղատ գյուղաքաղաքն էր (այժմյան Սիսիանի շրջանի Շաղատ գյուղի մոտ), իսկ X դարի վերջերին դարձավ պաշտպանական և տնտեսական չափազանց հարմար դիրք ունեցող Կապան քաղաքը։

Այդ թագավորությունը, ընդհանուր առմամբ, հայկական մյուս ֆեոդալական թագավորությունների նման, Անի-Շիրակի թագավորության վասալն էր։ Նա իր հզորության գագաթնակետին հասավ XI դարի երկրորդ կեսին։

Սյունիքի թագավորությունը տնտեսական կապերով կապված էր Անի-Շիրակի ու Վասպուրականի թագավորությունների և Աղվանքի հետ։ Երկրում առևտրական ճանապարհների վրա առաջացել

քին փոքրիկ, բայց առևտրական տեսակետից զգալի նշանակություն ունեցող գյուղաքաղաքներ, որոնք նախորդ շրջանում իրենցից ներկայացնում էին սոսկ գյուղեր։ Ամբողջ թագավորության մեջ տնտեսական և քաղաքական առանձնակի կարևոր նշանակություն ուներ երկրի միակ քաղաքը՝ Կապանը, որը առևտրի ու տեղական նշանակություն ունեցող արհեստագործության կենտրոնն էր։ Սյունիքի թագավորությունում, գյուղատնտեսությունից բացի, մեծ զարկ էր ստացել պղնձի հանույթն ու ձուլումը։

Սակայն Սյունիքի թագավորության տնտեսական վերելքը երկար չի տևում։ XI դարի վերջերից նա ընկնում է քաղաքական աննպաստ դրության մեջ։ XII դարի հենց սկզբից Սյունիքի թագավորությունը ստիպված է լինում համառ մարտեր մղել սելջուկյան նվաճողների դեմ, որոնք գրեթե բոլոր կողմերից հարձակումներ էին գործում նրա վրա։ Սելջուկներին հաջողվում է 1103 թ. ավերել թագավորության մայրաքաղաք Կապանը, ապա մեկը մյուսի ետևից գրավել նրա տերիտորիաները։ 1170 թ. սելջուկները գրավում են Սյունիքի թագավորության վերջին բերդը՝ Բաղաբերդը, որով և Սյունիքի թագավորությունը պատմության ասպարեզից վերանում է։

## Տաշիր-Ձորագետի կամ Լոռու թագավորություն (X—XIII դդ.)

Վանանդից հետո Անի-Շիրակի թագավորությունից անմիջական վասալական կախման մեջ էր Տաշիր-Ձորագետի թագավորությունը, որը կազմվել էր նախկին Գուգարք աշխարհում և գրավում էր նրա մեծ մասը։

Աշոտ Գ-ն 972 թ. Տաշիրի կառավարիչ է նշանակում իր որդուն՝ Գուրգենին, որը և Սմբատ Բ-ի (977—990) հատուկ հրովարտակով ճանաչվում է Տաշիր-Ձորագետի թագավոր։ Վերջինս ստանում է տեղական «Կորիկե» անունը և դառնում մինչև XIII դարի սկիզբը պահպանված Կորիկյան հարստության հիմնադիրը։

Տաշիր-Ձորագետի թագավորությունն իր հզորության գագաթնակետին հասնում է Կորիկե Ա-ի (978—989) որդի և հաջորդ Դավիթ Անհողինի թագավորության ժամանակ (989—1048)։ Դավիթ Անհողինը իր թագավորության տերիտորիան մեծապես ընդարձա-

կում է ի հաշիվ Գանձակի և Թբիլիսիի էմիրների տիրապետություն-ների։

Նրա օրոք Տաշիր-Ձորագետի թագավորության սահմանները ձգվում էին Շամքոր քաղաքից մինչև Խռնավ լեռները և Աղստևից մինչև Փամբակի լեռները, այսպիսով, Լոռիից բացի, իրենց մեջ ընդ-գրկելով մի շարք այլ գավառներ[1]։

Տաշիր-Ձորագետի թագավորությունը տնտեսական աշխույժ կապեր ուներ Անի-Շիրակի թագավորության և հարևան Վրաստանի հետ։ Նրա մայրաքաղաք Լոռին լեռնային ճանապարհով կապված էր մի կողմից Անիի, իսկ մյուս կողմից՝ Վրաց մայրաքաղաք Տփղիսի (Թբիլիսիի) հետ։ Լոռի քաղաքից բացի, Տաշիր-Ձորագետում կային մի շարք գյուղաքաղաքներ և ավաններ, որոնք, անշուշտ, գյուղա-տնտեսության հետ կապված զբաղմունքներից բացի, կարևոր դեր են կատարել նաև արհեստագործության ու առևտրի մեջ։

Տաշիր-Ձորագետի թագավորությունն ավելի նեղ սահմաննե-րով իր գոյությունը պահպանում է նաև հաջորդ ժամանակաշրջա-նում։

## Տարոնի իշխանություն (826—966)

Դեռևս V դարում ընդարձակ Տարոն գավառը գրեթե ամբողջու-թյամբ կազմում էր մի նախարարություն, որտեղ իշխում էր Մամի-կոնյանների մի ճյուղը։

Տարոնի այդ իշխանությունը երկար ժամանակ պահպանեց իր գոյությունը (մինչև 966 թ.)։ Եղել են պահեր, երբ արտաքին նվա-ճողները վերացրել են Տարոնի իշխանությունը, բայց այդ դրությու-նը երկար չի տևել, և իշխանությունը նորից է վերականգնվել, շա-րունակել իր գոյությունը։

Մինչև VIII դարը այստեղ իշխել են Մամիկոնյանները։ 774—775 թթ. ժողովրդական ազատագրական ապստամբության ճնշու-մից հետո նրան ակտիվ մասնակցած Մամիկոնյաններն այնպիսի հարված ստացան, որ VIII դարի երկրորդ կեսից սկսած դադարեցին Հայաստանի քաղաքական կյանքում խոշոր դեր խաղալուց։ Տարո-նում դրանից հետո տեղի է ունենում իշխանական ընտանիքի փո-փոխություն. այդ իշխանությունը թուլացած Մամիկոնյաններից աստիճանաբար անցնում է Տարոնի Բագրատունիների ձեռքը։ Տա-րոնի Բագրատունիների ներկայացուցիչ Բագարատ Բագրատունին

[1] Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Ատլաս «Հայ ժողովրդի պատմություն» գրքի։

826 թ. արդեն Տարոնի տերն էր և հենց այդ թվականին էլ ստանում է «իշխանաց իշխան Հայոց» տիտղոսը։

Բագարատ Բագրատունու օրոք (824—851) Տարոնի իշխանությունը գրավում էր մի ընդարձակ տերիտորիա։ Նրա մեջ, Տարոնից բացի, մտնում էին Սասունը, Խութը և Խլաթ քաղաքն իր շրջակայքով։

Այս իշխանությունը, անմիջական սահմանակից լինելով խալիֆայության բուն տիրապետություններին, իր վրա էր կրում Հայաստանի ժողովրդական ազատագրական ապստամբությունները ճնշելու համար խալիֆայության կողմից կազմակերպված պատժիչ արշավանքների առաջին հարվածները։

Հայաստանում քաղաքական անկախության վերականգնումից հետո Տարոնի իշխանությունը պայքարի առարկա էր դարձել Շիրակի Բագրատունիների և Վասպուրականի Արծրունիների միջև։ Սակայն, ընդհանուր առմամբ, Տարոնի լայնածավալ իշխանությունը մտնում էր Անի-Շիրակի թագավորության մեջ՝ վայելելով բավական լայն իրավունքներ։

Տարոնի իշխանությունը, սահմանակից լինելով Արզնի (կամ Աղձնիքի) արաբական էմիրությանը, ստիպված էր նրա հետ համառ պայքար մղել, որովհետև վերջինս փորձում էր վերջ տալ Տարոնի իշխանությանը և այն միացնել իր տիրապետությանը։ Սակայն այդ պայքարը երկրի ընդհանուր կյանքի համար անցողիկ էր։ Տարոնի իշխանությունը IX դարի վերջին քառորդում և X դարում ապրում է խաղաղ ժամանակաշրջան, որի շնորհիվ զարգանում են նրա տնտեսության բոլոր ճյուղերը։ Մուշն այդ ժամանակաշրջանում դառնում է բավական բարեկարգ քաղաք։ Մուշի նշանակությունը հատկապես բարձրանում է նրանով, որ նա իշխանության կենտրոնն էր։ Առաջանում են մի շարք գյուղաքաղաքներ և ավաններ։ Սասունում ու Խութում զարգանում է անասնապահությունը, իսկ Մուշի շրջանում՝ երկրագործությունը։ Դաշտային Մուշի և լեռնային Սասունի ու Խութի միջև աշխուժանում են ապրանքափոխանակությունն ու առևտուրը։ Տարոնի իշխանությունը առևտրական կապեր է պահպանում ինչպես Հայաստանի մյուս մասերի, այնպես էլ Բյուզանդիայի ու Միջագետքի հետ։

966 թ. Բյուզանդական կայսրությունը գրավում է Տարոնի իշխանությունը և վերջ տալիս նրա ներքին ինքնավարությանը։ Բյուզանդիային կցվելուց հետո Տարոնի իշխանությանը միացվեցին Դերջան, Մանանաղի, Հաշտյանք ու Պաղնատուն գավառները։ Տարոնը դարձավ Կայսրության սոսկ վարչական միավորներից մեկը։

Վարչական այդ միավորի մեջ, սակայն, Սասունն ու Խութը միայն ձևականորեն էին մտնում։ Վերջիններս փաստորեն շարունակում էին պահպանել իրենց ներքին ինքնուրույն կարգերը։

* * *

IX—XI դարերում Հայաստանում (չհաշված Արևմտյան Հայաստանը, որը գտնվում էր Բյուզանդիայի տիրապետության տակ), հայկական թագավորություններից ու իշխանություններից բացի, կային նաև արաբական մի քանի իշխանություններ՝ էմիրություններ։ Դրանք էին՝ Դվինի, Գողթնի, Ամյուկի և Վարագի, Հեր և Զարեվանդի, Կայսիկների և Արզնի կամ Աղձնիքի էմիրությունները։ Դրանցից առաջին երկուսը անմիջապես միացված էին Անի-Շիրակի թագավորությանը և կազմում էին նրա բաղկացուցիչ մասը։ Ընդ որում, Դվինի էմիրությունը X դարում վերացվեց, Դվին քաղաքն իր շրջակայքով դարձավ Անի-Շիրակի թագավորության գավառներից մեկը։

Ամյուկի ու Վարագի և Հեր ու Զարեվանդի էմիրությունները մտնում էին Վասպուրականի թագավորության մեջ և օգտվում էին այնպիսի արտոնություններից, ինչպիսիք ունեին նրա կազմի մեջ մտնող հայկական մյուս իշխանությունները։

Կայսիկների էմիրությունը Անի-Շիրակի թագավորության վասալն էր, իսկ Արզնի էմիրությունը ձևականորեն ենթարկվում էր խալիֆայությանը, սակայն, փաստորեն իրենից ներկայացնում էր անկախ պետություն։

Մի քանի խոսք վերջին երկու էմիրությունների մասին։

## Կայսիկների էմիրություն

VIII դարի երկրորդ կեսին, 774—775 թթ. ժողովրդական-ազատագրական ապստամբությունը ճնշելուց հետո, Հայաստանի կենտրոնական մասում (Վանա լճի հյուսիսում), Ապահունիք գավառում խալիֆայության կողմից բնակեցված կայսիկները կազմեցին մի էմիրություն, որի մայրաքաղաքը դարձավ Մանազկերտը։

Կայսիկները Հայաստանում իրենց դիրքերն աստիճանաբար

ամրացնելով, IX դարի երկրորդ կեսից փորձում էին անկախանալ Բաղդադի խալիֆայությունից։ Այդ ժամանակներում Կայսիկների էմիրությունն իր մեջ ընդգրկում էր բավական ընդարձակ մի երկիր․ նրա սահմանները ձգվում էին Սիփանից մինչև Սուրբ Լույսի լեռները և Բուլանողն ու Մուշն իրարից բաժանող լեռնաշղթայից մինչև Հայկական Պարը։ Դեռ ավելին, Կայսիկների էմիրությանն էր պատկանում նաև Հայկական Պարից հյուսիս ընկած Բասենի մի զգալի մասը[1]։ Սակայն էմիրության մեջ կայսիկները կազմում էին բնակչության չնչին փոքրամասնությունը։ Նրանք հիմնականում կենտրոնացած էին Ապահունիք գավառում։ Բնակչության ճնշող մեծամասնությունը հայեր էին։ Էմիրության գլխավոր քաղաքներն էին Մանազկերտը և Խնուսը։ Մանազկերտը, լինելով էմիրության մայրաքաղաքը և գտնվելով դեպի Անի-Շիրակ, Թավրիզ և Եդեսիա տանող ճանապարհների վրա, դարձել էր առաջնակարգ քաղաք։

Կայսիկների ուժեղացած էմիրությունը, ինչպես նշվեց, ձգտում էր խալիֆայությունից անկախանալ։ Հայկական թագավորությունները, օգտվելով այդ առիթից, վերջ ի վերջո, ուժով ընկճեցին այդ էմիրությունը և այն դարձրին իրենց վասալը։ Ընդ որում նրա արևելյան մի փոքր մասը (Մանազկերտ քաղաքն իր շրջակայքով) ենթարկվեց Վասպուրականի թագավորությանը, իսկ մյուս խոշորագույն մասն անցավ Անի-Շիրակին։

## Աղձնիքի կամ Արզնի էմիրություն

Հայաստանի այն գավառները, որոնք հետագայում կազմեցին Աղձնիքի էմիրությունը, գտնվելով երկրի հարավային մասում, արաբները ավելի վաղ գրավեցին։ Սկզբնական շրջանում նրանք կազմեցին Միջագետքի զինվորական կառավարչության բաղկացուցիչ մասը։ Հետագայում՝ Բաղդադի խալիֆայության թուլացման շրջանում, այդ զինվորական կառավարչության տերիտորիայում կազմավորվեց անկախ պետություն, որը, շատ չանցած, մեծապես ընդարձակեց իր տերիտորիան, գրավելով գրեթե ամբողջ Հյուսիսային Միջագետքը, Սիրիան ու Պաղեստինը։

Աղձնիքն այդ պետության մեջ կազմում էր մի էմիրություն, որն ուներ լայն իրավունքներ։ Աղձնիքի էմիրությունում ժառանգական իրավունքներով իշխում էին Մերվանյանները։

[1] Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Ատլաս «Հայ ժողովրդի պատմություն» գրքի «Հայաստանը X դարի վերջին և XI դարի սկզբին» քարտեզը։

*Աղձնիքի էմիրությունը X դարի վերջերին գրավում էր Արևմտյան Տիգրիսի և Հայկական Տավրոսի հարավային շղթաների միջև ընկած ամբողջ տերիտորիան։*

*Աղձնիքի Մերվանյանների էմիրության գլխավոր քաղաքներն էին՝ պետության մայրաքաղաք Մուֆարղինը և Արզն ու Բաղեշ քաղաքները։ Մուֆարղինը չնայած գտնվում էր Բյուզանդիայի և խալիֆայության միջև մղվող հարատև պատերազմների գոտում, այնուամենայնիվ, IX—X դարերում, համեմատած VIII դարի հետ, բավականաչափ առաջադիմում է։ Նա բանուկ ճանապարհով կապված էր մի կողմից Եդեսիայի, մյուս կողմից՝ կենտրոնական և հյուսիսային Հայաստանի քաղաքների հետ։ Նույն ճանապարհի վրա էին գտնվում նաև էմիրության մյուս երկու նշանավոր քաղաքները՝ Արզնը և Բաղեշը։*

*Աղձնիքի գյուղատնտեսության մեջ, արաբական նվաճումներից հետո, գերակշռող դեր էր խաղում անասնապահությունը։ Մինչդեռ ավելի վաղ ժամանակներում այս երկրում բարիքների հիմնական մասն ստացվում էր երկրագործությունից։*

*Աղձնիքի կամ Արզնի Մերվանյանների էմիրությունը, գտնվելով Համդանյանների պետության և Հայաստանի միջև, հաճախ փոխում էր իր քաղաքական օրիենտացիան. մերթ հարում էր Համդանյաններին, մերթ էլ՝ Բագրատունիներին։ IX դարի վերջերին նա ագրեսիվ դիրք էր գրավել Բագրատունիների նկատմամբ և փորձում էր գրավել Տարոնի իշխանությունը։ Սակայն Թուխի անհաջող ճակատամարտից հետո (898 թ.) հայկական միացյալ զորքերը ետ են շպրտում Տարոնի սահմանները ներխուժած արաբական էմիրի զորքերին։*

## 2. ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ

*Այս ժամանակաշրջանում, միջնադարյան տեմպերի համեմատ, Հայաստանն ունեցել է տնտեսական արագ զարգացում։ Ընդ որում զարգացումը վերաբերում էր տնտեսության գրեթե բոլոր ճյուղերին՝ և՛ գյուղատնտեսությանը, և՛ արհեստներին, և՛ առևտրին։ Իսկ վերջին երկու ճյուղերը IX—XI դարերում աստիճանաբար ավելի են կենտրոնանում քաղաքներում, ուստի զարգացումը վերաբերում էր նաև քաղաքային կյանքին։*

*IX—XI դարերում Հայաստանի տնտեսական զարգացման համար նպաստավոր պայմաններ էին ստեղծվել երկրի քաղաքական*

անկախության վերականգնման ու երկարատև խաղաղության շնորհիվ, որը հաստատվում է X դարի 20-ական թվականներին և տևում ավելի քան 100 տարի։

## Գյուղատնտեսությունը

Հայտնի է, որ Արաբական խալիֆայության ծանր լծի պատճառով VIII դարում Հայաստանի տնտեսությունն ապրում է որոշ լճացման և հետադիմության շրջան։ Սակայն դա երկար չի տևում։ IX դարի սկզբներից, առանձնապես 50-ական թվականներից, սկսվում է արտադրողական ուժերի զարգացման և տնտեսական կյանքի վերելքի շրջան։ Հայաստանը թևակոխում է ֆեոդալիզմի զարգացման ժամանակաշրջանը։ Հսկայական փոփոխություններ են կատարվում գյուղատնտեսության բնագավառում՝ հողատիրության ձևերի, հողային հարաբերությունների և գյուղատնտեսության առաջընթացի տեսակետից։

IX դարում մի շարք ֆեոդալական տներ վերականգնում են իրենց ժառանգական հողատիրական իրավունքները, որոնք VIII դարում խալիֆայության կողմից խլվել էին, և հողը համարվել էր պետական սեփականություն։

Աշխարհիկ և հոգևոր ֆեոդալները, իրենց հսկայական կալվածքների մի մասը բաժանելով առանձին հողակտորների, վարձակալական պայմաններով դրանք տալիս էին սակավահող և հողազուրկ գյուղացիներին մշակելու, իսկ մյուս մասում կազմակերպում էին իրենց խոշոր տնտեսությունները, որոնցում դարձյալ աշխատում էին կախյալ վիճակում գտնվող գյուղացիները։

Այսպիսով, IX—XI դարերում Հայաստանում գյուղական տնտեսության երեք տիպ գոյություն ուներ՝ տերունի խոշոր տնտեսություններ, տերունական հողի վրա կազմակերպված վարձակալական մանր տնտեսություններ և ազատ գյուղացիների մանր տնտեսություններ։ Դրանցից առաջինները, որոնք հատուկ էին հատկապես վանքապատկան կալվածքներին, ունեին զարգացման ավելի մեծ տենդենց։ Լինելով խոշոր տնտեսություններ, նրանցում ավելի մեծ հնարավորություններ կային արհեստական ոռոգում, պարարտացում կատարելու և գյուղատնտեսական նոր գործիքներ (ծանր գութան) օգտագործելու։ Ֆեոդալն այդ բոլորի համար ուներ անհրաժեշտ նյութական-տնտեսական հիմք։ Այս տնտեսություններում

թե՛ վարելն ու ցանելը, թե՛ կալսումն ու բերքի փոխադրումը կատարվում էին բացառապես կոռային աշխատանքով։ Տարանցիկ և ներքին առևտրի զարգացման հետևանքով աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալներն ավելի ու ավելի էին մեծացնում իրենց խոշոր տնտեսությունները, որովհետև դրանք, ինչպես նշվեց, ավելի արտադրողական էին և ֆեոդալներին ավելի մեծ հնարավորություններ էին տալիս շատ ապրանքներ վաճառահանելու։

Տնտեսության երկրորդ տեսակը, ինչպես նշվեց, վարձակալականն էր։ Այս տնտեսությունները, որ կազմակերպվում էին ֆեոդալի կալվածքներում, Հայաստանի գյուղատնտեսության մեջ հանդիսանում էին գերիշխող սիստեմ։ Դրանց էությունը կայանում էր հետևյալում. սակավահող և հողազուրկ գյուղացիները իրենց գոյությունը պահպանելու համար ստիպված էին հողատիրոջից վարձակալական հիմունքներով վերցնել հողակտոր և մշակել։ Եթե գյուղացին ուներ իր արտադրամիջոցները և առանց հողատիրոջ օգնության ինքն էր մշակում իր ստացած հողակտորը, ապա նա պարտավոր էր հողատիրոջը տալ ստացված բերքի որոշ մասը։ Իսկ եթե գյուղացին, բացի իր բանվորական ձեռքերից, որևէ արտադրամիջոց չուներ (ո՛չ գործիքներ, ո՛չ սերմացու), ապա հողատերը նրան, հողակտորից բացի, տրամադրում էր նաև մշակելու միջոցներ՝ սերմ, քաշող անասուններ, դրամ և այլն։ Այս դեպքում գյուղացին ստացված բերքի մեծ մասն էր տալիս հողատիրոջը։

Տնտեսության երրորդ տեսակը ազատ գյուղացիների մանր տնտեսություններն էին։ Սրանք դեռևս ֆեոդալներից կախված չէին և գյուղական համայնքի հողից ունեին իրենց հողաբաժինները։ Սակայն այս տիպի գյուղացիները արդեն քիչ տոկոս էին կազմում. նրանք (մանավանդ նրանցից սակավազորները) ֆեոդալների կողմից տարբեր միջոցներով աստիճանաբար վեր էին ածվում կախյալ գյուղացիների։

Երկրի նյութական բարիքների մեծագույն մասը տալիս էր գյուղատնտեսությունն իր երկու կարևորագույն ճյուղերով՝ երկրագործությամբ ու անասնապահությամբ։

Երկրագործության մեջ այս ժամանակաշրջանում կատարվում են զգալի տեղաշարժեր։ Կալվածատիրական խոշոր տնտեսություններում թեթև գութանի փոխարեն հանդես է գալիս ծանր գութանը, կիրառվում է գոմաղբով պարարտացում, վերակառուցվում են հին առուները, կառուցվում են նորերը (Սյունիքում, Վասպուրականում,

Երևանում և այլուր), զգալի չափով բարձրանում է բերքատվությունը։

Խոշոր տնտեսություններում հիմնականում մշակում էին բամբակ, բանջարեղեն, խաղող և այգեգործական այլ կուլտուրաներ, իսկ մանր տնտեսություններում՝ գլխավորապես հացահատիկային կուլտուրաներ։

Աշխարհագրական տեսակետից երկրագործական զբաղմունքները տարածված էին գրեթե երկրի բոլոր մասերում՝ բացառությամբ բարձր ալպյան շրջանների։ Սակայն կարելի է նշել մի շարք շրջաններ, որոնք այդ առումով ձեռք էին բերել առանձնահատուկ նշանակություն։ Այսպես, հացահատիկային կուլտուրաներով հայտնի էին Շիրակը, Վանանդը, Բագրևանդը, Տարոնը, Խարբերդը, Բասենը, Կարինը և Եկեղյաց գավառը, յուղատու բույսերով, բամբակով, խաղողով և այգեգործական այլ կուլտուրաներով՝ Արարատյան դաշտը, Վանա լճի ավազանը, Արածանիի ավազանի ցածրադիր մասերը և Արշարունիք, Արևիք ու, մասամբ, Եկեղյաց գավառները։ Իհարկե, դրանից չպետք է եզրակացնել, թե IX—XI դարերում Հայաստանում եղել են գյուղատնտեսական այս կամ այն կուլտուրաների գծով մասնագիտացված ամբողջական շրջաններ և գավառներ։ Ինչպես նշված վայրերում, այնպես էլ մյուս շրջաններում ու գավառներում մշակում էին ոչ թե մեկ, երկու կամ երեք տեսակի կուլտուրաներ, այլ՝ բազմաթիվ։ Այնպես որ նշված տեղաբաշխումը մոտավոր է և ցույց է տալիս, թե տվյալ գավառում հատկապես ինչպիսի կուլտուրաներ էին առաջնահերթ դեր խաղում։

Երկրագործության համեմատությամբ անասնապահության բնագավառում առանձին նորամուծություններ չեն լինում։ Անասնապահության մեջ մնում են հին ճյուղերը՝ մանր և խոշոր եղջերավոր անասնապահությունն ու ձիաբուծությունը, որոնք շարունակում են առաջնակարգ դեր խաղալ, սակայն մեծապես ավելանում է անասունների գլխաքանակը։ Լայն զարգացում են ստանում շերամապահությունն ու մեղվաբուծությունը, որոնք նախորդ ժամանակաշրջաններում ունեին ավելի սահմանափակ բնույթ։

Երկրագործության նման, անասնապահության գծով ևս գոյություն ունեին երկու տիպի տնտեսություններ՝ տերունական խոշոր տնտեսություններ և գյուղացիական մանր տնտեսություններ։ Խոշոր ֆեոդալներն ու վանքերն ունեին իրենց տավարի նախիրները, ոչխարի հոտերը, մեղվանոցները։ Ֆեոդալական խոշոր տնտեսություններում առանձնահատուկ տեղ էր գրավում ձիաբուծությունը։ Մանր գյուղացիական տնտեսությունները ևս զբաղվում էին

անասնապահության գրեթե բոլոր ճյուղերով։ Ամբողջ երկրի անասնապահության մեջ, անասունների գլխաքանակի տեսակետից, մանր գյուղացիական տնտեսություններն ունեին գերիշխող դեր։

Հայաստանի անասնապահությունը երկու տիպի էր՝ կիսաքոչվորական և նստակյաց։ Կիսաքոչվորական անասնապահությամբ մեծ մասամբ զբաղվում էին այն շրջաններում, որտեղ ալպյան և տաք գոտիները զուգորդված էին իրար հետ։ Իսկ այն շրջաններում, որտեղ կային և՛ փարթամ արոտավայրեր, և՛ խոտհարքներ, տարածված էր գլխավորապես նստակյաց անասնապահությունը։ Կիսաքոչվորական անասնապահությունը սերտորեն կապված էր մանր եղջերավոր անասնապահության և ձիաբուծության հետ, մինչդեռ, խոշոր եղջերավոր անասնապահությունը, ընդհանուր առմամբ, նըստակյաց տիպի էր։

Անասնապահության գծով IX—XI դարերի Հայաստանում առավել նշանավոր էին ալպյան արոտավայրերով և խոտհարքներով հարուստ շրջաններն ու գավառները, որոնցից կարելի է հիշատակել հետևյալները՝ Բյուրակն բարձրավանդակը, Սյունիքը, Սասունը, Տաշիր-Ձորագետը, Արցախը, Վասպուրականը, Մոկքը, Կորճեքի մի քանի գավառները։

Գյուղատնտեսության հետ էին կապված նաև որսորդությունն ու ձկնորսությունը։

Ձկնորսությամբ զբաղվում էին Գեղամա (Սևանա) և Վանա լճերի առափնյա շրջանների և Արաքսի ու Արածանիի հովիտների բնակիչները։ Տնտեսական տեսակետից այս ճյուղը, որսորդության հետ համեմատած, ավելի եկամտաբեր էր։

## Արհեստագործությունը, լեռնային արդյունագործությունը, ճանապարհները և առևտուրը

IX—XI դարերի արհեստագործության բնորոշ կողմն այն էր, որ աստիճանաբար զատվելով գյուղատնտեսությունից, այն կենտրոնանում էր քաղաքներում։ Քաղաքների բնակչության հիմնական մասը կազմում էին արհեստավորները։ Միջազգային և ներքին շուկայի պահանջների հիմքի վրա արհեստագործությունն ավելի ու ավելի էր առաջադիմում։

Սակայն չպետք է կարծել, որ IX—XI դարերում արհեստները լրիվ անջատվել էին գյուղից։ Գյուղական արհեստները դեռևս շարունակում էին երկրի կյանքում խոշոր դեր խաղալ։

Արհեստների այն տեսակները, որոնք պահանջում էին ավելի մեծ հմտություն և ունեին ավելի բարձր տեխնիկա, հիմնականում կենտրոնացած էին քաղաքներում։ Դրանց թվին էին պատկանում մետաղամշակման հետ կապված արհեստները (զինագործություն, ոսկերչություն, պղնձագործություն և այլն), ներկեր պատրաստելու արհեստները, մետաքսե և բրդյա նուրբ կտորների պատրաստումը, կավագործությունը, քարտաշությունը։

Կային արհեստներ, որոնք գրեթե հավասար չափով տարածված էին և՛ գյուղում, և՛ քաղաքում։ Դրանցից էին՝ ներկարարությունը, գորգագործությունը, մանածագործությունը, դերձակությունը, որմնադրությունը, հյուսնությունը, դարբնությունը, պայտարությունը, թամբագործությունը և այլն։ Սակայն միևնույն տեսակի արհեստները քաղաքներում ավելի բարձր կատարելության էին հասել, քան գյուղերում։

Կային այնպիսի արհեստներ, որոնք ամբողջովին կապված էին գյուղատնտեսության հետ և գործում էին նրա ընդերքում։ Այդպիսին էին, օրինակ, գինեգործությունը, գյուղատնտեսական որոշ գործիքների պատրաստման հետ կապված արհեստները։

Այսպիսով, աշխարհագրական տեղաբաշխման առումով, IX—XI դարերի Հայաստանում արհեստները ցրված էին երկրով մեկ՝ արհեստագործությամբ զբաղվում էին և՛ քաղաքներում, և՛ գյուղերում, և՛ ագարակներում, դղյակներում ու վանքերում։

Այնուամենայնիվ, IX—XI դարերի արհեստագործության տեղաբաշխման մասին խոսելիս պետք է նշվեն այն քաղաքները, որոնք այս կամ այն չափով դարձել էին արհեստագործության կենտրոններ. դրանցից էին՝ Անին, Դվինը, Կարսը, Արծնը, Կարինը, Մանազկերտը, Վանը, Արճեշը, Բաղեշը, Մուշը, Մուֆարղինը, Կապանը, Լոռին և այլն։ Ընդ որում Անին հայտնի էր զինագործությամբ, ոսկերչությամբ, քարտաշությամբ, փականագործությամբ, իսկ Դվինը՝ մետաքսի և բրդյա նուրբ գործվածքների արտադրությամբ, կավագործությամբ, բամբակի գործվածքների ու ներկերի արտադրությամբ։

Արհեստների զարգացման համար խոշոր նշանակություն ուներ այն, որ Հայաստանն ուներ բազմատեսակ և բավարար քանակությամբ հումք։ Այդ շրջանում Հայաստանի զարգացող գյուղատնտեսությունը տալիս էր մեծ քանակությամբ բամբակ և բուրդ, լեռնային արդյունագործությունը՝ պղինձ, երկաթ, կապար, անագ, ոսկի, արծաթ և այլն։ Երկրի ընդերքը հարուստ էր մեծ քանակությամբ բազմատեսակ շինանյութերով՝ կավով, ավազով, կրաքարերով,

*մարմարներով, տուֆերով, բազալտներով, գրանիտներով, որոնք խթան են հանդիսացել շինարարական արհեստների զարգացման։*

*Թե՛ գյուղի, թե՛ քաղաքի արհեստավորները պատկանում էին շահագործվող դասակարգին։ Սակայն իրավական տեսակետից քաղաքի արհեստավորները գյուղի արհեստավորներից ավելի բարձր էին։ Նրանք ֆեոդալներից անմիջական կախում չունեին։*

*Հայաստանում IX—XI դարերում բավական բարձր զարգացման էր հասել լեռնային արդյունագործությունը։ Արտադրության այս ճյուղը սերտորեն կապված էր օգտակար հանածոների հանքավայրերի հետ։ Հանքանյութի հանույթն ու ձուլումը կատարվում էր այն վայրերում, որտեղ կային մետաղի կամ ոչ մետաղի հանքեր։ Սակայն կային շատ հանքավայրեր, որոնք այդ շրջանում հայտնի էին, բայց չէին շահագործվում։ Այդպիսիներից էին ոչ միայն քարածխի, նավթի ու մի քանի այլ հանքեր, որոնք հետագա դարերում էլ շահագործման չէին ենթարկվում, այլև պղնձի, երկաթի, կապարի և արծաթի մի շարք հանքեր, որոնց երակները կամ բները տեղադրված էին ավելի խոր շերտերում և այդ ժամանակվա արտադրական տեխնիկայի համար անմատչելի էին։ Անգամ կային այնպիսի հանքավայրեր, որոնց երակները դուրս էին գալիս գետնի երես, բայց, այնուամենայնիվ, դրանք չէին շահագործվում՝ անտառների և, մասամբ, ճանապարհների բացակայության պատճառով[1]։*

*Հանքերը համարվում էին պետական սեփականություն։ Յուրաքանչյուր ֆեոդալական թագավորության տերիտորիայում եղած հանքերը պատկանում էին տվյալ պետությանը։ Սակայն շահագործման ենթակա բոլոր հանքերը վարձակալությամբ տրվում էին այդ գործով զբաղվող արդյունաբերող-կապալառուներին։*

*Լեռնային արդյունահանությունը պահանջում էր կոլեկտիվ աշխատանք։ Այդ պատճառով էլ լեռնային արդյունաբերության մեջ գոյություն ունեին ավելի մեծ ձեռնարկություններ։ Հիմնական բանվորական ուժը կազմում էին կախյալ գյուղացիները, սակայն, ըստ երևույթին, եղել են և փոքր թվով ազատ վարձով աշխատողներ։*

*Չնայած զգալի առաջադիմությանը, այնուամենայնիվ, լեռնային արդյունագործության տեխնիկան պարզունակ էր, իսկ արտադրողականությունը՝ ցածր։ Աշխատանքը կատարվում էր բացառապես ձեռքով։*

---

[1] *Ոսկին բացառություն էր կազմում, որովհետև այն քիչ քանակությամբ էր և ցրված։ Բացի այդ, ոսկին գտնվում էր ազատ վիճակում, և ջրով լվանալով, հեշտությամբ այն անջատում էին ավելորդ լեռնատեսակներից։*

Լեռնային արդյունագործությունը IX—XI դարերի Հայաստանում տեղաբաշխված էր հետևյալ կերպ. պղինձը արդյունահանվում և ձուլվում էր Սյունիքի թագավորությունում (այստեղ հայտնի էին Աճենի պղնձահանքերը, որ համապատասխանում են այժմյան Ղափանի հանքերին), Տաշիր-Ձորագետի թագավորությունում՝ Պղնձահանքում (այժմ՝ Ախթալա), Մանից Գոմում (այժմ՝ Ալավերդի), Աղձնիքի էմիրությունում (Արղնի շրջանում)։ Երկաթի հանույթ կար Տարոնի իշխանությունում, Վասպուրականի թագավորությունում և Կարին գավառում։ Կապար էր արդյունահանվում Սյունիքի թագավորությունում (վերը նշված հանքավայրերում) և Վասպուրականում՝ Ընձաքիարս լեռան մոտ։ Արծաթի հանույթ կար Աճենի հանքերից մեկում՝ այժմյան Ղափան քաղաքից ոչ հեռու։ Անագը ստացվում էր Վան քաղաքից հարավ գտնվող հանքերից։ Ոսկու առանձին հանքավայրեր չկային, բայց Այրարատյան աշխարհում ցրված վիճակում կար ոսկի, որը արդյունահանվում էր գետերի ափերի ավազը լվացման ենթարկելով։ Արդյունահանվում էր նաև հանքակուպր, պղնձարջասպ, բորակ, մկնդեղ և այլն։

Առանձնահատուկ տեղ էր գրավում սեղանի աղի արդյունահանությունը, որը կատարվում էր Վանանդի թագավորությունում (Արշարունիք գավառում՝ այժմյան Կաղզվանը), Կողբում և Նախիջևանում։

Քաղաքային զբաղմունքների մեջ, արհեստներից հետո, թերևս դրանց հավասար նշանակություն ուներ առևտուրը։

Առանձնապես ընդարձակվում և մեծ չափերի է հասնում միջազգային քարավանային տարանցիկ առևտուրը։ Հյուսիսային և Հյուսիս-արևելյան Հայաստանը, մի կողմ գտնվելով արաբա-բյուզանդական երկարատև պայքարի թատերաբեմից և, ընդհանուր առմամբ, չեզոքություն պահպանելով այդ երկու պետությունների միջև մղվող պատերազմների նկատմամբ, դարձել էր Արևելքն Արևմուտքի հետ կապող ապահով օղակներից մեկը։ Միջազգային առևտրի ծավալման և զարգացման հետ միասին ավելի բարեկարգ ու բանուկ են դառնում Հայաստանի վրայով անցնող տարանցիկ հին ճանապարհները, որոնց կենտրոնը, գլխավոր հանգույցը VIII—IX դարերում Դվինն էր։ VIII—XI դարերում բանուկ են դառնում մի շարք նոր ճանապարհներ, որոնց գլխավոր հանգույցը X դարի երկրորդ կեսից արագ թափով զարգացող Անին էր։ Երկրի մայրաքաղաք Անիից տարբեր ուղղություններով ձգվում էին միջազգային քարավանային մի քանի ճանապարհներ՝ ա) Անի—Հոռոմոս—Լոռի—Դմանիս—Սամշվիլդե (Շամշուլդե)—Տփխիս. Աղստև գետի ստորին հո-

սանքում այս ճանապարհից բաժանվում էր մի գլխավոր ճանապարհ, որը Շամքոր քաղաքի վրայով գնում էր դեպի Գանձակ, իսկ այստեղից էլ՝ դեպի Կասպից ծովի ափերը. բ) Անի—Ախլցխա—Քութայիս, այնուհետև դեպի Սև ծովի ափերը. գ) Անի—Կարս—Արտանուջ և դեպի Սև ծովի արևելյան ափը։ Կարսից քիչ արևմուտք այս ճանապարհից բաժանվում էր մի այլ ուղի, որը Կարինի վրայով գնում էր դեպի Տրապիզոն. դ) Անի—Բագարան—Վաղարշակերտ (Բագրևանդում). Վաղարշակերտում այս ճանապարհը բաժանվում էր երկու ճյուղի, նրանցից մեկը Կարինի վրայով գնում էր դեպի Սև ծովի ափերը, իսկ մյուսը Մանազկերտի, Բաղեշի, Արզնի և Մուֆարղինի վրայով գնում էր դեպի Միջագետք և Սիրիա. ե) Անի—Երևան—Դվին, որտեղ միանում էր Դվինից դուրս եկող, տարբեր ուղղություններով ձգվող ավելի հին ճանապարհներին։

Դրանցից բացի, քարավանային ճանապարհներ կային նաև Վասպուրականում ու Սյունիքում։ Տեղական ճանապարհներն ավելի անբարեկարգ էին, նրանց մեծ մասը ձմռանը անանցանելի էր դառնում։

Չպետք է չափազանցել նաև տարանցիկ գլխավոր ճանապարհների բարեկարգությունը։ Դրանց մի մասը ևս (օրինակ՝ Անի—Քութայիս, Դվին—Պարտավ, Շաղատ—Նախճավան և այլն) ձմռանը փակվում էին, հաղորդակցությունը դառնում էր անհնար։

IX—XI դարերում տնտեսական վերելքի շրջան ապրող Հայաստանը ակտիվ մասնակցություն ուներ միջազգային առևտրին։ Նրա դերը, ինչպես ցույց է տվել ակադ. Հ. Մանանդյանը, չէր սահմանափակվում միայն միջազգային առևտրի քարավաններին սպասարկելով[1], նա միջազգային շուկա էր հանում իր արտադրանքների մի մասը։ Հայաստանի արտաքին առևտուրն այդ շրջանում ուներ ակտիվ բալանս, նրա արտահանած ապրանքների ընդհանուր արժեքը գերազանցում էր ներմուծվող ապրանքների ընդհանուր արժեքին։

Հայաստանն արտահանում էր հացահատիկներ (գլխավորապես ցորեն), անասուններ (մանր և խոշոր եղջերավոր), ձուկ (տառեխ և մասամբ իշխան), մետաղե իրեր, զենքեր, զանազան տեսակի գործվածքներ (գլխավորապես մետաքսե ու բամբակե, ինչպես և մահուդ), գորգեր, ներկեր (գլխավորապես «որդան կարմիր»), մետաղներ (պղինձ, կապար, երկաթ), քարաղ, գինի, բուրդ, մրգեր և այլն։ Նշված ապրանքները գրեթե բոլորն էլ մեծ համբավ ունեին արտաքին շուկայում և արագ կերպով վաճառվում էին։ Հայաստան ներ-

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի քաղաքները X—XI դարերում, Երևան, 1940։

*մուծվող ապրանքների մեջ գլխավոր տեղը գրավում էին պերճանքի առարկաները, համեմունքները, հախճապակյա իրերը, որոշ տեսակի գործվածքներ, հում մետաքսը և այլն։*

*Հայաստանում միջազգային առևտրի կարևոր կենտրոններ էին Անին, Վանը, Դվինը, Կարսը, Արծնը, Նախճավանը, Բաղեշը, Մանազկերտը և այլն։ Այդ քաղաքներում առևտուր էին անում ոչ միայն հայ, այլև հարևան ու հեռավոր երկրների վաճառականները։*

*Արհեստը գյուղատնտեսությունից աստիճանաբար բաժանվելու, տնտեսության ընդհանուր զարգացման, տարանցիկ առևտրի վերելքի և հարկերն ու տուրքերը դրամով գանձելու սիստեմի շնորհիվ IX—XI դարերում Հայաստանում մեծ զարկ է ստանում նաև ներքին առևտուրը։ Գյուղացին իր հարկերն ու տուրքերը տալու, ինչպես և անհրաժեշտ գործիքներ ու տնտեսության մեջ գործածվող առօրյա իրեր ձեռք բերելու համար հարկադրված էր որպես ապրանք վաճառքի հանել իր արդյունքների մի մասը։*

*Ներքին առևտրի մեջ, խոշոր քաղաքներից բացի, առանձնապես մեծ դեր էին խաղում գյուղաքաղաքներն ու տոնավաճառները։ Տոնավաճառներ կային մի քանի խոշոր քաղաքներում (Արծն, Դվին, Անի և այլն), վանքերին կից (Տաթևում, Հաղպատում, Վարագում և այլուր) և ճանապարհների վրա գտնվող գյուղաքաղաքներում (օրինակ, Բերդկունքում՝ Սևանա լճի հարավային ափին)։*

*Ներքին առևտրի հիմնական ապրանքները կազմում էին գյուղատնտեսական մթերքներն ու արհեստավորական արտադրանքը։*

*Սակայն չպետք է շատ վառ գույներով պատկերացնել IX—XI դարերի Հայաստանի ներքին առևտրի դերը։ Հայաստանի տնտեսությունը փակ-նատուրալ էր։ Երկրի հարստության ճնշող մասը տվող գյուղատնտեսությունը հիմնականում ինքնաբավ էր, գյուղական արհեստավորների արտադրանքները սպառվում էին տեղում՝ առանց վաճառքի դուրս գալու, իսկ քաղաքային արհեստավորների արտադրանքների միայն մի մասն էր դուրս բերվում շուկա, մյուս մասն արտադրվում էր սպառողի անմիջական պատվերով։ Հայաստանի տարբեր մասերը իրար հետ թույլ էին կապված, ներքին միասնական շուկա գոյություն չուներ, չկային նաև միասնական չափ ու կշիռ և դրամական միավորներ։*

## Քաղաքները

*IX—XI դարերում Հայաստանի քաղաքներն ու քաղաքային կյանքը ապրում են վերելքի շրջան։ Աշխուժանում են հին քաղաքնե-*

ըր՝ Դվինը, Վանը, Նախճավանը, Բաղեշը, Հերը (Խոյ) և այլն, առաջ են գալիս նոր քաղաքներ՝ Անին, Կարսը, Արծնը, Մուշը, Խլաթը, Լոռին, Կապանը, Երազգավորսը և այլն։

IX—XI դարերում հյուսիսային և կենտրոնական Հայաստանի աշխարհագրական դիրքի նպաստավոր լինելը տնտեսության ու առևտրի համար պետք է բացատրել ոչ միայն նրանով, որ Հայաստանը գտնվում էր Արևելքն Արևմուտքի հետ միացնող ճանապարհների վրա, այլ նաև նրանով, որ այն, ընդհանուր առմամբ, ապրում էր խաղաղության ժամանակաշրջան, մի կողմ էր մնացել արաբաբյուզանդական երկարատև ու արյունահեղ պատերազմների թատերաբեմից, և նրա արտադրողական ուժերն այնքան էին զարգացել, որ դեպի իրենց էին ձգում մի շարք երկրների տնտեսական կապերը։

IX—XI դարերի Հայաստանի քաղաքները ըստ ծագման կարելի է բաժանել երկու մեծ խմբի. ա) հին, նախաֆեոդալական ժամանակաշրջանում առաջացած քաղաքներ, որոնք, մի շարք պայմանների շնորհիվ, պահպանել էին իրենց գոյությունը և IX—XI դարերում ապրում էին աշխուժացում։ Այդ քաղաքների բնույթը ֆեոդալիզմի ժամանակաշրջանում (IV դարից սկսած) աստիճանաբար փոխվել էր, նրանք դարձել էին ֆեոդալական քաղաքներ։ Այդպիսի ծագում ունեին Վանը, Արճեշը, Մանազկերտը, Մուֆարղինը, Վաղարշակերտը, Բագարանը, Արզնը, Նախճավանը և այլն. բ) ֆեոդալիզմի ժամանակաշրջանում ծագած քաղաքներ, որոնց մի զգալի մասը առաջացել էր IX—XI դարերում։ Այդ խմբի մեջ էին մտնում Դվինը, Կարինը, Անին, Կարսը, Արծնը, Լոռին, Կապանը, Մուշը, Բաղեշը, Բերկրին, Խլաթը և այլն։

IX—XI դարերի քաղաքները, բոլորն էլ ֆեոդալական լինելով հանդերձ, այնուամենայնիվ, ունեին որոշ տարբերություններ։ Կային այնպիսի քաղաքներ, որոնք գտնվում էին այս կամ այն ֆեոդալի կալվածքում, լիովին ենթարկվում էին նրա իրավասությանը և գրեթե ամբողջությամբ կապված էին գյուղատնտեսության հետ։ Դրանք հիմնականում փոքր քաղաքներ կամ գյուղաքաղաքներ էին, և նրանց տնտեսական կապերն իրենց շրջապատից հեռու չէին գնում։ Այդ տիպի քաղաքներից և գյուղաքաղաքներից էին Վասպուրականի թագավորությունում՝ Արտամետը, Ոստանը, Դատվանը, Հադամակերտը, Սյունիքի թագավորությունում՝ Շաղատը, Անի-Շիրակի թագավորությունում՝ Երևանը, Սուրմարին, Երազգավորսը և այլն։ Այլ բնույթ ունեին խոշոր քաղաքները՝ Անին, Դվինը, Արծնը, Կարսը, Վանը, Կարինը, Նախճավանը։ Սրանց կապը գյուղատնտեսության հետ համեմատաբար թույլ էր։ Ճիշտ է, նրանց բնակչության

մի մասը զբաղվում էր գյուղատնտեսական աշխատանքներով, բայց այդ աշխատանքները քաղաքի ընդհանուր կյանքի վրա չունեին նշանակալի ազդեցություն։ Նրանք հիմնականում արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոններ էին։

IX—XI դարերի Հայաստանի խոշոր քաղաքները, նույն շրջանի Առաջավոր Ասիայի մյուս քաղաքների նման, բաղկացած էին երեք մասից՝ միջնաբերդից, բուն քաղաքից («շահաստան»-ից) և արվարձաններից։ Միջնաբերդը սովորաբար գտնվում էր քաղաքի կենտրոնական մասում կամ այն մասում, որը պաշտպանական տեսակետից ավելի ապահով էր և իշխում էր ամբողջ քաղաքի վրա։ Քաղաքների միջնաբերդները սովորաբար ավելի շուտ էին կառուցվել և, մինչև նրանց շուրջը քաղաք ծավալվելը, սովորական բերդեր էին (օրինակ՝ այդպիսիններից էին Անիի, Կարսի, Դվինի, Կարինի և մյուս քաղաքների միջնաբերդերը)։ Միջնաբերդերը շրջապատված էին պարիսպներով, որոնք ունեին աշտարակներ։

Միջնաբերդի շուրջը տարածվում էր բուն քաղաքը («շահաստան»-ը), որն իր գրաված տարածությամբ մի քանի անգամ գերազանցում էր միջնաբերդին։ Շահաստանում էին գտնվում խանութները, հրապարակ-շուկաները, արհեստանոցները, որոնք ըստ արհեստի տեսակի՝ զբաղեցնում էին քաղաքի մի փողոցը կամ փողոցի մի շարքը (այդպիսի դասավորություն ունեին, օրինակ, Անիի արհեստանոցները)։ Շահաստանը նույնպես պարսպապատված էր, բայց կային այնպիսի քաղաքներ, որոնց այդ մասը զուրկ էր պարսպից՝ բաց էր (օրինակ՝ Արծնը)։

Քաղաքի արվարձանները տարածվում էին շահաստանից դուրս։ նրանք զբաղեցնում էին հսկայական տարածություններ, որովհետև քաղաքի այս մասի բնակչությունը ավելի մեծ չափով էր կապված գյուղատնտեսական աշխատանքների հետ։

Քաղաքը կառավարում էր տվյալ քաղաքի տեր ֆեոդալի կողմից նշանակվող կառավարիչը, որը կոչվում էր «շահապ», «վերակացու քաղաքի» կամ «ամիրա»։ Մայրաքաղաքների կառավարիչները նշանակվում էին թագավորի կողմից և անմիջապես ենթարկվում էին նրան։ Քաղաքներում կային նաև ֆեոդալների կողմից նշանակված հատուկ պաշտոնյաներ, որոնք կոչվում էին «մութասիբ» կամ «մութսիբ»։ Սրանք հսկում էին շուկաներում չափի ու կշռի, վաճառվող ապրանքների գների վրա։ Հարկահավաք պաշտոնյաները կոչվում էին «բաժրար» կամ «ձեռնաւոր»։ Որոշ խոշոր քաղաքներում (օրինակ՝ Անիում) X դարի վերջերից գործում էր

*քաղաքային ինքնավարություն, որի գլուխ էր կանգնած «երեցանին»՝ ավագների խորհուրդը։*

*Քաղաքի բնակչությունն ուներ սոցիալական խայտաբղետ կազմ։ Քաղաքում ապրում էին և՛ աշխարհիկ ու հոգևոր ավատատերեր, և՛ առևտրականներ ու արհեստավորներ, և՛ գյուղացիներ ու ընչազուրկ մասսաներ։ Սակայն քաղաքային բնակչության հիմնական մասը կազմում էին արհեստավորներն ու առևտրականները, այսինքն՝ քաղաքային դասը։*

*IX—XI դարերում Հայաստանի խոշորագույն քաղաքներից (Անի, Դվին, Արծն, Կարս) յուրաքանչյուրի բնակչության թիվը հասնում էր մինչև 100 հազարի։ Մյուս քաղաքների բնակչության թիվը հավանաբար տատանվել է 10—25—40 հազարի սահմաններում։*

## 3. ՏԵՂԱՇԱՐԺԵՐ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*IX—XI դարերում հսկայական փոփոխություններ են կատարվել թե՛ Արևելյան և թե՛ Արևմտյան Հայաստանի բնակչության աշխարհագրության մեջ։ Այդ ժամանակաշրջանում, մի շարք պատճառների հետևանքով, մի կողմից Հայաստանից դուրս են գնում հայ բնակչության զգալի զանգվածներ, իսկ մյուս կողմից՝ ուժեղանում է այլ ժողովուրդների մուտքը Հայաստան։*

*Առանձնապես մեծ փոփոխություններ են կատարվում Արևմտյան Հայաստանում, որը շարունակում էր մնալ Բյուզանդական կայսրության տիրապետության տակ։ Կայսրությունն իր դիրքերը Արևմտյան Հայաստանում ամրապնդելու և Հայաստանի այդ մասի բնակչությանը բյուզանդականացնելու համար, ամեն տեսակ կամայականություններ կատարելուց բացի, դեռևս VI դարից սկսած բռնի ուժով պարբերաբար երկրից դուրս էր տանում բնիկ բնակչությանը՝ հայերին։*

*Բյուզանդիայի և Արաբական խալիֆայության պայքարի ընթացքում (որը տևել է ավելի քան երեք դար՝ VII—X դդ. և մղվել է Հայաստանի, Փոքր Ասիայի, Կիլիկիայի, Սիրիայի ու Միջագետքի համար) Հայաստանը, հատկապես նրա արևմտյան մասը, բազմիցս ենթարկվել է ավերումների։ Արաբական և բյուզանդական բանակները կողոպտում ու քարուքանդ էին անում Հայաստանի քաղաքներն ու գյուղերը, բնակչության մի մասին ոչնչացնում էին, մյուսին գերում կամ ուղղակի բռնի կերպով գաղթեցնում այլ երկրներ։*

Հայերը, փախչելով Արաբական խալիֆայության ճնշումից, ապաստանում էին Բյուզանդիայում։ Սակայն այս կարգի արտագաղթողների թիվը, համեմատած բռնի տեղափոխվողների հետ, չնչին էր։ Թե՛ հարկադրական միջոցներով, թե՛ իրենց կամքով արտագաղթ կատարած հայերը հանգիստ չունեին նաև իրենց նոր բնակավայրերում։ Նրանք հիմնականում վերաբնակվելով Բյուզանդական կայսրության սահմանամերձ շրջաններում, խիստ կերպով տուժում էին արաբա-բյուզանդական պատերազմներից և հարկադրված էին այստեղ ևս տեղից-տեղ փոխադրվել։

Արտագաղթի ենթարկված հայերը սկզբում գլխավորապես վերաբնակվում էին Փոքր Ասիայի արևելյան մասում և Լեռնային Կիլիկիայում, իսկ հետագայում (X դարից)՝ նաև Սիրիայում, Միջագետքում և Դաշտային Կիլիկիայում։

XI դարի սկզբներին հայերի թիվը Կապադովկիայում, Կիլիկիայում և բյուզանդական այլ շրջաններում զգալի չափով մեծանում է։ Հայերի հարկադրական արտագաղթը դեպի Փոքր Ասիա ընդունում է ավելի լայն չափեր։ Դա կապված էր Հայաստանի ու Վրաստանի պետական միավորումների ոչնչացման այն նվաճողական քաղաքականության հետ, որն սկսեց վարել Վասիլ Բ Բուլղարասպան կայսրը XI դարի սկզբից։

Վասպուրականի թագավորության գրավման ժամանակ, նրա վերջին թագավոր Սենեքերիմի հետ միասին, բազմահազար հայեր գաղթում են Սեբաստիայի շրջան։

Անի-Շիրակի թագավորության գրավումից հետո դեպի Փոքր Ասիա ու Լեռնային Կիլիկիա են գաղթում բազմաթիվ հայեր նաև Հայաստանի այն մասերից, որոնք մտնում էին Անի-Շիրակի թագավորության մեջ։

Վասպուրականի ու Անի-Շիրակի թագավորությունների վերացումից հետո Բյուզանդիան շարունակում էր հայերին հալածելու և տեղահան անելու իր քաղաքականությունը։ Եվ ահա դրա, ինչպես և 1048 թ. վրա հասած սելջուկյան ավերիչ արշավանքների հետևանքով արտագաղթը դեպի Փոքր Ասիա և Լեռնային ու Դաշտային Կիլիկիա է՛լ ավելի է ուժեղանում։ XI դարի կեսերին Եփրատից արևմուտք ընկած բազմաթիվ մարզերում հայերն արդեն կազմում էին բացարձակ մեծամասնություն։ Այստեղ կազմվեցին հայկական մի շարք իշխանություններ, որոնց թվում էր և Ռուբինյան իշխանությունը, որը հետագայում իր շուրջը միավորեց ամբողջ Կիլիկիան և դարձավ թագավորություն։ Իր քաղաքական անկախությունը կորցրած ու տեղահան արված հայ բնակչության

*դրությունն այս նոր բնակավայրում անմխիթարական էր։ Կրկնակի հարկի ճնշումից բացի, նա ենթարկվում էր կրոնական հալածանքների։*

*Արտագաղթին զուգընթաց այս շրջանում Հայաստան են մուտք գործում և մի շարք գավառներում բնակություն հաստատում այլ ժողովուրդներ։ Մենք տեսանք, որ VIII դարում զգալի չափով փոփոխության էր ենթարկվել Հայաստանի բնակչության էթնիկական կազմը։ Արաբական խալիֆայության կողմից բռնի միջոցներով տեղահան էին արվել Հայաստանի մի շարք գավառների հայ բնակիչները և նրանց տեղը բնակեցվել էին արաբական ցեղեր։ Բացի դրանից, Հայաստանի քաղաքներ (Դվին, Խլաթ, Արճեշ և այլն) մուտք էին գործել արաբա-պարսկական բազմաթիվ ազնվականներ, զինվորականներ, վաճառականներ և, նույնիսկ, հարկատու դասին պատկանող մարդիկ։ Նրանց մի մասը IX—XI դարերում շարունակում էր ապրել Հայաստանի մի քանի քաղաքներում՝ կազմելով բնակչության որոշ տոկոսը։*

*IX դարի երկրորդ կեսից մինչև XI դարի առաջին քառորդի վերջերը նոր ժողովուրդներ գրեթե բնակություն չեն հաստատում Հայաստանի տերիտորիայում։ Բնակչության էթնիկական կազմը մնում է համարյա անփոփոխ։ Սակայն դրությունը փոխվում է Վասպուրականի ու Անի-Շիրակի թագավորությունների անկմամբ։ Վասպուրականի թագավորության անկումից հետո (1021 թ.), երբ նրա բնակչության մի զգալի մասը բռնեց արտագաղթի ուղին, և բնակչությունն այստեղ բավական նոսրացավ, արաբական տիրապետության շրջանում, Վասպուրականի հարավային հարևան լեռնային երկրում հաստատված քրդերի մի մասը աստիճանաբար շարժվեց դեպի հյուսիս և բնակություն հաստատեց Վասպուրականի մի քանի գավառներում։*

*XI դարի վաթսունական թվականներից Հայաստան են մուտք գործում սելջուկները և, տեղաբնիկ հայերին տեղահան անելով մի շարք գավառներից, հաստատվում են երկրի զանազան մասերում։*

*IX—XI դարերի Հայաստանի բնակչության թվի վերաբերյալ անհրաժեշտ տեղեկություններ չկան։ Եղած տվյալները մասնակի բնույթ ունեն և վերաբերում են երկրի այս կամ այն մասի բնակավայրերի շենքերի ու արտագաղթողների թվին։ Սակայն ինչպես այդ, այնպես էլ մի շարք այլ կարգի հիշատակություններից պարզվում է, որ IX—XI դարերում Հայաստանում, ժամանակի համեմատ, բնակչության խտությունը, հատկապես կենտրոնական շըր-*

*ջաններում, եղել է բավական մեծ, իսկ բնական աճը՝ բարձր։ Այդ պետք է բացատրել տնտեսության զարգացմամբ և այն հարյուրամյա խաղաղ շրջանով, որը հաստատվել էր 922 թվականից։*

*IX—XI դարերում մեծ փոփոխություններ են տեղի ունենում բնակչության սոցիալ-դասակարգային կազմում։ Ֆեոդալիզմի այս բուռն զարգացման շրջանում ավելի են խորանում դասերի և դասակարգերի միջև եղած տարբերությունները։ Արհեստները գյուղատնտեսությունից զատվելու և առևտրի զարգացման շնորհիվ քաղաքներում կուտակվում են մեծ թվով արհեստավորներ ու առևտրականներ, որոնք միասին կազմում են քաղաքային դասը։ Քաղաքային դասը, գյուղացիությունից հետո, ամենաբազմամարդն էր երկրում։ Արհեստավորներից և առևտրականներից բացի, դեպի քաղաք են գնում նաև հողազրկված բազմաթիվ գյուղացիներ, որոնք այստեղ զբաղվում են ավելի ցածր աշխատանքով։ Քաղաքային դասն իր իրավական դրությամբ գյուղացիությունից ավելի բարձր էր կանգնած։*

*Գյուղացիության շերտավորումը խորանում է։ Գնալով ֆեոդալական կախվածությունն ավելի է ուժեղանում։ Գյուղացիությունը գրեթե ամբողջապես կախման մեջ է ընկնում ֆեոդալներից։ Առևտրի և ապրանքափոխանակության զարգացման հետևանքով մի կողմից բարձր դասերի մոտ կուտակվում էին անհելի հարստություններ, իսկ մյուս կողմից հարկատու դասերի մոտ չափազանց արագ աճում էր ընչազրկությունը։ Ֆեոդալական և եկեղեցական բազմատեսակ ու ծանր հարկերը ծայր աղքատության մեջ էին գցում երկրի ամբողջ բարիքներն ստեղծող բնակչությանը, հատկապես գյուղացիությանը։ Այդ է պատճառը, որ IX—XI դարերում մեծ ծավալ էին ընդունել սոցիալական շարժումները, որոնք հաճախ վեր էին ածվում բացարձակ ապստամբության։*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՆԵՐԽՈՒԺՄԱՆ ԵՎ ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

### 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ XI ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XIII ԴԱՐԻ 30-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԸ

*XI դարի կեսերից մինչև XIII դարի 30-ական թվականները Հայաստանի վարչա-քաղաքական սիստեմը մի քանի անգամ են-*

թարկվել է արմատական փոփոխության, ընդ որում դա արդյունք էր ոչ թե երկրի ներքին տնտեսական կյանքում կատարվող տեղաշարժերի, այլ, գերազանցապես, արտաքին նվաճողների ներգործության։ Այսպես, Բյուզանդիան գրավելով Հայաստանը, այնտեղ մտցրեց իր վարչական և հարկային սիստեմը, նրան հաջորդող սելջուկները կիրառեցին իրենց վարչա-քաղաքական սիստեմը, իսկ XII դարի վերջերից Հյուսիս-արևելյան Հայաստանում, որ ազատագրվեց սելջուկյան լծից, նորից հզորացան նախորդ շրջանի հայկական իշխանությունները և առաջացան նոր իշխանություններ։ Հետևապես անհրաժեշտ է կանգ առնել դրանց վրա առանձին-առանձին։

## Հայաստանի վարչա-քաղաքական բաժանման կարգը Բյուզանդիայի կարճատև տիրապետության շրջանում (1045—1071 թթ.)

*Բյուզանդիայի զավթումներից հետո Հայաստանում իրենց անկախությունը պահպանեցին միայն Տաշիր-Ձորագետի և Սյունիքի թագավորությունները, որոնց կանդրադառնանք սելջուկյան տիրապետության ժամանակաշրջանի վարչա-քաղաքական վիճակի մասին խոսելիս։*

*Բյուզանդիային կցված հայկական նահանգներում մտցվեցին Կայսրության վարչա-քաղաքական և հարկային սիստեմները։ Կայսրությանը նոր կցված հայկական տերիտորիաները (չհաշված Արևմտյան Հայաստանը, որ վաղուց էր գտնվում նրա տիրապետության տակ), ըստ դրանց գրավման ժամանակագրական կարգի, բաժանվեցին երեք կուսակալությունների (կատապանությունների), որոնք միաժամանակ և՛ վարչա-քաղաքական միավորներ էին, և՛ զինվորական շրջաններ։ Այդ պատճառով էլ գրականության մեջ երբեմն դրանք կոչվում են կուսակալություններ (փոխարքայություններ), իսկ երբեմն էլ՝ զորավարություններ։ Կուսակալությունների գերագույն կառավարիչները (փոխարքաները) կոչվում էին կատապաններ։ Նրանք նշանակվում էին կայսրի կողմից և ունեին լայն իրավունքներ։ Կատապանի ձեռքին էր գտնվում իր կուսակալության և՛ վարչական կառավարությունը, և՛ զորքերի գլխավոր հրամանատարությունը։ Սկզբնական շրջանում կատապաններ էին նշանակվում գլխավորապես միայն հույներից, իսկ հետո այդ պաշտոնում նշանակվում էին նաև հայեր։*

Բյուզանդական կայսրությունը իր կարճատև տիրապետության շրջանում Արևելյան Հայաստանում զավթած տերիտորիաներից կազմել էր Տարոնի, Վասպուրականի և Անիի կուսակալությունները։

## Տարոնի կուսակալություն

Գրավելով Տարոնի իշխանությունը, Բյուզանդիան այն դարձնում է մի կուսակալություն, որի կազմի մեջ, բացի Տարոնի իշխանությունից, մտցնում է նաև Արևմտյան Հայաստանի մի քանի գավառներ, որոնք վաղուց գտնվում էին նրա տիրապետության տակ։ Այսպես, Տարոնի կուսակալությանը միացվեցին Դերջան, Մանանաղի, Հաշտյանք (Ճապաղջրի շրջանը) և Պաղնատուն գավառները։ Սուլթան Տուղրիլի արշավանքից հետո (1054 թ.) սելջուկների տիրապետություններն արդեն շփվում էին Տարոնի հետ։ Բյուզանդիան, որպեսզի Տարոնի զորավարությունը ուժեղ պատվար դարձնի սելջուկների ներխուժման դեմ, 1055 թվականից սկսած հովանավորում է տեղական իշխաններին՝ երկրի կառավարման գործում տալով նրանց մեծ արտոնություններ։ Սակայն առանց այդ էլ բյուզանդական տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում իրենց ներքին ինքնուրույնությունը պահպանել և բավականաչափ հզորացել էին հայկական մի քանի իշխանություններ, որոնց մեջ հատկապես նշելի է Սասունի իշխանությունը։ Սասունի իշխանությունը, որն իր մեջ էր ընդգրկում Սասուն և Խութ գավառները, օգտվելով սելջուկների հարձակումների հետևանքով ստեղծված դրությունից, մոտ 1054 թվականից սկսած դառնում է իր երկրի կացության տերը։ Ինչպես երևում է, այս իշխանության մեջ կուտակվել էր բավական հոծ բազմություն. նա սելջուկյան արշավանքների դեմ կարողանում էր դուրս բերել մի քանի տասնյակ հազար զինվոր։ Ենթադրվում է, որ Սասունի իշխանության գլուխ էին կանգնած Մամիկոնյանների մնացորդներն այն ժամանակից ի վեր, երբ Արաբական խալիֆայությունը (VIII դարի երկրորդ կեսում) ոչնչացրեց այդ տան անդամների զգալի մասին և խլեց Հայաստանի դաշտային մասերում (Տարոնում) ունեցած նրանց կալվածքները։

Տարոնի կուսակալությունը սելջուկների կողմից գրավվեց Մանազկերտի ճակատամարտից (1071 թ.) անմիջապես հետո, իսկ Սասունի իշխանությունը շարունակեց իր ներքին ինքնուրույնությունը, բայց, ըստ երևույթին, ավելի նեղ սահմաններով։

## Վասպուրականի կամ Արևելքի կուսակալություն

*Վասպուրականի Արծրունյաց թագավորությունը Կայսրությանը կցվելուց անմիջապես հետո (1021 թ.) վերածվեց կուսակալության, որը հայտնի է Վասպուրականի կամ Արևելքի կուսակալություն անունով։ Սակայն նոր կազմված կուսակալությունը տերիտորիալ տեսակետից լիովին չէր համընկնում նախկին Վասպուրականի թագավորությանը։ Նրա սահմանները որոշ մասերում ավելի լայն էին Վասպուրականի թագավորության սահմաններից, իսկ որոշ մասերում նրա շրջանակներից դուրս էին մնում նախկինում Վասպուրականի մասերը կազմող մի քանի շրջաններ։ Ընդհանուր առմամբ, Վասպուրականի կուսակալությունը զգալի չափով ավելի փոքր տարածություն էր գրավում, քան նախկին թագավորությունը։*

*Վասպուրականի կուսակալությունից դուրս էին մնում նախկինում Վասպուրականի թագավորության կազմի մեջ մտնող Խլաթի ու Դատվանի շրջանները (Վանա լճի արևմտյան մասում) և Անձևացիք, Փոքր Աղբակ, Զարևանդ, Հեր ու Կոգովիտ գավառները (վերջինս դեռ 1001 թ. միացվեց Անի-Շիրակի թագավորությանը և հետագայում նրա կազմում էլ մնաց)։ Իսկ իբրև նոր տերիտորիաներ կուսակալությանը միացվեցին Հարք գավառն ու Այրարատի մի մասը։*

*Սելջուկյան առաջին արշավանքները կատարվեցին Վասպուրականի կուսակալության վրայով։ Նրանց առաջն առնելու համար անհրաժեշտ էր Վասպուրականը դարձնել մի ամրացված շրջան։ Դրա ելքը Կայսրությունը տեսնում էր գլխավորապես հայ իշխանական տներին սիրաշահելու և նրանց արտոնություններ տալու մեջ։*

*Վասպուրականի կուսակալությունը, Հարևան Տարոնի նման, սելջուկների կողմից վերջնականապես գրավվեց 1071 թ.։*

## Անիի կուսակալություն

*Ինչպես երևում է, բյուզանդական այս կուսակալությունը կոչվել է նաև «Տանն Հայոց իշխանություն»։ Նրա մեջ էր մտնում Անի-Շիրակի թագավորության տերիտորիայի մեծ մասը։ Կատապանի աթոռանիստը Անին էր։ Նրա տրամադրության տակ կար մի քանի տասնյակ հազար զինվորներից բաղկացած մի մեծ բանակ, որի զինվորների մեծ մասը կազմում էին հայերը։*

*Սկզբնական շրջանում Անիում բյուզանդական կառավարիչնե-*

րի կատարած հալածանքները չափ չունեին։ Սելջուկյան արշավանքների և ներխուժման ազդեցության տակ, ինչպես նշվեց վերը, Բյուզանդիան ստիպված եղավ ժամանակավորապես դադարեցնել հայ իշխանների, նրանց զորքերի և հարկատու բնակիչների արտաքսումն իրենց բուն երկրից, հույս ունենալով հայ ժողովրդի արյան գնով կանգնեցնել սելջուկյան արշավանքների ընթացքը։ Սակայն այդ նրան չհաջողվեց։ 1065 թ. սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանը գրավեց Անին, իսկ այնուհետև 1071 թ. Մանազկերտում խայտառակ պարտության մատնեց կայսերական ահռելի բանակը։ Այս ճակատամարտով բյուզանդացիները վերջնականապես դուրս մղվեցին Հայաստանից։ Վերջինս ընկավ սելջուկյան ծանր լծի տակ։

## Արևմտյան Հայաստանի հայկական մանր իշխանությունները

*Բյուզանդական կայսրությունը, IV դարի վերջերին զավթելով Արևմտյան Հայաստանը, VI դարից սկսած բոլոր միջոցները գործադրում էր հայկական իշխանություններն իսպառ վերացնելու և հայ ժողովրդին ձուլելու համար։ Սակայն, նկատի ունենալով Արևմտյան Հայաստանի սահմանային դիրքը սկզբում Սասանյան Պարսկաստանի, ապա՝ Արաբական խալիֆայության, իսկ XI դարում՝ սելջուկյան պետության հետ, Բյուզանդիան իր գրաված հայկական տերիտորիաներում երբեմն հանդուրժում, իսկ երբեմն էլ նույնիսկ հովանավորում էր տեղական հայկական իշխանություններին։*

*Կայսրության տիրապետության տակ գտնվող Հայաստանի տերիտորիայում այդպիսի իշխանություններ (ավելի ճիշտ՝ այդպիսի իշխանությունների մնացորդներ) կային գլխավորապես Չորրորդ Հայքում, Բարձր Հայքում (Թեոդոսուպոլսի հրամանատարությունը և Երզնկայի իշխանությունը) և Տուրուբերանում (Մանազկերտի իշխանությունը)։ Դրա հետ միասին Կայսրությունը մինչև վերջ էլ չկարողացավ իր տիրապետության տակ գցել Հայաստանում՝ իր գրաված տերիտորիայի սահմաններում եղած հայկական մի քանի իշխանություններ, որոնք, գտնվելով լեռնային շրջաններում, քաջաբար պաշտպանում էին իրենց ինքնուրույնությունը. դրանցից էր, օրինակ, Սասունի և Խութի իշխանությունը, որի մասին ասվեց վերևում։*

## Բուն Հայաստանի սահմաններից դուրս եղած հայկական իշխանությունները

*Մենք տեսանք, որ Բյուզանդական կայսրությունը Հայաստանից տեղահան էր անում մեծ թվով ազնվականների և տասնյակ ու հարյուր հազարավոր բնակիչների և նրանց վերաբնակեցնում գլխավորապես Փոքր Ասիայի արևելյան շրջանում՝ Կիլիկիայում, Սիրիայում ու Միջագետքում։ Դրա շնորհիվ XI դարում արդեն այդ երկրներում հայերը բավական մեծ թիվ էին կազմում, իսկ առանձին մարզերում նրանք կազմում էին բնակչության ճնշող մասը։ Արտագաղթած կամ բռնի ուժով տեղափոխված հայ ազնվականությունը այստեղ աստիճանաբար նորից վերականգնում է իր ֆեոդալական մենաշնորհումները։ Նրանցից շատերը հայաբնակ շրջաններում հիմք են դնում հայկական իշխանությունների, որոնք ամբողջապես վասալական կախման մեջ էին գտնվում Բյուզանդական կայսրությունից։*

*Այդ իշխանություններից նշանավոր էին՝ Սեբաստիայի իշխանությունը, որը գրավում էր գրեթե Փոքր Հայքն ամբողջությամբ, Պիզայի իշխանությունը, որն ընդգրկում էր Պիզա քաղաքն իր շրջակայքով, Ծամնդավի իշխանությունը, Միջագետքում առաջացած Պահլավունիների իշխանությունը և Փոքր Ասիայի արևելյան շրջաններում կազմված Փիլարտոս Վարաժնունու իշխանությունը, որն իրենից ներկայացնում էր հայկական մի շարք իշխանությունների կոնգլոմերատ, և Փիլարտոսն ինքը փաստորեն կատարում էր «իշխանաց իշխան»-ի պաշտոն։ Փիլարտոս Վարաժնունու իշխանության անկումից հետո նրա կազմի մեջ մտնող մանր իշխանությունները՝ Մարաշի, Քեսունի, Եդեսիայի, Անդրիունի (Մարաշի մոտ), Պիրի (այժմ կոչվում է Պիրեջիկ. գտնվում է Եփրատի վրա՝ Եդեսիայի մոտ), Կառկառի և այլ իշխանությունները կարողացան միաժամանակ պահպանել իրենց գոյությունը։*

## Հայաստանի վարչա-քաղաքական դրությունը սելջուկների տիրապետության ժամանակ (1071 թ. մինչև XII դարի երկրորդ կեսը)

*Սելջուկներն իրենց առաջին երեք արշավանքների ժամանակ (1043, 1049, 1054 թթ.) ահռելի ավերումներ կատարեցին Հայաս-*

վայրն Հայաստանում։ Երրորդ արշավանքի ընթացքում, որ տեղի ունեցավ 1054 թ. սուլթան Տուղրիլի գլխավորությամբ, նրանք առանձին խմբերով ցրվեցին երկրով մեկ և ավերեցին հարյուրավոր գյուղեր ու տասնյակ քաղաքներ։

1063 թ. Տուղրիլին հաջորդած Ալփ-Արսլանը 1064 թ. կատարում է չորրորդ արշավանքը։ Նա գրավում է Անին (1065 թ.) և Վանանդի թագավորությունն իր Կարս մայրաքաղաքով (1065 թ.)։ 1071 թ. օգոստոսին Մանազկերտի մոտ տեղի է ունենում խոշոր ճակատամարտ բյուզանդական և սելջուկյան բանակների միջև։ Այստեղ բյուզանդացիները կրում են ահավոր պարտություն, և ջախջախված բյուզանդական բանակի մնացորդները դիմում են փախուստի։

Մանազկերտի ճակատամարտից հետո շուտով հաշտություն կնքվեց Ալփ-Արսլանի և Բյուզանդիայի միջև, ըստ որի սելջուկներին անցան Կարինը, Երզնկան և Փոքր Ասիայի արևելյան մի շարք շրջաններ։ Դրանով սելջուկները փաստորեն գրավեցին ամբողջ Հայաստանը։

Ալփ-Արսլանի (1063—1072) որդու և հաջորդի՝ Մելիք-շահի իշխանության ժամանակ (1072—1092) Բյուզանդիան անվերադարձ կորցրեց ոչ միայն Հայաստանը, այլև իր փոքրասիական տիրապետությունների մեծագույն մասը։

Մելիք-շահ սուլթանի մահից հետո (1092 թ.) սկսվում է սելջուկյան պետության քայքայումը, և XII դարի առաջին քառորդում այդ լայնածավալ պետությունը արդեն մասնատվում է մի շարք առանձին պետական միավորների։

Մուհամմեդի մահից հետո (1118 թ.) սելջուկյան պետությունը վերջնականապես մասնատվեց։ Այդ մասնատումից Հայաստանում և նրա հարևան երկրներում ևս հաստատվեցին սելջուկյան մի քանի իշխանություններ՝ էմիրություններ։ Հայաստանում հաստատված էմիրություններից էին՝ Անիի, Դվինի, Կարսի, Խլաթի, Կարինի և այլ էմիրությունները։ Դրանք իրարից անկախ էին և, իրենց սահմանները միմյանց հաշվին ընդարձակելու համար, հաճախ մղում էին պատերազմներ։

Մի քանի խոսք սելջուկյան տիրապետության շրջանում իրենց գոյությունը պահպանող հայկական մանր թագավորությունների ու իշխանությունների և սելջուկյան պետության մասնատման հետևանքով Հայաստանում հաստատված սելջուկյան էմիրությունների մասին։

## Հայկական մանր թագավորություններ և իշխանություններ

**Վանանդի թագավորությունը.**—*Բագրատունիների այս թագավորությունը սելջուկյան առաջին երկու արշավանքների ընթացքում համարյա անվնաս էր մնացել։ Սակայն հետագա տարիներին Վանանդի վերջին թագավոր Գագիկ Աբասյանը, տեսնելով որ սելջուկների գրոհները գնալով ավելի կատաղի բնույթ են ստանում, Ալփ-Արսլանի կողմից Անին գրավելուց հետո՝ 1065 թ. իր թագավորությունը Կարս մայրաքաղաքով հանդերձ հանձնում է Բյուզանդական կայսրությանը, իսկ ինքը բնակություն հաստատում կայսրության կողմից Փոքր Հայքում իրեն հատկացված կալվածքներում։ Շուտով այդ թագավորությունն իր Կարս մայրաքաղաքով գրավվում է սելջուկների կողմից (1065 թ.)։*

**Սյունիքի կամ Կապանի թագավորությունը.**—*Սյունիքի թագավորությունը չնայած սելջուկյան արշավանքների ընթացքում հարձակումների չենթարկվեց, սակայն XI դարի 70-ական թվականներին արդեն բոլոր կողմերից շրջապատված էր սելջուկյան տիրապետություններով և նրա համար գրեթե անխուսափելի էր դարձել այդպիսի հարձակումների վտանգը։ XII դարի սկզբներից սելջուկ էմիրների հարձակումները կրկնվում են գրեթե անընդհատ, սակայն սյունեցի քաջ լեռնականները երկար ժամանակ շարունակում են ուժեղ դիմադրություն ցույց տալ թվով գերակշիռ, գրոհող թշնամիներին։ Սյունիքի թագավորության անկումն անխուսափելի է դառնում այն ժամանակ, երբ նվաճվում է նրա արևելքում գտնվող բնական անմատույց մեծ պատնեշը՝ Արցախը։*

*1170 թ. սելջուկյան աթաբեկ Ելտկուզը մեծ զորքով մտնում է Սյունիքի թագավորություն և գրավում նրա մայրաքաղաքն ու վերջին հանգրվան Բաղաբերդը։ Դրանով Սյունիքի թագավորությունը վերանում է պատմական ասպարեզից։*

**Տաշիր-Ձորագետի թագավորությունը.**—*Տաշիր-Ձորագետի թագավոր Կորիկե Բ-ն, հայկական և վրացական մյուս ֆեոդալների ու թագավորների պես, ստեղծված դրությունից հարկադրված 1082 թ. գնում է Մելիք-շահ սուլթանի մոտ և հարկատու դառնում նրան։ Սակայն վասալական կախման մեջ ընկնելն էլ չի փրկում Տաշիր-Ձորագետի թագավորությանը սելջուկյան հորդաների հարձակումներից։ Կորիկե Բ-ից հետո գահ բարձրացած նրա որդիների՝ Դավիթ Բ-ի և Աբաս Ա-ի ժամանակ (1089—1118) Տաշիր-Ձորագետի թագավորությունը անհավասար պայքարում քայլ առ քայլ նահան-*

ջում էր և XII դարի սկզբներին արդեն գրեթե ամփոփվել էր միայն Տաշիր գավառում։ 1118 թ. Տաշիր-Ձորագետի թագավորությունը միացվեց Վրաստանի թագավորությանը։ Դրանից հետո այստեղի Բագրատունիները՝ Դավիթ Բ-ն և Աբաս Ա-ն հեռացան Տաշիրից և Գանձակի էմիրից իբրև կալվածք ստացան՝ առաջինը Մածնաբերդն իր շրջակայքով, իսկ Աբասը՝ Տավուշ բերդը նույնանուն շրջանի հետ միասին։ Գանձակի էմիրը պահպանեց նաև նրանց թագավորական տիտղոսը։ Տ ա վ ո ւ շ ի ի շ խ ա ն ո ւ թ յ ո ւ ն ը կարճատև կյանք ունեցավ։ Աբասը հազիվ էր հաստատվել Տավուշում, երբ սելջուկները սկսեցին իրենց հարձակումները։ 1145 թ. նրանք գրավում են Տավուշը և վերջ տալիս Աբասի իշխանությանը։ Մ ա ծ ն ա բ ե ր դ ի ի շ խ ա ն ո ւ թ յ ո ւ ն ն ավելի երկարատև պահպանեց իր գոյությունը։ Այստեղ հաստատված Դավիթ Բ-ին հաջորդում է Աբաս Բ-ն, որն ամուսնանալով Զաքարե և Իվանե եղբայրների քրոջ՝ Նանայի հետ, բավականաչափ ընդարձակում է իր իշխանության սահմանները։ Մածնաբերդի իշխանությունն իր գոյությունը պահպանեց մինչև մոնղոլական ավերիչ արշավանքները։

**Մահկանաբերդի իշխանությունը.**— Մահկանաբերդի շրջանը գտնվում էր Գուգարքի Կայեն (կամ Կայան) գավառի մոտ կամ կազմում էր ուղղակի վերջինիս մի մասը։ Նա գտնվում էր Աղստև գետի միջին հոսանքի վրա։

Գարեգին Հովսեփյանի կարծիքով այս իշխանությունը հաստատվել էր Արծրունիների մնացորդների կողմից[1]։ Հավանաբար նա կազմվել էր XI դարի երկրորդ քառորդում և Տաշիր-Ձորագետի թագավորության թուլացումից հետո դարձել էր գրեթե անկախ մի փոքրիկ իշխանություն, որի մասին ավելի հաստատուն հիշատակությունները սկսվում են Զաքարյանների ժամանակաշրջանից։ Մահկանաբերդի իշխանությունը վրաց Թամար թագուհու օրոք ստանում է մեծ արտոնություններ։

**Սասունի իշխանությունը.**— Ինչպես տեսանք, Տարոնի ընդարձակ իշխանությունը Բյուզանդական կայսրության կցվելուց հետո (966 թ.) Սասունը, իր արևելյան հարևան Խութի հետ միասին, պահպանեց ներքին ինքնուրույնությունը, և Կայսրությանը նրա ենթարկվելը կրում էր ձևական բնույթ։ Սասունն աննվաճ մնաց նաև սելջուկյան տիրապետության շրջանում։ Սելջուկների արշավանքների ժամանակ Սասունի իշխանն էր նշանավոր Թոռնիկ Մամիկոնյանը,

[1] Տե՛ս Գ. Հովսեփյան, Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, Վաղարշապատ, 1928, էջ 14։

որի անունով՝ նրան հաջորդող Սասունի Մամիկոնյանները մեր պատմության մեջ սովորաբար կոչվում են Թոռնիկյաններ։

Սասունի իշխանությունը XII դարի 80-ական թվականներին հարևան էմիրների կողմից ենթարկվում է հաճախակի հարձակումների։ Նրա դաշտային գավառները գրավվում են թշնամիների կողմից։ Թոռնիկյաններից ոմանք լքում են Սասունը և, կալվածքներ ստանալով Կիլիկյան Հայաստանում, գնում, հաստատվում են այնտեղ։ Չնայած այդ բոլորին, սասունցիները, այնուամենայնիվ, համառ պայքար մղելով կարողացան իրենց գավառի ինքնուրույնությունը պահպանել ընդհուպ մինչև XIII դարի կեսերը։

**Վանի, Ամյուկի և Աղթամարի իշխանությունը.**—*Վասպուրականի թագավորության անկումից հետո Վասպուրականում, այնուամենայնիվ, մնացին ինչպես Արծրունիների տան մնացորդները, այնպես էլ ուրիշ իշխանական տոհմերի ներկայացուցիչներ։ Արծրունիների տան այդ մնացորդները կարողացել էին պահպանել իրենց իշխանությունը Վանա լճի արևելյան ափամերձ մի քանի փոքրիկ շրջաններում։ Սենեքերիմ թագավորի սերնդից երկուսը՝ Սենեքերիմ և Դերենիկ եղբայրները տիրում էին Վան քաղաքում և Ամյուկում։ Այստեղի իշխանները կրում էին «արքայոնի» տիտղոսը։*

Սակայն, Հայաստանի մյուս հայկական իշխանությունների նման, Վանի, Ամյուկի և Աղթամարի Արծրունյաց իշխանությունը ևս շրջապատված էր թշնամական էմիրություններով։ Նրա հիմնական թշնամին Շահարմենների էմիրությունն էր։ Վերջինս 1130 թ. գրավում է Ամյուկ բերդն ու նրա շրջակայքը։ Ըստ երևույթին Վան քաղաքը գրավվել էր դրանից առաջ։ Այնպես որ 1130 թ. հետո Արծրունիների այս իշխանությանը մնաց միայն Աղթամար կղզին։ Այդ փոքրիկ տերիտորիայով նա իր գոյությունը պահպանել է մինչև XIII դարի 40-ական թվականները։

Դրանից բացի, մի քանի մանր իշխանություններ կային Վասպուրականի նաև այլ մասերում՝ Ռշտունիք, Անձևացիք և այլ գավառներում, ինչպես և Վասպուրականի հարավային հարևան Մոկքի մի քանի լեռնային շրջաններում։

**Բջնիի իշխանությունը.**—*Բջնիում իշխում էին Պահլավունիները, որոնք այստեղ հաստատվել էին XI դարի սկզբներին։ Հավանական է համարվում, որ Պահլավունիները IX—XI դարերի մյուս հայկական ֆեոդալական տների նման բաժանվել էին ճյուղերի։ Այսպես, Պահլավունիների հիմնական ճյուղն իշխում էր Բջնիի և նրա շրջակայքի վրա, նրանց երկրորդ ճյուղի կալվածքները գտնվում էին*

Կոտայք գավառում և նրա մեջ մտնող Երևան գյուղաքաղաքում, իսկ երրորդը՝ Հավանաքար, իշխում էր Գառնիում։ Պահլավունի երեք ճյուղերն էլ իրենց իշխանությունը ձեռք էին բերել XI դարի առաջին կեսում։

Բջնիի ճյուղի իշխանանիստը Բջնի հռչակված բերդն էր։ Բջնին գտնվում էր Հրազդանի ափին, բնականից ամուր տեղում, որը հարավային և արևելյան կողմերից ժայռերի շնորհիվ անմատույց էր, իսկ նրա հյուսիսային և արևմտյան կողմերը, որ փոքր ինչ մատչելի էին թշնամիների համար, ամրացված էին «բարձրաբերձ պարիսպներով և աշտարակներով»։ Բջնին իր դիրքով իշխող էր Նիգ գավառի արևելյան մասի վրա։ XI դարում Բջնին արագ կերպով զարգանալով դառնում է ֆեոդալական բերդաքաղաք։ Բջնիի բարեկարգումն ու ընդարձակումը կատարվում է հատկապես XI դարի առաջին քառորդում՝ Վասակ Պահլավունու օրոք։ Վասակի ժամանակ Պահլավունիների այս իշխանությունը գրավում էր մի ընդարձակ տարածություն։ Նրա մեջ էին մտնում Նիգը (այժմ՝ Ապարան), Վարաժնունիքի մի մասը, Կոտայքը, ինչպես նաև Կայեն և Կայծոն բերդերը (Աղստևի հովտում)։

Բջնին բյուզանդացիների տիրապետության տակ է անցնում 1045 թվականին։

Հիշատակվածներից բացի, հայկական մի քանի մանր-մունր իշխանություններ կային նաև Արցախում, որոնց մեջ շատ թե քիչ նշանավոր էին Հաթերքի կամ Վերին Խաչենի և Խոխանաբերդի կամ Ներքին Խաչենի Իշխանությունները։

## Հայաստանի էմիրությունները

Այս ժամանակաշրջանի Հայաստանում գոյություն ունեին մահմեդական մի շարք էմիրություններ, որոնց մի մասը կազմվել էր դեռևս արաբական տիրապետության շրջանում, իսկ մի մասն առաջացավ սելջուկյան աշխարհակալ պետության քայքայման ու մասնատման հետևանքով։ էմիրությունները նորանոր շրջաններ գրավելու համար հաճախ պատերազմներ էին մղում իրար դեմ։ Նրանց մղած պատերազմների հետևանքով խիստ տուժում էին տեղաբնիկ բնակիչները՝ ավերվում էին քաղաքներ, գյուղեր և երբեմն նաև ամբողջական գավառներ։ էմիրություններից յուրաքանչյուրն իրենից ներկայացնում էր փոքրիկ ֆեոդալական պետություն։

Արաբական տիրապետության ժամանակաշրջանում Հայաստանի տերիտորիայում կազմավորված էմիրությունների մի մասը (Ութմանիկների էմիրությունը, Դվինի էմիրությունը) ոչնչացվել էր դեռևս Բագրատունիների թագավորության շրջանում, իսկ մյուս մասը (Կայսիկների էմիրությունը, Աղձնիքի էմիրությունը) իր գոյությունը պահպանեց մինչև սելջուկյան տիրապետության շրջանը։ Ըստ էության, սրանք պահպանվեցին նաև սելջուկյան տիրապետության շրջանում, սակայն նրանցում հին էմիրական տների փոխարեն սկսեցին իշխել սելջուկյան էմիրները։

Սելջուկյան տիրապետության շրջանում առաջացան և նոր էմիրություններ, որոնք գրավում էին երկրի զանազան մասերը։

**Դվինի Շադդադյանների էմիրությունը.**—XI—XII դարերում Անդրկովկասի էմիրական տներից ամենահզորը Շադդադյաններինն էր։ Սա գոյություն ուներ արաբական շրջանից և հայ պատմագիրների մոտ սովորաբար կոչված է Փատլունյան։ X դարի երկրորդ կեսից Շադդադյաններին էր պատկանում աղվանական Գանձակ քաղաքը (այժմ՝ Կիրովաբադ) և նրա շրջակայքի մի քանի գավառները։ Բագրատունիների թագավորության անկման շրջանում նրանք կարողացան իրենց հողերը զգալի չափով ավելացնել Տաշիր-Ձորագետի և Սյունիքի թագավորությունների հաշվին՝ գրավելով առաջինի արևելյան, իսկ երկրորդի հյուսիսային մի քանի շրջանները։ XI դարի կեսերին Շադդադյանների էմիրությունն արդեն Անդրկովկասի ֆեոդալական պետական բավական ուժեղ միավորներից մեկն էր։

1048 թ. Շադդադյանները Դավիթ իշխանից խլեցին Դվին քաղաքն իր շրջակայքով և այնտեղ հիմնեցին Շադդադյանների տան Դվինի ճյուղը, որն իր գոյությունը պահպանեց մինչև 1132 թվականը։ XII դարի երեսնական թվականներին սելջուկյան զորավար Մելիք-Տուղրիլ-շահը բազմաթիվ այլ շրջանների հետ միասին գրավեց նաև Դվինը և հաստատվեց Գանձակում։ Հենց դրանով էլ վերացավ Դվինի Շադդադյանների (որոնք ունեին քրդական ծագում) ճյուղը։ Այնուհետև Դվինը սելջուկների ձեռքին մնաց մինչև նրա վերջնական ազատագրումը (1203 թ.)։

**Անիի Շադդադյանների էմիրությունը.**—Դվինի Շադդադյան էմիր Աբլ-Սվարը 1072 թ. սելջուկյան սուլթան Ալփ-Արսլանից գնում է Անի քաղաքը և հանձնում իր թոռան՝ Մանուչեին։ Այսպիսով Հայաստանում առաջանում է Շադդադյանների մի երկրորդ էմիրություն, որի աթոռանիստը Անին էր։ Այս էմիրությունը, կարճատև

ընդմիջումներով, իր գոյությունը պահպանեց մինչև 1199 թվականը։ Անիի Շադդադյանները այդտեղի էմիրության հիմնադրի անունով կոչվեցին Մանուչյաններ։ Անիի առաջին էմիր Մանուչեն մոր կողմից սերած էր հայ Բագրատունիներից։

Մանուչյանների ժամանակ Անին զգալի չափով վերաշինվում է։ Մանուչեն, այդտեղ հաստատվելուց անմիջապես հետո, կառուցել է տալիս մի հոյակապ մզկիթ, որը հայտնի է Մանուչեի մզկիթ անունով։ Այդ մզկիթը կառուցված էր ճարտարապետական նուրբ ճաշակով։ Նրա ավերակները պահպանվել են մինչև օրս։ Անիի էմիրության բնակչության ճնշող մասը կազմում էին հայերը։

Մանուչեին հաջորդած նրա որդի Աբլ-Սվար Բ-ի ժամանակ Գանձակի էմիրությունը սպառնում է գրավել ամբողջ Շիրակը, իսկ Անիի էմիրը, փոխանակ պաշտպանության միջոցներ ձեռնարկելու և դիմադրություն կազմակերպելու, մտադրվում է Անին վաճառել Կարսի էմիրին։ Անեցիները, իմանալով նրա չար մտադրության մասին, դիմում են Վրաստանի Դավիթ թագավորին, որպեսզի իր զորքերով սելջուկներից ազատագրի քաղաքը։ Վրաց թագավորը սիրով ընդունում է հայերի հրավերը և 1124 թ. գալիս ու ազատագրում է Անին՝ այստեղ կառավարիչ նշանակելով վրաց իշխան Աբուլեթ Օրբելյան, որին օգնական է կարգում նրա որդի Իվանեին։ Դրանից երկու տարի անց Աբլ-Սվար Բ-ի որդի Փադլոնը մահմեդական մի շարք էմիրների օգնությամբ մեծ ուժերով գրավում է Անին։

Հետագայում Վրաստանը երկու անգամ ևս Անին ազատագրում է սելջուկներից (1161 թ., 1174 թ.)։ Սակայն Վրաստանն այդ ժամանակներում չի կարողանում Անին պահել իր ձեռքում, որովհետև Անդրկովկասի էմիրությունները դեռևս չէին ընկճված և Վրաստանի դեմ նրանք հանդես էին գալիս իրար հետ դաշնակցած։

Շադդադյան կամ Մանուչյան վերջին էմիրի՝ Քեյ-Սուլթանի օրոք հայ-վրացական միացյալ զորքերը, հայազգի Զաքարե սպասալարի գլխավորությամբ, 1199 թ. վերջնականապես ազատագրում են Անին, որը տրվում է Զաքարյաններին իբրև ժառանգական սեփականություն։ Նա Զաքարյանների ձեռքին էլ մնաց մինչև XIV դարի վերջերը, այսինքն՝ մինչև Լենկթեմուրի արշավանքները։

**Խլաթի Շահարմենների պետությունը.**—Խլաթի Շահարմենների պետությունը, որ հաճախ կոչվել է նաև էմիրություն, կազմավորվել է նախկին Կայսիկների էմիրության տեղում և գոյություն է

ունեցել 144 տարի (1100—1244 թթ.)։ Այլ կերպ ասած, սա, Հայաստանում եղած մյուս էմիրություններին հետ համեմատած, ամենից երկար է պահպանել իր գոյությունը։

Խլաթի Շահարմենների էմիրության հիմնադիրը համարվում է ոմն Սոքման-էլ-Քոդբին, որը 1100 թ. Մանազկերտում, Խլաթում, Խնուսում և մի շարք այլ շրջաններում իշխող Մերվանյաններին վանելուց հետո ինքը հաստատվեց այդ տերիտորիաներում՝ Վանա լճի արևմտյան ափին գտնվող Խլաթ քաղաքը դարձնելով իր աթոռանիստը։ Շահարմենների էմիրության տերիտորիան իր առավելագույն չափերին է հասնում XII դարի վերջերին։ Այդ ժամանակ նրա բուն տերիտորիայի մեջ էին մտնում նախկին Վասպուրականի հյուսիսարևելյան կեսը և Բերկրիի, Արճեշի, Բաղեշի (Բիթլիսի), Խլաթի, Մանազկերտի, Խնուսի, Բյուրակնի շրջաններն ամբողջությամբ ու Դերջանի մի մասը։ Սակայն դրանցով չէին սահմանափակվում Շահարմենների տիրապետության սահմանները. ձևական տեսակետից այդ էմիրությանն էին ենթակա նաև Աղբակում, Վանում, Մոկքում, Սասունում, Տարոնում ու Խորձյանում գտնվող հայկական իշխանությունները և Երզնկայի, Կարինի ու Կարսի էմիրությունները։

Սելջուկ իշխողները իրենց «շահ-արմեն» («հայկական շահ») են կոչել պարզապես այն պատճառով, որ նրանց ընդարձակ էմիրության մեջ բնակչության ճնշող մասը կազմում էին հայերը։ Էմիրության մայրաքաղաքը վաճառաշահ ու հարուստ Խլաթն էր։

Շահարմենները ձևական տեսակետից ենթարկվում էին «մեծ սելջուկներին», սակայն իրականում նրանք անկախ իշխողներ էին։

XIII դարի սկզբներից հակասություններն ավելի են սրվում։ Շահարմենների էմիրությունում իրենց դիրքատիրան հաստատած էյուբյանները (1208 թ.) հզորացող Վրաստանի և հայ-վրացական զինակցությանն ու բարեկամական հարաբերություններին չէին կարող հաշտ աչքով նայել։ Նրանք, միանալով մի շարք այլ էմիրությունների հետ, փորձում են կոտրել Վրաստանի հզորությունը և այն ենթարկել իրենց։ Սակայն հայ-վրացական միացյալ զորքերը դեպի հարավ կատարած մի արշավանքով ազատագրում են Շահարմեններին ենթարկվող Բագրևանդ, Ծաղկոտն և Կոգովիտ գավառները, ապա առաջ շարժվելով հասնում են մինչև Մանազկերտ։ Հետագայում (1209 թ.) հայ-վրացական բանակները հասան նույնիսկ էմիրության մայրաքաղաք Խլաթին։

Շահարմենների էմիրությունը պատմական ասպարեզից վերացավ 1244 թ., երբ մոնղոլները ամբողջապես գրավեցին նրա տերիտորիան և մայրաքաղաքը։

**Որդուքյանների պետությունը.**—*Այս պետությունն առաջացավ Իլաթի Շահարմենների պետության կազմավորման ժամանակ։ Սա իր հերթին բաժանված էր երկրորդական էմիրությունների։*

*Որդուքյանների պետությունը Մարդինի, Հիսն-Կեֆի և Ամիդի շրջաններից բացի, իր մեջ էր ընդգրկում նաև Հայաստանի հարավ-արևմտյան մի խոշոր մասը՝ նախկին Աղձնիք նահանգն ամբողջությամբ, մի շարք գավառներ Չորրորդ Հայքից, Տուրուբերանից և Կորճեքից։ Այդպիսի կազմով Որդուքյանների Մուֆարղինի պետության սահմանները ձգվում էին Եփրատից մինչև Կորդվաց (Քրդստանի) լեռների արևմտյան բարձրությունները և Հայկական Տավրոսի ջրբաժան շղթաներից մինչև Մասիոսի լեռները։*

*XII դարի երեսնական թվականներից Որդուքյանների պետությունը հետզհետե բաժան-բաժան է լինում և թուլանում։ 1207 թ. էյուբյանների կողմից վերջ է տրվում Որդուքյանների պետությանը։*

## Հյուսիս-արևելյան Հայաստանի[1] վարչա-քաղաքական դրությունը XII—XIII դարերում

*XI դարի վերջերից Վրացական պետության համար ստեղծվում են բավականաչափ նպաստավոր պայմաններ. երկրի ներքին տնտեսական կյանքը զգալի չափով առաջադիմում է, բաժան-բաժան եղած սելջուկյան պետությունը գնում է դեպի անկում, իսկ Բյուզանդական կայսրությունը XI դարի երկրորդ կեսից արդեն դադարել էր Առաջավոր Ասիայի քաղաքական կյանքում նախկին խոշոր դերը խաղալուց։*

*XI—XII դարերում Վրաստանի հզորացմամբ պայմաններ ստեղծվեցին Հյուսիս-արևելյան Հայաստանի ազատագրման համար։*

*1124 թ. Անին ու Շիրակը Վրաստանին միացվելուց հետո (թերևս դրանից առաջ) Վրաստանին է միացվում նաև Տաշիր-Ձորագետի թագավորությունը, որի տերիտորիայի մի զգալի մասը շնորհվում է Դավիթ Դ-ի բանակի գլխավոր հրամանատար (ամիրսպասալար) վրաց իշխան Իվանե Օրբելուն։ Այդ թագավորության մյուս մասերը մնացին հայ ֆեոդալների իշխանության ներքո, որոնք դարձան*

[1] *Հայ ժողովրդի պատմության մեջ Վրաստանի օգնությամբ Հայաստանի՝ սելջուկներից ազատագրված մասը ընդունված է կոչել Հյուսիսային Հայաստան, մինչդեռ դա աշխարհագրական առումով ոչ թե Հյուսիսային, այլ Հյուսիս-արևելյան Հայաստանն է։ Ուստի այն մենք կոչում ենք վերջին ձևով։*

Իվանե Օրբելու անմիջական վասալները։ Նրա վասալը դարձավ նաև Խոժոռնիի տեր իշխան Ավագ Զաքարեն (վրացերեն՝ «Միխարգրձելի»—«Երկայնաբազուկ»), որը համարվում է Զաքարյան տոհմի հիմնադիրը։

Հյուսիս-արևելյան Հայաստանի ազատագրումը, սակայն, մեծ մասամբ կատարվեց Թամար թագուհու օրոք (1184—1213 թթ.), երբ պետության քաղաքական կյանքում կարևոր դեր էին խաղում հայազգի Զաքարյանները։ Վրաց թագուհին ամիրսպասալարի պաշտոնը տվեց Սարգսի որդի Զաքարեին, որը ժառանգական կարգով իշխելու պայմանով Թամար թագուհուց ստացել էր Տաշիր-Ձորագետի տերիտորիաները։ Բարձր պաշտոն և մեծ շնորհումներ ստացավ նաև Զաքարեի եղբայր Իվանեն։

Հզորացած Վրաստանը, հայերի ակտիվ զինակցությամբ, համառ պայքար սկսեց սելջուկների դեմ։ Հայ-վրացական բանակը, Զաքարեի հրամանատարությամբ, մեկը մյուսի ետևից սելջուկներից մաքրում է Ամբերդը, Բջնին, Արարատյան և Շիրակի դաշտերը, Անին (1199 թ.), Դվինը (1203 թ.), Կարսը, Սյունիքը, Սուրմարին, Բագրևանդը, Կոգովիտը, Ծաղկոտնը, ապա շարունակելով իր առաջխաղացումը, հասնում է մինչև Մանազկերտ, Արճեշ և Խլաթ քաղաքները՝ հարկադրելով Շահարմեններին ընդմիշտ հրաժարվել Բագրևանդ, Ծաղկոտն և Կոգովիտ գավառներից, որոնք այդ արշավանքի ընթացքում խլվեցին նրանցից և միացվեցին Հյուսիս-արևելյան Հայաստանի մյուս ազատագրված շրջաններին։

Նշված բոլոր շրջանները ազատագրվեցին 10—12 տարվա ընթացքում (1190-ական թ. վերջերից մինչև XIII դարի առաջին տասնամյակի վերջերը)։ Դրանց ազատագրումով էլ ավարտվեցին Հյուսիս-արևելյան Հայաստանը սելջուկյան տիրակալներից մաքրելու համար ձեռնարկված արշավանքները։

Այսպիսի կազմով սելջուկներից ազատագրված Հյուսիս-արևելյան Հայաստանն ուներ մի հսկայական տերիտորիա։ Ամբողջությամբ նրա մեջ էին մտնում Վանանդի, Անի-Շիրակի, Տաշիր-Ձորագետի և Սյունիքի նախկին թագավորությունները։ Նրա սահմանները ձգվում էին Արցախի (Ղարաբաղի) լեռների արևելյան լանջերից մինչև այժմյան Հասան-Կալա ու Արաքս գետերի խառնարանի մոտերքը և Կուր գետից մինչև Ծաղկանց լեռների հարավային վերջավորությունները։

Ձևական տեսակետից Հյուսիս-արևելյան Հայաստանը մտնում էր Վրացական պետության մեջ, սակայն իրականում նրան տրված էին ներքին անսահմանափակ իրավունքներ։ Նա նույնիսկ հարկեր

չէր տալիս։ Վրաց թագավորներն իրենց չէին համարում Հայաստանի հողերի և ընդերքի հարստությունների տերը։ Դրանց տերը Զաքարյաններն էին, նրանց գերագույն իրավասությանն էին ենթակա ինչպես երկրի հողերը, անտառները, ջրերը և ընդերքի ամբողջ հարստությունները, այնպես էլ բոլոր մեծ ու փոքր ֆեոդալները։ Վրացական պետությունից կախվածությունը արտահայտվում էր միայն նրանով, որ Զաքարյանները համարվում էին վրաց թագավորի վասալները և, իբրև այդպիսին, նրանք, պետական բարձր պաշտոններ վարելուց բացի, անհրաժեշտության դեպքում պարտավոր էին զորքեր տրամադրել։

Այդպիսի բարենպաստ պայմանների շնորհիվ Հյուսիս-արևելյան Հայաստանը սելջուկյան ծանր տիրապետությունից հետո վերակենդանացավ և բռնեց իր զարգացման ուղին։ Սակայն այդ դրությունը երկար չտևեց. շուտով մոնղոլները երևացին Անդրկովկասում և, ահռելի ավերածություններ կատարելուց հետո, իրենց ծանր լուծը հաստատեցին այնտեղ։

Զաքարյանների ժամանակաշրջանի Հյուսիս-արևելյան Հայաստանը տիպիկ ֆեոդալական երկիր էր։ Նա իրենից չէր ներկայացնում մի ամբողջական միահեծան պետություն, այլ երկու եղբայրներով երկու ճյուղի բաժանված տոհմի ավագ կամ ազդեցիկ ներկայացուցչի գերիշխանության տակ՝ հայկական իշխանությունների մի ամբողջ ցանց էր։

Զաքարյանները իբրև Հյուսիս-արևելյան Հայաստանի սյուզերեն տերեր ունեին իրենց և՛ սեփական տիրապետության շրջանները, և՛ վասալ իշխանությունները։ Նրանց վասալ իշխանությունների մի մասը գոյություն ուներ հնից կամ նախորդ ժամանակաշրջաններից, իսկ մյուս մասը հաստատեցին հենց իրենք՝ Զաքարյանները։

## Զաքարյանների տիրապետության շրջանները

Զաքարյանների իշխանության ներքո Հյուսիս-արևելյան Հայաստանը բաժանված էր երկու մասի, որոնցից մեկը ենթարկվում էր Զաքարեին, իսկ նրա մահից հետո անցավ նրա որդի Շահնշահին։ Երկրորդ մասը կազմում էր Զաքարեի եղբայր Իվանեի գերիշխանության շրջանը, որը նրա մահից հետո ժառանգեց նրա որդին՝ Ավագը։ Առաջինների իշխանության տակ էր գտնվում երկրի արևմտյան մասը՝ Լոռու և Անիի շրջանները, Արագածոտն, Բագրևանդ, Ծաղկոտն և Կոգովիտ գավառները, Սուրմառիի շրջանը և այլն։ Նրանց իշխանության տակ եղած տերիտորիան ձգվում էր Վիրա-

հայոց լեռներից մինչև Ծաղկոտնի հարավային սահմանը և Բոլորպահակից մինչև Երևան։ Զաքարեի ճյուղի իշխանների աթոռանիստերն էին Լոռին և Անին։ Իսկ Իվանեի և նրա որդու տիրապետության ու գերիշխանության տակ էր գտնվում Հյուսիս-արևելյան Հայաստանի արևելյան մասը, որի մեջ էին մտնում՝ Բջնին, Գեղարքունիքը, Վայոց ձորը, Արցախի մեծ մասը, Սյունիքը, ինչպես նաև Նախիջևան, Դվին ու Երևան քաղաքներն իրենց շրջակայքի հետ միասին։ Այս ճյուղի աթոռանիստը Կայեն բերդն էր։ Այսպիսով, վերջիններիս իշխանության սահմանները Աղստև գետից հասնում էին մինչև Արաքս։ Սակայն Զաքարեի և Իվանեի իշխանությունների նըշված սահմանները չի կարելի համարել վերջնականապես ճշտված։

Ինչպես ասվեց, Զաքարյանները սեփական տիրապետություններից բացի իրենց գերիշխանության տակ ունեին հնից եկող և իրենց կողմից կազմված վասալ իշխանություններ։ Նոր կազմված վասալ իշխանություններից էին՝ Վաչուտյանների, Դոփյանների, Օրբելյանների, Պռոշյանների (կամ Խաղբակյան) և Վահրամյանների իշխանությունները։ Հնից իրենց գոյությունը պահպանել և, Զաքարյանների կողմից հովանավորվելով, բավական զորացել էին Հաթերքի կամ Վերին Խաչենի, Խոխանաբերդի կամ Ներքին Խաչենի, Մածնաբերդի, Մահկաբերդի և Գահլավոնիների իշխանությունները։

Նոր կազմված Վաչուտյանների իշխանությունը Զաքարեի և նրա որդի Շահնշահի վասալն էր, իսկ Դոփյանների, Օրբելյանների և Պռոշյանների (Խաղբակյան) իշխանությունները ենթարկված էին Իվանեին, ապա նրա որդուն՝ Ավագին։ Նոր իշխանություններից էր նաև Վահրամյանների իշխանությունը, որը Զաքարյանների կրտսեր ճյուղն էր։

Զաքարյան իշխանները խնամիական կապերով կապված էին մյուս իշխաններից շատերի հետ, և դա օգտագործում էին իրենց ֆեոդալական իշխանությունները ամուր պահելու համար։ Վասալ իշխանների մեծ մասն արքունիքում վարում էր զանազան պաշտոններ։

### Զաքարյանների կազմած իշխանությունները

**Վահրամյանների իշխանությունը.**— Այս իշխանության հիմնադիրը համարվում է Զաքարե և Իվանե եղբայրների ազգական՝ Բոլու Զաքարեի որդի Վահրամը, որն իշխում էր Գագ ամրոցում (Հաղպատից հյուսիս-արևելք՝ Կուր գետի աջ կողմում)։ Ինչպես երևում է,

նրա հայրը՝ Բլու Զաքարեն ստեղծել էր արդեն բավականաչափ ընդարձակ մի իշխանություն, որի մեջ էին մտնում Գարդման, Փառիսոս և Տավուշ գավառները՝ Գարդման, Քարահերձ, Երգեվանք, Տավուշ, Տերունական, Կածարեթ և Գագ բերդերով։ Բլու Զաքարեի որդին և հաջորդը՝ Վահրամը, որը Գագն իր աթոռանիստը դարձնելու համար սովորաբար կոչվել է Վահրամ Գագել, գրավում է նաև Շամքոր քաղաքը։

Վահրամյանների իշխանությունը նկարագրված տերիտորիայով մնաց մինչև մոնղոլական արշավանքները։ Հյուսիս-արևելյան Հայաստանի մյուս շատ իշխանների պես Վահրամյանները ևս ընդունեցին մոնղոլների գերիշխանությունը, սակայն վերջիններիս արշավանքների հետևանքով նրանց իշխանությունը ենթարկվեց ավերման։

**Վաչուտյանների իշխանությունը.**—*XIII դարի սկզբում Վաչուտյանները հաստատվել էին Արագածոտն գավառի մի մասում, որն իր տերիտորիայով համապատասխանում է այժմյան Աշտարակի և Աշտարակի շրջաններին։ Իշխանության կենտրոնը Կարբիի շրջանում գտնվող Ամբերդ դղյակն էր, որը նախորդ շրջանում պատկանում էր Պահլավունիներին։*

Զաքարյաններն այդ շրջանները 1196 թ. գրավելով, նրանցում կառավարիչ էին նշանակել Վաչեին (Վաչուտին), որը և համարվում է Վաչուտյանների իշխանության հիմնադիրը։

Վաչեի թոռ Վաչե Վաչուտյանի ժամանակ այդ իշխանությունն ընդգրկում էր գրեթե ամբողջ Արագածոտն գավառը։ Նա հիշատակվում է որպես Արագածոտնի իշխանաց իշխան, իսկ դա ցույց է տալիս, որ նրա հովանավորության տակ կային այլ մանր իշխանություններ։

Վաչուտյանների իշխանությունը բավական երկար ժամանակ պահպանեց իր գոյությունը։ XIII դարի վերջերին վերաբերող արձանագրությունների մեջ նրա մասին դեռևս շարունակվում է հիշատակվել։

Վաչուտյանների աթոռանիստը Ամբերդն էր, իսկ հոգևոր կենտրոնը՝ Հովհաննավանքը։ Այդ իշխանության մեջ էր նաև Սաղմոսավանքը։

**Օրբելյանների իշխանությունը.**—*Օրբելյանները սերված են վրացական Օրբելյան հզոր իշխաններից, որոնք Վրաստանում IX—XII դարերում քաղաքական խոշոր դեր էին խաղում։ Նրանք Դավիթ Գ-ի ժամանակներից կատարում էին վրացական պետության գլխավոր հրամանատարի՝ ամիրսպասալարի պաշտոնը և իբրև ֆեո-*

գալներ իշխում էին Լոռու ու նրա շրջակայքի, ինչպես և Սամշվիլդեի վրա։ Օրբելյանները 1178—1179 թթ. ապստամբում են Գեորգի Գ-ի դեմ, դրա համար էլ նրանք վռնդվում են ամիրսպասալարության պաշտոնից և իրենց գրաված կալվածքներից, որոնք տրվում են Զաքարյաններին։

Դրանից հետո Օրբելյան տան ներկայացուցիչներից մի քանիսը թողնում են Վրաստանը և հեռանում։ Հենց դրանց սերնդից էր Լիպարիտը, որ Զաքարյան Իվանեից, իբրև շնորհում, ստացավ Վայոց ձորում Հրաշկաբերդը և բազմաթիվ գյուղեր իրենց հողերով, ինչպես նաև ընդարձակ կալվածքներ Գեղարքունիքում, Կոտայքում ու Կայենում։ Օրբելյանների իշխանության հիմնադրման տարին համարվում է 1184 թվականը։

Լիպարիտի իշխանության տակ էին գտնվում մի շարք այլ փոքրր իշխանություններ։ Նա կրում էր իշխանաց իշխան տիտղոսը և համարվում էր Զաքարյանների վասալը։

Լիպարիտի հաջորդի և որդու՝ Ելիկումի իշխանության ժամանակ սկսվում են մոնղոլական արշավանքները։ Նա շուտով ընդունում է մոնղոլների գերիշխանությունը՝ իր իշխանական իրավունքները պահպանելու պայմանով։

**Պռոշյանների (կամ Խաղբակյանների) իշխանությունը.**—Պռոշյանները Վայոց ձորում հաստատվեցին գրեթե Օրբելյանների հետ միաժամանակ։

Նրանք սկզբում Խոխանաբերդի կամ Ներքին Խաչենի իշխանների վասալներն էին։ Դրանց ներկայացուցիչներից մեկը՝ Վասակը 1201 թ. թողնում է Խաչենը և գալիս հաստատվում է Սյունիքում։ Այստեղ նա, Իվանե Զաքարյանի շնորհիվ, հաստատում է մի զորավոր իշխանություն։ Վասակը Հյուսիս-արևելյան Հայաստանը սելջուկներից մաքրելու գործում մեծ օգնություն է ցույց տալիս Զաքարյաններին և դրա դիմաց նրանցից, իբրև պարգև, Սյունյաց, Շահապունյաց և Վայոց ձոր գավառներում ստանում է լայնատարած կալվածքներ՝ ժառանգաբար իշխելու իրավունքով։

Սակայն Պռոշյանների իշխանությունը մի ամբողջություն չէր ներկայացնում, նա բաղկացած էր մի քանի մեծ ու փոքր մասերից, որոնք իրարից բաժանված էին Օրբելյանների իշխանության տակ գտնվող տերիտորիաներով։ Նրա ամենաընդարձակ մասը Շահապունիքն էր՝ Ճահուկի արևելյան մասի և Վայոց ձորի սահմանակից շրջանների հետ միասին։ Նրա մյուս երկու ընդարձակ մասերը գտնվում էին Վայոց ձորում, որոնցից մեկի մեջ էր մտնում Ազատ

*գետի հովիտն իր Գեղարդա վանքով։ Դրանցից բացի, Խաղբակյանները կալվածքներ ունեին նաև Կեչառուքի վանքի շրջակայքում։*

*Վասակին հաջորդեց նրա որդին՝ Պռոշը (1223—1284), որի ժամանակ տեղի են ունենում մոնղոլների արշավանքներն ու նրանց ծանր լծի հաստատումը։ Պռոշյանները, Օրբելյանների ու մյուս իշխանների օրինակով, ընդունում են մոնղոլական գերիշխանությունը և հետագայում ունենում բարձրացման ու փառքի մի շրջան։*

*Խաղբակյանների իշխանության հոգևոր կենտրոններն էին՝ Կեչառուքի, Այրի կամ Գեղարդա, Թանահատի վանքերն ու միջնադարյան Հայաստանի մշակույթի խոշոր կենտրոն Գլաձորը։*

**Դոփյանների իշխանությունը.**—*Այս իշխանական տունն իր անունը վերցրել է Զաքարե և Իվանե եղբայրների քրոջ՝ Դոփի անունից։ Դոփն ամուսնանում է Սարի իշխան Հասանի հետ, որը Զաքարյաններից լայնատարած կալվածներ է ստանում Թարթառ գետի վերնագավառում։ Չնայած իշխանության առաջին իսկական տերը Հասանն էր, այնուամենայնիվ, իշխանական տունը կրեց Դոփի անունը։ Դոփյաններին էր պատկանում Թարթառ գետի վերնագավառից բացի նաև Սյունիքի մի փոքր մասը՝ Սոդք գավառը։ Այս իշխանական տունը գործոն դեր խաղաց մոնղոլների տիրապետության շրջանում։*

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ XI ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XIII ԴԱՐԻ 30—40-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԸ

### Հայաստանի տնտեսական դրությունը XI դարի կեսերից մինչև XII դարի երկրորդ կեսը

*Այս ժամանակաշրջանն իր մեջ ընդգրկում է բյուզանդական և սելջուկյան կարճատև տիրապետությունների շրջանը։*

*Կայսրության՝ հայերին բռնի ուժով տեղահան անելու և ծանր հարկային քաղաքականության հետևանքով Հայաստանի տնտեսությունը, մանավանդ գյուղատնտեսությունը, մեծապես տուժում էր։ Բյուզանդական տիրապետությունը բացասական քիչ ազդեցություն չէր թողնում նաև արհեստագործության վրա։ Դա արտահայտվում էր նախ նրանով, որ բյուզանդական արհեստավորական ապրանքները, տեղական մաքսի վերացման հետևանքով, սկսեցին ազատ մուտք գործել Հայաստանի քաղաքները։ Երկրորդ՝ ազնվականության ու զինվորականության զգալի մասի և բազմահազար հարկա-*

տու բնակիչների՝ բուն Հայաստանից տեղահան անելը, ինչպես և տեղի բնակիչների վատթար դրությունը, որ հետևանք էր կայսրության վարած ծանր հարկային քաղաքականության, մեծ չափով իջեցնում էին արհեստավորական արտադրանքների պահանջը։ Ըստ երևույթին մի փոքր այլ էր արտաքին առևտրի վիճակը։ Հայաստանի՝ աշխարհակալ Բյուզանդիային կցումով հայ վաճառականները հնարավորություն են ստանում իրենց գործունեությունը ծավալել ավելի մեծ տերիտորիայի վրա։

Սակայն պետք է ասել, որ բյուզանդական տիրապետության շրջանի Հայաստանի տնտեսական կյանքում, այնուամենայնիվ, արմատական փոփոխություններ տեղի չունեցան։ Կայսրությունը իր տիրապետությունը նոր էր հաստատել Հայաստանում, երբ վրա հասան սելջուկների արշավանքները, որոնց անմիջապես հաջորդեց Հայաստանում նրանց ծանր լծի հաստատումը։

Սելջուկյան չորս արշավանքների ընթացքում (1048 թ., 1049 թ., 1054 թ. և 1064—1071 թթ.) ավերվեցին Վասպուրականի մեծ մասը, Արածանիի հովտում ընկած շրջանները, Վանանդը, Կարինի գավառը, Արարատյան և Շիրակի դաշտերը։ Ավերելու հետ միասին՝ սելջուկյան հորդաները կողոպտում էին գյուղերն ու քաղաքները և գերեվարում բնակչության զգալի մասին։ Հայաստանի գյուղատնտեսությունը, քաղաքային կյանքը և առևտուրը մեծ հարված են ստանում այդ ավերիչ արշավանքներից։

Խաղաղ պայմաններ ստեղծվեցին Մելիք-շահ Ա սուլթանի և նրա նշանավոր վեզիր Նիզամ-ուլ-Մուլքի ժամանակ, երբ սելջուկների պետությունը ապրում էր իր հզորության ամենաբարձր շրջանը։ Դրանց օրոք աստիճանաբար վերականգնվում էին ավերված գյուղերն ու քաղաքները, ջրանցքները, ճանապարհները, իջևանները։ Մելիք-շահը իր վեզիր Նիզամ-ուլ-Մուլքի խորհրդով անց է կացնում որոշ վերափոխություններ, որոնք զգալի չափով խրախուսիչ դեր են խաղում երկրի տնտեսության վերականգնման գործում։

Խաղաղությունը երկարատև չեղավ։ Մելիք-շահի մահից հետո (1092 թ.) նրա պետության մեջ ծայր առավ գահակալական պայքար, և էմիրների ու աթաբեկների միջև սկսվեցին երկարատև կռիվներ, որոնք մեծ հարված էին հասցնում տնտեսության բոլոր ճյուղերին։

**Գյուղատնտեսություն.**—Գյուղատնտեսությունը, նախորդ ժամանակաշրջանի հետ համեմատած, զգալի չափով հետադիմում է։ Թուրք-սելջուկները, երկրում կատարած ավերածություններից բացի, մեծ մասսաներով գալիս հաստատվում են Հայաստանի արգա-

վանդ դաշտերում և հովիտներում։ Նրանք, լինելով քոչվոր անասնապահներ, երկրագործական մշակույթներով հնուց ի վեր հայտնի դաշտերի ու հովիտների մեծ մասը վեր են ածում արոտավայրերի. ավերում են այնտեղ գոյություն ունեցող ոռոգման սիստեմները։ Դրա հետևանքով սելջուկյան տիրապետության շրջանում գյուղատնտեսության ճյուղերի մեջ առանձնապես մեծ հարված են ստանում երկրագործությունն ու այգեգործությունը։ Նախորդ ժամանակաշրջանում երկրագործությամբ զբաղվող հայ բնակչության մի զգալի մասը, որ դուրս էր մղվել արգավանդ դաշտերից և ապաստանել էր լեռնային շրջաններում, իր հիմնական զբաղմունքն է դարձնում անասնապահությունը։

**Քաղաքները և առևտուրը**.—Նախորդ ժամանակաշրջանի Հայաստանի ծաղկած քաղաքներից շատերը սելջուկյան արշավանքների հետևանքով ենթարկվում են ավերման և կողոպուտի։ 1049 թ. սելջուկները գրավեցին, կողոպտեցին և հիմնահատակ կործանեցին Հայաստանի խոշոր քաղաքներից մեկը՝ Արծնը։

Ալփ-Արսլանի արշավանքի ժամանակ (1064—1065 թթ.) զգալի չափով ավերման ենթարկվեց հռչակավոր Անին։ Սելջուկյան տիրապետության շրջանում չնայած նա չկորցրեց իր նշանակությունը, սակայն նրա քաղաքական պատմությունն այդ ժամանակներում չափազանց անկայուն էր։ Այդ շրջանում Անին մի շարք անգամ անցել է ձեռքից ձեռք և յուրաքանչյուր դեպքում ենթարկվել մասնակի ավերման։ Նույնպիսի քաղաքական դրություն է ունեցել և Հայաստանի երկրորդ նշանավոր քաղաքը՝ Դվինը։

Սելջուկյան արշավանքներից խիստ կերպով տուժեցին Արճեշ և Մանազկերտ քաղաքները։ Դրանցից առաջինը հրի ու սրի մատնվեց Տուղրիլի արշավանքի ժամանակ (1054 թ.), իսկ երկրորդը՝ Մանազկերտը, ավերման ու կողոպուտի ենթարկվեց սելջուկների և բյուզանդական զորքերի միջև տեղի ունեցած 1071 թ. ճակատամարտի ժամանակ։ 1103 թ. սելջուկների կողմից հիմնահատակ ավերման ենթարկվեց Սյունիքի թագավորության մայրաքաղաք Կապանը և այլևս չվերականգնվեց։

Նշվածներով, անշուշտ, չի սահմանափակվում սելջուկյան հորդաների կողմից Հայաստանում ավերված քաղաքների ցանկը։ Անուղղակի հիշատակություններից երևում է, որ Արծնից, Արճեշից, Մանազկերտից, Անիից և Դվինից բացի, սելջուկյան տիրապետության շրջանում խիստ հարված էին ստացել նաև բազմաթիվ այլ քաղաքներ ու գյուղաքաղաքներ (Վան, Բերկրի, Մուշ, Ամբերդ և այլն)։

*Թուրք-սելջուկների արշավանքներից հետո, Մելիք-շահ Ա սուլթանի օրոք, որոշ նպաստավոր պայմաններ են ստեղծվում առևտրի համար, սակայն դա ժամանակավոր բնույթ էր կրում։ Սելջուկյան պետության մասնատման հետևանքով Փոքր Ասիայում, Միջագետքում, Հայաստանում, Աղվանքում, Ատրպատականում, Պարսկաստանում կազմավորվում են մի շարք էմիրություններ, որոնք հաճախակի պատերազմներ էին մղում իրար դեմ։ Թե՛ Հայաստանում և թե՛ նրա հարևան երկրներում կային բազմաթիվ շրջաններ, որտեղ առհասարակ բացակայում էր որևէ իշխանություն։ Այդպիսի շրջաններում սելջուկյան հորդաները բանդաներ կազմած հարձակվում ու թալանում էին բնակավայրերը և առևտրական քարավանները։ Հայաստանում իրենց գոյությունը պահպանած ֆեոդալական պետություններն ու առանձին մանր իշխանությունները շրջապատված էին սելջուկյան էմիրություններով, որոնք հաճախակի հարձակումներով միշտ սպառնալիքի տակ էին պահում նրանց։ Այնպես որ Հայաստանի հայկական այդ փոքրիկ պետություններն ու իշխանությունները գտնվում էին գրեթե չիակատար մեկուսացածության մեջ և հնարավորություն չունեին լայն չափերով տարանցիկ առևտրին մասնակցելու։*

## Հյուսիս-արևելյան Հայաստանի տնտեսական զարգացումը XII դարի երկրորդ կեսից մինչև XIII դարի 30—40-ական թվականները

*XII դարի երկրորդ կեսից մինչև XIII դարի 30—40-ական թվականները Վրաստանի օգնությամբ սելջուկ-թուրքերից ազատագրված Հյուսիս-արևելյան Հայաստանի համար հանդիսացան Հայաստանում IX—XI դարերում սկսված տնտեսական արագ զարգացման և ֆեոդալական հարաբերությունների խորացման ժամանակաշրջանի ուղղակի շարունակությունը, որ կարճ ժամանակով ընդհատվել էր սելջուկյան տիրապետության հետևանքով։ Հյուսիս-արևելյան Հայաստանում, որտեղ այսուհետև իրավունքով իշխում էին Զաքարյանները, զարգանում են տնտեսության բոլոր ճյուղերն ու քաղաքային կյանքը։*

Գյուղատնտեսությունը.—*Սելջուկյան էմիրների ծանր լծից ազատագրվելով, Հյուսիս-արևելյան Հայաստանում գյուղատնտեսությունը, միջնադարյան տեմպերի համեմատությամբ, արագ*

կերպով վերականգնվում է և բռնում իր հետագա զարգացման ուղին։

Այս ժամանակաշրջանում երկրագործական գործիքների կատարելագործման գծով որևէ քայլ չի կատարվում, սակայն ավելի լայն տարածում են ստանում եռադաշտային սիստեմը, աղբով պարարտացնելը, քաղհանելը, քարհավաքը։ Ապրանքա-դրամական տնտեսության զարգացման շնորհիվ ֆեոդալական կալվածքը գնալով ավելի ու ավելի էր ներգրավվում առևտրական հարաբերությունների մեջ։ Խոշոր կալվածատերերն ու վանքերն իրենց ստացած եկամուտների մի մասը դուրս էին բերում վաճառքի։ Մեծ տարածում են ստանում աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների տերունի խոշոր տնտեսությունները։ Այդպիսի տնտեսություններ, ինչպես մենք տեսանք, գոյություն ունեին նաև նախորդ ժամանակաշրջանում, սակայն դրանք այն ժամանակ ունեին ավելի համեստ չափեր։ Տերունի խոշոր տնտեսությունների ընդլայնման և զարգացման հետևանքով կոռը հասնում է մեծ չափերի։ Կոռային աշխատանքը սկսում է մասսայաբար գործադրվել։ Խոշոր տնտեսությունները հատկապես լայն տարածում էին գտել այգեգործության և բամբակի ու բրնձի մշակույթների գծով, սակայն բացառված չէին նաև երկրագործական մյուս ճյուղերն ու անասնապահությունը։

Գյուղատնտեսության ճյուղերի աշխարհագրական տեղաբաշխումը մոտավորապես ուներ հետևյալ պատկերը. հացահատիկային կուլտուրաների մշակությամբ հայտնի էին Արարատյան դաշտի մի մասը և Ալաշկերտի (Բագրևանդի) ու Շիրակի դաշտերը, այգեգործությամբ՝ Արարատյան ու Սուրմալուի դաշտերը և Կաղզվանի (Արշարունիք) ու Մեղրու (Արևիք) շրջանները, բամբակի ու բրնձի մշակությամբ՝ Արարատյան դաշտը, անասնապահությամբ՝ Սյունիքը, Գեղամա լճի ավազանը, Տաշիր-Ձորագետը, Վանանդը և Արագածոտնը։

**Քաղաքները, արհեստները ու առևտուրը.**—*Հյուսիս-արևելյան Հայաստանի այս ժամանակաշրջանի համար բնորոշ է քաղաքային կյանքի հետագա զարգացումը, որը ժամանակավորապես ընդհատվել էր սելջուկյան արշավանքների ու կարճատև տիրապետության հետևանքով։ Նրա քաղաքների մեջ առաջնակարգ տեղ էր գրավում Անին։ Մյուս քաղաքները՝ Դվինը, Կարսը, Լոռին, Երևանը, Սուրմարին և այլն, Անիի հետ համեմատած, ունեին ավելի երկրորդական նշանակություն։*

Քաղաքներում զարգանում էր առևտրա-վաշխառուական կա-

պիտալը, որի խոշոր ներկայացուցիչները իրենց ցանցն էին գցում նույնիսկ իշխաններին, պարոններին։ XIII դարի առևտրա-վաշխառուական կապիտալի խոշոր ներկայացուցիչներից էին անեցի Տիգրան Հոնենցը և Ավետենց Սահմադինը, ինչպես և մանազկերտցի Ումեկը։ Սրանք իրենց ձեռքում կենտրոնացրել էին հողային հսկայական տարածություններ և մեծ հարստություններ։

Քաղաքների կառավարիչները (քաղաքապետերը) կոչվում էին ամիրաներ և նշանակվում էին այն ֆեոդալ իշխանի կողմից, որի իշխանության սահմաններում գտնվում էր տվյալ քաղաքը։ Խոշոր քաղաքների՝ Անիի, Դվինի և Կարսի կառավարիչները կոչվում էին «ամիրայից ամիրա»։ Ընդ որում, Անիի կառավարիչները նշանակվում էին Զաքարյանների կողմից, որովհետև այն նրանց աթոռանիստ քաղաքն էր։

Անիում հարուստ վաճառականները կազմակերպել էին քաղաքային ինքնավարություն, որը գլխավորում էր «երիցանին»։ Երիցանին գործում էր ամիրայից ամիրայի նախագահությամբ։

Ապրանքա-փողային հարաբերությունների զարգացման և ներքին շուկայի ընդլայնման շնորհիվ ավելի է խորանում գյուղատնտեսությունից արհեստի բաժանման պրոցեսը։ XII—XIII դարերում արհեստները գերազանցապես զարգանում են քաղաքներում։ Իշխանները, խոշոր հոգևորականները և առևտրա-վաշխառուները քաղաքներում և վանքերում ունեին «գործատներ» (արհեստանոցներ), որտեղ աշխատում էին թե՛ կախյալ և թե՛ ազատ արհեստավորները։

Գյուղատնտեսության հետ սերտ կապված են մնում միայն մի քանի տեսակ արհեստներ՝ դարբնություն, հյուսնություն, մանածագործություն և այլն, մնացած արհեստները անջատվում են գյուղատնտեսությունից ու կենտրոնանում քաղաքներում։ Արհեստների կազմը, նախորդ շրջանի հետ համեմատած, էական փոփոխություններ չի կրում, սակայն գնալով աշխատանքի բաժանումը արհեստի ներսում ավելի է խորանում։ Դրա հիման վրա էլ արհեստագործական գործիքների որոշ տեսակներ կրում են զգալի փոփոխություններ, դրանք համարեցվում են տվյալ արհեստի աշխատանքային պայմաններին։ Հիշատակությունների համաձայն, XIII դարի սկզբին Անիի արհեստների թիվը հասնում էր մոտ 40-ի։ Մյուս քաղաքներում (Դվինում, Կարսում և այլն) նույնպես արհեստները բազմատեսակ էին։ Նախորդ ժամանակաշրջանի նման այս շրջանում ևս Հայաստանի քաղաքային արհեստների մեջ կարևոր տեղ էին գրավում՝ մետաղագործությունը (զինագործությունը, դարբնությունը,

ոսկերչություն, արծաթագործություն), մանածագործություն, կավագործություն, ջարկոփություն, որմնադրություն, հյուսնություն, կաշեգործություն, պայտարություն, թամբագործություն, տակառագործություն, ներկարարություն, սննդի հետ կապված մի շարք արհեստներ և այլն։

Յուրաքանչյուր արհեստագործական արտադրություն հետզհետե համախմբվում է հատուկ արհեստակցական ընկերության մեջ։ Արհեստավորական ընկերություններ կային և նախորդ ժամանակաշրջանում, բայց նրանք այն ժամանակ գտնվում էին դեռ սաղմնային վիճակում և ձևավորված ընկերություններ դարձան միայն XII—XIII դարերում։

Հյուսիս-արևելյան Հայաստանում XII—XIII դարերում զարգանում են ներքին շուկան և ապրանքա-դրամական հարաբերությունները։ Քաղաքներում, վանքերին կից, ճանապարհային կայաններում կային բազմաթիվ խանութներ, որոնք առևտուր էին անում տեղական ապրանքներով։ Արհեստավորների նման առևտրականները ևս ունեին իրենց կազմակերպությունները։

Հյուսիս-արևելյան Հայաստանի XII—XIII դարերի արտաքին առևտուրը, հիմնականում լինելով IX—XI դարերի Հայաստանի արտաքին առևտրի զարգացման մի նոր աստիճանը՝ սելջուկյան տիրապետությունից հետո, իր ուղղությամբ նախորդից զգալի չափով տարբերվում էր։ IX—XI դարերում Հայաստանը առևտուր էր կատարում հիմնականում Սև ծովի հարավային ափերի նավահանգստային քաղաքների, Պարսկաստանի, Միջագետքի, Սիրիայի և հարևան Վրաստանի ու Աղվանքի հետ։ XII—XIII դարերում Միջագետքի, Սիրիայի, Փոքր Ասիայի և Պարսկաստանի հետ կատարվող առևտուրը մղվում է ետին պլանի վրա։ Այդ երկրներում հաստատված սելջուկյան էմիրությունները իրենց հարատև կռիվներով խափանում էին տարանցիկ առևտրի զարգացումը։ Ճանապարհները այդ երկրներում անապահով էին և վտանգավոր։ Մելիքշահ սուլթանի բարեփոխումները, որոնք ուղղված էին նաև տարանցիկ առևտրի զարգացմանը, նրա աշխարհակալ պետության անկմամբ կորցրին իրենց ուժը։ Առաջավոր Ասիայի ամեն մի փոքրիկ էմիրություն կամ այլ ֆեոդալական միավորում ուներ իր ներքին չափն ու կշիռը, մաքսային սահմանները, երբեմն նույնիսկ իր սեփական դրամական միավորները։ Դրանք մեծապես արգելակում էին Սիրիայի, Միջագետքի, Պարսկաստանի, կենտրոնական և Արևմտյան Հայաստանի ու Ատրպատականի վրայով Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող առևտուրը։ Դրանց հետևանքով Անդրկով-

կասի երկրների՝ Վրաստանի, Հյուսիս-արևելյան Հայաստանի և Աղվանքի առևտրա-տնտեսական կապերը տեղափոխվում են ավելի հյուսիս: Առևտրա-տնտեսական սերտ կապեր են ստեղծվում Սև ծովի արևելյան ափերի վրացական նավահանգիստների, Գալիցիայի, Լեհաստանի և ռուսական երկրների հետ:

Հայաստանից ռուսական երկրներ էին արտահանում արհեստավորական զանազան արտադրանքներ, մետաքսե գործվածքներ, գորգեր, ներկեր և այլն: Իսկ ռուսական երկրներից Հայաստան էին ներմուծում թանկագին մորթիներ (հատկապես սամույր) և այլ ապրանքներ:

## 3. ՏԵՂԱՇԱՐԺԵՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ XI ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XIII ԴԱՐԻ 30—40-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

XI—XIII դարերում Հայաստանի բնակչության էթնիկական կազմը ենթարկվում է զգալի փոփոխության: Արևելքից թուրք-սելջուկները զանգվածներով գալիս և հաստատվում են Հայաստանի զանազան մասերում, հատկապես արգավանդ դաշտերում և գետահովիտներում: Նրանք Հայաստանի այդ շրջաններից դուրս են մղում բնիկ բնակիչներին, որոնց մի մասը վերաբնակվում է լեռնային անմատչելի վայրերում՝ հատկապես այնպիսի գավառներում, որտեղ պահպանվել էին հայկական թագավորությունների և իշխանությունների մնացորդները (Տաշիր-Ձորագետի թագավորություն, Սյունիքի թագավորություն, Սասունի իշխանություն, Վերին և Ներքին Խաչենի իշխանություններ, Ամյուկի, Վանի և Աղթամարի իշխանություն և այլն): Հայաստանի դաշտային գավառներից շատերում հայ բնակչության թիվը զգալի չափով նոսրանում է, իսկ լեռնային գավառներում, ընդհակառակը, հայ բնակչության խտությունը ավելի արագ է մեծանում, քան այդ թույլ էին տալիս միջնադարյան տեմպերը:

Սակայն տեղահան արված բնակչության միայն մի մասն է հաստատվում երկրի լեռնային գավառներում, մյուս մասը բռնում է արտագաղթի ուղին: Սելջուկյան տիրապետության շրջանում հայերի արտագաղթն ուներ երկու տարբեր ուղղություն և բնույթ: Դրանցից մեկը սելջուկյան արշավանքների ընթացքում գերեվարվածներն էին, որոնք տարվեցին դեպի արևելք՝ դեպի Խորասանի կողմերը: Իսկ արտագաղթի երկրորդ հոսանքն ուղղված էր դեպի

*Վրաստան։ Այս հոսանքն արդեն առաջացել էր սելջուկյան ծանր տիրապետության հետևանքով, երբ հայերը հարկադրված էին թողնել իրենց հայրենի երկիրը։ Արտագաղթողները Վրաստանում հիմնականում բնակություն էին հաստատում Թբիլիսիում, Գորիի շրջանում և Կախեթիայում։*

*Արտագաղթող հայ բնակչությունը սոցիալական տեսակետից միատարր չէր։ Նա բաղկացած էր երկու հակամարտ խավերից՝ շահագործողներից, որոնց մեջ էին մտնում ֆեոդալներն ու նրանց զինվորները, և շահագործվողներից՝ ճորտական կախում ունեցող գյուղացիներից։*

*XII դարի երկրորդ կեսից, երբ սկսվեց Վրաստանի օգնությամբ Հյուսիս-արևելյան Հայաստանի ազատագրումը սելջուկյան էմիրների լծից, լեռնային շրջաններում ապաստանած բնակիչները նորից վերադառնում և բնակություն են հաստատում իրենց հայրենի դաշտային շրջաններում՝ Արարատյան, Ալաշկերտի, Սուրմալուի և Շիրակի դաշտերում։ Նշված շրջանները, որոնցում սելջուկյան արշավանքների և տիրապետության ժամանակ հայերի թիվը զգալի չափով նվազել էր, նորից դառնում են Հայաստանի ամենախիտ բնակեցված մասերը։*

*Բացի դրանից, Զաքարյանների տիրապետության շրջանում Հայաստանի հարավային նահանգներից, որոնք գտնվում էին սելջուկյան էմիրների լծի տակ, Հյուսիս-արևելյան Հայաստան են գալիս բազմաթիվ հայեր և բնակություն են հաստատում նրա տարբեր շրջաններում։*

*Պետք է նշել, որ չնայած XI—XIII դարերում հայերի արտագաղթը բուն Հայաստանից ընդգրկում էր բավականաչափ մեծ զանգվածներ, և դրա հետ միասին Հայաստան էին մուտք գործել թուրք-սելջուկները և բնակություն հաստատել բազմաթիվ շրջաններում, այնուամենայնիվ, Հայաստանում բնակչության ճնշող մեծամասնությունը առաջվա պես կազմում էին հայերը։ Սելջուկները կոմպակտ զանգված էին կազմում միայն Հայկական Տավրոսից հարավ ընկած որոշ շրջաններում՝ նախկին Աղձնիքում և Չորրորդ Հայքի մի մասում, իսկ քրդերը, որ Կորդվաց աշխարհի կողմից ավելի վաղ էին մտել Հայկական լեռնաշխարհ, մեծամասնություն էին կազմում միայն Վանա լճից հարավ-արևելք ընկած մի քանի լեռնային փոքրիկ շրջաններում։ Բռնի ուժով հայերին տեղափոխելու և մասամբ հարկադրական արտագաղթի հետևանքով XI—XIII դարերում Եփրատից արևմուտք գտնվող հնուց ի վեր հայաբնակ մարզերից բացի, հայերը մեծամասնություն էին կազմում նաև Կապա-*

դովկիայի, Կիլիկիայի և այլ երկրների բազմաթիվ շրջաններում։ Այդ երկրներում, ինչպես տեսանք, առաջացել էին հայկական ֆեոդալական մի շարք իշխանություններ, որոնց մեծ մասը սելջուկթուրքերի դեմ մղած պայքարում վերացավ պատմական ասպարեզից, ոմանք էլ, ավելի փոքր սահմաններով, մի կերպ պահպանեցին իրենց գոյությունը։ Դրանց մեջ ամենից կենսունակը Կիլիկիայում կազմված Ռուբինյան իշխանությունն էր, որը սելջուկյան տիրապետության շրջանում ոչ միայն պահպանեց իր գոյությունը, այլև հետզհետե հզորանալով և ծավալվելով դարձավ ֆեոդալական բավական ուժեղ պետություն։

## ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՏՄԱ-ԱՇԽԱՀԱԳՐԱԿԱՆ ԱՌՈՒՄՈՎ

(Համառոտ ակնարկ)

### 1. ԿԻԼԻԿԻԱՅԻ ԲՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

#### Անունը, դիրքը, սահմանները և ռելիեֆը

*Կիլիկիայի մասին տեղեկությունները սկսվում են հնագույն ժամանակներից։ Կիլիկիայի անունն առաջին անգամ հանդիպում ենք Ասորեստանի Սալմանասար III թագավորի արձանագրության մեջ, որը 834 թ. (մ. թ. ա.) նվաճել է այդ երկիրը։*

*Միջնադարյան լատինական պատմագիրները Կիլիկիան հաճախ շփոթել են Փոքր Հայքի հետ կամ երբեմն կոչել Հայաստան։*

*Կիլիկիայի հայկական պետության ժամանակաշրջանի հայկական աղբյուրներում Կիլիկիան կոչված է «Տունն Կիլիկիոյ» կամ «Աշխարհն Կիլիկիոյ»։ Արաբ մատենագիրներն ու աշխարհագետները գրեթե ամենուրեք գլխավոր քաղաքի՝ Սիսի անունով ամբողջ երկիրը կոչել են «Սիսի երկիր»։ XII դարի կաթողիկոս Գրիգոր Տղան (1173—1193) Կիլիկիան նրա մայրաքաղաք Սիսի անունով կոչել է Սիսվան։*

*Իրարից պետք է տարբերել Կիլիկիան իբրև սոսկ ֆիզիկա-աշխարհագրական միավոր և Կիլիկիայի հայկական պետությունը։ Տերիտորիալ տեսակետից դրանք գրեթե ոչ մի շրջանում լիովին չեն համընկել իրար հետ։ Կիլիկիայի հայկական պետությունը, բացի բուն Կիլիկիայից, հաճախ իր մեջ էր ընդգրկում նաև հարևան մի*

---

1 Ղ. Ալիշան, *Սիսուան, Վենետիկ, 1885, էջ 1։*

շարք շրջաններ, որոնք ֆիզիկա-աշխարհագրական տեսակետից չեն կազմում Կիլիկիայի մասերը. երբեմն էլ Հայկական պետությունը իր մեջ ամփոփել Կիլիկիայի միայն մի մասը։

Կիլիկիան ընկած է Փոքր Ասիայի հարավ-արևելյան անկյունում։ Նա գտնվում է հյուսիսային լայնության 36°—38° և արևելյան երկայնության 32°—37° միջև։ Իր բնական պայմաններով նա ֆիզիկա-աշխարհագրական մի ուրույն շրջան է։ Նրա բնական սահմաններն են, հարավում՝ Միջերկրական ծովը, որը Տարսոն քաղաքի դիմաց և ծայր արևելքում առաջացրել է ծոցեր։ Վերջինս հնագույն ժամանակներում կոչվում էր Իսսոսի ծոց, Կիլիկիայի հայկական պետության ժամանակաշրջանում կոչվեց Հայոց ծոց (կամ ծով), իսկ այժմ կոչվում է Ալեքսանդրետի ծոց։ Արևելքում Կիլիկիայի սահմանը կազմում է Ամանոսի լեռնաշղթան, որը, ձգվելով հյուսիսարևելքից հարավ-արևմուտք, պարսպում է Հայոց ծոցի արևելյան ափերը և վերջանում Ռաս-էլ-Խանձիր կամ Ռասխանձիր (արաբերեն՝ «խոզի գլուխ») հրվանդանով (հնում՝ Հռոսիկյան հրվանդան)։ Հյուսիսից և արևմուտքից Կիլիկիան սահմանագծված է Տավրոսի լեռների աղեղնաձև գոտով, որը հարավ-արևմուտքում վերջանում է Միջերկրական ծովի ափին Անեմուրի հրվանդանով։ Վերջինս Կիլիկիայի, ինչպես և ամբողջ Փոքր Ասիայի, ամենահարավային կետն է։ Նշված սահմանների մեջ ամփոփված տերիտորիայից բացի, ֆիզիկա-աշխարհագրական տեսակետից Կիլիկիայի մասերն են կազմում նաև մի շարք կղզիներ, որոնք գտնվում են նրա դիմաց՝ Միջերկրական ծովում։ Այդ կղզիներից են՝ Արադոսը, որը գտնվում է Հայոց ծոցում, Կոռիկոսը, Դանան և այլ մանր կղզիներ։ Նրա տերիտորիան, չհաշված մանր կղզիները, հասնում է մոտ 30—32 հազար քառակուսի կիլոմետրի։

Ֆիզիկա-աշխարհագրական առումով Կիլիկիան բաժանվում է տարբեր ծագում և բնական զանազանակերպ պայմաններ ունեցող հինգ շրջանների. դրանք են՝ Ապառաժային (կամ Քարքարոտ) Կիլիկիա՝ երկրի արևմտյան մասում, Կիլիկյան Տավրոս, որ ձգվում է արևմուտքից արևելք ուղղությամբ, Անտիտավրոսի հարավային լեռնաճյուղերի շրջան, Ամանոսի լեռներ (արևելյան մասում) և Կիլիկիայի դաշտավայր[1]։

Վաղ ժամանակներում Կիլիկիան այդպիսի բաժանումների չեն ենթարկել։ Հնուց ի վեր այդ երկիրը բաժանել են երկու շրջանի՝ Լեռնային Կիլիկիայի և Դաշտային Կիլիկիայի։

Կիլիկիայի հյուսիսային և արևմտյան կողմով ձգվում է Կիլիկ-

---

[1] Տե՛ս *П. М. Жуковский*, Земледельческая Турция, М.—Л., 1933, էջ 11։

յան Տավրոս լեռնաշղթան, որը Տավրոսյան լեռնախտանմի կենտրոնական հատվածն է. նրանից արևմուտք գտնվում է Անատոլիական Տավրոսը, իսկ արևելք՝ Հայկական Տավրոսը։ Կիլիկյան Տավրոսի առանձին գագաթները հասնում են մինչև 3500 մետր բարձրության։ Նրա հարավ ուղղված լանջերի թեքությունը խիստ է, իսկ հյուսիսհայաց լանջերն ունեն մեղմ թեքություն և աննկատելի կերպով միախառնվում են Անատոլիական բարձրավանդակի հարթություններ հետ։ Կիլիկյան Տավրոսի շրջանում հաճախակի տեղի են ունենում երկրաշարժեր։ Հիշատակությունների համաձայն, 1269 թ. տեղի ունեցած երկրաշարժի հետևանքով ավերվել են մեծ թվով բնակավայրեր և զոհվել բազմաթիվ բնակիչներ։

Հյուսիս-արևելյան կողմից Կիլիկիային են մոտենում Անտիտավրոսյան լեռների հարավային լեռնաճյուղերը, որոնք միահյուսվելով իրար հետ առաջացնում են մի փոքրիկ լեռնային շրջան։ Սակայն այդ լեռնաճյուղերը, ընդհանուր առմամբ, շրջապատի նկատմամբ մեծ բարձրություն չունեն։

Ամանոսի լեռնաշղթան, որ ձգվում է հյուսիսից հարավ, Կիլիկիան բաժանում է Սիրիայից (Ասորիքից)։ Այսպիսով, Կիլիկյան Տավրոսը, Անտիտավրոսի հարավային լեռնաճյուղերը և Ամանոսի լեռները՝ արևմուտքից, հյուսիսից, հյուսիս-արևելքից և արևելքից պատնեշում են Կիլիկիան հարևան երկրներից։ Ցամաքի կողմից Կիլիկիա կարելի էր մտնել միայն նշված լեռնաշղթաների վրա գտնվող լեռնանցքներով, որոնք պաշտպանված էին ամուր բերդերով։ Կիլիկյան Տավրոսի վրա գտնվող ամենահարմար լեռնանցքը, որով անցնում էր ճանապարհը Կապադովկիայից դեպի Կիլիկիայի կենտրոնական մաս, դա Կիլիկիայի կամ Տավրոսի դուռ կոչված լեռնանցքն է, որը XI—XIV դարերում հայկական աղբյուրներում հայտնի էր «Գուզլկայ կապան» անունով, իսկ այժմ թուրքերը կոչում են Գյուլեք-բողազ։ Աքեմենյանների տիրապետության շրջանում այստեղով էր անցնում «Արքայական ճանապարհը», որը նրանց մայրաքաղաք Սուզան միացնում էր Միջերկրական ծովի հետ։ Կիլիկիայի դուռ լեռնանցքը նկարագրված է Քսենոֆոնի «Անաբասիս» աշխատության մեջ։ Ալեքսանդր Մակեդոնացին այդ լեռնանցքով է անցել իր արշավանքի ժամանակ։ Նրա դերը մեծ էր նաև հռոմեական տիրապետության շրջանում։ XIII—XIV դարերում Կիլիկիայի դռնով էր անցնում առևտրի այն կարևոր ճանապարհը, որը կտրելով Կիլիկիան դուրս էր գալիս Փոքր Ասիայի արևելյան մասը, այստեղ նա բաժանվում էր երկու ճյուղի, որոնցից մեկը գնում էր դեպի Սև ծովի հարավային ափերի նավահանգիստները, իսկ մյուսը՝ կտրելով Հա-

յաստանն ու Ատրպատականը, հասնում էր Պարսից ծոցը։ Դրանից բացի խոշոր նշանակություն ուներ նաև Տարսոն—Կոստանդնուպոլիս ուղիղ ճանապարհը, որը ևս անցնում էր Կիլիկյան դռնով։ Ընդ որում, վերջին ճանապարհի Տարսոն-Կիլիկյան դուռ հատվածը համընկնում էր դեպի Սև ծովի ափերն ու արևելյան երկրները գնացող գլխավոր ճանապարհին։

Կիլիկյան դռներից բացի՝ Կիլիկյան Տավրոսի վրա գտնվում են նաև երկու այլ նշանավոր լեռնանցքներ, որոնցից մեկը լեռնաշղթայի արևմտյան կողմում է, իսկ մյուսը՝ արևելյան մասում։ Դրանցից առաջինով հաղորդակցություն էր պահպանվում Իկոնիայի սուլթանության հետ, իսկ երկրորդով անցնում էր Այաս-Մելիտինե ճանապարհը։

Երեք նշանավոր լեռնանցքներ կան նաև Կիլիկիայի ու Սիրիայի սահմանագլխին ձգվող Ամանոս լեռնաշղթայի վրա։ Դրանցից մեկը կոչվում էր Ամանոսի լեռնանցք (արաբներն անվանում էին Դերբենդ-էլ-Մառի) և գտնվում է Ամանոսի լեռների արևելյան մասում, երկրորդը կոչվում էր Դեմիր-գափի («Երկաթե դուռ»)՝ Ալեքսանդրետի ծոցից հյուսիս-արևմուտք, իսկ երրորդը կոչվում էր «Դուռն Ասորւոց»՝ Ալեքսանդրետից 30 կիլոմետր հեռավորության վրա[1]։ Ասորաց դռնով էր անցնում Սիրիայից, Միջագետքից և Եգիպտոսից Կիլիկիա եկող առևտրական ճանապարհը, որը Կիլիկիան ու Փոքր Ասիան կտրելով, հասնում է Էգեյան և Սև ծովերի ափերը։

Կիլիկիայի դաշտավայրը, որը ծովի մակերևույթից ընդամենն ունի 150—200 մետր բարձրություն, գրավում է մի եռանկյունաձև տարածություն։ Այն փռված է Կիլիկիայի երկու ամենանշանավոր գետերի՝ Ջահանի և Սարոսի ստորին հոսանքների շրջանում։ Կիլիկիայի դաշտավայրը աշխարհի ամենաարգավանդ անկյուններից մեկն է, հնում նա հայտնի է եղել իր բազմատեսակ մշակույթներով՝ ցիտրուսներով, բամբակով, բրնձով, խաղողով և այլ թանկարժեք կուլտուրաներով։

Կիլիկիայի դաշտավայրը թուրքերն անվանում են Չուխուր-Օվա։ Նա բաց է միայն ծովի կողմից։ Նրա ռելիեֆը ներկայացնում է միապաղաղ հարթություն, բացի մի քանի բլուրներից, որոնք բարձրանում են Հայոց ծովի մոտ և Ամանոս լեռնաշղթայից արևմուտք։

---

[1] *Տե՛ս Г. Г. Микаелян,* История Киликийского армянского государства, Ереван, 1952, *էջ* 11—14։

## Գետերը և կլիմայական պայմանները

Կիլիկիայի բոլոր գետերը սկսվում են Նրա շրջակայքի լեռներից և հոսում հարավ՝ դեպի Միջերկրական ծովը։ Նրա գետերից նշանավոր են չորսը՝ Պիրամոսը, Սարոսը, Կալիկադնոսը և պատմական Կիդնոսը։

**Պիրամոսը**, որ այժմ կոչվում է **Ջիհուն** կամ **Ջիհան**, համապատասխանում է մեր մատենագիրների կողմից հաճախ հիշատակվող Ջահանին։ Նա Կիլիկիայի ամենաջրառատ գետն է, որ հոսում է երկրի արևելյան մասով։ Ջահան գետը կազմվում է երեք վտակներից։ Նրանցից մեկը կոչվում է Խուրմա-սու (սկիզբ է առնում Բինբողադաղից), երկրորդը կոչվում է Գեոք-սու կամ Կոկսուն, իսկ երրորդը՝ Սուդյութլա-սու (սկսվում է Եփրատի ջրբաժան Գյումուշդաղ կոչվող լեռներից)։ Ջահանը ձորերի և նեղ կիրճերի միջով հոսում է դեպի հարավ, իր մեջ ընդունելով մի շարք վտակներ (Զեյթունի գետը, Աղ-սուն և այլն)։ Մտնելով Դաշտային Կիլիկիա՝ նրա ընթացքը դանդաղում է. այստեղ աջ կողմից նա իր մեջ է ընդունում Կապան և Սիս գետակները։ Ստորին հոսանքի շրջանում Ջահանը թեքվում է դեպի արևելք և, շատ չանցած, թափվում Հայոց ծոցը։ Հնում Ջահանը ծովի մեջ էր թափվում նրա այժմյան գետաբերանից մոտ 45 կիլոմետր արևմուտք։ Նա եղել է նավարկելի գետ, ծովային նավերը գետի ընթացքով հասել են մինչև Մամեստիա քաղաքը։ Սակայն այժմ Ջահանը դարձել է ոչ նավարկելի։

Կիլիկիայի՝ ջրառատությամբ երկրորդ, բայց երկարությամբ առաջին գետը **Սարոսն** է, որն այժմ կոչվում է Սիհուն կամ Սեյհան։ Սա հոսում է գրեթե Ջահանին զուգահեռ և ծով է թափվում նրանից արևմուտք։ Սարոսը կազմվում է երկու վտակից, որոնք երկար տարածության վրա հոսում են զուգահեռ։ Այդ վտակներից արևմտյանը կոչվում է Սամանդի կամ Ջամանդի և համապատասխանում է պատմական Ծամնդավին, իսկ արևելյանը կոչվում է Սառան-սու։ Երկուսն էլ հոսում են նեղ ու խոր ձորերով՝ մեծ աղմուկով ու արագ հոսքով։ Դրանցից կազմված Սարոսը հոսում է գրեթե միշտ դեպի հարավ՝ իր մեջ ձախ ու աջ կողմերից ընդունելով ջրառատ մի քանի վտակներ։ Ատանա (Ադանա) քաղաքի մոտ նա թեքվում է հարավ-արևմուտք և, անցնելով մոտ 47 կիլոմետր, Տարսոնից հարավ թափվում է ծով։ Հին ժամանակներում նրա գետաբերանն ավելի արևելք էր գտնվում։ Նրա ստորին հոսանքը հին և միջին դարերում նավարկելի է եղել։

Կիլիկիայի երրորդ նշանավոր գետը, որի գետաբերանը գտ-

հոսում է Սարոսի գետաբերանից մի փոքր արևմուտք, Կիդնոսն է։ Այն այժմ կոչվում է Տարսուս-չայ։ Սա կազմվում է երեք վտակների միախառնվելուց և սկզբում կոչվում է Մեզարլըղ, իսկ մտնելով դաշտավայր՝ Տարսոնի անունով՝ Տարսուս-չայ։ Տարսոն քաղաքի մոտ նա թեքվում է դեպի արևմուտք և մոտ 23 կիլոմետր հոսելուց հետո թափվում է ծով։

Հնում ծովը ավելի մոտ էր Տարսոնին, քան այժմ. Տարսոնն ուներ մեծ նավահանգիստ, ուր խարիսխ էին գցում բեռնավորված խոշոր նավեր։ Սակայն այժմ գետն իր բերած տիղմով ծածկել է գետաբերանի շրջանը և նախկին նավամատույցները, ծովը նահանջել է, և Տարսոնը զրկվել է նավահանգիստ ունենալու հարմարությունից[1]։

Կիլիկիայի չորրորդ մեծ գետը Կալիկադնոսն է, որն այժմ կոչվում է Գեոք-սու կամ Սելեֆ-սու։ Սա իր ջրառատությամբ Կիլիկիայի գետերի մեջ բռնում է երրորդ տեղը։ Սկիզբ է առնում Կիլիկյան Տավրոսի ծայր արևմտյան մասի լանջերից։ Ծով է թափվում Սելևկիա քաղաքի մոտ, գետաբերանում նրա լայնությունը հասնում է 60—70 մետրի։

Կիլիկիայում կան նաև բազմաթիվ այլ մանր գետակներ, որոնք նշված գետերի հետ միասին ոռոգում են երկրի հողերը։

Կլիմայական պայմանների տեսակետից Դաշտային Կիլիկիան ներկայացնում է Լեռնային Կիլիկիայի հակապատկերը։ Այստեղ ձմեռ չի լինում, օդի ջերմությունը ձմռան ամիսներին իջնում է մինչև 0 աստիճան։ Երկրի այս մասում ձյունն անծանոթ է, եղած դեպքում էլ միայն մի քանի օր է մնում գետնի երեսին։ Փետրվարին արդեն ամբողջ դաշտավայրը պատում է կանաչով և գույնզգույն ծաղիկներով։ Կիլիկիայի դաշտավայրում, հատկապես ծովափնյա շրջաններում, լինում են անտանելի շոգեր, անձրևներ համարյա չեն լինում, դաշտի չոռոգվող մասերը վեր են ածվում արևից խանձված անհրապույր և միապաղաղ տարածությունների։ Տարվա այս շրջանում դաշտավայրում ցերեկով անհնար էր դառնում ճանապարհորդությունը։ Տոթը սաստկանում է մանավանդ Սիրիական անապատից և Միջերկրական ծովի վրայով Աֆրիկայից փչող չոր ու տաք քամիների հետևանքով։ Ամառը Դաշտային Կիլիկիայի օդը զովանում է միայն այն դեպքում, երբ շրջապատող լեռնային շրջաններից փչում է լեռնահովտային քամի։ Դաշտային Կիլիկիայի կլի-

[1] Տե՛ս «Կիլիկիա» (Հրատարակություն «Արաքս» հանդեսի), Պետերբուրգ, 1894, էջ 29—30։

ման վատառողջ է համարվել հին ժամանակներից ի վեր։ Այստեղ, ծովի ափերին և գետերի հովիտներում տարածված են ընդարձակ ճահիճներ, որոնց հետևանքով տենդը սովորական երևույթ է, մանավանդ ամռանը՝ մինչև հոկտեմբեր ամիսը ներառյալ։

Դաշտեցի ունևոր կիլիկեցիները ամռանը տենդից խուսափելու համար բարձրանում են հյուսիսային սահմանում գտնվող լեռնային շրջանները։ Ցայլա գնալու այդ սովորությունը գոյություն ուներ հին ու միջին դարերում։

Միանգամայն այլ կլիմայական պայմաններ ունի Լեռնային Կիլիկիան։ Երկրի լեռնային շրջանները հայտնի են իրենց փարթամ անտառներով, արոտավայրերով և առողջարար ու լեռնային ջինջ օդով։ Լեռնային շրջանների ցածրադիր գոտում ձմեռը տևում է 4—5, իսկ բարձրադիր գոտիներում՝ 6—7 ամիս։ Լեռներում առաջին ծաղիկները բացվում են միայն ապրիլին։ Ձմռանը լինում են ուժեղ ցրտեր, գիշերվա ջերմությունը երբեմն իջնում է մինչև—24°—26°։ Լեռնային շրջանները թաղվում են ձյան հաստ շերտի տակ։ Ձնհալի ժամանակ Կիլիկիայի գետերը վարարելով հաճախ դուրս են գալիս իրենց ափերից և ողողում մերձակա ցածրադիր շրջանները, երբեմն էլ միանգամից փոխում են իրենց հին հունը և հոսում նոր հունով։

Երկրագործության զարգացման տեսակետից Դաշտային Կիլիկիայի պայմանները, Լեռնային Կիլիկիայի պայմանների հետ համեմատած, շատ ավելի բարենպաստ են։ Այստեղ մի շարք մշակույթների գծով տարվա մեջ կարելի է երկու բերք ստանալ։

## Բուսական և կենդանական աշխարհը

Կլիմայական պայմաններին համապատասխան՝ Կիլիկիայի բուսական աշխարհն էլ բաժանված է բուսական երկու շրջանների՝ Դաշտային Կիլիկիայի և Լեռնային Կիլիկիայի։ Դաշտային Կիլիկիայում տարածված են միջերկրածովյան երկրների բուսականության տիպի չորասեր բույսեր։ Այստեղ մեծ տարածում ունեն ճահճաբույսերը՝ մանավանդ Միջերկրական ծովի առափնյա շրջաններում և գետերի հովիտներում։ Վաղ գարնանը՝ փետրվար և մարտ ամիսներին, Դաշտային Կիլիկիան ծածկվում է փարթամ կանաչով և գույնզգույն ծաղիկներով, բայց ապրիլի կեսերից վրա հասնող շոգ ու չոր եղանակների պատճառով դրանք արագ կերպով չորանում են և դաշտավայրը վեր ածում անհրապույր տարածության։

Դաշտային Կիլիկիայով հոսող գետերից հին ու միջին դարերում հանել են մի շարք ջրանցքներ, որոնք ոռոգել են ամբողջ դաշտավայրը, այն դարձնելով աշխարհի ամենաբերրի շրջաններից մեկը։ Ոռոգումից բացի այդ գետերը հսկայական քանակությամբ տիղմ են բերում և նստեցնում դաշտավայրում՝ պարարտացնելով և թարմացնելով նրա հողը։ Դաշտային Կիլիկիան հայտնի է եղել բամբակով (որը իր որակով չի զիջել աշխարհի որևէ երկրի բամբակին), խաղողով, բրնձով, քնջութով, ձիթապտղով, արմավով, թզով և այլն։ Հացահատիկային կուլտուրաներից տարածված են եղել ցորենը, գարին, կորեկը, հաճարը։ Դրանցից մի քանիսը՝ ձիթենին, արմավը և թզենին, այժմ երկիրն անմշակ և անխնամ թողնելու հետևանքով, գրեթե բոլորովին բացակայում են, միայն տեղ-տեղ հանդիպում են դրանց վայրի տեսակները, որպես հնում լավ մշակված պուրակների մնացորդներ։

Լեռնային Կիլիկիայի բուսականությունը կազմում է երեք գոտի՝ անտառատափաստանային, անտառային և ալպյան։ Անտառատափաստաններում ամենատարածված վայրի խոտերից են այլախոտերը, փետրախոտերը և հացազգիները։ Այս գոտին հայտնի է իր հացահատիկային մշակույթներով և մրգատու այգիներով, սակայն, ընդհանուր առմամբ, փոքր տարածություն է գրավում և ամբողջ երկրի համար բնորոշ չէ։ Լայն տարածություն ունի անտառային գոտին. նա բռնում է Լեռնային Կիլիկիայի մեծ մասը։ Կիլիկիայի անտառների զարդը համարվող գլխավոր ծառատեսակը մայրին է, որն իր հատկություններով մրցում է Լիբանանի նույնատեսակ ծառերի հետ։ Մայրին Կիլիկիայում ունի մեծ տարածում. այն նավաշինության համար համարվել է ամենաընտիր փայտանյութը, որովհետև թեթև է և, խեժոտ լինելու շնորհիվ ջուր չի ներծծում. Նրա արտադրած խեժով ծեփել են նավերի ճեղքերն ու ամբողջ մարմինը։ Կիլիկիայի անտառներում տարածված մյուս ծառատեսակներից են՝ եղևնիները, սոճիները, սոսիները, կաղնիները և գիհիները։ Անտառային գոտում մշակովի կուլտուրաներից տարածված են եղել գլխավորապես տարեկանը, գարնան ցորենը, գարին, կորեկը։

Անտառային գոտուց վեր տարածվում է ալպյան բուսականությունը, որը, սակայն, չի կազմում համատարած գոտի, այլ հանդես է գալիս միայն բարձր լեռնային շրջաններում՝ առանձին կղզիների ձևով։ Այստեղ տարածված են ալպյան տիպի հյութալի խոտատեսակներ, որոնք կազմում են համատարած թավշյա ծածկոց։ Դաշտավայրի և լեռնային ու ալպյան գոտիների մերձավորությունը

հարմար պայմաններ է ստեղծել կիսաքոչվորական անասնապահության զարգացման համար։

Կիլիկիայի կենդանական աշխարհը բազմազան է։ Վայրի կենդանիներից ամենուրեք տարածված են գայլը, շնագայլը կամ չակալը, վայրի կատուն, սալամը, կաքավը, լորը։ Դաշտային Կիլիկիայում տարածված են վիթը, բորենին կամ մարդագայլը, ընձառյուծը, ճահճուտներում՝ վարազը[1]։ Լեռնային Կիլիկիայում կան հովազներ, եղնիկներ, եղջերուի մի քանի տեսակներ, վայրի ոչխարներ, այծեր և այլն։ Այնպես որ Կիլիկիան որսի կենդանիների առատությամբ միջին դարերի հռչակված երկրներից մեկն է եղել։ Մարկո Պոլոյի մի հիշատակությունից երևում է, որ այստեղ որսորդությունը տարածված զբաղմունքներից մեկն էր[2]։

Կիլիկիայի ընտանի կենդանիներից են՝ եզն ու կովը, գոմեշը, ձին, ջորին, էշը, ուղտը, ոչխարը, այծը, զանազան տեսակի թռչուններ (բադ, սագ, հավ) և այլն։

## Բնական հարստությունները

Կիլիկիայի ընդերքում կան բազմատեսակ հարստություններ, որոնց մեծ մասը հայտնի էր նաև հին և միջին դարերում։ Թուրքական դարավոր տիրապետության շրջանում երկրաբանական առումով երկիրը համարյա չի ուսումնասիրվել և նոր հանքավայրեր ու հանքատեսակներ գրեթե չեն հայտնաբերվել, որոնք անծանոթ լինեին նրա հին բնակիչներին։

Հանքային հարստություններով աչքի է ընկնում միայն Լեռնային Կիլիկիան։ Այստեղ կան երկաթի, պղնձի, կապարի, արծաթի, ծծմբի, արջասպի, բորակի, աղի, սև ձյութի և այլ տեսակի հանքեր։ Կիլիկիան առանձնապես աչքի է ընկել կապարի հարուստ հանքերով, որ արդյունահանվել և վերամշակման է ենթարկվել հնագույն ժամանակներից։ Կիլիկիան առաջին երկրներից մեկն է երկաթի գործածությամբ։ Առաջավոր Ասիայի մի քանի երկրների նման Կիլիկիայում ևս երկաթը կենցաղի մեջ է մտել հնագույն ժամանակներից։ Դաշտային Կիլիկիան հարուստ է ավազով և կավով, իսկ Լեռնայինը՝ կրաքարերով (կրաքարի ընտիր տեսակները գտնվում են հատկապես Բուլղար-դաղ լեռների շրջանում)։

Կիլիկիայում կան մի շարք հանքային տաք աղբյուրներ, որոնք

---

[1] *Տե՛ս* Ալիշան, *Սիսուան, էջ 9։*

[2] *Տե՛ս Марко Поло,* Путешествия, Ленинград, 1941, *էջ* 17։

*ունեն բուժիչ հատկություններ։ Դրանցից նշանավոր են հատկապես Բուլղար-դաղ լեռների ստորոտում գտնվող հորդաբուխ Իլիջա ջերմուկը և Ջեյթունի ս. Կարապետ վանքի մոտ գտնվող ջերմուկը։ Երկու ջերմուկներն էլ հայտնի են եղել հնից, և բուժվելու նպատակով տեղացիները օգտվել են դրանցից։*

*Ինչպես տեսնում ենք, Կիլիկիան աչքի է ընկնում իր անտառներով, արգավանդ հողերով, երկրագործական զանազան զբաղմունքների համար կլիմայական նպաստավոր պայմաններով, մետաղային և ոչ մետաղային բազմատեսակ հանքերով, հանքային ջրերով, նավարկելի գետերով (դրանք այժմ նավարկելի չեն), զանազան տեսակի շինանյութերով։ Նա հսկայական տարածությամբ շփվում է Միջերկրական ծովին, իսկ լեռնանցքներով անցնող ճանապարհներով կապվում է հարևան և հեռավոր երկրների հետ։ Կիլիկիան իր աշխարհագրական դիրքով եղել է Արևելքն Արևմուտքի հետ կապող կարևորագույն օղակներից մեկը։ Կիլիկիայի ընդերքի հարստությունները, հողա-կլիմայական նպաստավոր պայմանները և աշխարհագրական դիրքի հարմարությունը դրական մեծ ազդեցություն են թողել նրա տնտեսության զարգացման վրա։*

## Կիլիկիայի հայկական պետության բնակչությունը

*Կիլիկիայի հայկական պետությունն ուներ էթնիկական խառը կազմ։ Նրա բնակչությունը կազմված էր հայերից, ասորիներից, հույներից։ Այստեղ ապրում էին նաև ոչ մեծ թվով հրեաներ, արաբներ և սելջուկներ։*

*XIII դարի սկզբից Կիլիկիայի հայկական պետության խոշոր քաղաքներում բնակություն են հաստատում վենետիկցի, ճենովացի և մասամբ Ֆլորենցիայի արհեստավորներ ու վաճառականներ*[1]։

*Կիլիկիայում հայեր կային տակավին հնագույն ժամանակներում, սակայն նրանք մինչև X—XI դարերը կազմում էին միայն չնչին փոքրամասնություն։ Կիլիկիայի հայ բնակչության թիվը արագ կերպով աճում է XI դարի սկզբից։ Արհեստական այդ աճը ավելի մեծ չափերի է հասնում XI դարի վերջերին և XII դարի սկզբներին, երբ անկում են ապրում Միջագետքի ու Փոքր Ասիայի*

[1] *Տե՛ս Г. Г. Микаелян,* История Киликийского армянского государства, էջ 16—17։

հայկական իշխանությունները, և սելջուկների ճնշման տակ հայ բնակչության մեծ մասը ապաստան է գտնում Կիլիկիայի հայկական իշխանության մեջ։ Հետագայում, մոնղոլների արշավանքների հետևանքով, Կիլիկիա են գալիս մեծ թվով հայեր նաև բուն Հայաստանից (Մեծ Հայքից)։ Քաղաքային հայ բնակչությունը զբաղվել է արհեստներով և առևտրով, իսկ գյուղական բնակչությունը հողագործությամբ, այգեգործությամբ, անասնապահությամբ և մասամբ որսորդությամբ։ Ֆեոդալների դասակարգը գրեթե բացառապես կազմված էր միայն հայերից։

Հայերը կազմում էին երկրի բնակչության ճնշող մեծամասնությունը։ Հույներն ու ասորիները զբաղվում էին հողագործությամբ, այգեգործությամբ, արհեստագործությամբ և առևտրով։ Հրեաների, արաբների և իտալացիների թիվը մեծ չէր։ Նրանք ապրում էին գլխավորապես քաղաքներում և զբաղվում էին առևտրով ու արհեստներով։

Կիլիկիայի հայկական պետության բնակչության թվի վերաբերյալ արժանահավատ աղբյուրներ չկան։ Ենթադրվում է, որ XIII դարում, երբ Հայկական պետության տերիտորիան հասել էր իր առավելագույն չափերին (40 000 քառ. կմ-ի), նրա բնակչության ընդհանուր թիվը կազմում էր մոտ մեկ միլիոն մարդ։

Հայերը բուն Կիլիկիայում և նրա հարակից մի քանի շրջաններում շարունակում էին բնակչության մեծամասնությունը կազմել նաև հետագա դարերում՝ ընդհուպ մինչև XIX դարը ներառյալ։ Վիճակագրական տվյալների համաձայն, XX դարի սկզբին բուն Կիլիկիան և նրա հարակից մի քանի շրջաններն ընդգրկող հինգ սանջակների բնակչության ընդհանուր թիվը հասել է մոտ 850 000 մարդու, որից ավելի քան 400 000 կազմել են հայերը։

Սակայն համաշխարհային պատերազմի ընթացքում և դրանից հետո թուրքական կառավարողները Կիլիկիայում ոչնչացրին բազմահազար հայերի, բնակչության մի խոշոր մասն էլ բռնեց արտագաղթի ուղին։

## 2. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ[1]

Կիլիկիայի պատմական անցյալը սերտ կերպով կապված է եղել Առաջավոր Ասիայի մյուս երկրների պատմության հետ։ Նրա

[1] Պատմական գրականության մեջ Կիլիկիայի հայկական պետությունը երբեմն կոչվում է նաև «Հայկական Կիլիկիա», իսկ երբեմն էլ՝ «Կիլիկիայի թագավորու-

մասին տեղեկություններ են հաղորդվում հնագույն ժամանակներից՝ խեթական, ասորեստանյան, բաբելական և եգիպտական արձանագրություններում։ Առաջին դարում (մ. թ. ա.) նա ընկնում է Հռոմեական կայսրության տիրապետության տակ, կարճ ժամանակով նրա դաշտային մասը Տիգրան Բ-ի (95—56) կողմից միացվում է Մեծ Հայքին, բայց 65 թ. պայմանագրով, որ կնքվել էր Տիգրան Բ-ի և Պոմպեոսի միջև, նորից անցավ Հռոմին, ապա նրա բաժանումից հետո՝ մնաց Բյուզանդական կայսրության տիրապետության տակ՝ մինչև 1076 թ., միայն VIII—IX դարերում այն ժամանակավորապես նվաճվեց Արաբական խալիֆայության կողմից։ Մելիք-շահի ժամանակ (1072—1092) Դաշտային Կիլիկիան ամբողջապես գրավեցին սելջուկները։

Մանազկերտի ճակատամարտից հետո (1071 թ.) բուն Հայաստանից դուրս կազմված հայկական իշխանությունների մեջ ամենից լայնածավալն ու հզորը Փիլարտոս Վարաժնունու իշխանությունն էր։ Նրա տերիտորիայի մի մասը գրավեցին սելջուկները, իսկ մյուս մասը մնաց հայ իշխանների ձեռքին։ Հայկական այդ իշխանությունները առանձին «կղզիներ» էին կազմում Եդեսիա, Մարաշ, Քեսուն և մի շարք այլ քաղաքների շրջաններում։ Դրանց մեջ ամենից կենսունակն ու նշանավորը Գագիկ Բ-ի մերձավորներից մեկի՝ Ռուբենի հիմնած իշխանությունն էր, որը գրավում էր Լեռնային Կիլիկիայի մի մասը։

Կիլիկիայի այս իշխանության պաշտոնական հիմնադրման տարին համարվում է 1080 թ., երբ Ռուբենն իր հայկական զինվորական ջոկատներով բյուզանդացիներին դուրս քշեց Լեռնային Կիլիկիայի մի մասից և հռչակեց հայկական անկախ իշխանություն։ Ռուբենին հաջորդած նրա որդի Կոստանդինը կարողանում է Լեռնային Կիլիկիայից դուրս քշել բյուզանդացիներին և գրավել Վահկա ամուր բերդը (Սսից հյուսիս)։ Հայկական իշխանության սահմաններն ընդարձակելու և ամրացնելու համար՝ Ռուբինյան իշխանները որոշ չափով օգտվեցին խաչակիրների արշավանքներից։ Սակայն

---

թյունը։ Կարծում ենք, որ վերջին երկու անվանակոչումները ճիշտ չի կարելի համարել, որովհետև՝ ա) Կիլիկիայի հայկական պետության անկումից հետո (XIV դ.) դարեր շարունակ այդ երկրում բնակչության հիմնական մասը շարունակում էին կազմել հայերը և չնայած հայկական պետություն չկար, բայց էթնիկական տեսակետից երկիրը հայկական էր, բ) Կիլիկիայի հայկական անկախ իշխանությունը հռչակվեց 1080 թ., իսկ թագավորություն դարձավ միայն XII դարի վերջերին (1198 թ.), հետևապես «Կիլիկիայի հայկական թագավորություն» ասելով իշխանական շրջանը (ավելի քան մեկ դար) դուրս է մնում։ Ուստի այն պետք է կոչել Կիլիկիայի հայկական պետություն։

շատ չանցած նույն խաչակիրները դարձան շարք հայկական իշխանությունների՝ այդ թվում և Կիլիկիայի Ռուբինյան իշխանության համար։

Կիլիկիայի հայկական իշխանությունը չնայած ուներ մեծ թվով համառ թշնամիներ՝ Բյուզանդիա, Իկոնիայի սուլթանություն, Անտիոքի խաչակիրներ, այնուամենայնիվ, նա երկարատև ու համառ պայքար մղելով այդ թշնամիների դեմ՝ գնալով ավելի ու ավելի էր ընդարձակվում և հզորանում։ Կիլիկիայի հայկական իշխանությունը ճկուն դիվանագիտությամբ, վարպետորեն կարողանում էր օգտվել իր հակառակորդների միջև եղած հակասություններից։ 1198 թ. Դաշտային Կիլիկիայում գտնվող Տարսոն նշանավոր քաղաքում Լևոն Բ-ն (1187—1219) մեծ հանդիսավորությամբ հռչակվում է Կիլիկիայի հայկական պետության թագավոր։ Ընդմիջումներով 15 տարի տևած պայքարով Լևոն Բ-ին հաջողվում է իր պետությանը միացնել Անտիոքի իշխանությունը, որ գրավում էր Անտիոք քաղաքն ու նրա շրջակայքը։ Նրա ժամանակ Կիլիկիայի հայկական թագավորության սահմաններն ընդարձակվեցին նաև արևելյան կողմից։ Այս մասում Լևոն Բ-ի ժամանակ պետության սահմանը հասնում էր Եփրատ։

Լևոն Բ-ի օրոք Կիլիկիայի հայկական պետության սահմանները ձգվում էին Սադալիա (այժմ Ադալիա, Միջերկրական ծովի ափին) քաղաքից մինչև Եփրատ և Անտիտավրոսյան լեռների ջրբաժան լեռնաշղթաներից մինչև Միջերկրական ծով՝ իր մեջ առնելով նաև Անտիոքի իշխանությունը։ Հետագա շրջանում որոշ ժամանակ Կիլիկիայի հայկական թագավորությանն էր ենթարկվում նաև Կիպրոսի թագավորությունը։ Սակայն ո՛չ Անտիոքի իշխանությունը և ո՛չ էլ Կիպրոսի թագավորությունը Կիլիկիայի թագավորության բուն մասերը չեն կազմել և շատ կարճ ժամանակով են ենթարկված եղել նրան։

Նշված սահմաններով Կիլիկիայի հայկական թագավորությունը բուն Կիլիկիայից բացի՝ իր մեջ էր ընդգրկում նաև Կիլիկյան Տավրոսին արևմուտքից և հյուսիսից հարակից մի շարք շրջաններ։ Նրա ծովային սահմանը ավելի քան 400 կմ էր, իսկ տերիտորիան՝ ավելի քան 40 000 քառ. կմ.։

XIII դարի առաջին կեսի վերջերից Կիլիկիայի հայկական թագավորությանը լուրջ վտանգ էր սպառնում Եգիպտական մամլուքների սուլթանությունը, որը արդեն գրավել էր Սիրիան և գրեթե սահմանակից դարձել Կիլիկիային։

Այսպիսով, Կիլիկյան հայկական թագավորությունն ուներ եր-

կու հիմնական ախոյան՝ Եգիպտոսի և Իկոնիայի սուլթանություն-ները։

Կիլիկիայի հեռատես կառավարողները կարողացան մոնղոլնե-րի օգնությամբ երկիրը որոշ ժամանակ զերծ պահել մամլուքների հարձակումներից։ Սակայն 1266 թ. մամլուքները պարտության մատնելով Հեթում Ա-ին և նրա դաշնակիցներին՝ մոնղոլներին ու Անտիոքի իշխանությանը, հարձակվում են Կիլիկիայի վրա ու մեծ ավերածություններ կատարելով վերադառնում Եգիպտոս։

Կիլիկիայի հայկական թագավորության արտաքին քաղաքա-կան դրությունը գնալով դառնում է ավելի ու ավելի աննպաստ։ 1270 թ. խաչակիրների 8-րդ արշավանքի ձախողումից հետո, եգիպ-տական սուլթանությանը Եվրոպայի կողմից սպառնացող վտանգը վերանում է։ Իսկ մոնղոլական էլխանն էլ այլևս չէր կարող օգնել հայկական թագավորությանը։ Նա հազիվ էր կարողանում ետ մղել իր իշխանության վրա կատարվող Ոսկե Հորդայի և Չաղաթայների հարձակումները։ Քաղաքական տեսակետից խախուտ էր Կիլիկիայի հայկական պետության նաև ներքին դրությունը։ Նա լինելով տիպիկ ֆեոդալական երկիր մասնատված էր բազմաթիվ իշխանություննե-րի, որոնք ունեին կենտրոնախույս ուժեղ տրամադրություններ։

XIV դարի առաջին քառորդի վերջերից Կիլիկիայի հայկական թագավորության դրությունը դարձավ ավելի սպառնալից։ Այժմ մամլուքների հետ միասին Կիլիկիայի դեմ նորից հանդես եկավ Իկոնիայի սուլթանությունը։ Մամլուքների հարձակումներն ավելի հաճախակի են դառնում մանավանդ 1341 թ. սկսած, երբ Կիլիկիա-յում թագավորական գահն անցել էր Հեթումյաններին ազգակից Լուսինյաններին։ Եգիպտական մամլուքներն իրենց մի շարք արշավանքների ընթացքում խիստ ավերում ու կողոպտում են Կիլիկիայի գյուղերն ու ծաղկած քաղաքները, Կիլիկիայի հայկական պետությանը պարտադրելով մեկը մյուսից ստորացուցիչ մի շարք պայմանագրեր։

Ժողովուրդը շարունակում էր անհավասար մարտեր մղել եգիպտական մամլուքների գերազանց ուժերի դեմ։ Մամլուքները եռամսյա պաշարումից հետո՝ 1375 թ. գրավում են պետության մայրաքաղաք Սիսը, իսկ դրանից դեռ 26 տարի առաջ նրանք Դաշ-տային Կիլիկիան արդեն ամբողջությամբ գրավել էին։ Սսի գրա-վումից հետո՝ Լեռնային Կիլիկիայի մյուս մասերում ժողովրդի զին-ված ջոկատները շարունակում էին ուժեղ դիմադրություն ցույց տալ մամլուքներին։ Սակայն վերջ ի վերջո այդ մասերն էլ ընկան մամ-լուքների ձեռքը։ Այնուամենայնիվ, Լեռնային Կիլիկիայի որոշ տե-ղերում շարունակեցին իրենց գոյությունը պահպանել մի շարք

փոքր իշխանություններ, որոնք գտնվում էին վասալական կախման մեջ մամլուքներից։ Այդ «ձորապետական» մանր իշխանությունների մեջ շատ թե քիչ նշանավոր էր Զեյթունի փոքրիկ իշխանությունը, որն իր ներքին ինքնավարությունը պահպանեց նաև Օսմանյան կայսրության շրջանում, ընդհուպ մինչև XIX դարի 60-ական թվականները։ Զեյթունը խոշոր դեր խաղաց XIX դարի հայկական ազգային-ազատագրական շարժման մեջ։

Այսպիսով, Կիլիկիայի հայկական պետությունը ունեցավ մոտ 300 տարվա պատմություն (1080—1375)։

Կիլիկիայի հայկական թագավորությունը տիպիկ ֆեոդալական մի պետություն էր։

XI դարում Կիլիկիայում հայկական ֆեոդալական տների մեջ ամենից մեծ տերիտորիաներ գրավողները և ազդեցիկներն էին՝ Արծրունիները, Օշինյանները և Ռուբինյանները։

Կիլիկիայի հայկական իշխանության առաջացումից հետո էլ Կիլիկիայի դաշտային մասում շարունակում էին իշխել մեծ մասամբ հույն ֆեոդալները։ Ռուբինյանների կողմից ամբողջ Կիլիկիան գրավելուց հետո հույն ֆեոդալների թիվն արագ կերպով կրճատվեց[1]։

Պատմագրական աղբյուրների հաղորդած տեղեկությունների համաձայն, Լևոն Բ-ի թագավորության հանդեսին (1198 թ.) ներկա էին 45 խոշոր ֆեոդալներ, որոնք թագավորի անմիջական վասալներն էին և հանդիսանում էին գավառների, շրջանների և բերդերի տիրակալներ։

Կիլիկիայի հայկական թագավորության մեջ գոյություն ունեին չորս կարգի վարչա-քաղաքական միավորներ։ Դրանք էին՝ արքունական տանը պատկանող շրջաններ և գավառներ, նվաճված կամ այլ ճանապարհով Կիլիկիայի հայկական թագավորության ազդեցությանը ենթակա պետություններ, ֆեոդալական իշխանություններ և եկեղեցական հողատիրություններ։

Արքունական տանը պատկանող գավառներն ու շրջանները տարածվում էին պետության մայրաքաղաք Սսի, ինչպես և Տարսոն, Անարզաբա, Ադանա, Մամեստիա, Այաս և այլ խոշոր քաղաքների շրջակայքում։ Արքունիքին պատկանող գավառները, շրջանները, քաղաքները և բերդերը համարվում էին պետական սեփականություն ու կառավարվում էին թագավորի կողմից նշանակված կառավարիչներով։ Խոշոր քաղաքները պետական սեփականություն

[1] Տե՛ս Г. Г. Микаелян, История Киликийского армянского государства, էջ 205—206։

դարձնելը միջոցներից մեկն էր կենտրոնական իշխանությունը ուժեղացնելու համար։

Ռուբինյանների այդ լայնատարած կալվածքներն ու խոշոր քաղաքները համարյա ամբողջությամբ անցան նրանց փոխարինած Հեթումյաններին։

Կիլիկիայի ֆեոդալական իշխանությունները հասնում էին ավելի քան երեք տասնյակի։ Մեծ արտոնություններ էին վայելում հատկապես սահմանամերձ չորս խոշոր իշխանությունները։ Դրանցից մեկը գրավում էր Կապան բերդն իր շրջակայքի հետ միասին, որը գտնվում է Կիլիկիայի հյուսիս-արևելյան կողմում։ Երկրորդը Գուգլակի իշխանությունն էր, Տարսոնից հյուսիս՝ Իկոնիա և Կոստանդնուպոլիս տանող գլխավոր ճանապարհի վրա։ Իշխանանիստը Գուգլակ բերդն էր։ Երրորդը՝ Կոռիկոսի իշխանությունն էր՝ կենտրոն ունենալով Կոռիկոս նավահանգիստը։ Այս իշխանությունը տարածվում էր Լամոս և Կալիկադնոս գետերի միջև։ Եվ վերջապես, չորրորդը՝ Պորտելլայի իշխանությունն էր, որը գտնվում էր Սիրիական սահմանի մոտ՝ ափամերձ շրջանում։

Ֆեոդալական իշխանություններն առհասարակ օժտված էին լայն իրավունքներով։ Տվյալ գավառի կամ շրջանի ֆեոդալ իշխանը կատարյալ տեր էր իր իշխանության սահմաններում։ Չնայած թե՛ Ռուբինյան և թե՛ Հեթումյան թագավորները իրենց վասալ իշխաններին կալվածներ էին տալիս մեծ մասամբ պայմանական կարգով, բայց ժամանակի ընթացքում նրանք աստիճանաբար դարձան ստացած կալվածների ժառանգական տերերը և իրենց տիրապետության տակ գտնվող մյուս շրջանների կատարյալ իշխանները։ Սրանք ունեին նաև իրենց զորքը։ Իր կենտրոնախույս ձգտումներով հատկապես աչքի էր ընկնում Լամբրոնի Օշինյանների իշխանությունը։ Օշինյանները գրավում էին մի մեծ շրջան (Տարսոնից հյուսիս-արևմուտք)՝ կենտրոն ունենալով Լամբրոն ամուր բերդը։ Նրանք օտար պետությունների հովանավորությամբ երկար ժամանակ պահպանում էին իրենց ինքնուրույնությունը և դարձել էին լուրջ հակառակորդներ Կիլիկիան մի ամբողջական պետության մեջ միավորելու գործում։

Լևոն Բ-ն զենքի ուժով ճնշեց Օշինյաններին և նրանց Լամբրոն բերդն իր շրջակայքով դարձրեց արքունական սեփականություն։

Լայնատարած կալվածներ ուներ եկեղեցին՝ հատկապես հայոց կաթողիկոսական աթոռը, որը սկզբում հաստատվել էր Հռոմկլա բերդում, Եփրատի աջ ափին, իսկ հետո՝ XII դարի վերջերին,

*տեղափոխվեց Սիս։ Նրա կալվածքներն էլ հիմնականում տարածվում էին Հռոմկլայի և Սսի շրջաններում։*

*Թագավորի դերը մեծ էր, նա համարվում էր երկրի սյուզերեն տերը։ Երկրում եղած ոսկու հանքերը համարվում էին թագավորի անձնական սեփականությունը։*

*Պետական կարևորագույն հարցերը քննելու համար հրավիրվում էր թագավորական խորհուրդ, որին մասնակցում էին ֆեոդալական ազնվականության բարձր ներկայացուցիչները։ Արքունիքում գոյություն ունեին մի շարք գործակալություններ, որոնց միջոցով կառավարվում էր պետությունն ու արքունիքը։ Ամենաբարձր պաշտոններն էին չ ա ն ց լ ե ր ը (արխիվարիուս), գ ու ն դ ս տ ա բ լ ը (սպարապետը), մ ա ր ա ջ ա խ տ ը (մարշալ, գունդստաբլի օգնականը, որը միաժամանակ թագավորական ունեցվածքի կառավարիչն էր), պ ր ո ք ս ի մ ո ս ը (որը վարում էր ֆինանսական վարչությունը), պ ա յ լ ը (մանկահասակ թագավորների խնամակալը) և այլն։*

*Բոլոր բարձր պաշտոնները մեծ մասամբ վարում էին խոշոր ֆեոդալները՝ պարոնները։*

*Պետության կառավարման հարցերին հաճախ խառնվում էին նաև կաթողիկոսները։*

## 3. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՃՅՈՒՂԵՐԸ

*Կիլիկիայի հայկական պետության տնտեսությունն իր արագ զարգացման ուղին բռնեց XII դարի վերջերից և բարձր զարգացման հասավ XIII դարի ընթացքում։ Նրա տնտեսության զարգացմանը նպաստեցին՝ երկրի ընդերքի հարստությունները, Դաշտային Կիլիկիայի միացումը, աշխարհագրական հարմար դիրքը, համեմատաբար խաղաղ պայմանները։*

*Նրա տնտեսության հիմնական ճյուղերը կազմում էին գյուղատնտեսությունը, լեռնային արդյունագործությունն ու արհեստները և առևտուրը։*

### Գյուղատնտեսությունը

*Կիլիկիայի գյուղատնտեսությունը թեթև հավասար չափով ներկայացված էր իր երկու կարևորագույն ճյուղերով՝ երկրագործու-*

թյամբ և անասնապահությամբ։ Նրա հողա-կլիմայական պայմանները և ընդարձակ արոտավայրերն ու խոտհարքները բարենպաստ նախադրյալներ էին ստեղծում գյուղատնտեսության զարգացման համար։ Երկրագործության մեջ իրենց արտադրանքով առաջին տեղը գրավում էին այգեգործությունն ու մի շարք ինտենսիվ կուլտուրաների մշակությունը։ Դաշտային Կիլիկիայում մշակվում էին ցիտրուսներ, ձիթենի, խաղող, բամբակ, քնջութ, վուշ, բանջարեղեն և այլն։ Դրանց արտադրանքի մի զգալի մասը վաճառքի էր դուրս բերվում արտաքին շուկաներում։ Կիլիկիան առանձնապես շատ էր արտահանում բամբակ։ Հացահատիկների մշակությամբ զբաղվում էին թե՛ դաշտային մասում և թե՛ լեռնայինում։ Ցանում էին ցորեն, բրինձ, գարի, հաճար, կորեկ, տարեկան և այլ մշակույթներ։

Երկրագործության մեջ՝ հատկապես Դաշտային Կիլիկիայում, արմատավորվել էր եռադաշտային սիստեմը։ Երկրի այս մասում լայնորեն կիրառվում էր արհեստական ոռոգումը։

Անասնապահությամբ առանձնապես աչքի էր ընկնում Լեռնային Կիլիկիան։ Այստեղ պահում էին ձիեր, ջորիներ, էշեր, խոշոր ու մանր եղջերավոր անասուններ և զանազան տեսակի ընտանի թռչուններ։ Մեծ համբավ ունեին Կիլիկիայի ընտիր ձիերը։ Երկրի արտաքին առևտրի մի կարևոր մասը տալիս էր անասնապահությունը. արտահանվում էին՝ ձիեր, ջորիներ, խոշոր և մանր եղջերավոր անասուններ, կաշի և բուրդ։

Կիլիկիայի հայկական պետության գյուղատնտեսության մեջ կային երեք տիպի տնտեսություններ։ Դրանք են՝ պետական, կալվածատիրական ու վանքապատկան և մանր գյուղացիական։

Պետական խոշոր տնտեսությունները առհասարակ քիչ տարածում ունեին։ Այդպիսի տնտեսություններ կային գլխավորապես թագավորական սեփականություն կազմող խոշոր քաղաքների շրջակայքում, որտեղ հիմնականում մշակվում էին որոշ ինտենսիվ կուլտուրաներ, այգիներ, բանջարեղեն և պահվում էին ընտիր ձիեր։ Թագավորական լայնատարած կալվածների մյուս խոշոր մասի վրա ապրում էին գյուղացիները, որոնք մշակում էին իրենց ստացած մանր հողակտորները։ Պետական կալվածներում ապրող այդ գյուղացիները, որ սովորաբար կոչվում էին պետական գյուղացիներ, պարտավոր էին իրենց ստացած բերքի մեկ հինգերորդը պետությանը հանձնելուց բացի, պետության համար կատարել զանազան պարհակներ և մուծել մի քանի տեսակ հարկեր։ Ֆեոդալներին պատկանող կալվածների մի մասը զբաղեցված էր տերունի խոշոր տնտեսություններով, իսկ մյուս մասի վրա իրենց մանր տնտեսություններն էին վարում նրանցից ճորտական կախման վիճակում

գտնվող շինականները։ Տերունական խոշոր կոռային տնտեսություններում աշխատում էին թե՛ լրիվ ճորտացած գյուղացիները (պարիկոսները) և թե՛ կիսաճորտ գյուղացիները՝ շինականները։ Տերունական խոշոր տնտեսությունների սիստեմն առանձնապես տարածված էր վանքապատկան կալվածներում։ Հոգևոր և աշխարհիկ ֆեոդալների տերունական խոշոր տնտեսություններն ավելի ինտենսիվ տնտեսություններ էին, քան մանր գյուղացիական տնտեսությունները։

Այնուամենայնիվ, պետական, աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալների տերունական խոշոր տնտեսությունները երկրի ամբողջ գյուղատնտեսության համար բնորոշ ձև չէին։ Երկրի գյուղատնտեսական տարածության հիմնական մասը կազմում էին գյուղացիների մանր տնտեսությունները, որոնք էին տալիս երկրի գյուղատնտեսությունից ստացվող հարստության մեծ մասը։

Կիլիկիայի հայկական պետության գյուղացիությունը ուներ խառն էթնիկական կազմ։ Գյուղացիության հիմնական մասը կազմում էին հայերը, ապա ասորիներն ու հույները։

Կիլիկիայի հայկական պետության մեջ կային նաև ստրուկներ, որոնք, սակայն, փոքր թիվ էին կազմում, և երկրի տնտեսական-սոցիալական կյանքում նրանց դերն աննշան էր։

## Լեռնային արդյունագործությունը և արհեստները

Կիլիկիայի բնական պայմանները նկարագրելիս նշեցինք, որ նրա ընդերքում կան զանազան տեսակի մետաղային և ոչ մետաղային հանքային հարստություններ։ Կիլիկիայում XII—XIV դարերում արդյունահանվել և վերամշակման են ենթարկվել զանազան տեսակի հանքեր։ Երկաթահանքերի արդյունահանման, վերամշակման և արտահանման մասին տեղեկություններ են պահպանվել այդ ժամանակվա աղբյուրներում։ Եգիպտական սուլթանության և Կիլիկիայի հայկական թագավորության միջև կնքված 1285 թ. պայմանագրի կետերից մեկն էլ այն էր, որ Կիլիկիան պարտավորվել էր Եգիպտական սուլթանությանը տարեկան տալ 10 000 երկաթե ձող[1]։

Լեռնային Կիլիկիայի մի քանի տեղերում (Գուգլակում, Սիսում և այլն) արդյունահանվում էին ոսկի, արծաթ և պղինձ։ Տավրոսյան

[1] Տե՛ս Г. Г. *Микаелян*, История Киликийского армянского государства, էջ 177—178։

*լեռների շրջանում շահագործվում էին կապարի հարուստ հանքերը։ Արդյունահանված կապարի մեծ մասը արտահանվում էր Եվրոպա։ XI—XIV դարերում Կիլիկիայում արդյունահանվում էին նաև սեղանի աղ, սոդա, արջասպ, ծծումբ, փայլար և այլն[1]։ Ներքին կարիքների և արտաքին առևտրի համար խոշոր նշանակություն է ունեցել անտառանյութը, որով այնքան հարուստ է երկիրը։ Կիլիկիան նավաշինության համար անտառանյութ է մատակարարել հատկապես Եգիպտոսին։*

*XII դարի վերջերից Կիլիկիայի հայկական պետությունում բավական արագ զարգանում են արհեստները։ Արհեստագործության զարգացմանը խթանում էին արտաքին և ներքին առևտրի ծավալումը, երկրում եղած բազմատեսակ հումքի առատությունը (բամբակ, վուշ, բուրդ, անտառանյութ, կաշի, մետաղներ և այլն) և XII դարի վերջերից հաստատված խաղաղ պայմանները, որոնք մինչև XIII դարի վերջերը գրեթե չխախտվեցին։ Ընդ որում, արհեստները մեծ մասամբ քաղաքային էին և գյուղատնտեսության հետ անմիջապես քիչ էին առնչվում։*

*Արհեստագործությամբ զբաղվում էին թե՛ հայերը, թե՛ հույներն ու ասորիները և թե՛ իտալացիները։ Սակայն դրանց մեջ իրենց թվով առաջին տեղը գրավում էին հայ արհեստավորները։ Արհեստավորներն արտադրում էին ապակյա իրեր, զորգեր, կարպետներ։ Նրանք վարպետորեն վերամշակում էին կաշին, պատրաստում էին բարձրակարգ մագաղաթ, արտադրում էին բրդյա, վուշե և բամբակյա գործվածքներ, արծաթե և պղնձե ամանեղեն, ակնեղեն, զենքեր, բրուտագործական բազմատեսակ իրեր և այլն։*

*Առանձնապես անհրաժեշտ է նշել արծաթագործներին, որոնց վարպետությունն ու արվեստը հասել էր մեծ կատարելության։ Նրանց պատրաստած արծաթյա ամանեղենը՝ զարդարված չափազանց նուրբ փորագրություններով, արտահանվել է շատ հեռավոր երկրներ։ Կիլիկիայի գորգերն ու կարպետները արտահանվում էին Եվրոպա և արժանանում բարձր գնահատականի։*

*Հայկական Կիլիկիայում գյուղական արհեստներից էին՝ հյուսնությունը, դարբնությունը, մուշտակագործությունը, մանածագործությունը և այլն։ Այդ արհեստները կապված լինելով հիմնականում գյուղատնտեսության հետ, տարածված էին նաև քաղաքներում, ուր հասել էին բարձր կատարելության։*

---

[1] *Տե՛ս* Ալիշան, *Սիսուան*, *էջ 9։*

## Ներքին ու արտաքին առևտուրը և ճանապարհները

*Երկրի ներքին առևտուրը XII դարի վերջերից աշխուժանում է։ Ներքին առևտրի ապրանքները հիմնականում կազմում էին գյուղատնտեսական մթերքներն ու արհեստավորական բազմապիսի արտադրանքները։ Առևտուր էր կատարվում ինչպես ֆեոդալական ամրոցների ներսում, այնպես էլ երկրի խոշոր քաղաքներում։ Առևտրի հիմնական ձևը ապրանքափոխանակությունն էր։ Ներքին առևտրի կենտր էին և՛ գյուղաքաղաքներն ու վանքերը, և՛ խոշոր քաղաքները։*

*Կիլիկիայի հայկական պետության մեջ մեծ նշանակություն ուներ հատկապես արտաքին առևտուրը, որի զարգացումը մասնավորապես պայմանավորված էր աշխարհագրական և քաղաքական այն հարմար դիրքով, որ Կիլիկիայի հայկական թագավորությունը գրավում էր XII դարի երկրորդ կեսից։ Կիլիկիայի դիրքը տարանցիկ առևտրի համար նպաստավոր դարձավ այն ժամանակներից, երբ Ռուբինյանները Լեռնային ու Դաշտային Կիլիկիաները միավորեցին ու հիմնեցին ավելի ուժեղ և ամուր հայկական պետություն, որն ավելի քան 400 կմ երկարությամբ սահմանակից էր Միջերկրական ծովին և ազատ ելք ուներ դեպի հյուսիս-իտալական քաղաք-հանրապետությունները՝ Ջենովա ու Վենետիկ։ Բացի դրանից, ավելի ընդարձակ պետության ու խաղաղ պայմանների ստեղծումով Հայկական Կիլիկիայում սկսվում է գյուղատնտեսության, լեռնային արդյունագործության, արհեստների զարգացումը, որոնք նախադրյալներ են ստեղծում նաև ներքին ու արտաքին առևտրի ծավալման համար։*

*Կիլիկիայի հայկական պետությունն ուներ և՛ ջրային, և՛ ցամաքային ճանապարհներ։ Նա, ինչպես նշվեց, մի քանի հարյուր կիլոմետր երկարությամբ շփվում էր Միջերկրական ծովին։ Այստեղ էին գտնվում Կոռիկոս և XIII դարի երկրորդ կեսից առտակարգ նշանակություն ստացած՝ Այաս գլխավոր նավահանգիստները։ Նավարկելի էին նաև Միջերկրական ծովը թափվող գլխավոր գետերն իրենց ստորին հոսանքներում (Պիրամոս, Սարոս, Կիդնոս)։*

*Կիլիկիայի վրայով անցնում էին մի շարք տարանցիկ ցամաքային ճանապարհներ, որոնք նրան կապում էին Իկոնիայի, Կոստանդնուպոլսի, Սինոպի, Սիրիայի ու Միջագետքի, Մեծ Հայքի, Վրաստանի, Ադրբեջանի, ռուսական երկրների, Պարսկաստանի և Հնդկաստանի հետ։ Մինչև Բաղդադի խալիֆայության անկումը (1258 թ.) Կիլիկիայի համար մեծ նշանակություն ուներ այն ճանապարհը, որը գալիս էր Սիրիայից և, կտրելով Կիլիկիան, անց-*

նում էր Իկոնիա, որտեղ ճյուղավորվում էր մի քանի քարավանային ճանապարհների և ձգվում մինչև Կոստանդնուպոլիս ու Սև ծովի նավահանգիստները։ Այդ ճանապարհը ուներ հետևյալ ուղղությունը. Հալեպ—Անտիոք—«Ասորական դուռ» կամ Պորտելլա լեռնանցք—Մամեստիա—Ադանա—Տարսոն—«Կիլիկիայի դուռ» լեռնանցք—Իկոնիա։

XIII դարի երկրորդ կեսից Այասի դերը (որպես նավահանգիստ) բարձրանալու հետ միասին առաջնակարգ նշանակություն են ստանում նրանից դուրս եկող երկու կարևորագույն ճանապարհներ։ Դրանք էին. ա) Այաս—Մարաշ—Մելիտինե (Մալաթիա) ճանապարհը, որը Մելիտինեում ճյուղավորվում էր և ձգվում տարբեր ուղղություններով՝ դեպի Մեծ Հայք, Միջագետք և Կապադովկիա։ Մարաշից նրանից բաժանվելով ևս մի այլ ուղի ձգվում էր դեպի Եդեսիա (Ուռհա) և Հալեպ։

բ) Այաս—Ադանա—Անարզաբա—Սիս, ապա Վահկա ամրոցից արևմուտք գտնվող լեռնանցքներով դիմում էր դեպի Կեսարիա, որտեղ ճյուղավորվելով ձգվում էր տարբեր ուղղությամբ։

Խոշոր նշանակություն ուներ նաև Կոռիկոս նավահանգիստը Սելևկիայի վրայով Իկոնիայի հետ միացնող ճանապարհը, ինչպես և Կոռիկոսը Տարսոնի ու Այասի հետ միացնող ծովեզրյա ճանապարհը[1]։

Դրանք էին Հայկական Կիլիկիայի այն ճանապարհները, որոնցով ծավալվում էր նրա արտաքին առևտուրը, ինչպես և Արևմուտքի ու Արևելքի միջև կատարվող տարանցիկ առևտուրը։ Կիլիկիայի արտաքին առևտուրն այնպես էր միահյուսվել նրա վրայով կատարվող տարանցիկ առևտրի հետ, որ գրեթե անհնար է նրանց առանձին-առանձին ներկայացնելը։

Կիլիկիան արտաքին առևտրին մասնակցում էր գյուղատնտեսական ապրանքներով, արհեստավորական արտադրանքներով, մետաղներով և շինարարական փայտանյութով։ Նրա արտաքին առևտրին՝ հայ վաճառականներից բացի՝ մասնակցում էին նաև իտալացի, հույն, հրեա, ասորի, արաբ վաճառականներն ու առևտրականները։ Կիլիկիայից արտահանվում էին՝ անասուններ (ձիեր և խոշոր ու մանր եղջերավոր անասուններ), բամբակ, բուրդ, գործվածքներ (առանձնապես գորգեր, կարպետներ և բամբակե գործվածքներ), արծաթյա և պղնձյա ամաններ, գեղարվեստական իրեր, զանազան տեսակի նկարազարդ ու նախշաքանդակ թասեր ու

[1] Կիլիկիայի ճանապարհների ուղղությունները տե՛ս Ալիշանի «Սիսուան» աշխատությանը կցված քարտեզում։

անոթներ, մետաղներ (առանձնապես կապար և երկաթ), շինափայտ և այլն։ Իսկ Կիլիկիա էին ներմուծվում Հնդկաստանից՝ թանկագին քարեր և համեմունքներ, Չինաստանից՝ մետաքս և մետաքսյա նուրբ գործվածքներ, Իրանից և արևելյան այլ երկրներից՝ ընտիր հյուսվածքներ, հյուսիս-իտալական քաղաքներից՝ արհեստավորական զանազան ապրանքներ։ Սինոպի և Դերբենդի վրայով Կիլիկիա էին ներմուծվում ռուսական թանկագին մորթիներ։

Կիլիկիա ներմուծված ապրանքների միայն մի մասն էր վաճառվում երկրում, նրա մյուս մասը Կիլիկիայի տերիտորիայով անցնում էր դեպի այլ երկրների շուկաներ։

Կիլիկիան հանդիսանում էր նաև ստրկավաճառության շուկաներից մեկը։

Արտաքին և տարանցիկ առևտրի զարգացման համար Կիլիկիայի հայկական պետությունը ձեռնարկում էր անհրաժեշտ միջոցառումներ, որովհետև այդ առևտրից ստացվող հսկայական չափերի հասնող մաքսային եկամուտները մեծապես հարստացնում էին թագավորական գանձարանը։ Այսպես, արտաքին և տարանցիկ առևտուրն ավելի ծավալելու համար Լևոն Բ-ն 1201 թ. առևտրական պայմանագիր կնքեց նախ Ճենովայի, ապա Վենետիկի հանրապետության հետ։ Այդ պայմանագրերով Ճենովայի և Վենետիկի վաճառականներին տրվեցին խրախուսիչ մի շարք արտոնություններ։ Ճենովացի վաճառականներին թույլատրվեց Տարսոն և Մամեստիա քաղաքներում ունենալու իրենց հատուկ իջևանները, հյուրանոցները, պահեստները և այլ հարմարություններ։ Նույնպիսի արտոնություններ տրվեցին նաև վենետիկցի վաճառականներին։

Կիլիկիայի մասնակցությունն ու դերը համաշխարհային առևտրի մեջ հատկապես մեծացավ XIII դարի երկրորդ կեսին, երբ մոնղոլները Բաղդադի խալիֆայությունը գրավելուց հետո (1258 թ.) Ասորիքի համար երկարատև պայքարի մեջ մտան եգիպտական հզորացած սուլթանության հետ։ Դրա հետևանքով ընդհատվեց Ասորիքի վրայով կատարվող առևտուրը և այն գրեթե ամբողջապես տեղափոխվեց Հայկական Կիլիկիա։

Կիլիկիայի հայկական պետության արտաքին առևտուրը ունեցել է ակտիվ բալանս։ Նա մեծ չափով հարստացրել է երկիրը և նպաստել նրա տնտեսական զարգացմանը։ Արտաքին առևտրի օգուտներից առյուծի բաժինը ստանում էր ինքը՝ թագավորը։ Թագավորական գանձարանն էին մտնում մաքսային բոլոր եկամուտները՝ հատկապես XIII դարի երկրորդ կեսից։

## 4. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔՆԵՐՆ ՈՒ ԲԵՐԴԵՐԸ

*Կիլիկիայի հայկական պետության քաղաքների մեծ մասն ունի հնագույն պատմություն։ Դեռևս հելլենիստական ժամանակաշրջանում Տարսոնը, Ադանան, Մամեստիան և այլն դարձել էին ծաղկած ու հարուստ քաղաքներ։ Վաղ միջնադարում և նրանից հետո Կիլիկիայի քաղաքներն աստիճանաբար կորցրին իրենց նախկին նշանակությունը՝ վերածվելով ֆեոդալական տիպի քաղաքների։ Նրանց առաջադիմության վրա առանձնապես բացասական ազդեցություն ունեցան այն հարատև պատերազմներն ու պայքարը, որ VII—X դարերում մղվում էին Բյուզանդիայի և Արաբական խալիֆայության, իսկ XI—XII դարերում՝ սելջուկների, խաչակիրների, Բյուզանդիայի և հայկական իշխանությունների միջև։ Այդ պատերազմների ընթացքում Կիլիկիայի քաղաքները հաճախ ձեռքից ձեռք էին անցնում և ենթարկվում էին ավերման ու թալանի։*

*Կիլիկիայի քաղաքները XII դարի վերջերից ապրում են վերելքի շրջան։ XIII դարում արդեն նրանք դառնում են արհեստագործության ու առևտրի խոշոր կենտրոններ։*

*Հայկական Կիլիկիայի խոշոր քաղաքները աշխարհագրականորեն տեղաբաշխված էին հետևյալ կերպ. նրանք կամ գտնվում էին Միջերկրական ծովի ափին (Այաս և Կոռիկոս), կամ քարավանային առևտրի ճանապարհների վրա (Տարսոն, Մամեստիա, Անարզաբա և Սիս), կամ մեծ գետերի այն մասերում, որտեղից սկսած տվյալ գետը դառնում էր նավարկելի (այդպիսի քաղաքներից էին՝ Մամեստիան՝ Ջիհան գետի ստորին հոսանքում և Ադանան՝ Սարոսի ստորին հոսանքում)*[1]։

*Քաղաքներում զարգացած էին արհեստները՝ գործագործությունը, կաշեգործությունը, ջուլհակությունը, արծաթագործությունը, զինագործությունը, բրուտագործությունը, ակնագործությունը և այլն։ Արհեստագործությամբ առանձնապես աչքի էին ընկնում Տարսոնը, Մամեստիան և Այասը։ Արհեստավորներից և առևտրականներից բացի, որոնք կազմում էին քաղաքի բնակչության ճնշող մասը, քաղաքներում ապրում էին նաև խոշոր ֆեոդալներ, վաշխառուներ, հոգևորականներ։ Քաղաքներն ունեին իրենց զինվորական կայազորները։*

*Հայկական Կիլիկիայի քաղաքներում բնակչության ճնշող մասը կազմող հայերից բացի բնակվում էին նաև ասորիներ և հույներ. XIII դարից սկսած այնտեղ բնակություն են հաստատում իտա-*

---

[1] *Տե՛ս Г. Г. Микаелян*, История Киликийского армянского государства, էջ 178—170։

*լացի արհեստավորներ և առևտրականներ, որոնք ապրում էին առանձին թաղամասերում։*

*Կիլիկիայի հայկական պետությունում՝ հատկապես Լեռնային Կիլիկիայում, կային բազմաթիվ բերդաքաղաքներ, բերդեր և ամրոցներ։ Դրանք հիմնականում գտնվում էին լեռնային մասում և ծառայում էին մեծ մասամբ իբրև իշխանական աթոռանիստներ։ Բերդերի ու ամրոցների թիվը հարյուրից անցնում էր։ Դրանցից շատերը գտնվելով տարանցիկ ճանապարհների վրա, աստիճանաբար դարձան փոքր քաղաքներ, որոնք սովորաբար տարածվում էին նախկին բերդերի շուրջը։*

*Բերդերը, ամրոցներն ու բերդաքաղաքները տեղադրված էին այն լեռնանցքների մոտ կամ գետերի հովիտներում, որոնցով հաղորդակցություն էր պահպանվում հարևան երկրների հետ. այդ ամրոցները պաշտպանում էին լեռնանցքները, որպեսզի թշնամին չկարողանա ներխուժել երկրի խորքը։*

*Բերդերից նշանավոր էին՝ Վահկան, Կապանը, Լամբրոնը, Պապեռոնը, Գուգլակը, Բարձրբերդը և այլն։*

*Հայկական Կիլիկիայի խոշոր քաղաքները, նավահանգիստներն ու նշանավոր բերդերը միաժամանակ գավառների կենտրոններ էին, իսկ նրա տերիտորիան բաժանված էր ավելի քան երեք տասնյակ գավառների։*

## Նշանավոր քաղաքները և նավահանգիստները

Սիս.—*Մինչև XII դարը Սիսը եղել է սովորական բերդ, որը հիմնադրվել է հնագույն ժամանակներում։ XII դարի 70-ական թվականներից դարձավ Կիլիկիայի հայկական պետության մայրաքաղաքը և մնաց որպես այդպիսին մինչև նրա անկումը (1375 թ.)։ Սիսը գտնվում էր Պիրամոս գետի աջակողմյան վտակներից մեկի վրա։ Նա հայտնի էր իր ամրությամբ։ Առանձնապես նշանավոր էր նրա միջնաբերդը, որը տեղադրված էր մի բարձր բլրի վրա*[1]*։*

*Տարբեր ժամանակներում Հայկական Կիլիկիա ներխուժած թշնամիներից ոչ մեկին ավելի քան երկու հարյուր տարվա ընթացքում չէր հաջողվել գրավել ամրացված մայրաքաղաքի անառիկ միջնաբերդը։ Պետության մայրաքաղաք Սիսը զարդարում էին բազմաթիվ գեղեցիկ շենքեր՝ թագավորական ապարանքներ, տաճարներ, հյուրանոցներ և այլն։*

[1] *Ենթադրվում է, որ «սիս» նշանակում է «սար», «լեռ»։*

*Սիսը՝ երկրի մայրաքաղաք լինելով հանդերձ, 1292—1441 թթ. Հայոց կաթողիկոսի աթոռանիստն էր, իսկ դրանից հետո, երբ ամենայն հայոց կաթողիկոսի աթոռը հաստատվեց Էջմիածնում (1441 թ.), Սիսը մինչև 1921 թ. մնաց որպես Կիլիկիայի կաթողիկոսի աթոռանիստ։*

*Մամլուքների կողմից Սիսը գրավվեց 1375 թ. և դրանից հետո նա այլևս ոչ միայն զարգացման շրջան չունեցավ, այլև որպես քաղաք աստիճանաբար կորցրեց իր նշանակությունը։*

**Տարսոն.**—*Կիլիկիայի այս հնագույն քաղաքը եղել է հելլենիստական կուլտուրայի կարևոր կենտրոններից մեկը և զգալի դեր է խաղացել հնագույն այդ շրջանի միջազգային առևտրի մեջ։ Նա գտնվում է Կիդնոս գետի ստորին հոսանքում։*

*Արաբական տիրապետության շրջանում Տարսոնը իբրև սահմանային քաղաք, ունեցել է ռազմա-ստրատեգիական խոշոր նշանակություն. Նրա վրայով էր անցնում այն ճանապարհը, որը Կիլիկիայի դուռ լեռնանցքով տանում էր դեպի բյուզանդական փոքրասիական տիրապետությունները։ Արաբական խալիֆայությունը ամրացրել էր այս քաղաքը։ VII—IX դարերում խալիֆայությունն այստեղ պահում էր մեծ կայազոր։*

*Տարսոնի համար Բյուզանդիայի և Խալիֆայության միջև մղվող պայքարը նոր ուժով բորբոքվեց X դարի երկրորդ կեսին։ Խալիֆայությունից խլված Տարսոնը բյուզանդական զորքերի համար դարձավ ելման կետ՝ դեպի Սիրիա, Միջագետք, Հայաստան և Վրաստան արշավելու*[1]*։*

*Ռուբինյանների օրոք Տարսոնը Հայկական Կիլիկիայի առևտրի և արհեստագործության գլխավոր կենտրոններից մեկն էր։ Նա գտնվում էր Կապադովկիայից Սիրիա տանող քարավանային ճանապարհի վրա։ Արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոն լինելու հետ միասին Տարսոնը Կիլիկիայի հայկական թագավորության համար ևս մնաց որպես ռազմա-ստրատեգիական խոշոր նշանակություն ունեցող բերդաքաղաք։ Նա շրջապատված էր կրկնակի պարիսպներով և խրամով։ Տարսոնում էին կատարվում Կիլիկիայի հայ թագավորների թագադրման հանդեսները։*

**Ադանա.**—*Այս քաղաքը գտնվում է Սարոս գետի ստորին հոսանքի վրա, որտեղից սկսած Սարոսը դառնում էր նավարկելի։ Այնպես որ, գետային ճանապարհով նա կապված էր Միջերկրական ծովի հետ։ Սակայն նրա համար գետային այդ ճանապարհից առա-*

[1] *Տե՛ս Г. Г. Микаелян,* История Киликийского армянского государства, *էջ* 19։

վել մեծ նշանակություն ուներ Սիրիայից՝ Ասորական դռնով, Այասով և Մամեստիայի վրայով եկող ճանապարհը, որը Ադանայում բաժանվում էր երկու ճյուղի։ Նրանցից մեկը Տարսոնի վրայով և Կիլիկյան դռնով գնում էր դեպի Իկոնիա, իսկ մյուսը՝ Սարոս գետի արևմտյան կողմով գնում էր հյուսիս՝ դեպի Կեսարիա։

**Մամեստիա և Անարզաբա.**—*Մամեստիայի դիրքը նման էր Ադանայի դիրքին։ Գտնվում էր Պիրամոս (Ջահան) գետի այն կետում, որտեղից գետը դառնում էր նավարկելի։ Մամեստիայով էր անցնում Սիրիայից Կիլիկիայի վրայով դեպի Իկոնիա տանող նշանավոր ճանապարհը։ Անարզաբան գտնվում էր Պիրամոս գետի աջակողմյան վտակներից մեկի վրա։ Նա քարավանային ճանապարհների հանգույց էր Լեռնային ու Դաշտային Կիլիկիաների սահմանագլխին։ Անարզաբայից դուրս էին գալիս երեք կարևոր ճանապարհներ, որոնցից մեկը գնում էր դեպի Սիս, երկրորդը՝ դեպի Մամեստիա, իսկ երրորդը ձգվում էր դեպի արևելք և Ամանոսի լեռների Սարվանդիքար բերդից ոչ հեռու գտնվող մի լեռնանցքով անցնում էր Սիրիա։ Նա ամրացված քաղաք էր և XII դարում Ռուբինյան իշխանության մայրաքաղաքն էր։*

**Մարաշ** *(Գերմանիկե).—Լեռնային Կիլիկիայում պետության մայրաքաղաք Սսից հետո նշանավոր էր Մարաշ քաղաքը, որն ամրացված էր պաշտպանական կառույցներով և նույնանուն գավառի կենտրոնն էր։ Մարաշից դուրս էին գալիս քարավանային ճանապարհներ, որոնցից ամենանշանավորը Այաս—Մարաշ—Մելիտինե ուղին էր։*

**Կոռիկոս և Այաս.**—*Սրանք Կիլիկիայի հայկական պետության նշանավոր նավահանգիստներն էին, արհեստագործության ու համաշխարհային առևտրի կարևոր կենտրոններ։ Սկզբնական շրջանում Կիլիկիայի հայկական պետության համար Կոռիկոսն Այասից ավելի մեծ նշանակություն ուներ, սակայն հետագայում՝ XIII դարում, Այասը դարձավ երկրի ամենանշանավոր նավահանգիստը։ Նա բազմամարդ մի քաղաք էր և հայտնի էր համաշխարհային առևտրի մեջ խաղացած իր արտակարգ դերով։ Կոռիկոսի դիրքի հետ համեմատած՝ Այասի դիրքն ավելի նպաստավոր էր նավահանգիստ լինելու համար։ Նա գտնվում էր Հայոց ծոցում, որի շնորհիվ նրա նավամատույցները ապահովված էին ուժեղ ալեկոծություններից։ Մինչդեռ Կոռիկոսը զուրկ էր հարմար խորշերից և նրա նավամատույցներում լինում էին ուժեղ ալեկոծումներ։ Թե՛ Այասը և թե՛ Կոռիկոսը ցամաքի կողմից ամրացված էին։*

*Դրանցից բացի Կիլիկիայում կային նաև այլ նավահանգիստ-*

ներ, որոնց թիվը 20-ից անցնում էր, սակայն Այասի և Կոռիկոսի հետ համեմատած՝ նրանց նշանակությունը երկրորդական էր։

## Կարևոր բերդերը

Ինչպես ասվեց, Կիլիկիայի հայկական պետության տերիտորիայում կային բազմաթիվ բերդեր ու ամրոցներ, որոնց մեծ մասը գտնվում էր նրա սահմանամերձ գոտում՝ լեռնային Կիլիկիայի կարևոր անցքերի մոտ կամ դեպի Միջերկրական ծով հոսող գետերի նեղ հովիտներում։ Երկրի հյուսիս-արևելյան մասում, Պիրամոս գետի աջակողմյան վտակներից մեկի վրա գտնվում էր Կանչիբերդը, որը Զեյթունի ամենանշանավոր բերդն էր։ Այս բերդը հաճախակի հարձակման էր ենթարկվում սելջուկների կողմից, այդ պատճառով էլ առանձին հոգ էր տարվում նրա ամրացման համար։ Նրանից հարավ-արևմուտք, մի անմատույց վայրում գտնվում էր Կապան բերդը, որը պաշտպանում էր Կիլիկյան Տավրոսի վրա գտնվող նույնանուն լեռնանցքը։ Նույն Պիրամոս գետի հովտում՝ Կիլիկիայի հայկական պետության արևելյան սահմանագլխին գտնվում էին Բերգոււ և Մարաշ ամրացված կետերը, որոնցից վերջինը միաժամանակ նշանավոր քաղաք էր։ Արևելյան սահմանային գլխավոր բերդը Հռոմկլան էր, որը գտնվում էր Եփրատի աջ ափին։ Հռոմկլան մինչև XII դարի 70-ական թվականները միաժամանակ հայոց կաթողիկոսի աթոռանիստն էր։ Կալիկադնոս գետի վերնագավառում, Իկոնիայի սուլթանության սահմանագլխին, կային մի քանի ամուր բերդեր, որոնցից առանձնապես նշանավոր էր Գերմանիկոպոլիսը: Նույն գետի ստորին հոսանքի շրջանում գտնվում էր Սելևկիան, որը ամրացված գետային նավահանգիստ էր և, Հեթումյանների թագավորության շրջանում լինելով սահմանային կետ, վեր էր ածվել մի անմատույց բերդի։ Կիդնոս գետի վրա և նրա աջակողմյան վտակների շրջանում էին գտնվում Գուգլակ, Լամբրոն և Պապեռոն նշանավոր բերդերը։ Լամբրոնը նույնանուն գավառի կենտրոնն էր և Օշինյան իշխանների աթոռանիստը։ Պապեռոնը Օշինյաններին արյունակից մի այլ իշխանության աթոռանիստ դղյակն էր, իսկ Գուգլակ ամուր բերդը պաշտպանում էր նույնանուն լեռնանցքը։

Սարոս գետի միջին հոսանքում, մի բարձրադիր ու գեղեցիկ լեռնային վայրում գտնվում էր Վահկա բերդը, որը Ռուբինյանների հենակետը և առաջին քաղաքական կենտրոնն էր։ Վահկայից արևմուտք՝ Սարոս գետի վտակ Ծամնդավի աջ կողմում գտնվում էր

*Կիլիկյան Տավրոսի նշանավոր բերդերից մեկը՝* Բարձրբերդը, *որը նույնանում գավառի կենտրոնն էր։*

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԵՎ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ (XIII դարի 30—40-ական թվականներից մինչև XV դարի վերջը)

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ XIII ԴԱՐԻ 30—40-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XV ԴԱՐԻ ՎԵՐՋԸ

*XIII դարի 30—40-ական թվականներից մինչև XV դարի վերջերն ընկած ժամանակաշրջանում Հայաստանում նախ իրենց տիրապետությունը հաստատեցին մոնղոլ նվաճողները, ապա՝ թուրքական կարա-կոյունլու և ակ-կոյունլու քոչվոր ցեղերին պատկանող ավարառուները։*

### Հայաստանի վարչա-քաղաքական բաժանումը մոնղոլների տիրապետության ժամանակաշրջանում

*Մոնղոլական զորամասերն առաջին անգամ Անդրկովկաս ներխուժեցին 1220—1221 թթ.։ Դրանից 15—16 տարի անց, երկրորդ անգամ մտնելով Հյուսիս-արևելյան Հայաստան, 1236 թ. ընթացքում այն ամբողջովին նվաճեցին։ 1242—1243 թթ. արշավանքների ընթացքում գրավեցին նաև Հարավային և Արևմտյան Հայաստանը։ Մոնղոլական նվաճումներին ամենուրեք ուղեկցում էին հայրենի երկիրը պաշտպանող բնակչության մասսայական ոչնչացումը, գերեվարությունը, թալանը, բռնությունները։*

*XIII դարի կեսերին մոնղոլական պետությունը տարածվում էր Խաղաղ օվկիանոսից մինչև Միջերկրական ծովի ափերը։ Նա բաժանված էր չորս խոշոր երկրամասերի, որոնք կոչվում էին ուլուսներ։ Դրանցից երեքը գտնվում էր Չինգիզ-խանի տան անդամների, իսկ մեկը՝ մոնղոլական զորապետների տիրապետության տակ։*

*Վերջինս չորրորդ ուլուսն էր, որն իր մեջ ընդգրկում էր Միջին Ասիայի մի փոքր մասը, Պարսկաստանը, Հարավային և Հյուսիսային Անդրբեջանը, Հայաստանը, Վրաստանը, Փոքր Ասիայի մեծ մասը, իսկ 1258 թվականից սկսած՝ նաև Միջագետքը։ Սա մոնղոլական պետության միակ խոշոր երկիրն էր, որ սկզբնական շրջանում կառավարվում էր ոչ թե Չինգիզ-խանի տան անդամների, այլ մոնղո-*

*լական զորապետների կողմից*[1]*, հետևապես նա սկզբնական շրջանում ոչ թե ուլուս էր (ժառանգական տիրապետություն), այլ՝ սոսկ մի մեծ զորապետություն։ Մանգու խանի ժամանակ այս զորապետությունը դարձվեց ուլուս և տրվեց նրա եղբոր՝ Հուլավուին։ Հուլավուն և նրա հաջորդները, որոնք կոչվում էին Հուլավուականներ աստիճանաբար կտրվեցին մեծ խաների ազդեցությունից և դարձան անկախ իշխողներ։ Հուլավուի հիմնած այդ պետությունը կոչվեց Իլխանություն կամ Հուլավուականների պետություն։ Իլխանության հիմնադրման տարին համարվում է 1256 թվականը։*

*Այսպիսով, Հայաստանը իր հարևան երկրների հետ միասին, վարչական տեսակետից սկզբում մտնում էր (1236—1256 թթ.) Արևմտյան զորապետության մեջ և ուղղակի ենթարկվում էր մոնղոլական մեծ խանի իշխանությանը, իսկ հետագայում՝ 1256 թվականից սկսած, նա կազմում էր Իլխանության մի մասը և ենթարկվում էր Հուլավուականներին, որոնք ինչպես ասվեց, անկախ իշխողներ էին։*

*Մոնղոլների կատարած վարչական բաժանումը ելնում էր պետության ռազմական և ֆինանսական ու հարկահանության նպատակներից։ Նրանք, գրավելով Հայաստանն ու Վրաստանը, այդ տերիտորիաներից կազմեցին ռազմա-վարչական երկու միավոր՝ վիլայեթ։ Դրանցից մեկը կոչվում էր Գ յ ու ր ջ ի ս տ ա ն ի վ ի լ ա յ ե թ, իսկ մյուսը՝ Մ ե ծ Հ ա յ ք ի վ ի լ ա յ ե թ։*

*Գյուրջիստանի վիլայեթի մեջ մտնում էին Վրաստանն ու Հյուսիս-արևելյան Հայաստանը։ Վիլայեթի կենտրոնը Թբիլիսին էր։ Գլխավոր կառավարիչն ու զորքերի հրամանատարը կոչվում էր «մեծ բասկակ», որը նշանակվում էր իլխանների կողմից։*

*Վիլայեթներն իրենց հերթին բաժանված էին ռազմա-վարչական ավելի փոքր միավորների, որոնք կոչվում էին «թումաններ», այսինքն՝ այնպիսի վարչա-տերիտորիալ միավորներ, որոնցից յուրաքանչյուրը կարող էր տալ մեկ «թուման» (10 000) զինվոր։ Գյուրջիստանի վիլայեթը բաժանված էր ինը թումանների, որոնցից երեքը կազմված էր Հյուսիս-արևելյան Հայաստանի տերիտորիայից։ Շուտով Հյուսիս-արևելյան Հայաստանի տերիտորիայում կազմվեց չորրորդ թումանը, որն իր մեջ ընդգրկում էր Սյունիքի իշխանությունը։ Սակայն Սյունիքը շուտով անջատվեց Գյուրջիստանի վիլայեթից և դարձավ անմիջականորեն մոնղոլական խաներին ենթակա թուման։*

---

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Գ, Երևան, 1952, էջ 226։*

*Այսպիսով, Հյուսիս-արևելյան Հայաստանի չորս թումանները (չհաշված Կարսի շրջանը, որը առանձին վարչական միավոր էր) պետք է դուրս բերեին շուրջ 40 000 զինվոր։ Թումանները գլխավորում էին տեղական ֆեոդալները։ Թումանում տեղական կառավարչի կողքին գործում էր նաև վիլայեթի «մեծ բասկակի» գործակալը՝ թումանի «բասկակը», որը գլխավորում էր թումանի դիվանը և հսկում էր, որ հարկերն ու այլ եկամուտները գանձվեն ըստ սահմանված կարգի ու չափի։*

*1242—1243 թթ. մոնղոլները, գրավելով Հարավային և Արևմտյան Հայաստանը, նրանց տերիտորիաներից կազմեցին մի վիլայեթ, որը կոչվեց «Մեծ Հայք»։ Մեծ Հայք վիլայեթի կենտրոնը դարձավ Խլաթ քաղաքը, որը Շահարմենների սուլթանության մայրաքաղաքն էր։ Վարչական տեսակետից Մեծ Հայք վիլայեթն ուներ նույն կառուցվածքը, ինչպիսին որ էր Գյուրջիստանի վիլայեթը։ Տարբերությունը կայանում էր միայն նրանում, որ այստեղ հայ խոշոր ֆեոդալներ գրեթե չկային, և վիլայեթում ու նրա թումաններում մոնղոլական «մեծ բասկակի» և «բասկակների» կողքին կանգնած էին օտարազգի ֆեոդալները։ Մեծ Հայք վիլայեթը բաժանված էր հինգ թումանի, սակայն կային նաև առանձին մանր շրջաններ, որոնք վարչական տեսակետից չէին մտնում թումանների մեջ, այլ պահպանում էին իրենց ինքնուրույնությունը։ Դրանց մեջ ամենից նշանավորը Սասունն էր, որ մինչև Լենկթեմուրի ավերիչ արշավանքները պահպանեց իր ներքին ինքնուրույնությունը։*

*Ինչպես տեսնում ենք, մոնղոլները սկզբնական շրջանում Հայաստանի ներքին վարչա-քաղաքական սիստեմի մեջ համարյա ոչ մի փոփոխություն չկատարեցին։ Նրանք բավարարվեցին միայն նրանով, որ երկրում գոյություն ունեցող ֆեոդալական վարչաձևը հարմարեցրին իրենց տիրապետության շահերին, հայ և այլազգի իշխանների ֆեոդալական իրավունքները պահպանելով, նրանցից յուրաքանչյուրին ճանաչեցին իբրև իր իշխանության տեր և մոնղոլական մեծ խաների ենթակա կառավարիչ, իսկ եկեղեցին ու հոգևորականությունը կատարյալ արտոնյալ վիճակում մնացին մոնղոլական տիրապետության գրեթե ամբողջ ժամանակաշրջանում։*

*Մոնղոլական տիրապետության ծանր լուծը ամբողջապես ընկած էր աշխատավոր ժողովրդի ուսերին։ Ավերիչ արշավանքները, հարկային անտանելի ծանր քաղաքականությունը, հարկահավաքների և այլ կառավարիչների կամայականություններն ու գործադրած բռնությունները ծայր աղքատության դուռն էին հասցրել նրան։*

*Իլխանությունը գոյություն ունեցավ շուրջ 90 տարի (1256—*

*1344 թթ.) և գտնվում էր Հուլավուի ժառանգների իշխանության տակ, որոնք կրում էին «իլխան» տիտղոսը։*

*Իլխանության ժամանակ հայկական իշխանություններն աստիճանաբար թուլացան և դադարեցին քաղաքական լուրջ դեր խաղալուց։ Մոնղոլներին ձեռնտու չէր տեղական իշխանությունների հզորացումը։ Համեմատաբար ուժեղ իշխանությունների նկատմամբ խիստ հալածանքներ և ճնշում գործադրելու հետ միասին, նրանց լարում էին իրար դեմ ու թուլացնում։*

*Հայկական իշխանությունների մեջ Իլխանության տիրապետության ժամանակ և ընդհուպ մինչև XIV դարի վերջերը՝ մինչև Լենկթեմուրի արշավանքները, ամենից նշանավորը Օրբելյանների Սյունիքի իշխանությունն էր։ Մոնղոլական խաները Զաքարյանների իշխանությունը թուլացնելու նպատակով Օրբելյաններին հովանավորում էին և լարում նրանց դեմ։ Ամբողջ Հայաստանում միայն Սյունիքն էր, որ Հուլավուականների տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում համեմատաբար զերծ մնաց ավերվածություններից ու կողոպուտից։*

*Սյունիքից հետո որոշ չափով իրենց նշանակությունը պահպանեցին նաև Մահկանաբերդի Արծրունիները և Սասունի ու Աղթամարի փոքրիկ իշխանությունները։ Հայկական մյուս իշխանական տները՝ Զաքարյանները, Վաչուտյանները, Վահրամյանները, Դոփյանները, Պռոշյանները, Ջալալյանները XIII դարի երկրորդ կեսում կորցրեցին իրենց նախկին նշանակությունը։*

*Հայկական քայքայված իշխանական տների մնացորդներից իշխանները այս կամ այն գավառում նշանակում էին կառավարիչներ՝ «մելիք»-ներ, որոնք հետագա շրջանում ձեռք բերեցին ֆեոդալական իրավունքներ։*

*Իլխանության մայրաքաղաքը սկզբում Թավրիզն էր, իսկ հետագայում տեղափոխվում է Սուլթանիա։ Իլխանության կենտրոնական շրջանը համարվում էր Հարավային Ատրպատականը, այսինքն՝ այն երկիրը, որտեղ գտնվում էր նրա մայրաքաղաք Թավրիզը։*

*XIV դարի սկզբներից Իլխանությունը ապրում է տնտեսական և քաղաքական կյանքի անկման պրոցես։ 1344 թ. Հուլավուականների պետությունը վերջնականապես քայքայվեց։ Նա բաժանվեց առանձին խանությունների և էմիրությունների, որոնք անընդմեջ պայքար էին մղում իրար դեմ և քայքայում առանց այն էլ տնտեսապես քայքայված երկրները, այդ թվում և Հայաստանը։ 80-ական թվականներից դրանց վրա ավելացան նաև Լենկթեմուրի ավերիչ արշավանքները, ապա կարա-կոյունլու և ակ-կոյունլու ցեղերի մոտ այլ տիրապետության ժամանակաշրջանը։*

## Հայաստանը Լենկթեմուրի արշավանքների և Կարա-կոյունլուների ու Ակ-կոյունլուների տիրապետության շրջանում (XIV դարի վերջերից մինչև XV դարի վերջը)

Հայաստանը որպես Լենկթեմուրի պետության մի մաս.— *Լենկթեմուրը 1370 թվականին տեր է դառնում Ֆերգանայի և Մավերաննահրի մեծ մասին ու իրեն հռչակում անկախ էմիր։ Շուտով իր մայրաքաղաք Սամարղանդից նա տարբեր ուղղություններով կատարեց մի շարք արշավանքներ և արագ կերպով անչափ ընդարձակեց պետության սահմանները։ Այսպես, 1372 թ. գրավեց Խորեզմը, 1385—1386 թթ.՝ Պարսկաստանը, Անդրկովկասը և Միջագետքը։ 1391 և 1395 թթ. արշավանքներ կատարեց Ոսկե Հորդայի դեմ և նրանից գրավեց հսկայական շրջաններ։ 1400—1402 թթ. նվաճեց Փոքր Ասիան և պարտության մատնելով Եգիպտոսի մամլուքների սուլթանությանը, իր պետությանը ենթակա շրջաններ դարձրեց Կիլիկիան և Սիրիան։ Հայաստան նա արշավել է մի քանի անգամ՝ 1386 թ., 1387 թ., 1394 թ. և 1400 թ.։ Նա իր արշավանքների ընթացքում կատարում էր մինչ այդ չտեսնված ավերումներ։ Թեմուրի արշավանքների հետևանքով ամայացավ Հայաստանի մեծագույն մասը՝ Սյունիքը, Վասպուրականը, Արարատյան դաշտը և Արածանի ու Եփրատ գետերի շրջանում ընկած երկրները։ Թեմուրը չէր խնայում ծերերին ու մանուկներին և ո՛չ էլ անզեն մարդկանց ու կանանց։*

*Այդ ահավոր բռնակալը իր տիրապետության շրջանում (1370—1405) կազմեց մի հսկայական պետություն, որի սահմանները XV դարի սկզբին տարածվում էին Արալյան լճից մինչև Պարսից ծոց և Պամիրից մինչև Միջերկրական ծովի փոքրասիական ափերը։ Այդպիսի սահմաններում Լենկթեմուրի պետությունը, նախկին Իլխանությունից բացի, իր մեջ էր ընդգրկում նաև հսկայական տարածություններ Ջաղաթայների միջինասիական տիրապետություններից, Հնդկաստանի մի մասը (Ինդոս և Գանգես գետերի վերին հոսանքների վրա ընկած երկրները) և զգալի տարածություններ Ոսկե Հորդայի տիրապետություններից (Արալյան լճի ու Կասպից ծովի միջև ընկած շրջաններում և Հյուսիսային Կովկասում ու Դաղստանում), ինչպես և նրա գերիշխանությանն էին ենթարկվում մի քանի այլ երկրներ, որոնց թվում և Եգիպտոսի սուլթանությունը։ Վերջինիս տիրապետության տակ գտնվող Սիրիան և Կիլիկիան ուղղակի կցվեցին Թեմուրի պետությանը։*

*XIV դարի 90-ական թվականներին Թեմուրը վարչա-տերի-*

տորիալ բաժանման ենթարկեց իր լայնածավալ պետությունը։ Նա ներքին վարչական տեսակետից որևէ նոր կարգեր չհաստատեց։ Նախորդ նվաճողների՝ մոնղոլական խաների օրինակով Թեմուրը ևս իր պետությունը բաժանեց առանձին ընդարձակ երկրների, նրանց վրա կառավարիչ նշանակելով իրեն հավատարիմ մարդկանցից և զորապետներից։ Ըստ այդ բաժանման, Հայաստանն ու Հարավային Ադրբեջանը (Ատրպատական) միասին կազմեցին մի վարչական միավոր, որի կառավարիչը կոչվում էր էմիրապետ։ Էմիրապետի աթոռանիստը Հարավային Ադրբեջանի Թավրիզ քաղաքն էր։ Թեմուրը պահպանեց Օրբելյանների (Սյունիքում), Դոփյանների (Ծարում), Պռոշյանների (Վայոց ձորում և Շահապոնիքում), Արցախի, Գեղարքունիքի և այլ իշխանությունները։

Լենկթեմուրի կազմած պետությունը ունեցավ շատ կարճատև կյանք։ Թեմուրի մահից հետո (1405 թ.) նրա ընդարձակ պետությունը արագորեն քայքայվեց։ Նրան ենթարկված էմիրներն ու իշխանները ձգտեցին վերստին գրավել իրենց կորցրած երկրները։ Հայաստանը դարձավ մոնղոլական ժամանակաշրջանում հաստատված քոչվոր ցեղերի պայքարի թատերաբեմ։ Ֆեոդալական և իշխանության համար մղվող պայքարը, որ արտահայտվում էր անվերջ պատերազմներով, տևեց մոտ մեկ դար, որից հետո Հայաստանը դարձավ Օսմանյան և Սեֆևյան մեծ պետությունների պայքարի առարկա և ընկավ նրանց ծանր լծի տակ։

Թեմուրի մահից հետո Հայաստանում իրենց տիրապետությունը հաստատելու ձգտող քոչվոր ցեղերի մեջ ամենից հզորը նախ կարա-կոյունլու ցեղերն էին, ապա՝ ակ-կոյունլուները։ Դրանց կառավարող տոհմերը, որ կրում էին նույն անունները, հաջորդական կարգով (սկզբում Կարա-կոյունլուները, ապա՝ Ակ-կոյունլուները) իրենց տիրապետությունը հաստատեցին Հայաստանի խոշորագույն մասի վրա։

**Կարա-կոյունլուների պետությունը (1380—1469).**—Կարա-կոյունլուները Հայաստանում հաստատվել էին մոնղոլական տիրապետության շրջանում և Իլխանության քայքայումից հետո՝ 1380 թ. Սասունում իրենց հռչակեցին անկախ իշխողներ։ Կարա-կոյունլուների պետության հիմնադիր Կարա-Յուսուֆը ընդմիջումով իշխեց շուրջ 36 տարի (1380—1399 և 1405—1421)։

Կարա-Յուսուֆի, ինչպես և նրա հաջորդների իշխանությունն ուներ անկայուն քաղաքական պատմություն։ Անընդհատ պատերազմների հետևանքով նրա իշխանության սահմանները շատ արագ փոփոխվում էին։

Կարա-կոյունլուների պետությունը բաղկացած էր մի շարք իշ-

խանություններից՝ էմիրություններից, որոնք օժտված էին լայն արտոնություններով։ Հայաստանի տերիտորիայում եղած էմիրությունների մեջ նշանավոր էին Արճեշի, Խութի, Բաղեշի էմիրությունները։ Յուսուֆի օրոք այս պետության մայրաքաղաքը Վանն էր, իսկ նրա հաջորդների ժամանակ՝ Թավրիզը։

Յուսուֆի որդու և հաջորդի՝ Սկանդարի օրոք (1421—1437) Կարա-կոյունլուների պետությունն ավելի ընդարձակվեց։ Նա այդ ժամանակ իր մեջ էր ընդգրկում նախկին Տուրուբերանը, Աղձնիքն ու Բարձր Հայքն ամբողջությամբ և զանազան մասեր Վասպուրականից, Այրարատից, Սյունիքից, Չորրորդ Հայքից, Փոքր Հայքից, Ատրպատականից և նույնիսկ Փոքր Ասիայից։ Նա տեր էր դարձել Թավրիզին և այն դարձրել իր մայրաքաղաքը։ Սկանդարն իրեն հռչակել էր «Շահ-Արմեն», այսինքն՝ Հայաստանի թագավոր։ Կարա-կոյունլուների պետությունը է՛լ ավելի հզորացավ Սկանդարի եղբայր Ջհանշահի ժամանակ (1437—1467)։ Նրա օրոք Հայաստանում ընդհանուր առմամբ խաղաղություն էր տիրում։ Հին Հայաստանի մեծ մասը գտնվում էր Ջհանշահի տիրապետության տակ։ Սակայն հզորանում էին և նրա պետության թշնամիները՝ Թուրքիան ու Պարսկաստանը, ինչպես և ակ-կոյունլու ցեղերը։ Ուստի Ջհանշահը ձգտում էր Հայաստանում ստեղծել իր համար հուսալի հենարան՝ հանձինս հայ իշխանական տների մնացորդների։ Նա հայկական իշխանական տների շառավիղների ներկայացուցիչներից շատերին տվեց գավառական տանուտերերի՝ մելիքների իրավունքներ։ Մելիքները սկսեցին իշխել մեկ կամ ավելի գավառների վրա և հաճախ կոչվում էին իշխաններ։ Հայկական մելիքությունները գտնվում էին գլխավորապես Գեղամա երկրում, Վայոց ձորում, Սյունիքում, Արցախում և Գուգարքում։ Այդպիսի մանր իշխանություններ կային նաև Վասպուրականում, Ռշտունիքում և Մոկքում։ Բայց հարավային Հայաստանում առհասարակ շատ թե քիչ նշանավոր էր միայն Աղթամարի իշխանությունը։

Ջհանշահը Այրարատյան նահանգը դարձրեց մի առանձին կուսակալություն՝ Երևան կենտրոնով։

**Ակ-կոյունլուների պետությունը.**—Ակ-կոյունլուները Հայաստան էին ներխուժել Լենկթեմուրի արշավանքների ժամանակ։ Նրանց իշխանության հիմնադիրը համարվում է Կարա-Օսմանը։ Թեմուրից հետո նա իրեն հռչակում է անկախ և տեր է դառնում մի իշխանության, որը տարածվում էր Սեբաստիայի շրջանում և Եվդոկիայում։ Շուտով նա գրավում և իր իշխանությանն է միացնում Դիարբեքիրը (Ամիդ), Դամասկոսը, Մարդինը և Հալեպը՝ ստեղծելով բավական ընդարձակ մի պետություն, որի մայրաքաղաքը դար-

ձավ Դիարբեքիրը։ Ակ-կոյունլու ցեղապետերի իշխանությանն էին ենթարկված նաև Հին Հայաստանի մասերը կազմող Ծոփքի, Աղձնիքի և Տուրուբերանի առանձին գավառներ։

Ակ-կոյունլուների պետությունը Հասան Բեյի (կամ Ուզուն Հասան) օրոք (1467—1477) հասավ իր հզորության գագաթնակետին։ Ուզուն Հասանը կարճ ժամանակամիջոցում գրավեց Կարա-կոյունլուների ամբողջ պետությունը։ Սակայն Ուզուն Հասանի հաջողությունները երկարատև չեղան։ 1473 թ. Դերջանում նա օսմանյան թուրքերից պարտություն կրեց և փախավ Պարսկաստան, որտեղ և մահացավ 1477 թ.։ Օսմանյան Թուրքիան այդ ճակատամարտով իր տիրապետությունն առաջին անգամ հաստատեց Արևմտյան Հայաստանի մի քանի գավառների վրա։

Ուզուն Հասանի լայնածավալ պետությունը, որի սահմանները տարածվում էին Հալիս գետի մոտերքից մինչև Պարսկաստանի խորքերը, նրա մահից հետո կարճ ժամանակամիջոցում քայքայվեց։ Շուտով Հայաստանը դարձավ Օսմանյան սուլթանության և Սեֆևյան Պարսկաստանի հարատև պատերազմների թատերաբեմ։

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԱՆԿՈՒՄԸ XIII ԴԱՐԻ 30—40-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XV ԴԱՐԻ ՎԵՐՋՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Նշված ժամանակաշրջանում Հայաստանի տնտեսական կյանքն անկում էր ապրում, որն սկսվեց մոնղոլական նվաճումների ժամանակներից և առանց ընդհատվելու շարունակվեց հետագա դարերում։ Անկումը վերաբերում էր երկրի տնտեսության բոլոր ճյուղերին՝ գյուղատնտեսությանը, արհեստագործությանը, առևտրին, լեռնագործությանը, ինչպես և քաղաքային կյանքին։ Երբեմն կարճ ժամանակով երկրի այս կամ այն անկյունում և առանձին քաղաքներում տեղի է ունեցել տնտեսական կյանքի մասնակի աշխուժացում, սակայն դա անցողիկ է եղել և որևէ չափով զգալի փոփոխություն չի մտցրել երկրի տնտեսական ընդհանուր կյանքում։

Այդ անկումը որևէ չափով չմեղմացրին նաև առանձին բռնակալների կողմից (Ղազան-խան, Ջհանշահ և այլն) ձեռնարկված միջոցառումները։ Եվ չէին էլ կարող մեղմացնել, որովհետև՝ ա) այդ միջոցառումները վերաբերում էին տնտեսության առանձին վերցրած այս կամ այն ճյուղին միայն (գլխավորապես առևտրին), հետևապես դրանք միակողմանի էին. տնտեսության որևէ ճյուղի հաստատուն զարգացումը պայմանավորված է նրա մյուս ճյուղերի

միաժամանակյա զարգացմամբ, բ) առանձին բնակավայրերի միջև առևտրական կապերի զարգացման հետ առաջացած նոր քաղաքային միջոցառումները հետապնդում էին ոչ թե տնտեսության զարգացումը առհասարակ, այլ միայն պետական եկամուտների ավելացումը, գ) դրանք մակերեսային էին, չէին վերացնում տնտեսության անկման հիմնական դրդապատճառներից ոչ մեկը։

Այդ շրջանում Հայաստանի տնտեսության անկումն ուներ մի քանի պատճառներ։

Տնտեսական անկման **առաջին** պատճառը պետք է համարել այն, որ մոնղոլներն ու նրանց հաջորդած մյուս նվաճողները մի շարք ավերիչ արշավանքներ կատարելուց և երկրի հիմնական մասն ավերելուց հետո այստեղ հաստատեցին «սիստեմատիկ տեռորի» և «մասսայական ջարդերի» ռեժիմ։

Մոնղոլական իշխանների, էմիրների, ինչպես և Լենկթեմուրի, Կարա-կոյունլուների ու Ակ-կոյունլուների կազմակերպած մասսայական ջարդերի, նրանց մղած հարատև պատերազմների և գերիշխանության համար ներքին պայքարի հետևանքով Հայաստանում ոչնչացան հարյուր հազարավոր բնակիչներ, հարկադրական արտագաղթը մասսայական երևույթ էր այդ դարերում, գերեվարությունը հասնում էր մեծ չափերի։ Ամայացան Հայաստանի բազմաթիվ գավառներ, բնակչության խտությունը փոքրացավ, նախորդ ժամանակաշրջանում մշակվող արգավանդ դաշտերի մեծագույն մասը վերածվեց անպտուղ տարածության։

**Երկրորդ**. նվաճողներն իրենց տիրապետությունը հաստատուն դարձնելու նպատակով, տեռորի և մասսայական ջարդերի հետ միասին, երկրի տերիտորիայում բնակեցնում էին քոչվորական զանազան ցեղեր, որոնք իրենց տնտեսական զարգացմամբ բնիկ բնակիչներից անհամեմատ հետ էին և զբաղվում էին գրեթե միայն քոչվորական անասնապահությամբ։ Քոչվոր անասնապահները նախկինում երկրագործությամբ հայտնի Հայաստանի ընդարձակ դաշտերը դարձրին արոտավայրեր, որի հետևանքով խափանվեց ու ոչնչացավ նաև հնագույն ժամանակներից ի վեր ստեղծված արհեստական ոռոգման ցանցը։ Այլ կերպ ասած, եկվոր բնակիչները՝ լինելով քոչվոր անասնապահներ և տնտեսական զարգացման տեսակետից գտնվելով ցածր մակարդակի վրա, դարձան Հայաստանի տնտեսության հետադիմության պատճառներից մեկը։

Հայաստանի տնտեսության անկման **երրորդ** հիմնական պատճառը դա հենց մոնղոլների և նրանց հաջորդների կիրառած տնտեսական տիրապետության ձևն էր, որն արտահայտվում էր ծանր հարկային քաղաքականությամբ։

Նրանք Հայաստանում սահմանել էին բազմաթիվ ծանր հարկեր

և տուրքեր։ Մոնղոլական հարկերը բազմաթիվ էին. դրանցից առանձնապես շատ ծանր էին «մ ա լ ը» (հողահարկը, որը կազմում էր նկամտի մինչև կեսը), գլխահարկը, որը վերցվում էր 10—60 տարեկան արական սեռի բնակիչներից՝ բացառությամբ հոգևորականների, «կ ա լ ա ն ը» (զինապարտության տուրք կամ զինվորություն անելու փոխարեն տրվող տուրքն էր), «թաղար», «ղփչուր», «տամղայ», եկեղեցուն տրվող հարկերը («պտուղը»), ֆեոդալների, եկեղեցու ու մոնղոլական պետության համար կատարվող կոռն ու զանազան պարհակները և այլն։

Հարկահավաքները սովորաբար շրջում էին զինված ջոկատներով. տանջանքներն ու սպանությունները, կաշառքն ու կամայականությունները դարձել էին հարկերի հավաքման մշտական ուղեկիցներ։

Հարկերի ու տուրքերի այդպիսի թալանչիական սիստեմը հյուծեց Հայաստանը, գրեթե սպառեց նրա տնտեսական հնարավորությունները և պատճառ դարձավ տնտեսական կյանքի խիստ անկման։

Հայաստանի տնտեսության վրա բացասական ազդեցություն ունեցավ նաև այն, որ Կիլիկիայի հայկական թագավորության անկմամբ Արևելքի երկրների առևտուրը կորցրեց իր նշանակությունը, իսկ թուրքերի կողմից Կոստանդնուպոլսի գրավմամբ (1453 թ.) Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի վրայով անցնող ճանապարհները առհասարակ դադարեցին տնտեսական զգալի դեր խաղալուց։

## Գյուղատնտեսությունը

XIII—XV դարերի Հայաստանում խոշոր հողատերերի ազգային կազմը ենթարկվում է արմատական փոփոխության։ Հայ խոշոր ֆեոդալական տները ոչնչացվում են, իսկ նրանց տեղ հանդես են գալիս մոնղոլ-թաթարական և թուրքական զորապետներն ու ամիրվականները, որոնք սկսեցին խլել հայ ֆեոդալներից խլված կալվածքների վրա՝ սկզբում պայմանական կարգով, իսկ հետագայում հետզհետե դառնալով ժառանգական ֆեոդալներ։ Հայկական ֆեոդալական տների մի մասը շարունակում է պահպանել իր մենաշնորհումները, բայց ավելի փոքր մասշտաբի կալվածներով և տնտեսությամբ։

Բնակչության նոսրացման և քոչվորական ցեղերի անասնապահական զբաղմունքների հետևանքով խիստ կերպով կրճատվում են ցանքատարածությունները։ Մեր պատմագիրների և օտար ճա-

նապարհորդների նկարագրություններից պարզ երևում է որ XIII—XV դարերում Հայաստանում բազմաթիվ գավառներ և ամբողջական շրջաններ վեր էին ածվել ամայի տարածությունների, որոնք ծառայում էին քոչվորական անասնապահության համար որպես արոտավայրեր։ Ցանքատարածությունը առանձնապես մեծ չափով կրճատվել էր Արաքսի հովտում, որովհետև այստեղ առանց արհեստական ոռոգման գրեթե անհնար էր որևէ կուլտուրայի մշակումը, իսկ նրա բարեկարգ ոռոգման ցանցը քոչվորական անասնապահության հետևանքով խափանվել էր։ Խիստ կերպով կրճատվել էին տեխնիկական կուլտուրաների ցանքսերն ու այգիները։

Երկրագործության հետադիմությունն արտահայտվում էր նաև մշակման եղանակների և գործիքների գծով։ Եթե IX—XIII դարերում Հայաստանում հիմնականում կիրառվում էր եռադաշտը, որն այն ժամանակվա համար գյուղատնտեսության զարգացման կարևոր հատկանիշներից մեկն էր, ապա XIV—XV դարերում այն մղվում է հետին պլանի վրա. քոչվորական անասնապահությունը խանգարում էր հողամասերի երեք մասերի բաժանումն ու կանոնավոր եռադաշտ կիրառելը։

Ցանքատարածությունների կրճատման, կանոնավոր ցանքաշրջանառության բացակայության, ոռոգման ջրանցքների խափանման և պատերազմների ավերումների հետևանքով, որոնց վրա գումարվում էին նաև երաշտը, կարկուտը, ցրտահարությունը և մորեխը, XIV—XV դդ. Հայաստանում հաճախ լինում էին անբերրիության և մասսայական սովի տարիներ։

Նախանձելի վիճակում չէր գտնվում նաև անասնապահությունը։ Քոչվորական անասնապահությունը խանգարում էր բնիկ ժողովրդի կիսաքոչվորական և նստակյաց անասնապահությանը։ Քոչվորները, լինելով մեծ մասամբ ժամանակավոր բնակիչներ, անխնայորեն էին օգտվում արոտավայրերից, դրա պատճառով էլ լեռնային շատ արոտավայրեր միանգամից զրկվում էին խոտածածկից և հեղեղների հետևանքով վեր էին ածվում լերկ ժայռերի։ Նրանք անխնա էին նաև խոտհարքների նկատմամբ ուշ գարնանը՝ ձմեռանոց բարձրանալու ժամանակ։ Իսկ քոչվորական անասնապահությունը չէր կարող հաստատուն զարգացում ունենալ, որովհետև նրա վիճակը ամբողջությամբ կախված էր բնության քմահաճույքից։

Լեռնային մի քանի շրջաններում, որտեղ տեղացիներից բացի մեծ թվով բնակիչներ էին կուտակվել նաև հարթավայրային շրջաններից, առկա էր տնտեսության որոշ աշխուժացում։ Այդպիսի շրջաններից ամենաընդարձակը և նշանավորը Սյունիքն էր։ Այստեղ

մոնղոլական տիրապետության շրջանում տնտեսության զարգացումը դանդաղեց, բայց կանգ չառավ և անկում չապրեց։ Սյունիքի տնտեսական զարգացման համար կային մի քանի նախադրյալներ։ Դրանցից ամենակարևորն այն էր, որ Սյունիքի Օրբելյան իշխանները, որոնք իշխում էին Վայոց ձորում և այժմյան Զանգեզուրի տերիտորիան կազմող շրջաններում, կարողացան իրենց իշխանությունը 1251 թ.՝ մեծ խանի հատուկ «յարլըխով» (հրովարտակով)՝ դարձնել «ինջու» (տերունական) և, դրանով իսկ, փրկել այն մոնղոլական հարկահանների ու կառավարիչների կամայականություններից։ Սյունիքի տնտեսական կյանքի աշխուժացմանը նպաստում էին նաև նրա անմատչելի աշխարհագրական դիրքն ու ընդերքում եղած գունավոր մետաղների (գլխավորապես պղնձի) հարուստ հանքավայրերը, որոնց մասին նշվեց նախորդ ժամանակաշրջանի վերաբերյալ խոսելիս։ Մոնղոլական արշավանքներից հետո, որոնց հետևանքով խիստ տուժել էր նաև Սյունիքը, այստեղ գյուղատնտեսության ճյուղերի հետ միասին աշխուժանում են հանքագործությունն ու առևտուրը։ Այդ ժամանակաշրջանում շահագործման էին ենթարկվում Աճանանի պղնձի հարուստ հանքերը (այժմյան Ղափանի շրջանում) և գործում էր Քարխանա կոչված պղնձաձուլարանը[1]։

Սակայն Սյունիքի տնտեսության զարգացումը տևական չեղավ։ XIV դարի վերջերին Լենկթեմուրի հրոսակները մտնելով Սյունիք, ավերեցին նրա ավաններն ու գյուղերը, կողոպտեցին հարուստ վանքերը։ Դա եղավ Սյունիքի տնտեսական դրության արագ հետադիմության սկիզբը։ Թեմուրի հաջորդների և Կարա-կոյունլուների ու Ակ-կոյունլուների տիրապետության շրջանում շարունակվեց նրա տնտեսական անկումը։ Այնուամենայնիվ, Սյունիքում պահպանվեցին մի քանի գավառապետություններ՝ մելիքություններ, որոնք քաղաքական զգալի դեր խաղացին հետագա դարերում։

Սյունիքից բացի մոնղոլական տիրապետության շրջանում տնտեսական որոշ աշխուժացում կար նաև Մեծ Հայք վիլայեթի Մուշի, Խլաթի և Արճեշի շրջաններում, ինչպես և Երզնկայի ու Էրզրումի գավառներում։ Երզնկայի գավառում գոյություն ուներ հայկական մի բավական ուժեղ իշխանություն, որը պահպանվեց նաև Լենկթեմուրի տիրապետության շրջանում։

Նշված շրջաններում ու գավառներում տնտեսական զարգացումն աննշան էր։ Այդ զարգացումն ընդգրկում է ոչ թե ամբողջա-

---

[1] Դրա ավերակները, որ մինչև օրս էլ նշմարվում են, գտնվում են Ղափան քաղաքի մոտ, տեղացիներն այն անվանում են Քյարխանա։

կան շրջաններ և գավառներ, այլ՝ տարանցիկ ճանապարհի վրա գտնվող առանձին քաղաքներ և ավաններ։ Սյունիքի տնտեսության պես, այս շրջաններում ևս տնտեսական մասնակի աշխուժացումը երկարատև չեղավ և Լենկթեմուրի արշավանքներով սկսվեց նրանց տնտեսական անկումը։

## Արհեստները և լեռնային արդյունագործությունը

Արհեստները, որ նախորդ ժամանակաշրջանում հնարավոր բարձր զարգացման էին հասել, XIII—XV դարերում թե՛ քանակապես և թե՛ իրենց արտադրանքի ծավալով խիստ կերպով հետադիմում են։ Քաղաքային արհեստների հետադիմությունը, բացի տնտեսության ընդհանուր անկման պատճառներից, հետևանք էր նաև այն բանի, որ այդ դարերում, նախորդ ժամանակաշրջանի հետ համեմատած, տնտեսության փակ նատուրալ բնույթը ավելի էր խորացել, ներքին առևտուրն ու ապրանքափոխանակությունը հասել էին չնչին չափերի, գյուղացին իր ծայրահեղ աղքատության պատճառով չէր կարողանում գնել քաղաքային արհեստավորական արտադրանքները, գյուղատնտեսության և լեռնային արդյունագործության անկման պատճառով քաղաքային արհեստագործության հումքային բազան անչափ փոքրացել էր։ Բացի դրանից, անհրաժեշտ է նշել նաև այն, որ արտաքին նվաճողներն ավելի մեծ չափերով գերեվարում էին հատկապես արհեստավորներին և բռնի ուժով նրանց տանում իրենց աթոռանիստ մայրաքաղաքները ու պետության կենտրոնական շրջանները։ Հայտնի է, որ Լենկթեմուրը իր արշավանքների ժամանակ ավերելով Հայաստանի և Վրաստանի բազմաթիվ քաղաքներ՝ գերեվարեց հայ և վրացի բազմահազար արհեստավորներ (ոսկերիչներ, արծաթագործներ, զինագործներ, քարտաշներ, որմնադիրներ և այլն) և զինվորական հատուկ ջոկատների հսկողությամբ ուղարկեց իր պետության մայրաքաղաքը՝ Սամարղանդ։ Նույն կերպ էին վարվում նաև մոնղոլական խաները։ Աննպաստ պայմանների հետևանքով արհեստավորները մեծ խմբերով թողնում էին իրենց հայրենի երկիրն ու հարազատ քաղաքը և բռնում արտագաղթի ուղին։

Զգալի փոփոխություններ է կրում նաև արհեստների կազմը։ Երկրում քաղաքային արհեստներից շարունակում են շատ թե քիչ կարևոր դեր խաղալ գերազանցապես միայն այն արհեստները, որոնք անմիջականորեն կապված էին տարանցիկ առևտրի հետ և սպասարկում էին դրան։ Դրանց թվին էին պատկանում՝ դարբնու-

*թյունը, պայտարությունը, թամբագործությունը, մանածագործությունը, կաշեգործությունը, զորգագործությունը, ներկագործությունը և այլն, որոնք հիմնականում կենտրոնացած էին քարավանային տարանցիկ առևտրի ճանապարհների վրա գտնվող քաղաքներում՝ Վանում, Արճեշում, Մանազկերտում, Էրզրումում, Երզնկայում, Մուֆարղինում։*

*Գյուղական արհեստները ևս հետագիմեցին, սակայն սրանք XIII—XV դդ. երկրի տնտեսության մեջ անհամեմատ ավելի խոշոր դեր էին խաղում, քան քաղաքային արհեստները։ Եվ քանի որ գյուղական արհեստը իր կատարելությամբ քաղաքայինից ցածր էր, ուստի նշված դարերում արհեստների տեխնիկական մակարդակը, նախորդ ժամանակաշրջանի հետ համեմատած, առհասարակ ցածր էր։*

*Մոնղոլները (հավանաբար նաև նրանց մյուս հաջորդները) երկրի ընդերքի հարստությունները հայտարարել էին պետության սեփականություն։ Այսպես, օրինակ՝ Կողբի աղահանքերը ուղղակի գտնվում էին մոնղոլական խաների իրավասության տակ, որոնք կապալով էին տալիս դրանց շահագործումը։ Դրանից բացի, շահագործման էին ենթարկվում նաև Նախիջևանի ու Կաղզվանի աղահանքերը։*

## Առևտուրը և քաղաքները

*Մոնղոլական արշավանքների ընթացքում անբուժելի ծանր հարված ստացան Հայաստանի՝ նախորդ շրջանում արհեստագործության և առևտրի կենտրոններ դարձած քաղաքները*[1]*։*

*Մոնղոլները Հայաստանի քաղաքները գրավեցին և ավերեցին հետևյալ հաջորդականությամբ՝ 1236 թ. Անին, Կարսը, Դվինը, Լոռին և այլն, այսինքն՝ Հյուսիս-արևելյան Հայաստանի քաղաքները, իսկ 1242—1245 թթ.՝ Էրզրումը, Երզնկան, Խլաթը, Արճեշը, Մանազկերտը, Վանը, Մուշը։*

*50-ական թվականներից, երբ հիմնականում ավարտվում են մոնղոլական արշավանքները, Հայաստանի տնտեսական կյանքն սկսում է մասնակիորեն վերականգնվել։*

*Մոնղոլական մեծ խաները առևտրից ստացվող հսկայական եկամուտների շահը հաշվի առնելով, ոչ միայն խրախուսում էին առևտուրը, այլև սերտ կապեր էին հաստատում խոշոր վաճառա-*

[1] *Տե՛ս Հ.* Մանանդյան, *Քննական պատմություն հայ ժող. պատմ., հ. Գ, էջ 257։*

*կանների հետ և նրանց տալիս մեծ արտոնություններ։ Դեռևս Ջարմաղանի և Բաչու-Նոյանի արշավանքների ընթացքում (1236 և 1242—1245 թթ.) վաճառականներն ունեին մեծ իրավունքներ, նրանց քարավանները ազատ երթևեկություն ունեին տարբեր ուղղությամբ, մոնղոլական զորապետներից ոչ ոք իրավունք չուներ նրանց առևտուրը խափանելու կամ որևէ վնաս պատճառելու։*

*Մոնղոլների տիրապետության շրջանում Արևելքն Արևմուտքի հետ կապող երկու գլխավոր ճանապարհ կար։ Դրանցից մեկը, դուրս գալով Կարակորումից, Թուրքեստանի և Խորեզմի քաղաքներով գալիս էր Վոլգայի վրա գտնվող Ոսկե Հորդայի մայրաքաղաք Սարայ. այստեղ նա ճյուղավորվում էր երկու նշանավոր ճանապարհների, որոնցից մեկը տանում էր դեպի Սև ծովի հյուսիսի առափնյա քաղաքները, իսկ երկրորդը՝ Բալթիականի նավահանգիստները։*

*Մյուս գլխավոր ուղին, որ Միջին Ասիայում միացած էր վերոհիշյալ ճանապարհին, անցնում էր Պարսկաստանի, Հարավային Ադրբեջանի և Հայաստանի վրայով դեպի Տրապիզոն կամ Փոքր Ասիա՝ գլխավորապես Կիլիկիայի հայկական թագավորության հռչակավոր նավահանգիստ Այաս։*

*Արևելքն Արևմուտքի հետ միացնող հարավային ճանապարհները մոնղոլների ժամանակ կորցրել էին իրենց նշանակությունը, որովհետև Սիրիան (Ասորիք), որ գտնվում էր Եգիպտոսի մամլուքների տիրապետության տակ, դարձել էր մոնղոլների և մամլուքների միջև մղվող երկարատև պատերազմների թատերաբեմ։ Այդ պատճառով էլ զգալի չափով բարձրացել էր Հարավային Ադրբեջանի և Հայաստանի վրայով անցնող ճանապարհի առևտրա-տնտեսական նշանակությունը։ Այս ճանապարհի վրա գտնվող Թավրիզ քաղաքը, որը իլխանների աթոռանիստն էր, դառնում է Մերձավոր Արևելքի առևտրի խոշորագույն կենտրոններից մեկը։ Այն հատկապես խիստ ընդարձակվեց և զարգացավ մանավանդ Ղազան խանի ժամանակ (1295—1304)[1]։ Իլխանների տիրապետության ժամանակ Վենետիկի և Ջենովայի վաճառականներն այստեղ ունեին դրասենյակներ, պահեստներ և այլ հարմարություններ։*

*Արևելքից եկող այս ճանապարհը մինչև Խոյ (Հեր) ձգվում էր մի գծով, իսկ այստեղ բաժանվում էր երկու ճանապարհների, որոնք ձգվում-անցնում էին Հայաստանով։ Նրանցից մեկը Խոյի, Վանի, Բերկրիի, Արճեշի, Մանազկերտի, Խնուսի, Էրզրումի և Բաբերդի (Բայբերդ) վրայով գնում էր Տրապիզոն։ Կարինում այս ճանա-*

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժող. պատմ., հ. Գ, էջ 26։

պարհից բաժանվում էր մի այլ ուղի, որը Երզնկայի և Սեբաստիայի ու Սսի վրայով տանում էր դեպի Այաս։ Երկրորդը՝ Արճեշում նրանից բաժանվում էր և Խլաթի, Բաղեշի, Մուֆարղինի (Նփրկերտ), Դիարբեքիրի (Ամիդ), Խարբերդի և Մելիտինեի (Մալաթիա) վրայով հասնում Կիլիկիայի հայկական թագավորության Մարաշ քաղաքը, ապա՝ Այաս։ Խոյից մինչև Էրզրում կար նաև մի այլ ճանապարհ, որն անցնում էր Խոյ—Բագավան (այժմ՝ Ուչքիլիսե՝ Ալաշկերտի դաշտում)—Բոլորպահակ (այժմ՝ Հասան-կալա)—Էրզրում ուղղությամբ։

Նախորդ ժամանակաշրջանում Հյուսիս-արևելյան Հայաստանով անցնող ճանապարհը, որի վրա գտնվում էին Դվին, Անի, Կարս խոշոր քաղաքները, կորցրել էր իր նշանակությունը։ Նրա փոխարեն ավելի բանուկ էին դարձել վերոհիշյալ՝ ավելի հարավային ճանապարհները։

Տարանցիկ քարավանային առևտուրը շատ քիչ դեր ուներ Հայաստանում։ Վերջինիս դերը մեծ մասամբ սահմանափակվում էր առևտրի քարավանների սպասարկումով։

Բայց և այնպես իլխանների տիրապետության շրջանում կատարվող տարանցիկ առևտուրը զգալի չափով նպաստում էր այն առանձին քաղաքների ու շրջանների տնտեսական զարգացմանը, որոնք ընկած էին առևտրի գլխավոր ճանապարհների վրա։ Դրանց թվին էին պատկանում՝ Վանը, Արճեշը, Մանազկերտը, Մուշը և Մուֆարղինը, իսկ Արևմտյան Եփրատի հովտում՝ Էրզրումն ու Երզնկան։

Մարկո Պոլոյի հիշատակության համաձայն այդ ժամանակ Հայաստանի ամենանշանավոր քաղաքը եղել է Երզնկան, այստեղ արտադրել են «աշխարհի լավագույն բեհեզները»։ Նա նմանապես նշում է այն մասին, որ քաղաքի բաղնիքների ջուրը բավական տաք է եղել և բերված ոչ հեռու գտնվող մի վայրից։ Մարկո Պոլոն Երզնկայից բացի հիշատակում է նաև Էրզրումի, Արճեշի, Մուշի և Մարդինի մասին։ Նա նշում է, որ Մուշ և Մարդին քաղաքների շրջակայքում «արտադրվում է մեծ քանակությամբ բամբակ, որից շինում են մեծ մասամբ բեհեզ և այլ կտորեղեն։ Ժողովուրդը արհեստավոր և առևտրական է և ամենքը ենթարկվում են թաթար թագավորին»[1]։ Տնտեսական աշխուժացումը զգալի էր նաև Վան ու Մանազկերտ քաղաքներում։

Հայաստանի քաղաքներում հայերից բացի բնակվում էին նաև

[1] „Путешествия Марко Поло“, Записки русск. географ. общ. по отд. этногр., т. XXVI, СПБ, 1902:

պարսիկներ, քրդեր, սելջուկ-թուրքեր և այլք։ Վաճառականները (ինչպես և հոգևորականները)՝ արտոնված լինելով իլխանների կողմից և մասնակցելով տարանցիկ առևտրին ու երկրի ներսում կատարելով կապալառուական խոշոր գործարքներ, իրենց ձեռքում կուտակել էին հսկայական հարստություններ և հողային տարածություններ։

Այս ժամանակաշրջանի խոշոր վաճառական-կապալառուներից էին Ումեկի տունը, Սահմադինը, Քարիմանդինը և ուրիշներ։

Վաճառականները, հովանավորվելով Հուլավուականների կողմից, տարանցիկ առևտուր կատարելուց բացի բարձր դիրք էին գրավում կառավարության ապարատում։ Նրանք հետզհետե մեծ դրամագլխի տեր դառնալու հետ միասին հայ անանկացող ազնվականներից էժան գնով գնում էին ոչ միայն առանձին կալվածքներ ու գյուղեր, այլև՝ ամբողջական քաղաքներ, շրջաններ և անգամ գավառներ։

Տարանցիկ առևտուրը խրախուսելու համար՝ Հուլավուն Թավրիզ—Տրապիզոն ճանապարհի վրա՝ Ծաղկանց (Ալա-դաղ) լեռների ստորոտին տարածվող Դառան դաշտում, հպատակ ժողովուրդների հարկադիր աշխատանքի միջոցով նույնիսկ կառուցել է ալիս մի քաղաք, որը պետք է դառնար նշված ճանապարհի կարևոր կայաններից և առևտրի կենտրոններից մեկը։

Հուլավուի կառուցած այդ քաղաքը, որը նրան ծառայում էր իբրև ամառանոց, ունեցել է կարճատև կյանք, Իլխանության քայքայման և տարանցիկ առևտրի անկման հետ միասին դադարել է գոյություն ունենալուց[1]։ Ալադաղը (այդպես էր կոչվում նորակառույց քաղաքը) ունեցել է բազմալեզու բնակչություն, այսինքն՝ այնտեղ բնակություն են հաստատել տարբեր ժողովուրդներին պատկանող բնակիչներ։ Դառան դաշտը, որտեղ գտնվում էր այդ քաղաքը, հավանաբար համապատասխանում է հնում Ջիրավ կոչված դաշտին, որը կազմում էր այժմյան Ալաշկերտի հարավ-արևելյան մասը։

Հուլավուականների տիրապետության ժամանակաշրջանում՝ գլխավորապես XIII դարում, կատարվել են նաև հիշատակության արժանի այլ շինարարական աշխատանքներ։ Այդ դարերում են կառուցվել Գեղարդավանքի քարափոր մեծ տաճարը, Հաղպատի զանգակատունը, խորանշատը և միջնադարյան Հայաստանի նշանավոր համալսարան Գլաձորը։

Սակայն իլխանների տիրապետության ժամանակաշրջանում

[1] Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժող. պատմ., Գ, էջ 268։

*որոշ քաղաքների և առանձին շրջանների տնտեսական աշխուժացումը, որ հետևանք էր նախորդ ժամանակաշրջանի տնտեսական զարգացման մեծ պոտենցիայի և մասամբ էլ տարանցիկ առևտրի, երկարատև չեղավ և չէր էլ կարող լինել։ Մոնղոլական ծանր հարկապահանջության հետևանքով երկրի տնտեսական միջոցներն արագությամբ սպառվեցին։ Աշխատավոր բնակչությունը XIV դարի հենց սկզբից մասսաներով դիմում էր արտագաղթի, երկիրը զրկվում էր երկրագործ և արհեստավոր բնակիչներից։ Նրանց փոխարեն Հայաստան էին ներխուժում արևելյան քոչվորական այլևայլ ցեղեր։ XIV դարում՝ Իլխանության տրոհման հետևանքով տարանցիկ առևտուրը ստանում է մեծ հարված. Այասից մինչև Թավրիզ առևտրականները ստիպված էին լինում մի քանի տասնյակ տեղ մաքս վճարել։ Տրապիզոնի վրայով կատարվող առևտուրը գրեթե դադարում է նշանակալի դեր խաղալուց։*

*XIV դարում աստիճանաբար դատարկվում էին մանավանդ Հյուսիս-արևելյան Հայաստանի քաղաքները։ Անին վեր էր ածվել հասարակ գյուղի։ Դվինը դադարել էր գոյություն ունենալուց։ Իսկ Հարավային և Արևմտյան Հայաստանի քաղաքները՝ Վանը, Էրզրումը, Արճեշը, Մանազկերտը, Մուշը, Մուֆարղինը և Երզնկան կապված էին իր գոյությունը դեռևս պահպանող Կիլիկիայի հայկական թագավորության առևտրական կենտրոնների, ինչպես և վերջինների միջոցով՝ Արևմուտքի հետ։ Կիլիկիայի հայկական թագավորությունը մամլուքների կողմից գրավվելուց հետո (1375 թ.), նրանք ևս զրկվեցին տարանցիկ առևտրի կապերից։*

*Լենկթեմուրի, Կարա-կոյունլուների և Ակ-կոյունլուների տիրապետության շրջանում, չնայած ավերումներին, գերեվարումներին, գլխավորապես տարանցիկ առևտրի շնորհիվ իրենց գոյությունը մի կերպ պահպանել էին Էրզրումը, Երզնկան, Կարսը, Մուշը, Վանը, Խոյը և այլն։ Կարա-կոյունլուների ժամանակ Երևանը, դառնալով վարչական կենտրոն (1440 թվականից), սկսում է բարձրանալ։ Նրա զարգացմանը, վարչական կենտրոն լինելուց բացի, նպաստում էին նաև աշխարհագրական հարմար դիրքն ու առևտրական կապերը։ Այդ ժամանակաշրջանում են առաջանում Ջուղա փոքրիկ քաղաքը և Ագուլիս ու Գավառ (այժմյան Կամո քաղաքը) առևտրական ավանները։*

### 3. XIII—XV ԴԱՐԵՐԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*XIII—XV դդ. ընթացքում Հայաստանի բնակչության թիվը մեծ չափերով նվազել է, նրա էթնիկական կազմը ենթարկվել է խոշոր*

փոփոխությունների։ Տեղի են ունեցել բնակչության զանգվածային տեղաշարժեր։

Հյուսիս-արևելյան Հայաստանը մոնղոլների արշավանքների ժամանակ ունեցել է շուրջ երկու միլիոն գյուղական բնակչություն՝ առանց քաղաքային արհեստավորների և առևտրականների, որոնք այդ ժամանակներում կազմել են զգալի թիվ։

Հարավային և Արևմտյան Հայաստանի (չհաշված Հայկական Տավրոսից հարավ ընկած մի քանի շրջաններ)՝ «Մեծ Հայք» վիլայեթի գյուղական բնակչության թիվը այդ նույն ժամանակներում (XIII դ. կեսերին) ըստ անուղղակի աղբյուրների հասել էր շուրջ երկու և կես միլիոնի։

Այսպիսով, կարելի է ենթադրել, որ Հայաստանի գյուղական բնակչության (առանց Կիլիկիայի բնակչության) թիվը XIII դարի կեսերին՝ մոնղոլների արշավանքների նախօրյակին, հասել է մոտ չորս և կես միլիոնի։ Քաղաքային բնակչությունն էլ ընդունելով մոտ կես միլիոն, որ շատ հավանական է, կստացվի, որ Հայաստանը մոնղոլների արշավանքների շրջանում ունեցել է շուրջ հինգ միլիոն բնակիչ։

Սակայն բնակչության թիվը սկսում է աստիճանաբար նվազել դեռևս մոնղոլների արշավանքների ժամանակներից։ Հայաստանի բնակչության թվի նվազումը մեծ չափեր է ընդունում հատկապես XIV դարից և շարունակվում է հաջորդ դարի ընթացքում։ XVI—XVII դարերի եվրոպական ճանապարհորդներն իրենց ուղեգրություններում պատմում են, որ Հայաստանում ամբողջական շրջաններ և գավառներ իրենք անմարդաբնակ և ամայի են տեսել։

Բնակչության թվի խիստ կրճատումը պետք է բացատրել՝ բնական աճի համար տնտեսական բազայի բացակայությամբ, զանգվածային կոտորածներով ու ավերումներով, անբերրիությունների հետևանքով առաջացած սովահարությամբ ու համաճարակներով, արտագաղթով և այլն։

Երկրում ստեղծված ծանր պայմանների հետևանքով, որոնց վրա XIV դարի սկզբներին գումարվեցին նաև կրոնական անտանելի հալածանքները, աշխատավոր բնակչությունը զանգվածներով բռնում է արտագաղթի ուղին։ Սկզբնական շրջանում գաղթում էին գլխավորապես քաղաքային բնակիչները՝ արհեստավորները և մանր առևտրականները, ապա՝ նաև գյուղացիները։ Սոցիալական-դասային կազմի տեսակետից XIII—XV դդ. արտագաղթողները սելջուկյան տիրապետության ժամանակաշրջանի արտագաղթողներից տարբերվում էին նրանով, որ նրանք բաղկացած էին գրեթե միայն գյուղացիներից, արհեստավորներից և մանր առևտրականներից։

Մինչդեռ սելջուկյան տիրապետության շրջանում և նրան նախորդող բյուզանդական զավթումների տարիներին, քանի որ Բյուզանդիան հայ ֆեոդալներին Փոքր Ասիայում և Կիլիկիայում կալվածքներ էր տալիս ու ապահովում նրանց ֆեոդալական առանձնաշնորհումները, արտագաղթ էին կատարում նաև ազնվականները՝ իրենց զորքերով և հարկատու ու կախյալ բնակիչներով։

XIII—XV դդ. Հայաստանից կատարվող արտագաղթն ուներ հիմնականում երեք ուղղություն՝ ա) դեպի Փոքր Ասիա՝ Կիլիկիա, բ) դեպի Հարավային Վրաստան, Սև ծովի ափեր ու Հյուսիսային Կովկաս և գ) դեպի Կասպից ծովի հյուսիս-արևմտյան շրջանները։

Գաղթականական հոսանքը դեպի Կիլիկիա հատկապես ուժեղ էր XIII դարում և XIV դարի առաջին քառորդում. XIV դարի երկրորդ քառորդից, երբ Կիլիկիայում հայկական թագավորության անկումը դարձել էր անխուսափելի, գաղթի հոսանքը դեպի Կիլիկիա դադարում է։ Դեռ ավելին, Կիլիկիայից ևս արտագաղթի հոսանք է սկսվում դեպի այլ երկրներ։ XIII—XIV դարերում բուն Հայաստանից դեպի Կիլիկիայի հայկական թագավորություն գաղթողների մեջ բավական մեծ թիվ էր կազմում ազնվականությունը։ Հայաստանից գաղթած իշխանական տների ներկայացուցիչները Կիլիկիայում ստանում էին ընդարձակ տիրույթներ և պահպանում իրենց ֆեոդալական բոլոր առանձնաշնորհումները՝ դառնալով հայ թագավորների վասալներ։

XIV—XV դդ. արտագաղթի հոսանքը դեպի Վրաստան ընդունում է մեծ չափեր և, ի տարբերություն նախորդ ժամանակաշրջանների, երբ Վրաստան ներգաղթած հայ բնակիչները բնակություն էին հաստատում գերազանցապես նրա արևելյան մասերում, այժմ Վրաստանի այդ շրջանները ևս Հայաստանի նման ենթարկված լինելով հաճախակի հարձակումների և ավերումների, արտագաղթող հայ բնակչությունը մեծ մասամբ բնակություն է հաստատում Արևմտյան Վրաստանի Սև ծովի առափնյա շրջաններում և նավահանգստային քաղաքներում։ Արտագաղթողների մի մասը Արևմտյան Վրաստանի ծովափնյա շերտով դիմեց դեպի ավելի հեռու՝ դեպի Հյուսիսային Կովկաս, Սև ծովի հյուսիսային ափերը՝ Ղրիմ և անգամ Արևմտյան Ուկրաինա ու Լեհաստան։

Արտագաղթի երրորդ հոսանքը, ինչպես նշեցինք, ուղղված էր դեպի Կասպից ծովի հյուսիս-արևմտյան շրջանները։ Դեպի այդ շրջանները, որ գտնվում էին Ոսկե Հորդայի տիրապետության տակ, արտագաղթ է կատարվել գլխավորապես XIII դարի երկրորդ կեսի սկզբից մինչև XV դարի սկզբները։ Արտագաղթողների զգալի մասը կազմում էին արհեստավորները և առևտրականները։

Բնակչության թվի նվազման պատճառներից էին զանգվածային գերեվարումները։ Թե՛ մոնղոլական զավթիչները, թե՛ բռնակալ Լենկթեմուրը և թե՛ Ոսկե Հորդայի խաները իրենց արշավանքների ընթացքում բազմահազար գերիներ էին վերցնում և քշում իրենց աշխարհակալության խորքերը։ Մոնղոլներն իրենց տիրապետությունը Հայաստանում հաստատելուց հետո՝ մանավանդ XIII դարի վերջերից սկսած, խմբերով գերում և այլ երկրներ էին քշում այն բնակիչներին, որոնք ի վիճակի չէին նրանց կողմից սահմանված ծանր հարկերը տալու։ Գերեվարությունից բացի, տիրակալները երբեմն կատարում էին նաև բնակչության բռնի տեղահանություններ։ Նրանք մի երկրի բնակիչներին բռնի կերպով գաղթեցնում էին մի այլ երկիր, իսկ այնտեղի բնակիչներին բերում բնակեցնում էին նրանց փոխարեն։ Դա սովորական երևույթ էր դարձել Լենկթեմուրի ժամանակ։

Գերեվարվածները և բռնի ուժով տեղահան արված բնակչությունը մեծ մասամբ քշվում էին դեպի Միջին Ասիա և Պարսկաստանի արևելյան շրջանները։ Գերիների մի զգալի մասին համարում էին ստրուկներ և վաճառում տարբեր երկրների շուկաներում։

Այսպես, տնտեսական ծայրահեղ ծանր պայմանների, ավերիչ արշավանքների, գերեվարության, հարկային արտագաղթի և գերեվաճառության հետևանքով Հայաստանի բնիկ բնակչության թիվը XIII—XV դդ. և հաջորդ ժամանակաշրջանում մեծ չափով նվազում է։

Դրա հետ միաժամանակ տարբեր եղանակներով երկիր են ներթափանցում օտար մի քանի ժողովուրդներ և բնակություն հաստատում բնիկ բնակիչներից զրկված գավառներում և շրջաններում։

Մոնղոլական արշավանքների ժամանակ նրանց զորքերի հետ միասին Հայաստան մուտք գործեցին բազմաթիվ ընտանիքներ իրենց անասունների հոտերով, նախիրներով, երամակներով և բնակվեցին Հայաստանի, Վրաստանի և Աղվանքի տարբեր մասերում։

Արշավանքներից հետո, մոնղոլների տիրապետության շրջանում, մոնղոլական իլխանների հովանավորությամբ և աջակցությամբ հարևան Աղվանքի (Հյուսիսային Ադրբեջան) հետ միասին նաև Հայաստան են մուտք գործում քոչվորական զանազան ցեղեր, որոնց մեջ ամենազորեղները և մարդաշատը կարա-կոյունլուներն էին, իսկ Լենկթեմուրի օրոք՝ ակ-կոյունլուները։

Մոնղոլական իլխանության անկման շրջանում քրդերը Հյուսիսային Միջագետքից մեծ զանգվածներով շարժվում են դեպի հյուսիս և բնակվում Մուշում, Սասունում, Վանա լճի ավազանում և այլուր։

Հայաստանի բնակչության էթնիկական կազմի փոփոխության հետ միաժամանակ երկրի ներսում տեղի են ունենում բուն բնակիչների տեղաշարժեր։ Եկվոր ցեղերը, որոնք ունեին ռազմական կազմակերպություն, բնիկ բնակիչներին դուրս էին մղում հարթավայրային շրջաններից։ Նրանց կողմից դուրս մղված հայ բնակիչների մի մասը միանում էր արտագաղթողներին, իսկ մյուս մասը վերաբնակություն էր հաստատում երկրի լեռնային շրջաններում։ Դրա հետևանքով էլ XIII—XIV դդ. ընթացքում Հայաստանի լեռնային մի քանի շրջաններում (հատկապես Սյունիքում) կուտակվում են մեծ թվով հայ բնակիչներ. բնակչության խտությունն այդ շրջանում հասնում է միջնադարի համար անսովոր չափերի։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ XVI—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ

### 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ XVI ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XIX ԴԱՐԻ ՍԿԻԶԲԸ

Ակ-կոյունլու Ուզուն Հասանի լայնածավալ պետությունը ֆեոդալական երկպառակություններից ու կռիվներից և հզորացող Թուրքիայից կրած հարվածներից շուտով թուլացավ ու քայքայվեց։ Ակ-կոյունլուների պետության քայքայման հետ միասին XVI դարի սկզբին կազմվեց մի նոր հզոր պետություն՝ Սեֆևյան Պարսկաստանը, որի սահմանների մեջ էին մտնում Իրանից բացի նաև ամբողջ Ադրբեջանն ու Արևելյան Հայաստանը։

Այդ նույն ժամանակներում լայնածավալ և ուժեղ պետություն էր դարձել նաև Օսմանյան Թուրքիան։

Այսպիսով, XVI դարի սկզբին Հայաստանի երկու կողմերում կազմակերպվել էին երկու խոշոր պետություններ, որոնց միջև ռազմական բախումները դարձել էին անխուսափելի։

XVI դարի սկզբին սկսվեց թուրք-պարսկական երկարատև պատերազմների առաջին շրջանը, պատերազմներ, որոնք մղվում էին գլխավորապես Հայաստանի տերիտորիայում։ Պատերազմների առաջին շրջանը փոփոխակի հաջողությամբ տևեց մինչև XVI դարի կեսերը։ 1555 թ. այդ պատերազմներն ավարտվեցին մի հաշտությամբ, որով Թուրքիային անցան Վասպուրականի մեծ մասը և Բայազետի ու Ալաշկերտի շրջանները։ Իսկ մինչ այդ Թուրքիան գրավել էր Արևմտյան Հայաստանի մյուս բոլոր նահանգները։ Այս պատերազմով Թուրքիան Արևմտյան Հայաստանից բացի, գրավեց նաև

Արևմտյան Վրաստանը։ Ըստ հաշտության պայմանագրի, Օսման-յան Թուրքիայի և Սեֆևյան Պարսկաստանի միջև սահմանային գի-ծը Հայաստանում անցնում էր Ախուրյան գետով (Արևմտյան Ար-փաչայ), Հայկական Պար (Աղրի-դաղ) լեռնաշղթայով և Կոտուր ու Զագրոշ լեռներով։ Այսպիսով, Հայաստանի խոշորագույն մասը՝ Արևմտյան Հայաստանն անցավ Օսմանյան Թուրքիային, իսկ Արև-ելյան Հայաստանը մնաց պարսկական տիրապետության տակ։

1555 թ. կնքված հաշտությունը, սակայն, երկարատև չեղավ, նույն դարի 70-ական թվականներին նորից բորբոքվեցին պատե-րազմները և փոքր ընդմիջումներով ու փոփոխակի հաջողություն-ներով տևեցին մինչև 1639 թվականը։

1639 թ. Պարսկաստանի և Թուրքիայի միջև կնքվեց հաշտու-թյուն, որով նրանք Հայաստանը վերջնականապես բաժանեցին իրար մեջ։ Այդ հաշտության պայմանագրով, որը բավական տևա-կան եղավ (մոտ 80 տարի), փաստորեն վերահաստատվեց Հայաս-տանի 1555 թ. բաժանումը՝ համարյա նույն սահմաններով։ Պարս-կական պետության և Օսմանյան Թուրքիայի միջև սահմանն անց-նում էր Ախուրյան գետով՝ մինչև նրա ստորին հոսանքի շրջանում գտնվող Հաջիբայրամլու գյուղը (պատմական Երվանդաշատ քա-ղաքից ոչ հեռու), որտեղից թեքվում էր դեպի արևմուտք և չանցած 17—18 կմ կտրում էր Արաքսը ու հասնում Հայկական Պար լեռ-նաշղթային՝ Կողբից հարավ-արևմուտք։ Այնուհետև սահմանն անց-նում էր Հայկական Պար լեռնաշղթայի ջրբաժան գծով դեպի արևելք՝ մինչև Մեծ և Փոքր Մասիսների միջև ընկած թամքը, իսկ այստե-ղից էլ թեքվում էր դեպի հարավ-արևելք՝ անցնելով այն բլրաշար-քերով, որոնք Մասիսը կապում են Կոտուր լեռնաշղթայի հյուսիսա-յին վերջավորության հետ, ապա՝ շեշտակի ուղղվում էր դեպի հա-րավ և անցնում Կոտուր ու Զագրոշ լեռնաշղթայի ջրբաժան գծերով։

Չնայած XVIII դարում Պարսկաստանի և Թուրքիայի միջև նո-րից բորբոքվեցին պատերազմներ, այնուամենայնիվ, նկարագր-ված սահմանները մնացին գրեթե անփոփոխ ընդհուպ մինչև Վրաս-տանի, Հյուսիսային Ադրբեջանի և Արևելյան Հայաստանի միա-ցումը Ռուսաստանին։

Հայաստանի նշված սահմանագծից արևմուտք ընկած մասը, որը ավելի քան երկու անգամ մեծ էր արևելյանից, կոչվում է Արև-մըտյան Հայաստան, իսկ արևելք ընկածը՝ Արևելյան Հայաստան։ Պատմական և աշխարհագրական գրականության մեջ դրանց փո-խարեն հաճախ գործ են ածվել Թուրքահայաստան և Պարսկահա-յաստան անունները, որոնք ընդունելի լինել չեն կարող, որովհետև

երկրի անունը որոշվում է ոչ թե տիրապետող պետության, այլ բնիկ ժողովրդի անունով։

Թե՛ Օսմանյան Թուրքիան և թե՛ Պարսկաստանը տիպիկ ֆեոդալական պետություններ էին։ Նրանց վարչական բաժանումներն իրարից էապես չէին տարբերվում, սակայն նրանցից յուրաքանչյուրի վարչական բաժանումը, այնուամենայնիվ, ուներ որոշ առանձնահատկություններ։ Այսպես, օրինակ՝ Օսմանյան Թուրքիան, որը ներկայացնում էր ռազմա-ֆեոդալական պետություն, համեմատաբար ավելի կենտրոնաձիգ բնույթ ուներ, քան Պարսկաստանը։

Այնուամենայնիվ, և՛ Օսմանյան կայսրությունը, և՛ Պարսկաստանը, լինելով ապակենտրոնացած ֆեոդալական պետություններ, տեհասարակ չկարողացան ստեղծել կանոնավոր վարչական կարգեր։ Նրանց կազմի մեջ մտնող երկրները՝ դրանց թվում և Հայաստանը, ողբալի վիճակում էին։

Օսմանյան կայսրության վարչական բաժանման սիստեմը հարմարեցված էր ռազմականին։

Հայաստանը երկու պետությունների համար էլ ներկայացնում էր ծայրամասային երկրամաս։ Հայերի ինքնուրույնության վերջին հետքերը չնայած ջնջված էին, սակայն հայարնակ մի քանի լեռնային գավառներում մնացել էին առանձին շրջաններ, որոնք թեև գտնվում էին օսմանյան սուլթանների կամ պարսկական շահերի գերիշխանության տակ, բայց ունեին տեղական որոշ առանձնաշնորհումներ և կառավարվում էին ժառանգական բնիկ իշխողների կողմից։

Անդրկովկասի երկրների մեջ իր ներքին ինքնավարությունը պահպանեց Արևելյան Վրաստանը՝ Քարթլին ու Կախեթիան, որոնք կառավարվում էին պարսկական շահերից վասալական կախման մեջ գտնվող տեղական թագավորների կողմից։ Հայկական մելիքությունները նույնպես ունեին ներքին ինքնավարություն, սակայն իրենց նշանակությամբ ավելի երկրորդական էին, իսկ գրաված տերիտորիայով՝ փոքր։

Օսմանյան կայսրության մեջ ևս կային ինքնավար շրջաններ։ Մանավորապես ասիական մասում գոյություն ունեին դերեբեյություններ, որոնք իրենցից ներկայացնում էին ցեղապետություններ։ Դրանց կառավարողները կոչվում էին դերեբեյներ (ձորապետներ)։ Դերեբեյություններից բացի, գոյություն ունեին քրդական հյուքմեթություններ (տիրապետություն) կոչված շրջաններ՝ Բիթլիսի,

*Մուշի, Դիարբեքիրի կողմերում, և մի քանի համայնքներ՝ լեռնային շրջաններում*[1]*։*

## ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

*Սեֆևյան Պարսկաստանն իր տիրապետության տակ անցած Հյուսիսային Ադրբեջանում և Հայաստանում, պետության ընդհանուր վարչա-քաղաքական սիստեմի հիման վրա, կազմեց մի քանի բեյլերբեյություններ կամ խանություններ։ Դրանք էին՝ Շաքիի, Շիրվանի, Ղուբայի, Գյանջայի, Նախիջևանի և Երևանի խանությունները։ Հետագայում դրանց վրա ավելացան ևս երկու խանություններ՝ Բաքվի ու Ղարաբաղի խանությունները, որոնցից առաջինը կազմվեց Շիրվանի խանության մի մասից, իսկ երկրորդը՝ Ղարաբաղի հայկական մելիքությունների տերիտորիաներից և սրանցից արևելք ընկած Միլիի տափաստանից։*

*Խանությունները բաժանվում էին մահալների, որոնց կառավարիչները նշանակվում էին խանի կողմից և կրում էին սուլթան, բեկ, մելիք, նայիբ, միրբոլուկ և այլ տիտղոսներ։*

*Խանություններում քաղաքական, վարչական և դատական ամբողջ իշխանությունը գտնվում էր խանի ձեռքում։ Նա մի բռնակալ էր իր խանության սահմաններում։*

*Պարսկական խաները թեպետև ընդունում էին կենտրոնական կառավարության գերիշխանությունը, սակայն ամեն կերպ ձգտում էին անկախորեն գործել։*

*Մի քանի խոսք Երևանի խանության մասին, փոքրիկ ծանոթագրություն տալով նաև Ղարաբաղի ու Նախիջևանի խանությունների վերաբերյալ, որովհետև հենց այդ երեք խանություններում էր գերազանցապես կենտրոնացած Արևելյան Հայաստանի հայության մեծագույն մասը։*

### Երևանի խանություն

*Նախորդ ժամանակաշրջանի մասին խոսելիս տեսանք, որ Կարա-կոյունլուների տիրապետության շրջանում Այրարատյան աշ-*

[1] *Տե՛ս* Լեո, *Հայոց պատմություն, հ. Գ, Երևան, 1946, էջ 51—52։*

խարհը Երևան կենտրոնով վերածվել էր մի կուսակալության՝ խանության, որն իր գոյությունը պահպանեց նաև Ակ-կոյունլուների տիրապետության ժամանակներում։

XVI դարի ընթացքում և XVII դարի առաջին կեսին, մինչև 1639 թ. հաշտությունը, Երևանի խանությունը պարսկա-թուրքական պատերազմների հետևանքով մի շարք անգամ ավերվել և ձեռքից ձեռք էր անցել։ Դրանից հետո էլ նա խիստ տուժում էր կրկնվող պատերազմներից, բայց, ընդհանուր առմամբ, մնում էր Պարսկաստանի տիրապետության տակ՝ մինչև Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին։

Երևանի խանությունը XVII դարի սկզբից, մանավանդ 1639 թ. հաշտությունից հետո, աստիճանաբար դառնում է պարսկական պետության ամենազորեղ կուսակալություններից մեկը։

XVII դարում Երևանի խանությունն ուներ ավելի ընդարձակ տերիտորիա, քան հետագա ժամանակներում։

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացնելու նախօրեին՝ XIX դարի առաջին քառորդում, Երևանի խանության սահմանները ձգվում էին Ախուրյանից (Արևմտյան Արփաչայ) մինչև Սևանի (Շահ-դաղ) լեռները և Արագածի հյուսիսային լանջերից մինչև Հայկական Պար լեռնաշղթան։ Խանության սահմանն արևելքում անցնում էր Ախուրյան գետով՝ մինչև նրա ստորին հոսանքի վրա գտնըվող Հաջիբայրամլու գյուղը, որտեղից թեքվում էր դեպի արևմուտք և, Արաքսի ձախ ափից մոտ 15—17 կմ երկարությամբ մի նեղ շերտ իր մեջ ընդգրկելուց հետո, կտրում էր Արաքսը և ուղղվում նախ դեպի հարավ-արևմուտք, ապա՝ հարավ-արևելք ու հասնում Հայկական Պարի Սինակ գագաթը (Գայլատու լճից հյուսիս-արևմուտք)։ Սինակից մինչև Մեծ ու Փոքր Մասիսները Երևանի խանության սահմանն անցնում էր Հայկական Պարի ջրբաժան բարձրություններով, ապա Փոքր Մասիսից դեպի արևելք շարունակվելով, հասնում էր Արաքս։

Արևելքում նրա սահմանն անցնում էր նախ այն լեռնաճյուղով, որը Շարուրի դաշտը բաժանում է Բեյուկ-դուզից (Նախիջևանի դաշտ), ապա՝ Վարդենիսի (Գյոզալդարա) լեռնաշղթայով և Զանգեզուրի լեռների հյուսիսային հատվածով ու Սևանի լեռներով, իսկ հյուսիսային կողմում նրա սահմանն անցնում էր Փամբակի լեռներով և Արագածի հյուսիսային լանջերը Ախուրյանի հետ միացնող գծով, ընդ որում, Արագածից մինչև Ախուրյան սահմանային գիծն ուներ հյուսիս-արևելքից հարավ-արևմուտք ուղղություն։

Երևանի բեյլերբեյը (կամ խանը) համարվում էր պարսկական ամբողջ պետության ամենագլխավոր պաշտոնյաներից մեկը։ Պա-

տերազմի ժամանակ նրան էին ենթարկվում Անդրկովկասում եղած բոլոր խաները՝ բացառությամբ Շիրվանի խանի։ Այնպես որ նա միաժամանակ պարսկական պետության հյուսիսային մարզերի սարդարն էր, այսինքն՝ զորահրամանատարը։

Ինչպես մյուս խանություններում, այնպես էր Երևանի խանության մեջ բեյլերբեյից բացի կային նաև նրան ստորադրված մի շարք խաներ, բեկեր և մելիքներ։ Հենց այդ էր պատճառը, որ նա կրում էր բեյլերբեյ (բեկերի բեկ) տիտղոսը։

Բոլոր խանություններում վարչական կարգը գրեթե միևնույնն էր։ Երևանի խանությունն իր մեջ ընդգրկում էր Արևելյան Հայաստանի կենտրոնական մասը, ուստի անհրաժեշտ ենք համարում ավելի մանրամասն ծանոթացնել նրա ներքին վարչա-քաղաքական վիճակին։

Երևանի բեյլերբեյն իր խանության սահմաններում համարվում էր մի կատարյալ բռնակալ։ Խաները մեկը մյուսին սովորաբար հաջորդում էին ժառանգական կարգով, միայն խանության գլուխ անցնելու ժամանակ նրանք հաստատվում էին շահի կողմից։ Խաները օրենքներ հրապարակելու իրավունք չունեին, բայց նրանց կարգադրությունները խանության սահմաններում ունեին օրենքի ուժ, ենթակա չէին վիճարկման և նույնությամբ կատարվում էին առանց հապաղման։ Շահը խաների ներքին գործերին չէր խառնվում, խաները շատ դեպքերում միայն ձևականորեն էին ենթարկվում շահի գերագույն իշխանությանը, իսկ կենտրոնում խառնակ դրություն տիրելու ժամանակ գրեթե դադարում էին շահին ճանաչել որպես սյուզերեն։ Երևանի խաները ոչ միայն պետական հարկեր չէին տալիս, այլև իրենց զորքերը պահելու համար պարսից արքունիքից ամեն տարի ստանում էին մի պատկառելի գումար։ Սակայն նրանք պարտավոր էին շահին մեծամեծ նվերներ (խալաթ) տալ՝ նրա ծննդյան օրվա և կրոնական զանազան տոների կապակցությամբ։

Խանը իր ռազմական, վարչական, ֆինանսական և դատական իշխանությունը գործադրում էր բազմաթիվ պաշտոնյաների միջոցով։ Գլխավոր պաշտոններից էին՝ խազնա-աղասին (գանձապետ), սանդուխտար-աղասին (ծախսարար), անբարդար-աղասին (շտեմարանապետ), սերաֆյուլ-բեկը (զորապետ), մուհասիլը (խանական և դատաստանական հրամանները կատարողը), դարուղան (ոստիկանապետ)[1]։ Սակայն խանության մեջ բեյլերբեյից հետո ամենաբարձր պաշտոնյան գլխա-

[1] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հ. Գ, էջ 61։

վ ո ր մ ի ր զ ա ն էր, որի ձեռքին էր գտնվում ամբողջ խանության տնտեսական կառավարումը, մասնավորապես հարկային և ֆինանսական գործը։

Նշված պաշտոնների վրա ավելանում էին նաև ախոռապետությունը, բազեկրությունը, ինչպես և մահալների կառավարչությունները և այլն։ Այսպիսով, ստեղծվել էր խանական մի բազմամարդ բյուրոկրատիա։

Երևանի խանության բոլոր պաշտոնյաներն, իբրև կանոն, նշանակվում էին սարդարի (խանի) կողմից։ Ամեն ինչ կախված էր նրա կամքից։ Սարդարը սովորաբար բարձր պաշտոններ էր տալիս իր հավատարիմ ծառաներին։

Դատական գործը վարվում էր շարիաթի հիման վրա, որը ելնում էր ղուրանից։ Քաղաքներում (Երևանի խանությունն ուներ միայն մի քաղաք՝ Երևանը) դատավորի պաշտոն էին կատարում մահմեդական հոգևոր պետերը՝ ղ ա զ ի ն ե ր ը կամ ղ ա դ ի ն ե ր ը, իսկ գյուղում՝ մոլլաները։ Դատը վարվում էր ոտքի վրա, առանց լուրջ հարցաքննության և կրում էր խիստ դասային բնույթ։

Մարմնական պատիժները կիրառվում էին լայն կերպով։ Ուժի մեջ էր արյան վրիժառությունը։ Մեծ չափով տարածված էր կաշառքը։

Խանության սահմաններում բարձրագույն դատավորը համարվում էր հենց ինքը սարդարը, որի վճիռը ի կատար էր ածվում անմիջապես։

Խանն ուներ իր շքեղ պալատը, բազմաթիվ հարճերից բաղկացած հարեմը։ Երևանի սարդարի պալատն իր հարմարանքներով գրեթե ոչնչով չէր զիջում շահի պալատին, միայն ուներ ավելի փոքր չափեր։

Խանը երկրի խոշորագույն ֆեոդալն էր։ Ուներ սեփական ընդարձակ կալվածքներ։ Խանական հողերը կոռ և բեգարի կարգով մշակում էին գյուղացիները։ Խանն ուներ իր սեփական այգիները, բանջարանոցները, խոտհարքները։

Երևանի սարդարի եկամուտները հասնում էին հսկայական չափերի։ Ուղղակի հարկերից ստացվող նրա տարեկան եկամուտները հասնում էին 32 000 թումանի[1], բացի դրանից, առնվազն 14 հազար թուման էլ ստանում էր անուղղակի տուրքերի և ընծաների ձևով, չհաշված կաշառքները, տուգանքները և այլ եկամուտները։ Միայն խոհանոցային կոչված հարկի անվան տակ գյուղացիները

[1] Երևանի մեկ թումանն այդ ժամանակ արժեր 4 ռուբլի։

*պարտավոր էին Երևանի սարդարին տարեկան տալ 20 հազար ձու, 10 հազար հավ, 5000 բեռ փայտ, 300 բեռ ածուխ։*

*Խանությունները բաժանված էին մահալների։ Երևանի խանության մասնատումը մահալների հիմնականում կատարված էր ըստ ոռոգման հարմարությունների։ Այլ կերպ ասած, ամեն մի մահալ իրենից ներկայացնում էր ջրային մի առանձին սիստեմով ոռոգվող շրջան կամ գետահովիտ։*

*Երևանի խանությունը մասնատված էր 15 մահալների, որոնց աշխարհագրական դիրքի մասին հատուկ տեղեկություններ է հաղորդել Շոպենը։*

*Երևանի խանության 15 մահալներն էին՝*

1) **Կրխ-բուլաղ.**—*Տարածվում էր Ծաղկաձորի (Դարաչիչագի) և Զանգի-բասարի միջև, արևելքում նրա սահմանը կազմում էին Աղմաղանի (Գեղամա) լեռները, արևմուտքում՝ Զանգուն (Հրազդանը), իսկ հարավում այդ սահմանն ընդհուպ մոտենում էր Երևան քաղաքին։*

2) **Զանգի-բասար.**—*Գտնվում էր Կրխ-բուլաղ մահալի ու Արաքս գետի և Կարբի-բասար ու Գառնի-բասար*[1] *մահալների միջև։ Այնպես որ Զանգուի ստորին հոսանքով ոռոգվող բոլոր հողերը մտնում էին նրա մեջ։*

3) **Գառնի-բասար.**—*Գտնվում էր Արաքսի ձախ կողմում։ Նրա մեջ էին մտնում այն բոլոր գյուղերը, որոնց հողերը ոռոգվում էին Գառնի (Ազատ) գետով։ Այլ կերպ ասած, Գառնի-բասար մահալն իր տերիտորիայով համընկնում էր Գառնի գետի ավազանին։ Մինչև XVIII դարի կեսերն այս մահալի մեջ էին մտնում նաև այն բոլոր գյուղերը, որոնք գտնվում էին նրա դիմաց՝ Արաքսի աջ կողմում, Արաքսի և Մասսի միջև։*

4) **Վեդի-բասար.**—*Ընկած էր Արաքսի ձախ կողմում՝ Գառնի-բասար և Շարուր մահալների միջև։ Իր մեջ ընդգրկում էր Վեդի գետի ամբողջ ավազանը։*

5) **Շարուր.**—*Սա Երևանի խանության հարավ-արևելյան ծայրային մահալն էր։ Գրավում էր Շարուրի դաշտը, որն ընկած է Արփա գետի (Արևելյան Արփաչայ) ստորին հոսանքի շրջանում։ Հարավ-արևելքում սահմանակից էր Նախիջևանի խանության Խոկչի մահալին, որից բաժանված էր Դարալագյազի (Հայոց ձորի) լեռներից դեպի Արաքս ձգվող մի լեռնաճյուղով։ Հյուսիս-արևմուտքում նրա սահմանակից մահալը Վեդի-բասարն էր։ Ամբողջ մահալի տե-*

[1] *«Բասար» բառացի նշանակում է «ծածկվող», «ոռոգվող», ըստ այդմ էլ՝ Կարբի-բասար նշանակում է Կարբիով (Կարբի գետով) ոռոգվող, Գառնի-բասար՝ Գառնիով ոռոգվող և այլն։*

րիտորիան, որն իրենից ներկայացնում էր մի կիսաշրջանաձև տարածություն, բաժանված էր երկու հավասար մասի։

6) **Սուրմալու.**—*Տարածվում էր Սարդարաբադի դիմաց, Արաքսի աջ կողմում՝ նրա և Հայկական Պարի (Աղրի-դաղ) միջև։ Այս մահալը ևս, Շարուրի նման, ներկայացնում էր մի կիսաշրջանաձև տարածություն։ Նրա մեջ մտնում էին նաև Հայկական Պարի հյուսիսային ծալքերը, այնպես որ հարավում նա ուղղակի սահմանակից էր Բայազետին, որը գտնվում էր Թուրքիայի տիրապետության ներքո։*

7) **Դարաքենդ-Փարչեն.**—*Գտնվում էր Արաքսի աջ կողմում, Սուրմալուի մահալից անմիջապես արևմուտք։ Իր մեջ ընդգրկում էր երեք ձորահովիտներ, որոնք արևելքից արևմուտք ուղղությամբ ունեին հետևյալ հաջորդականությունը. ամենաարևելյանը Փարչենի ձորն էր, որով հոսում է նույնանուն գետակը (Փարչենի գետակը սկսվում է Զորի լեռների լանջերից), միջին մասում գտնվում էր Դարաքենդի ձորը՝ նույնանուն գետակով, որը սկսվում էր Բարդող (Թաքալթու) լեռների լանջերից, իսկ արևմտյանը կոչվում էր Փառանոս։ Դարաքենդ և Փարչեն ձորահովիտների անունով էլ մահալը կոչվել է Դարաքենդ-Փարչեն։*

8) **Սաոթլի.**—*Տերիտորիայով մեծ չէր, գրավում էր Ախուրյան գետի և Արաքսի գետախառնուրդի շրջանը։ Արևելքում նա սահմանակից էր Թալինի և Սարդարաբադի մահալներին, իսկ արևմուտքում՝ Ղարսի փաշայությանն ու նրա մեջ մտնող Կաղզվանի սանջակին։*

9) **Թալին.**—*Տարածվում էր Արագածի և Ախուրյան գետի միջև, վերջինս Թալինի մահալը բաժանում էր Ղարսի փաշայությունից։ Հյուսիսում նրան սահմանակից էր Շորագյալ գավառը, իսկ հարավում՝ Սարդարաբադի և Սաոթլիի մահալները։*

10) **Սեդլի-Ախսախլի.**—*Գտնվում էր Թալինի մահալից արևելք, տարածվում էր Արագածի հարավային ու արևելյան լանջերին։ Արևելքում նրա սահմանը հասնում էր Ապարանի մահալին, իսկ հարավից և հարավ-արևելքից սահմանակից էր Սարդարաբադի և Կարբի-բասարի մահալներին։*

11) **Սարդարաբադ.**—*Տարածվում էր Արաքսի ձախ կողմում, Սաոթլի և Կարբի-բասար մահալների միջև։ Համարվում էր խանության ամենամեծ մահալներից մեկը։*

12) **Կարբի-բասար.**—*Հյուսիսում նրա սահմանը հասնում էր Սեիդլի-Ախսախլի մահալին։ Իր մեջ էր ընդգրկում Կարբի գետի միջին և Կարա-սու (Սև ջուր) գետի վերին հոսանքների ավազանները։ Կարբի-բասարն ընկած էր Զանգի-բասարի և Սարդարաբադի միջև։*

**13) Ապարան.**—*Ընկած էր Արագածից դեպի հյուսիս-արևելք՝ նրա և Փամբակի լեռների միջև։ Արևմուտքում սահմանակից էր Շորագյալին, իսկ արևելքում՝ Դարաչիչագի մահալին։ Նրա մեջ էր մտնում նաև Կարբի գետի վերին հոսանքի շրջանը։*

**14) Դարաչիչագ.**—*Ընկած էր Փամբակի գավառի և Կըրխ-բուլաղ մահալի միջև։ Նրա մեջ էին մտնում Հրազդանի վերին հոսանքի շրջանը և Միսխանայի ավազանը (Ծաղկաձորը)։ Զով կլիմա և առողջարար օդ ունենալու շնորհիվ ամառը հաճախ այստեղ էին անցկացնում սարդարները և բարձր խավին պատկանող մյուս աղալարները։*

**15) Գյոգ-չայ.**—*Երևանի խանության ամենամեծ մահալն էր։ Նրա մեջ էին մտնում այն բոլոր շրջանները, որոնք պատկանում են Սևանա լճի ավազանին։ Այլ կերպ ասած, նրա սահմանները կազմում էին Գեղամա (Աղմաղան), Վարդենիսի (Գյոզալդարա) և Սևանի (Շահ-դաղ) լեռնաշղթաները։*

*Մահալների կառավարիչները նշանակվում էին սարդարի կողմից և կոչվում էին նայիբ, միրբոլուկ կամ մելիք։ Հայաբնակ մահալների կառավարիչները նշանակվում էին հայերից և կոչվում էին մելիք, իսկ մյուս գավառներում, որտեղ բնակվում էին ադրբեջանցիներ կամ այլ ժողովուրդներ, կառավարիչները կրում էին միրբոլուկ կամ նայիբ տիտղոսները։*

*Մահալների կառավարիչների պարտականությունների մեջ էին մտնում՝ խանի կողմից սահմանված մի քանի տեսակ կոռ և բեգարի բաշխումը գյուղերի միջև, հարկերն ու տուրքերը ժամանակին և անպակաս տալու համար գյուղացիներին հարկադրելը, սահմանակըլխային մահալները կողոպտողների հարձակումներից պաշտպանելը, գյուղական բնակիչների միջև ծագած վեճերի քննումը, միրաբների (ջրբաշխություն կատարողներ) վրա հսկելը, դատաստանական վճիռների կատարումը, որոշ հանցագործությունների համար (գողության և այլն) դատ ու դատաստան տեսնելը[1]։*

*Գյուղերում նշանակված կառավարիչները կոչվում էին քեդխուդաներ կամ մելիքներ, որոնք գյուղի մասշտաբով դրեթե կատարում էին նույն պարտականությունները, ինչ որ մահալների կառավարիչներն իրենց մահալների սահմաններում։*

*Երևանի խանության բնակչությունն ունեցել է ազգային խառը կազմ։ Մեծամասնությունը կազմել են հայերը։ Երկրորդ տեղը թվային կազմով բռնել են ադրբեջանցիները, երրորդը՝ քրդերը, չորրորդը՝ թուրքերը։ Պարսիկների թիվը չնչին էր։ Նրանք վարում*

[1] *Տե՛ս* Լեո, *Հայոց պատմություն, հ. Գ, էջ 61։*

էին խանական բարձր պաշտոններ և ծառայում էին իբրև զինվորներ։ Պարսիկներից էր բաղկացած սարդարի զորքերի կորիզը, ինչպես և նրա թիկնապահ ջոկատը։

## Ղարաբաղի և Նախիջևանի խանություններ

*Արևելյան Հայաստանի մի շարք շրջանները մտնում էին Վրացական պետության և Նախիջևանի, Մակուի ու Ղարաբաղի խանությունների կազմի մեջ։*

*Ղարաբաղը երկար ժամանակ (1578—1590) դարձել էր թուրք-պարսկական պատերազմների թատերաբեմ։ Նրա հայ և ադրբեջանցի բնակչությունը խիստ տուժում էր այդ պատերազմներից։ Շահ Աբասի ժամանակ Ղարաբաղը կազմում էր Գյանջայի խանության մի մասը, իսկ XVIII դարում այն դարձավ առանձին խանություն, որը կոչվում էր Ղարաբաղի կամ Շուշիի խանություն։ Սովի և դրան հաջորդած ժանտախտի համաճարակի հետևանքով XVIII դարի վերջին (1797—1798) Ղարաբաղի բնակչությունը տվեց մեծ զոհեր։ Բնակչության մի մասը ստիպված եղավ հեռանալ Ղարաբաղից դեպի Ադրբեջանի մյուս շրջաններն ու Վրաստան։*

*XIX դարի առաջին քառորդում Ղարաբաղի խանությունը վերջնականապես միացվեց Ռուսաստանին։*

*Նախիջևանի խանությունն ավելի հին էր, նա կազմվել էր առաջին Սեֆեվյանների օրոք։ Վերջին շրջանում այստեղ խանական պաշտոնը տրվում էր կապալի կարգով՝ պարսկական այս կամ այն ազնվականին կամ զորապետին։*

*Նախիջևանի խանությունը Ռուսաստանին միացվեց Երևանի խանության հետ միաժամանակ։*

## Հայկական մելիքություններ և իշխանություններ

*Դեռևս XV դարում, հզորացող Թուրքական պետության առաջն առնելու համար, կարա-կոյունլու Ջհանշահը աշխատում էր իր պետությունը ներքուստ ամրացնել ու հզորացնել։ Այդ նպատակին հասնելու միջոցներից մեկն այն էր, որ նա իր պետության համար ծայրամասային երկիր հանդիսացող Հայաստանում, մասնավորապես Այրարատում, Սյունիքում, ինչպես և Արցախում կազմակեր-*

*պեց հայկական մելիքություններ։ Այդ մելիքություններում նա կառավարիչ մելիքներ նշանակեց նախորդ շրջանի հայկական իշխանական տների մնացորդներից, որոնք մինչև այդ դարձել էին սոսկ «տանուտերեր»։ Մելիքներին տրվեցին ներքին լայն իրավունքներ՝ իրենց մելիքությունների սահմաններում գործելու համար։*

*Սեֆևյանները XVI դարում գրավելով Արևելյան Հայաստանը, սկզբնական շրջանում ոչ միայն անտեսեցին հայկական իշխանությունների՝ մելիքությունների ուժերը, այլև մեծ հարված հասցրին նրանց։ Սակայն XVII դարի երկրորդ տասնամյակից սկսած Սեֆևյան շահերը հայկական մելիքությունների նկատմամբ նույնպես սկսեցին վարել այնպիսի քաղաքականություն, ինչպիսին XV դարում վարում էին Կարա-կոյունլուներն ու Ակ-կոյունլուները։*

*Դրա հետևանքով հայկական մի շարք մանր իշխանություններ՝ մելիքություններ, որոնք կորցրել էին իրենց ներքին ինքնավարությունը, XVI դարի վերջերից՝ հատկապես XVII դարի առաջին քառորդում, պարսկական շահերի կողմից ստացան ներքին լայն իրավունքներ։*

*Մելիքները համարվում էին իրենց գավառի (մելիքության) կատարյալ տերերը, ազատ էին իրենց ներքին գործերի տնօրինության մեջ։ Մելիքի իշխանությունը ժառանգական էր, բայց յուրաքանչյուր դեպքում այն հաստատվում էր շահի, իսկ երբեմն էլ՝ Երևանի սարդարի կողմից։*

*Մելիքի կամքն ու սովորությունները անցնում էին օրենքի տեղ։*

*Նրանցից յուրաքանչյուրն ուներ 1000—2000 զինվոր։ Սակայն կային այնպիսիները, որոնց զորքերի թիվը ավելի մեծ էր։ Մելիքի զորքերը մասնատված էին առանձին ջոկատների, որոնց հրամանատարները կոչվում էին յ ո ւ զ բ ա շ ի (հարյուրապետ) և նշանակվում էին մելիքի կողմից։*

*Մելիքությունները, լինելով պետական միավորներ և ձգտելով բոլորովին անկախանալ պարսկական շահերի գերիշխանությունից ու ապահովվել թուրքական ներխուժման վտանգից, խոշոր դեր խաղացին XVII—XVIII դարերի ազատագրական շարժումների մեջ, որոնք ուղղված էին թուրքական և պարսկական ծանր լծի դեմ։*

*Արևելյան Հայաստանի տարբեր մասերում գոյություն ունեին մի շարք մելիքություններ։ Դրանց մեջ առանձնապես հայտնի էին Ղարաբաղի հինգ մելիքությունները՝ Խամսայի մելիքությունները։*

**Խամսայի մելիքությունները** *գտնվում էին Լեռնային Ղարաբաղում, գոյություն ունեին XV դարից և անընդմեջ սահմանակից էին իրար։ Նրանք միասին կազմում էին մի միավորություն, որ կոչվում էր Խամսա («հինգ»)։*

Նրանք թե՛ ռազմական և թե՛ տնտեսական առումով ներկայացնում էին զգալի ուժ։ Հատկապես մեծ էր նրանց ստրատեգիական նշանակությունը, որովհետև աշխարհագրական տեսակետից շրջապատի նկատմամբ գրավում էին իշխող դիրք։ Խամսայի մելիքությունների բնակչության մեծագույն մասը հայեր էին։

Խամսայի մելիքությունները հյուսիսից հարավ ունեին հետևյալ հաջորդականությունը՝ Գ յ ու լ ի ս տ ա ն, Ջ ր ա բ ե ր դ, Խ ա չ ե ն, Վ ա ր ա ն դ ա և Դ ի զ ա կ։

Գ յ ու լ ի ս տ ա ն ի մելիքությունը գրավում էր Կյուրակ-չայից մինչև Թարթառ գետն ընկած գավառը։ Մելիքի գլխավոր ամրոցը գտնվում էր Գյուլիստան գյուղի մոտ, մի բարձր և անմատչելի լեռան գագաթին։ Մի ուրիշ ամրոց էլ գտնվում էր Թալիշ գյուղի մոտ։ Այս մելիքությունը հաստատվել էր Ջհանշահի կողմից 1455 թ.։

Ջ ր ա բ ե ր դ ը Խամսայի մելիքությունների մեջ ամենից փոքրն էր, նա գրավում էր մի փոքրիկ գավառ, որն ընկած էր Թարթառ գետի հովտում։ Ջրաբերդում իշխում էին Մելիք-Իսրայելյանները, որոնք ծագումով Սյունիքից էին և բազմաթիվ ընտանիքների հետ միասին այստեղ էին գաղթել 1687 թվականին։

Խ ա չ ե ն ի մելիքները հանդիսանում էին հին իշխանական տների շառավիղներ։ Սա Խամսայի մելիքությունների մեջ ամենից ընդարձակն էր։ Տարածվում էր Խաչեն գետի հովտում՝ արևմուտքում սահմանակցվելով Սևանա լճի ավազանին, իսկ արևելքում և հյուսիսում՝ Ջրաբերդին ու Գյուլիստանին։ Մելիքն ուներ երկու նշանավոր բերդ, որոնք գտնվում էին Խաչեն գետի մոտ։ Դրանցից մեկը տեղադրված էր Գանձասարի վանքի դիմաց, բարձր ու անառատչելի մի լեռան վրա և կոչվում էր Թարխանաբերդ (հավանաբար հին Խոխանաբերդը)։ Թարխանաբերդից մոտավորապես 16—17 կիլոմետրի վրա էր գտնվում նրա մյուս նշանավոր բերդը՝ Կաչաղակաբերդը, սուրբ Հակոբ վանքի դիմաց։

Վ ա ր ա ն դ ա յ ի մելիքությունը նախկինում կազմում էր Դիզակի մի մասը։ Նա հիմնվեց XVI դարի առաջին կեսում։ Մելիքների աթոռանիստը Քոչուսել գյուղն էր (այժմ՝ Տողասեղ)։ Գտնվում էր Խաչենի և Դիզակի միջև։ Այս մելիքության մեջ էին գտնվում Սղնաղ և Շուշի բերդերը (վերջինս կառուցվել էր 1752 թ.)։

Խամսայի մելիքությունների մեջ միայն Վարանդայի մելիքությունն էր, որ իր գոյությունը պահպանեց մինչև Ռուսաստանի հետ միանալը։

Դ ի զ ա կ ը Խամսայի մելիքությունների մեջ ամենահարավայինն էր, սրա սահմանը հարավում հասնում էր Արաքս գետին։

Հնում նա կազմում էր մի իշխանություն և մտնում էր Աղվանից Թագավորության մեջ։ Այդ իշխանությունն իր գոյությունը պահպանեց նաև մոնղոլական տիրապետության սկզբնական շրջանում (մինչև 1271 թ.)։ XV դարում նա Վարանդայի հետ միասին կազմում էր մի մելիքություն, իսկ XVI դարի սկզբներին բաժանվելով նրանից, կազմում է առանձին մելիքություն։ Մելիքի աթոռանիստը Տող ավանն էր, որն ուներ ամուր բերդ։ Նադիր Շահը Դիզակի մելիք Ավանին, նրա կատարած ծառայությունների համար, տվեց խանի տիտղոս և նշանակեց Խամսայի բոլոր մելիքությունների գլխավոր կառավարիչ։ Ավանի մոտ էին հավաքվում բոլոր հինգ մելիքությունների պետական հարկերը և նրա միջոցով հանձնվում արքունական գանձարանին։ Նա Ղարաբաղի ամբողջ զորքի հրամանատարն էր։ Նրա մահից մեկ տարի անց, 1745 թ. մելիք դարձավ նրա եղբայրը՝ Մելիք-Եսային։ Սա Ղարաբաղի մելիքների մեջ առաջինն էր, որ հոգ տարավ կանոնավոր զորք ստեղծելու համար։

Խամսայի մելիքությունները միմյանց դեմ մղած ֆեոդալական կռիվների և պարսկական շահերի ու խաների բռնությունների հետևանքով XVIII դարի երկրորդ կեսին աստիճանաբար թուլանալով վերացան պատմական ասպարեզից։

**Գեղարքունիքի, Գարդմանի և Սարի մելիքությունները.**—Գեղարքունիքում կային մի քանի փոքրիկ մելիքություններ, որոնք կազմվել էին XVIII դարում և ստորադրված էին Երևանի խանությանը, իսկ երբ Երևանի խանությունը գրավվում էր Թուրքիայի կողմից, նրանք ենթարկվում էին Նախիջևանի խաներին։ XVI դարում Գեղարքունիքի մելիքությունների մեջ ամենից ուժեղը Մելիք-Շահնազարյանների մելիքությունն էր, որին ենթարկվում էին նաև Սևանա լճի ավազանի մյուս մելիքությունները։ Նադիր Շահը Մելիք-Շահնազարյաններին տվել էր մեծ արտոնություններ և անկախություն Երևանի սարդարից։ Սրանց աթոռանիստը Մազրա (կամ Մեծ Մազրա) գյուղն էր՝ Սևանա լճից հարավ-արևելք։ Որոշ ժամանակ մելիքանիստ է եղել նաև Սոդ կամ Զոդ ավանը։ Մելիք-Շահնազարյանների մելիքությունը արևելքից հարևան էր Սարի մելիքությանը, որի մելիքանիստը Սար ավանն էր։

Այդ երկու մելիքություններն իրենց գոյությունը պահպանեցին մինչև Ցիցիանովի արշավանքը (1804 թ.), որի ժամանակ նրանք, բազմաթիվ այլ իշխանական տների հետ միասին, պարսկական լծից զզված՝ թողեցին իրենց կալվածքները և գաղթեցին արդեն Ռուսաստանին միացված Գյանջայի կողմերը։

Գարդմանի մելիքությունը գրավում էր նույնանուն գավառը՝ Սևանի լեռների շրջանում։ Այս մելիքությունը կազմվել էր Շահ

*Աբասի ժամանակ՝ 1601 թ.։ Այստեղ իշխում էր Մելիք-Շահնազարյանների մի ճյուղը։ Մելիքանիստը Ոսկանապատ գյուղն էր, այդ պատճառով էլ մելիքությունը հաճախ նրա անունով կոչվում էր Ոսկանապատի մելիքություն։ Գարդմանը Ռուսաստանին միացվելուց հետո նրա մելիքները շարունակեցին պահպանել իրենց կալվածատիրական իրավունքները։*

**Ղափանի մելիքությունները.**—*Ղափան անվան տակ XVII—XVIII դարերում հասկացվում էին տարբեր մեծություն ունեցող երկու տերիտորիալ միավորներ։ Դրանցից մեկը բուն Ղափան կամ Փոքր Ղափանն էր, որն իր մեջ ընդգրկում էր նախկին Ձորք (կամ Կապան), Բաղք և Կովսական գավառները։ Փոքր Ղափանը XVIII դարում կոչվել է նաև «Յոթնաբերդ գավառ», ըստ երևույթին, յոթ բերդ ունենալու պատճառով։*

*Երկրորդը Մեծ Ղափանն էր, որը բացի Փոքր Ղափանից իր մեջ էր ընդգրկում նաև նախկին Արևիքը, Հաբանդը, Ծղուկքը, Աղահեջքի խոշորագույն մասը և ավելի հյուսիս ընկած մի քանի շրջաններ։*

*XV—XVIII դարերում Ղափանում գոյություն ունեին մի շարք մելիքություններ, որոնց կազմը այդ շրջանում կրել է մեծ փոփոխություններ։ XVII դարի վերջին և XVIII դարի առաջին կեսին այստեղ հիշատակված մելիքություններից նշանավոր էին 4-ը՝ Անգեղակոթի, Տաթևի, Քաշաթաղի և Բեխի մելիքությունները։*

**Անգեղակոթի մելիքությունն** *իր մեջ ընդգրկում էր մի քանի գյուղեր։ Նրա մելիքանիստը Անգեղակոթ գյուղն էր (այժմյան Սիսիանի շրջանում)։*

*Անգեղակոթում 1699 թ. Մելիք-Սաֆրազի և Իսրայել Օրու ջանքերով գումարվեց Սյունիքի 11 մելիքների գաղտնի ժողովը, որտեղ որոշվեց Օրուն ու Մինաս վարդապետին ուղարկել Եվրոպա և Ռուսաստան՝ Հայաստանի ազատագրման համար բանակցություններ վարելու։ Անգեղակոթի Մելիք-Թանգյանները հաճախ նստում էին նաև Բռնակոթում (նույնպես այժմյան Սիսիանի շրջանում)։*

**Քաշաթաղի** *մելիքությունը գրավում էր հին Քաշաթաղ կամ Քաշաթաղք գավառը, որը կազմում էր նախկին Աղահեջքի և Հաբանդի մի մասը։ Մելիքանիստը Խանածախն էր (այժմյան Խնածախ գյուղը Գորիսի շրջանում)։*

**Տաթևի** *մելիքությունը գտնվում էր նույնանուն շրջանում։ Մելիքի նստավայրը Տաթև գյուղն էր (որը գտնվում է այժմյան Գորիսի շրջանում)։ Այստեղ իշխում էր Մելիք-Փարսադանյանների մի ճյուղը։ Մելիքության նշանավոր բերդը Հալիձորն էր՝ Տաթևի վանքի մոտ։*

**Բեխի** *մելիքությունը գտնվում էր այժմյան Ղափանի շրջանում։*

Այստեղ ևս իշխում էին Մելիք-Փարսադանյանները, որոնց նստավայրը Բեխ գյուղն էր (Ղափանի շրջանում), իսկ բերդը՝ Հալիձորը։

Նշվածներից բացի, մելիքություններ կային նաև Լոռիում, Աղստևի հովտում, Փամբակում, Նախիջևանի խանության Գողթն ու Նախիջևան գավառներում, ինչպես նաև Արարատյան դաշտում, Մակվում, Մարանդում, Ղարադաղում, Խոյում և Սալմաստում։ Սակայն սրանք ավելի թույլ էին և նշանակալի դեր չէին խաղում։

**Ղափանի անկախ իշխանությունը.**—Արևելյան Հայաստանում պարսկական լծից ազատագրվելու համար մղվող պայքարը XVIII դարի առաջին քառորդում վեր է ածվում ազատագրական պատերազմների՝ ուղղված ինչպես պարսկական լծի, այնպես էլ թուրքական նվաճման դեմ։

Ղափանում ժողովրդա-ազատագրական պատերազմը ղեկավարում էր Դավիթ-Բեկը։ Նա, 1722 թ. իր զինակից մի քանի զորավարների հետ Ղարաբաղի վրայով գալով Ղափան, ստանձնում է ապստամբության ղեկավարությունը և կարճ ժամանակամիջոցում կարողանում է պարսկական խաներից ազատագրել նախ Սիսիանը, ապա Զանգեզուրը (Գորիսի շրջանը) ու Փոքր Ղափանը։ Նշված շրջանները պարսկական լծից ազատագրելուց հետո Դավիթ-Բեկը այդտեղի մելիքություններից (Անգեղակոթի, Քաշաթաղի, Տաթևի և Բեխի) կազմում է մի իշխանություն։

Ղափանի իշխանությունը գոյություն ունեցավ մոտ 9 տարի (1722—1730 թթ.)։ Իր այդ կարճատև գոյության ընթացքում նա ոչ մի տարի խաղաղ կյանք չունեցավ, որովհետև պարսկական լուծը թոթափելուց անմիջապես հետո վրա հասավ թուրքական արշավանքը։

Թուրքական զորքերին ջարդելուց և դուրս շպրտելուց հետո՝ 1728 թ. Դավիթ-Բեկի իշխանության մեջ էին մտնում Փոքր Ղափանն ու նրա հարևան գավառները, որոնց թվում և Մեղրին։ Դավիթ-Բեկի աթոռանիստը Հալիձոր անառիկ բերդն էր[1], որը գտնվում էր այժմյան Ղափան քաղաքից ոչ հեռու։

Դավիթ-Բեկի մահից հետո (1728 թ.) Ղափանի իշխանությունն իր գոյությունը պահպանում է միայն երկու տարի՝ մինչև 1730 թ.։ 1729 թ. Ղարաբաղը նվաճելուց հետո թուրքերն ուժեղացնում են իրենց գրոհները Ղափանի իշխանության վրա։ Դավիթ-Բեկին հաջորդած Մխիթար սպարապետը գերմարդկային ճիգեր է թափում

1 Պատմագրական և աշխարհագրական գրականության մեջ հաճախ Ղափանի այս Հալիձորը շփոթված է Գորիսի շրջանում գտնվող Հալիձորի հետ՝ 1727 թ. ճակատամարտի վայրն ու Դավիթ-Բեկի աթոռանիստը համարելով ոչ թե Ղափանի, այլ Գորիսի Հալիձորը։ Դա ճիշտ չէ։

*մելիքներին համախմբելու և թուրքական նվաճումներին դիմադրելու համար, սակայն նրա ջանքերը վերջ ի վերջո ապարդյուն են անցնում։ Թուրքական զորքերը մեկը մյուսի հետևից գրավում են Ղափանի իշխանության գավառները։ 1730 թ. Ղափանի իշխանությունն արդեն ամբողջությամբ գրավված էր թուրքական զորքերի կողմից։ Հենց նույն թվին էլ Մխիթար սպարապետը, որն իր փոքրիկ ջոկատով շարունակում էր պարտիզանական կռիվներ մղել, դավադրաբար սպանվում է։*

## ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

*Ինչպես տեսանք, թե՛ 1555 թ. և թե՛ 1639 թ. բաժանմամբ Հայաստանի խոշորագույն մասը՝ Արևմտյան Հայաստանը, անցավ թուրքական տիրապետության տակ։ Հետագա շրջանում եղան պահեր, երբ Թուրքիան գրավեց նաև Արևելյան Հայաստանը, սակայն դրանք կարճատև էին, և ընդհանուր առմամբ 1639 թ. բաժանումն ուժի մեջ մնաց մինչև վերջ։*

*Օսմանյան Թուրքիայի վարչաձևը Հայաստանում էապես ոչնչով չէր տարբերվում պարսկական պետության վարչաձևից։ Տարբերությունը կայանում էր միայն նրանում, որ պարսկական կուսակալները՝ խաները, սովորաբար ժառանգական կարգով էին իշխում իրենց տրված խանություններում, իսկ թուրքական նահանգների (վիլայեթների) գերագույն կառավարիչները՝ փաշաները, սոսկ զինվորական նահանգապետներ էին։*

*Թուրքիայի կողմից գրավված Արևմտյան Հայաստանի տերիտորիայի մեծագույն մասից սկզբնական շրջանում կազմվեց մի կուսակալություն, որը կոչվում էր Էրմենիստան։ Նրա կենտրոնը Էրզրում քաղաքն էր, որի անունով էլ շուտով Էրմենիստան էյալեթը կոչվեց Էրզրումի էյալեթ։*

*Հետագայում Օսմանյան կայսրության վարչական բաժանումների մեջ նոր փոփոխություններ կատարվեցին, որոնց հիման վրա Էրզրումի էյալեթը մասնատվեց մի քանի էյալեթների՝ Կարսի, Վանի, Էրզրումի և այլն։*

*Էյալեթները, որոնք հետագայում կոչվեցին վիլայեթներ, իրենցից ներկայացնում էին անմիջապես սուլթանին ենթարկվող նահանգներ, որոնց գերագույն կառավարիչները կոչվում էին փաշաներ։ Այդ պատճառով պատմագրական և աշխարհագրական գրականության մեջ էյալեթի կամ վիլայեթի փոխարեն հաճախ գործ է ածված նաև փաշայություն։*

Արևմտյան Հայաստանը XVIII դարում հիմնականում բաժանված էր հինգ վիլայեթների, դրանք էին՝ Վանի, Էրզրումի, Կարսի, Դիարբեքիրի և Սվազի (Սեբաստիայի) վիլայեթները։ Սակայն, բացի դրանցից, ուղղակի Արևմտյան Հայաստանի մասերը կազմող կամ նրա սահմաններից դուրս գտնվող մի շարք հայաբնակ շրջաններ մտնում էին այլ վիլայեթների մեջ։ Այդպիսի վիլայեթների թվին էին պատկանում Չլդըրը, Ադանան և Տրապիզոնը։

Արևմտյան Հայաստանի տերիտորիայում, նշված հինգ վիլայեթների շրջանակներում, կային նաև քրդական ինքնավար իշխանություններ՝ հյուքմեթություններ։

Վիլայեթները մասնատված էին սանջակների—գավառների, որոնց կառավարիչները նշանակվում էին փաշայի կողմից և կոչվում էին բեյեր։ Հայաբնակ վիլայեթների մեծ մասում բեյերը լինում էին քրդական ցեղապետներից, որոնց իրավունքը գերազանցորեն դարձել էր ժառանգական։ Սանջակների կառավարիչները հետագայում կոչվեցին կայմակամներ (տեղապահ)։

Սանջակներն իրենց հերթին բաժանված էին գադըլգաների կամ կազաների (թեմ), իսկ գադըլգաները՝ նահիեների (գյուղախմբերի)։

Վիլայեթի սահմաններում ամբողջ իշխանությունը գտնվում էր կուսակալ փաշայի ձեռքին։ Նրա ձեռքում էր կենտրոնացված ռազմական և վարչական իշխանությունը։ Նա իր տրամադրության տակ ուներ պատկառելի քանակությամբ զինված ուժեր՝ ծագած ապստամբությունները և իր իշխանության տակ գտնվող ֆեոդալ իշխանավորների խռովությունները ճնշելու համար։ Փաշան ինքն էր նշանակում սանջակների կառավարիչներին, հարկը բաժանում սանջակների վրա և այն գանձում սանջակների կառավարիչների ու կապալառու հարկահավաքների միջոցով։

Օսմանյան կայսրության մեջ գրեթե բոլոր պաշտոնները տըրվում էին կաշառքով և կապալով։ Պաշտոնները վաճառվում էին բացարձակ, հրապարակորեն։ Պաշտոնների գինը որոշելիս նկատի էին առնվում, թե որքան «արդյունավետ» և նշանավոր են դրանք։

Վիլայեթների կառավարության պաշտոնը ձեռք բերելու համար կային տարբեր սակագներ։ Այդ պաշտոնի համար ամենաբարձր չափը հասնում էր 300—400 հազար էքյուի[1], իսկ սովորական գներն էին՝ 200 հազար, 100 հազար, 60 հազար, 50 հազար[2]։

Վիլայեթի կառավարիչ-փաշան յուրաքանչյուր տարի (սովո-

[1] Մեկ էքյուն=3 ֆրանկ։

[2] Լեո, Հայոց պատմություն, հ. Գ, էջ 56—57։

բաքար Նովրուզ բայրամի տոնին՝ նոր տարվա սկզբին) նորից պետք է սուլթանի կողմից վերահաստատվեր իր այդ պաշտոնում, իսկ դրա համար նորից պահանջվում էին հսկայական գումարներ։

Նա իր պարտք վերցրած այդ գումարները, նրանց վրա եկող մեծ տոկոսները և փաշայական շվայտ կյանքի ու հաճույություններ կատարելու համար պահանջվող ահռելի չափերի հասնող գումարները ձեռք էր բերում վիլայեթի բնակչությանը կեղեքելու միջոցով։ Վիլայեթի տուրքերի չափը կախված էր փաշայի կամքից։

Ինչպես սուլթանն էր աճուրդի և կաշառքի կարգով վաճառում վիլայեթների կառավարչության և առհասարակ մյուս պաշտոնները, այնպես էլ կուսակալ-կառավարիչն էր վարվում վիլայեթի՝ իրեն ստորադրված պաշտոնների հետ։ Վերջինս էլ իր հերթին վաճառում էր սանջակների կառավարիչների, քաղաքների պետերի և այլ պաշտոններ։

Պաշտոնի համար տրվող մեծ գումարները և պաշտոնում երկար ժամանակ մնալու հույս չունենալը կուսակալ փաշաներին մղում էին ավելի մեծ հափշտակությունների։ Նրանք ոտք դնելով իրենց տրված վիլայեթները, մտահոգվում էին միայն մի բանով՝ որքան կարելի է շատ թալանել։

Կենտրոնական իշխանության կողմից թալանն ու կեղեքումները ոչ միայն չէին արգելվում, այլև հովանավորվում էին, որովհետև փաշաների կուտակած հարստությունները վերջ ի վերջո բռնագրավվում էին իշխանության կողմից և մտցվում սուլթանական գանձարան։

Թալանի և կեղեքումների վրա ավելանում էին նաև հարատև պատերազմների հետևանքով առաջացած ավերումներն ու կոտորածները։ Հայաստանը դարձել էր թուրք-պարսկական պատերազմների և ներքին կռիվների մշտական թատերաբեմ։

Վիլայեթում կուսակալ փաշան իր իշխանությունը գործադրում էր երեք ազդեցիկ պաշտոնյաների միջոցով։ Դրանք էին՝ մ ու ֆ թ ի ն, ռ ե ս-է ֆ ե ն դ ի ն և դ ե ֆ թ ե ր դ ա ր-բ ա շ ի ն, որոնցից յուրաքանչյուրը գլխավորում էր մի բնագավառ։ Այդ երեք պաշտոնյաները միաժամանակ համարվում էին փաշայի խորհրդականները[1]։ Կուսակալության նման, այս պաշտոնները ևս ձեռք էին բերվում հատուկ գումարներ տալու միջոցով։

Դատական գործը վիլայեթներում և սանջակներում, Պարսկաստանի նման, գտնվում էր մահմեդական հոգևորականների ձեռքին։ Հոգևորական-դատավորները, որ կոչվում էին կ ա դ ի ն ե ր, նշա-

[1] Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հ. Գ, էջ 57։

*նակվում էին մեկ տարով և հաստատվում էին սուլթանի կողմից։ Նրանք գործերը դատում էին շարիաթով։ Գործի ընթացքը կախված էր կաշառքի չափից. ով կադիին ավելի մեծ գումար էր տալիս, նա էլ գործը շահում էր։ Արյան վրեժը օրինականացված կանոն էր։ Հատուկ գներ էին որոշված սպանության, կուրացած աչքի, գլխի վրա ստացած վերքի և այլնի համար։ Մարմնական պատիժները լայն չափերի էին հասնում։ Քրիստոնյա բնակչության նկատմամբ «օրենքները» կիրառվում էին ավելի դաժան խստությամբ։ Պարսկական խաների նման, թուրքական փաշաները ևս իրենց ստորադրյալների նկատմամբ ունեին գրեթե անսահման իրավունքներ։*

## Արևմտյան Հայաստանում կազմված վիլայեթները

*Արևմտյան Հայաստանի տերիտորիայից Օսմանյան կայսրությունը կազմել էր հինգ նահանգներ՝ վիլայեթներ՝ Էրզրումի, Կարսի, Վանի, Դիարբեքիրի և Սվազի (Սեբաստիայի), չհաշված նրա այն առանձին գավառներն ու հայաբնակ շրջանները, որոնք մտնում էին ուրիշ վիլայեթների մեջ։*

Էրզրումի վիլայեթ.—*Սա Արևմտյան Հայաստանում կազմված վիլայեթներից ամենից ընդարձակն էր։ Սահմանները տարածվում էին Պոնտական լեռներից մինչև Բյուրակն (Բինգյոլ) բարձրավանդակի հարավային ստորոտները և Գարահիսարից մինչև Մասիս։ Այդպիսի սահմաններով նա իր մեջ էր ընդգրկում Արևմտյան Եփրատի և Ճորոխի վերին ու միջին հոսանքների ավազանները և Արաքսի ու Արածանիի վերին հոսանքների վրա ընկած շրջանները։ Փաշայի աթոռանիստը Էրզրում քաղաքն էր, որն ուներ ստրատեգիական մեծ նշանակություն և գտնվում էր վիլայեթի գրեթե կենտրոնում։ Նրա մյուս քաղաքներից էին՝ Երզնկան, Կամախը, Մանազկերտը, Բաբերդը և այլն։*

*Էրզրումի վիլայեթը XVII դարում մասնատված էր 12 սանջակի։ Դրանցից էին՝ Գարահիսարը (Եփրատից արևմուտք), Քղին (Բյուրակնից հարավ-արևմուտք՝ նույնանուն գետի ավազանում), Թառնը, Իսպիրը (Սպեր՝ Ճորոխ գետի վրա), Խնուսը, Տեկմանը (Բյուրակնից հյուսիս), Մանազկերտը և այլն։*

Կարսի վիլայեթ.—*XVIII դարի կեսերին իր մեջ ընդգրկում էր Կարսի, Սարիղամիշի և Կաղզվանի շրջանները։ Ավելի հնում՝ XVI—XVII դարերում այս վիլայեթի տերիտորիան շատ ավելի ընդարձակ էր և մասնատված էր վեց սանջակի։ Կուսակալ փաշայի աթոռանիստը Կարս քաղաքն էր, որը հռչակված էր իր ամուր բերդով։*

**Վանի վիլայեթ.**—*Իր տերիտորիայի մեծությամբ բռնում է երկրորդ տեղը՝ առաջին տեղը զիջելով Էրզրումի վիլայեթին։ Նրա մեջ էին մտնում Վանա լճի ամբողջ ավազանը, Արևելյան Տիգրիսի (Բոհտան-սու) ու Մեծ Զաբի վերին հոսանքների վրա ընկած շրջանները՝ Սասունը, Մուշը, Բիթլիսը (Բաղեշ) և այլն։ Սահմանները ձգվում էին Թոնդուրեկից մինչև Քրդստանի լեռների հարավային լանջերը և Կոտուր-Զագրոշյան լեռնաշղթայից մինչև Դերսիմ։ Փաշայի աթոռանիստը Վան քաղաքն էր, որտեղ ընդդեմ Պարսկաստանի սպահվում էր մի մեծ բանակ։ Այդ զորագունդը բաղկացած էր պրոֆեսիոնալ վարձու զինվորներից՝ ենիչերիներից։*

*Վիլայեթում Վանից բացի կային նաև մի շարք այլ քաղաքներ՝ Խլաթ, Արճեշ, Բերկրի, Բիթլիս (Բաղեշ), Մուշ և այլն։*

*Վանի վիլայեթը XVII դարում մասնատված էր 12 սանջակի։ Դրանցից էին՝ Ադելջիվազը (Արծկե), Արճեշը, Մուշը և Բերկրին։*

**Դիարբեքիրի վիլայեթ.**—*Այս վիլայեթի մեջ էին մտնում Հյուսիսային Միջագետքի մի շարք շրջանները և Հին Հայաստանի Աղձնիք նահանգի արևմտյան մեծ մասը։ Վիլայեթի կենտրոնը Դիարբեքիրն էր (Տիգրիսի վրա)։ Նրա մեջ էին մտնում Ֆարկին (Մուֆարղին), Մարդին և այլ քաղաքներ։ XVII դարում բաղկացած էր 21 սանջակներից, որոնցից 8-ը քրդական հյուքմեթություններ էին և միայն ձևականորեն էին մտնում Դիարբեքիրի վիլայեթի մեջ։*

*Նրա սանջակներից էին՝ Ֆարկինը, Դիարբեքիրը, Մարդինը, Կալան և այլն։*

**Սվազի (Սեբաստիայի) վիլայեթ.**—*Սկզբում ամբողջությամբ իր մեջ էր ընդգրկում Նախկին Փոքր Հայքն ու Չորրորդ Հայքը։ Վիլայեթի կենտրոնը Սվազն էր (Սեբաստիա)՝ Կզըլ-Իրմակ գետի աջ ափին։ Մյուս քաղաքներից նշանավոր էին Մալաթիան, Խարբերդը, Ամասիան և Արաբկիրը։ Հետագայում այս վիլայեթը բաժանվեց երկու մասի՝ Սվազի և Մալաթիայի վիլայեթների, որոնցից առաջինը դրավում էր նախկին Սվազի վիլայեթի հյուսիս-արևմտյան մասը, իսկ երկրորդը՝ հարավ-արևելյանը։*

## Արևմտյան Հայաստանի տերիտորիայում եղած քրդական հյուքմեթություններ

*Օսմանյան կայսրության փոքրասիական տիրապետություններում կազմվեցին դերեբեյություններ, իսկ Արևմտյան Հայաստանում՝ հյուքմեթություններ։*

*Քանի դեռ չէր կազմվել Սեֆևյան պետությունը, քրդական ցե-*

ղապետերից յուրաքանչյուրն իր գավառի տեր և տնօրեն էր համարվում։ Սեֆեվյան պետությունը կազմվելուց հետո նրանք անվանապես ենթարկվեցին Շահ Իսմայիլին։ Սակայն երբ Շահ Իսմայիլը փորձեց քրդական այդ հյուքմեթությունները վարչականորեն ենթարկել որոշ փոփոխությունների և նրանցում ավազակությունը վերացնելու համար ձեռնարկեց միջոցներ, քրդական ցեղապետերը համառ դիմադրություն ցույց տվեցին նրան և հակվեցին սուլթանի կողմը, որն իր հերթին ձգտում էր քրդերին սիրաշահել և նրանց օգտագործել պարսիկների դեմ մղվող պայքարում։ Օսմանյան սուլթան Սելիմը (1512—1520 թթ.) մեծ օգնություն ցույց տվեց Բիթլիսի քրդական տիրող իշխանական տան այն ժամանակվա հայտնի ներկայացուցչին՝ Մոլլա Իդրիսին, որը մեծ հեղինակություն էր վայելում քրդական ցեղապետերի մեջ. վերջիններիս իրենց զորքերով համախմբելով իր հրամանատարության տակ՝ նա միացավ Սելիմի Հայաստան արշավող բանակին։ Սուլթան Սելիմը ճանաչեց Չմշկածագի, Բալու-Ճապաղջրի, Մուֆարղինի, Խիզանի, Բիթլիսի և այլ գավառների ինքնավարական իրավունքները՝ նրանց քուրդ բեյերից յուրաքանչյուրին հաստատելով իր հյուքմեթության մեջ։ Պատերազմը վերջացավ 1516 թվականին՝ Թուրքիայի հաղթանակով։ Մոլլա Իդրիսը Սելիմի կողմից նշանակվեց Հայաստանում եղած քրդական բոլոր հյուքմեթութունների գերագույն տիրակալ, սակայն այդ հյուքմեթությունները փաստորեն մնացին անջատ-անջատ, և յուրաքանչյուրն իր գլխի տերն էր։

Միջագետքը, որն ամենից շուտ էր գրավվել, ուղղակի միացվեց Օսմանյան կայսրությանը, և նրա տերիտորիայից ու հարևան մի շարք շրջաններից կազմվեց Դիարբեքիրի վիլայեթը համանուն կենտրոնով։ Այս վիլայեթը, ինչպես վերը ասվեց, բաղկացած էր 21 սանջակներից, որոնցից 8-ը քրդական հյուքմեթություններ էին և գրեթե ամենևին չէին ենթարկվում Դիարբեքիրի թուրք փաշային։

XVIII դարում Արևմտյան Հայաստանում և նրա հարավային հարևան Քրդստանում ու հարակից շրջաններում կային քրդական հինգ մեծ իշխանություններ, որոնցից ամեն մեկի մեջ մտնում էին մի քանի հյուքմեթություններ։ Այդ հինգ իշխանություններն էին՝ **Բիթլիսը, Ջուլամերիկը, Ամադիեն, Ջեզիրեն** և **Բայազետը**։

Դրանց գրաված տերիտորիաները վարչական տեսակետից ձևականորեն մտնում էին վիլայեթների մեջ, սակայն իրականում վիլայեթների փաշաներից անկախ իշխանություններ էին։

Այժմ մի քանի խոսք այն իշխանությունների մասին, որոնց տերիտորիան ամբողջապես կամ մասամբ մտնում էր Արևմտյան Հայաստանի մեջ։

**Բիթլիսի իշխանություն.**—*Հայաստանում հաստատված քրդական իշխանությունների մեջ ամենից լայնատարածը և կարևորը Բիթլիսի իշխանությունն էր։ Նա երբեմն կոչվել է Ռոշկան։ Իշխանության կենտրոնը Բիթլիսն էր։*

*XVIII դարի սկզբին Բիթլիսի քուրդ բեյի զորքերի թիվը հասնում էր 75 հազարի։ Նա նույնիսկ կտրում էր սեփական դրամ[1]։*

*Բիթլիսի քրդական իշխանությունը մասնատված էր մի շարք հյուքմեթությունների, որոնցից նշանավոր էին Մ ո ւ շ ը, Ս ա ս ո ւ ն ը, Ս ո ւ ս ա ն ը (Սասունից արևելք), Խ ի զ ա ն ը, Հ զ ո ւ ն (Աղերդի մոտ՝ Սասունից հարավ-արևելք), Շ ի ր վ ա ն ը (Բիթլիսից հարավ), Խ ն ո ւ ս ը, Խ ո ւ թ ը, Բ ո ւ լ ա ն ը ղ ը (Մուշից հյուսիս), Խ ո ւ լ փ ը (Դիարբեքիրից հյուսիս՝ Սասունից և Մուշից արևմուտք), Խ լ ա թ ը, Ա դ ե լ ջ ի վ ա զ ը (Արծկե), Ա ր ճ ե շ ը և այլն։ Դրանցում իշխող բեյերը Բիթլիսի բեյի վասալներն էին, սակայն դա հաճախ միայն ձևական բնույթ էր կրում։ Հարաբերությունները նույնօրինակ բնույթ ունեին նաև Բիթլիսի բեյի և սուլթանի կամ նրա ներկայացուցիչ Վանի փաշայի միջև։*

*Բիթլիսի քրդական իշխանության բնակչությունը կազմված էր հայերից և քրդական զանազան ցեղերից (աշիրեթներից), որոնք ևս հիմնականում վարում էին նստակյաց կյանք։ Այս իշխանությունը XIX դարի 40-ական թվականներին վերջնականապես վերացվեց, իսկ նրա գրաված տերիտորիան մնաց սոսկ որպես վիլայեթ։*

**Հեքարի կամ Ջուլամերիկի իշխանություն.**—*Քրդական այս իշխանությունը ձևականորեն մտնում էր Վանի վիլայեթի մեջ և գրավում էր նրա հարավային ու հարավ-արևելյան մասերը։ Վանի վիլայեթը ունենալով սահմանագլխային դիրք, ավելի քան երկու և կես դար դարձել էր պայքարի առարկա Թուրքիայի ու Պարսկաստանի միջև, որոնցից յուրաքանչյուրն այն իր ձեռքում պահելու համար հովանավորում էր երկրի քրդական ցեղապետերին ու բեյերին։ Այստեղ երևան էին եկել քրդական իշխանություններ, որոնք իրենց հերթին կազմված էին մի շարք հյուքմեթություններից։ Քրդական այդ հյուքմեթությունները ենթարկվում էին մերթ Ջուլամերիկի, մերթ Խոշաբի, մերթ էլ այլ հյուքեմեթությունների բեյերին։*

*Ջուլամերիկի իշխանության մեջ մտնում էին Խոշաբի, Ջուլամերիկի, Ոստանի, Բերկրիի և այլ ավելի մանր հյուքեմեթություններ։*

**Ջեզիրեի իշխանություն.**—*Ջեզիրեն ամբողջապես Հայաստա-*

[1] *Տե՛ս* Կ. Բասմաջյան, *Հայկական ընդհանուր դրամագիտություն, Վենետիկ, 1936, էջ 119—120։*

նի տերիտորիայից դուրս էր գտնվում, սակայն նրան էին ենթարկվում Արևմտյան Հայաստանում եղած քրդական մի շարք հյուքմեթություններ՝ Դերսիմը, Խարբերդը, Բալուն և Էկլը կամ Ակլը (հին Անգեղտուն գավառը)։ Խարբերդը իր շրջակայքի մի շարք գավառների հետ միասին 1878 թ. դարձավ վիլայեթ՝ կենտրոն ունենալով Խարբերդ քաղաքը։

**Բայազետի իշխանություն** (փաշայություն).—Քրդերն Արևմտյան Հայաստանի հյուսիսային մասերում հաստատվել են անհամեմատ ավելի ուշ։ XVI դարում Մոլլա Իդրիսը հարավային և կենտրոնական Հայաստանից այստեղ տեղափոխեց քրդական մի շարք ցեղեր, որպեսզի նրանք այդտեղ հաստատվելով՝ պաշտպանեն Թուրքիայի արևելյան սահմանները[1]։ Նրանք հիմնականում բնակություն հաստատեցին Բայազետի, Դիադինի և Ալաշկերտի շրջաններում։ XVIII դարի վերջերին Բայազետի սանջակն անջատեցին Էրզրումի վիլայեթից և դարձրին առանձին փաշայություն։

Բայազետի փաշայության մեջ մտնում էին Բայազետի, Դիադինի և Ալաշկերտի շրջանները։ Փաշաները խոշոր ֆեոդալներ էին, նրանք ունեին ընդարձակ կալվածքներ։ Փաշաները հայերի նկատմամբ կիրառում էին անտանելի ծանր հարկային քաղաքականություն։ Վերջիններս պարտավոր էին կերակրել նաև նրանց սովորաբար զորքերին։

Բայազետի փաշայությանը ենթարկվում էին մի քանի հյուքմեթություններ, որոնք իրենց հերթին ունեին ներքին լայն իրավունքներ։

Քրդական այս իշխանությունը XIX դարի կեսերին սուլթանի կողմից զենքի ուժով վերացվեց։

## Հայկական իշխանությունների մնացորդները

Արևմտյան Հայաստանում XVI—XVIII դարերում հայկական նախկին իշխանությունների մնացորդներն անգամ վերացել էին պատմության ասպարեզից։ Միայն մի քանի լեռնային փոքրիկ գավառներում դեռևս գոյություն ունեին հայկական կիսանկախ «ծորապետություններ», որոնց նմանը ունեին նաև այլ ժողովուրդներ։ Օսմանյան կայսրությունը փորձել է դրանք հիմնովին վերացնել, բայց այդ նրան մինչև XIX դարի կեսերը չի հաջողվել։ Լեռնային փոքրիկ շրջաններում բնակչությունը մշտապես զինված էր և ազա-

[1] Տե՛ս Ս. Ավագյան, Պատմական Հայաստանի սահմանները, Կահիրե, 1950, էջ 438։

տագրական անհավասար պայքար էր մղում Օսմանյան կայսրության դեմ։ Հայ լեռնականներն իրենց պայքարի ընթացքում հաճախ հանդես էին գալիս դրացի ժողովուրդների հետ միասին։

Արևմտյան Հայաստանի տերիտորիայում XVI—XVIII դարերում այդպիսի կիսանկախ «ձորապետությունների»-ից հիշատակության արժանի են Սասունը (որի հայ և քուրդ բնակչությունը երկար ժամանակ՝ ընդհուպ մինչև սուլթան Համիդի կազմակերպած 1894 թ. ջարդը, համառ պայքարի գնով պահպանում էր իր ներքին ազատությունը), Մոկսը, Խիզանը (Բիթլիսից հարավ-արևելք), Շատախը և Զեյթունը (Կիլիկիայում)։ Դրանք իրավական տեսակետից իրարից զգալի չափով տարբերվում էին։ Այսպես, Սասունն ուներ ներքին ինքնավարություն, Մոկսը, Շատախն ու Խիզանը ստորադրված էին քրդական բեյերին և ցեղապետներին, իսկ Կիլիկիայում գտնվող Զեյթունը իր շրջակայքով ներկայացնում էր սոսկ ֆերմանլը[1] մի քաղաք։

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ XVI—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ

Տնտեսական առումով XVI—XVIII դարերի Հայաստանը իրենից ներկայացնում էր ծայրահեղ հետամնաց մի երկիր։ Թուրք-պարսկական երկարատև պատերազմների և ներքին կռիվների հետևանքով պարբերաբար ավերվում և ամայանում էին ոչ միայն բազմաթիվ գյուղեր ու քաղաքներ, այլև ամբողջական շրջաններ, գավառներ ու նահանգներ։

Սակայն Հայաստանի տնտեսության հետամնացության պատճառը միայն պատերազմները և ներքին կռիվները չէին, առկա էին նաև աննպաստ այլ պայմաններ, որոնք մեծապես արգելակում էին նրա տնտեսության զարգացումը։ Դրանցից կարելի է նշել հետևյալները. 1) Թուրքիան և Պարսկաստանը տնտեսապես լինելով միջնադարյան հետամնաց երկրներ, խափանում էին իրենց տիրապետության տակ գտնվող երկրների, այդ թվում և Հայաստանի տնտեսական կյանքի զարգացումը. 2) ծանր հարկային քաղաքականությունը, փաշաների, խաների, բեյերի և կապալառուների կամայականությունները հարկերի սահմանման և հավաքման ընթացքում ուժասպառ էին անում աշխատավոր բնակչությանը՝ հատկապես հպատակ ժողովուրդներին. 3) Հայաստանի և նրա հարևան երկրների՝ Ադրբեջանի ու Վրաստանի տնտեսությունը ծանր հարված ստա-

[1] Ֆերմանլը կոչվում էին այն քաղաքները կամ գյուղերը, որոնք ազատված էին որոշ տուրքերից և դրա համար ստացել էին հատուկ հրովարտակ (ֆերման)։



26—1402

ցավ Թուրքական նվաճումների հետևանքով Արևելքի ու Արևմուտքի միջև նրանց տերիտորիաների վրայով կատարվող առևտրի անկմամբ։

## Գյուղատնտեսությունը

Հողային հարաբերությունները Արևմտյան և Արևելյան Հայաստանում իրարից էապես չէին տարբերվում, սակայն դրանց միջև կային որոշ առանձնահատկություններ։

Երկու հատվածների համար ընդհանուրն այն էր, որ գյուղական համայնքների կողմից մշակվող հողերը իրենց չէին պատկանում, համարվում էին նվաճված հողեր, և նրանց տերը համարվում էր շահը կամ սուլթանը։

Պարսկաստանում առհասարակ բոլոր հողերը բաժանվում էին երեք կարգի՝ մուկաֆաթ (պետական), վակուֆ (եկեղեցական և մզկիթապատկան) և խաս (արքունական)։

Երևանի խանության մեջ ամենից տարածվածը մուկաֆաթն էր, որից և կալվածքներ էին տրվում պետական պաշտոնյաներին (խաներին, բեգերին, մելիքներին) և երբեմն էլ վաճառվում էին վաշխառուներին կամ վանքերին։ Կալվածքները տրվում էին տարբեր սկզբունքներով՝ ժառանգաբար, ժամանակավորապես, ցմահ կամ կրկին հաստատվում էին որպես հին հայրենական սեփականություն։

Պետական պաշտոնյաներին (նրանք ռոճիկ չէին ստանում), արտոնյալ մյուս մեծամեծներին, ազնվական ծագում ունեցողներին, զինվորականներին, վանքերին, մզկիթներին մյուլքի և թիուլի իրավունքով իբրև վարձատրություն տրվում էին գյուղեր կամ առանձին հողամասեր։ Մյուլքն ու թիուլը Երևանի խանության մեջ ամենատարածված ձևերն էին։ Մյուլքի իրավունք ստացողները կոչվում էին մյուլքադար, իսկ թիուլի իրավունք ստացողները՝ թիուլդար։

Պաշտոնապես մյուլքը կազմում էր գյուղացու ամբողջ եկամտի $^1/_{10}$ մասը, որը ժառանգաբար տրվում էր մյուլքադարին։ Մյուլքադարը իրավունք չուներ խառնվելու համայնքի ներքին գործերին, նույնիսկ իր հասանելիք տասանորդը (մյուլքը) նա ինքը չէր հավաքում, այլ ստանում էր խանի կողմից նշանակված հարկահանի միջոցով։ Սակայն հետագայում մյուլքի իրավունքը աստիճանաբար տարածվում է նաև հողի վրա, և մյուլքադարը փաստորեն հանդես է գալիս որպես կալվածատեր։

Թիուլը տրվում էր ոչ այնքան հաճախ, ինչպես մյուլքը: Թիուլը տվյալ գյուղից ստացվող պետական ամբողջ եկամուտն էր, որ պաշտոնապես կազմում էր գյուղացու բոլոր արդյունքների 1/5 մասը: Թիուլի իրավունքը տրվում էր այն անձանց, որոնք պետության համար կատարում էին առանձնահատուկ ծառայություն: Թիուլ էին ստանում նաև հոգևորականության բարձր խավի ներկայացուցիչները: Այս պարգևն անձնական էր և ստացողի ժառանգներին չէր անցնում, այլ նրա մահից հետո վերադարձվում էր պետությանը:

Օսմա-ֆեոդալական Թուրքիայում սկզբում պաշտոնապես մասնավոր սեփականություն էին ճանաչվում միայն շարժական գույքը և տներն ու այգիները: Մնացած բոլոր հողերը համարվում էին մ ի ր ի ե (տերունական) և վ ա կ ու ֆ (եկեղեցական-մզկիթապատկան):

Միրիե հողի մեծ մասը տրվում էր պետական պաշտոնյաներին և զինվորականներին՝ իրենց կատարած ծառայությունների համար որպես ավատ, որ կոչվում էր դ ի ր լ ի ք («ապրուստի միջոց»):

Միրիե հողերի վրա ապրող գյուղացիները պարտավոր էին իրենց ավատատերերին վճարել ա շ ա ր կամ ա շ ու ր (տասանորդ) և այլ տուրքեր: XVII դարից այդ ավատատերերը դարձան ժառանգական հողատերեր՝ դ ե ր ե բ ե յ ն ե ր («ձորապետներ»)—ավատատեր-ազնվականներ:

Հայաբնակ այն վիլայեթներում (Վան, Դիարբեքիր, Էրզրում), որտեղ մեծ մասամբ իշխում էին քուրդ բեյերը, սկզբից ևեթ հողը ճանաչվեց որպես նրանց մասնավոր ժառանգական սեփականություն և կոչվում էր յ ու ր դ լ ու ղ կամ օ ջ ա ղ լ ու ղ:

Գյուղական համայնքները ընտանիքների միջև, ըստ շնչի, պարբերաբար կատարում էին հողաբաժանություն: Բայց հողաբաժանման ժամանակ հողի մեծագույն մասը անցնում էր գյուղի հարուստներին՝ համփաներին, իսկ աղքատները ստիպողաբար զրկվում էին հողից և դառնում ռանչպարներ՝ սեփականությունից զրկվածներ:

Երևանի խանության մեջ՝ հատկապես Արարատյան դաշտում, առանձնահատուկ կարգ ու կանոնի էր ենթարկված ջրաբաշխությունը:

Բոլոր ջրերը բաժանվում էին երկու տեսակի. ա) բնական (գետերի, գետակների, լճերի, աղբյուրների, ճահիճների, անձրևի ջրերը) և բ) «հանված ջրեր» (քանքանների, ջրհորների, արհեստական առուների ու ամբարտակների ջրերը): «Հանված ջրերը» համարվում էին մասնավոր սեփականություն, որ կարող էր պատկանել ոչ

միայն մի անհատի, այլև գյուղերի, քաղաքների համայնքներին։

Յուրաքանչյուր մահալ կամ շրջան ուներ իր գետակը կամ առուն, որով այդ մահալի բոլոր գյուղերը ոռոգում էին իրենց հողերը։ Ջրից օգտվելու համար ամառվա ամիսներին սահմանվում էր հատուկ հերթականություն, որպեսզի յուրաքանչյուր ընտանիք կարողանար ոռոգել իր ցանքսերը։ Սակայն հաճախ հերթականությունը խախտվում էր համփաների և այլ հարուստների կողմից։ Ջրի օգտագործման հողի վրա հաճախ առաջանում էին կռիվներ ինչպես համայնքների, այնպես էլ ընտանիքների միջև, գործը նույնիսկ հասնում էր մարդասպանության։

Ջրաբաժանության համար գոյություն ուներ հատուկ պաշտոնեություն։ Ամեն մի մահալ ուներ մի ջրբաժան, որը կոչվում էր միրաբ և նշանակվում էր մի տարի ժամանակով։ Միրաբին ստորադրված էին ջուվարները, որոնք անմիջապես հսկում էին առուների վրա։ Միրաբները օգտվելով իրենց պաշտոնից, հաճախ կամայական կերպով էին բաշխում ջուրը և ղբաղվում էին կաշառակերությամբ։

Գյուղատնտեսության մեջ գոյություն ուներ երկու տիպի տնտեսություն՝ տերունի խոշոր տնտեսություն և գյուղացիական մանր տնտեսություն։ Տերունի խոշոր տնտեսություններ ունեին խաները, մելիքները, բեկերը, վանքերը, մզկիթները և այլն։ Սրանք իրենց ինտենսիվությամբ և կատարելագործությամբ շատ քիչ էին տարբերվում գյուղացիական մանր տնտեսություններից։ Այդպիսի խոշոր տնտեսություն ունեին, օրինակ՝ Երևանի խանը, մահալների բեկերն ու մելիքները, Էջմիածնի, Հաղպատի, Սանահինի և այլ վանքերը, Արևմտյան Հայաստանի գավառներում իշխող քուրդ բեյերը, Վարագի, Աղթամարի, ս. Կարապետի վանքերը և այլն։ Սակայն երկրի գյուղատնտեսության մեջ հիմնական դերը խաղում էին գյուղացիական մանր տնտեսությունները, որոնք իրենց արտադրողականությամբ գտնվում էին էլ ավելի ցածր մակարդակի վրա։

Բերքատվությունը եղել է ցածր։ Պատմագիրների անուղղակի հիշատակություններից և առանձին ուսումնասիրողների տվյալներից երևում է, որ, օրինակ, հացահատիկների (ցորենի, գարնան ցորենի, հաճարի և գարու) բերքատվությունը կազմել է ոչ ավելի, քան 3—4 ցենտներ մեկ հեկտարից։

Երկրի մեծագույն մասը մնում էր անմշակ։ Ենթադրվում է, որ XVI—XVII դարերում Թուրքիայում, ինչպես և նրա տիրապետության տակ գտնվող Արևմտյան Հայաստանում, մշակելի հողերի միայն $^{1}/_{10}$ մասն էր մշակվում, մինչդեռ $^{9}/_{10}$ մասը վեր էր ածվել անպտուղ տարածությունների։

Դրանց, ինչպես և հարկային ծանր լծի, կրկնվող պատերազմների ու բնական պատահարների՝ երաշտի, մորեխի, հեղեղի, կարկուտի հետևանքով պարբերաբար կրկնվում էր սովը, որը աշխատավոր բնակչությունից խլում էր մարդկային մեծ զոհեր։ Առանձնապես սոսկալի են եղել 1599—1601 թթ. Էրզրումի վիլայեթում բռնկված սովը, որը մանրամասն նկարագրված է ժամանակակիցներից մեկի կողմից[1], և 1605—1610 թթ. սովը, որը ընդգրկել է Փոքր Ասիան, Անդրկովկասը, Միջագետքը և որը խլել է հսկայական թվով զոհեր։

XVI—XVIII դարերում Հայաստանի երկրագործության մեջ որևէ նոր ճյուղ չավելացավ։ Նա իր կազմով մնաց նույնը, ինչ որ կար նախորդ ժամանակաշրջանում. հացահատիկներից մշակվում էին ցորեն, գարի, հաճար, տարեկան, կորեկ, բրինձ. տեխնիկական կուլտուրաներից՝ բամբակ, քնջութ. այգեգործական կուլտուրաներից՝ խաղող, դեղձ, ծիրան, սալոր, կեռաս, բալ, տանձ, խնձոր և այլն. բանջարեղեններից և բոստանային կուլտուրաներից՝ ձմերուկ, սեխ, վարունգ, կաղամբ, սոխ, լոբի, բակլա, զանազան տեսակի կանաչիներ։

Աննախանձելի էր նաև անասնապահության վիճակը։ Քոչվորական անասնապահությունը, որ նախորդ ժամանակաշրջանների համեմատությամբ ավելի էր արմատավորվել երկրում, նեղում էր ոչ միայն երկրագործությանը, այլև կիսաքոչվորական ու հատկապես նստակյաց անասնապահությանը։ Իսկ ինքը՝ քոչվորական անասնապահությունը հաստատուն զարգացում չէր կարող ունենալ, որովհետև նրա վիճակը գրեթե ամբողջովին կախված էր բնության քմահաճույքից։ Երաշտից և սաստիկ սառնամանիքներից, որոնք պատահական չեն Հայկական լեռնաշխարհում, քոչվորական անասնապահությունը ստանում էր մեծ հարված, նրա կորուստները հասնում էին հսկայական չափերի։

Քոչվորական անասնապահության մեջ առաջին տեղը գրավում էր մանր եղջերավոր անասնապահությունը, ապա խոշոր եղջերավոր անասնապահությունն ու ձիաբուծությունը։ Բացի դրանից, քոչվորական անասնապահությունը նստակյաց և մասամբ կիսանստակյաց անասնապահությունից տարբերվում էր և նրանով, որ նրանում քաշող անասունները, հատկապես եզները, իրենց գլխաքանակով համեմատաբար քիչ տոկոս էին կազմում։ Դա հետևանք էր այն բանի, որ քոչվոր անասնապահները երկրագործությամբ չէին

[1] Տե՛ս Ալիշան, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 597։

*զբաղվում և եզների կարիքը քիչ էին զգում։ Քոչվորական անասնապահությամբ հիմնականում զբաղվում էին քրդական որոշ ցեղեր։*

*Նստակյաց և կիսաքոչվորական անասնապահությունը ևս մեծ մասամբ ենթակա էր բնության քմահաճույքին, որովհետև խոտացանքներ շատ քիչ կային, իսկ կրկնվող երաշտների պատճառով խոտհարքները հաճախ երաշտահարվում էին, և գյուղացին հնարավորություն չէր ունենում իր անասունների համար անհրաժեշտ քանակությամբ ձմեռվա կեր հավաքելու։*

*Երկրի բարիքների մեծագույն մասը տալիս էին գյուղատնտեսության հիմնական ճյուղերը՝ երկրագործությունն ու անասնապահությունը, իսկ դրանք գտնվում էին այդպիսի անմխիթար վիճակում։*

## Արհեստագործությունը և առևտուրը

**Արհեստագործությունը.**—*Մենք տեսանք, որ դեռևս XI—XIII դարերում Հայաստանում գոյություն ունեին մի քանի տասնյակի հասնող քաղաքային արհեստներ, որոնցից շատերը համախմբված էին արհեստավորական առանձին կազմակերպությունների՝ եղբայրությունների մեջ։ Այդ կազմակերպությունները պահպանվեցին նաև հետագա դարերում։ Պարսկաստանում նրանք կոչվում էին* **համքարություններ**, *իսկ Թուրքիայում՝* **էսնաֆություններ**: *Արևելյան և Արևմտյան Հայաստանում արհեստավորների մեծ մասը կազմում էին հայերը։ Իրենց այդ կազմակերպությունները նրանք շարունակում էին կոչել եղբայրություններ։*

*Համքարական կազմակերպությունների համար Պարսկաստանում համեմատաբար պայմաններն ավելի նպաստավոր էին, քան Թուրքիայում։ Տիրանալով երկրին, թուրքական կառավարությունը ոչնչացրեց այնտեղ գոյություն ունեցող համքարությունները, սակայն դրանք ենթարկեց որոշ փոփոխությունների, որոնք ծանր էին արհեստավորների համար։ Սուլթանները համքարական կազմակերպությունները դարձրին իրենց համար եկամտի աղբյուր և շահագործման առարկա։*

*Պարսկաստանում կառավարությունն ու նրա պաշտոնատար անձինք՝ սկսած շահերից մինչև ստորին պաշտոնյաները, չէին խառնվում համքարության ներքին գործերին, այլ բավարարվում էին միայն նրանով, որ համքարությանը պարտադրում էին իր անդամների հարկը հավաքել և մուծել պետական գանձարան։*

Համքարական կազմակերպությունն ուներ իր ներքին կարգ ու կանոնը, որը կիրառվում էր ճշտությամբ։ Համքարության անդամի կատարած զանցանքների համար սահմանված էին տարբեր տեսակի տույժեր։

Համքարությունն իր անդամների աշխատանքային շահերը պաշտպանում էր թե՛ հաճախորդների (պատվիրատուների) առաջ և թե՛ համքարության ներսում։ Չէր թույլատրվում, որ արհեստավորների մրցակցությամբ վնասվի աշխատանքը։ Արգելվում էր միմյանցից աշխատանք խլելը, հսկվում էր, որ առևտրականների ու այլ պատվիրատուների կատարած գործարքների ժամանակ համքարության անդամները չենթարկվեն կամայականությունների։

Համքարության դռները փակ չէին արհեստավորների առջև, այն փակ կաստա չէր։ Միևնույն համքարության մեջ կարող էին ընդունվել տարբեր ազգությունների պատկանող, ինչպես և տարբեր տեղերից եկած արհեստավորներ։

Համքարությունն ուներ իր դրամական միջոցները և մշտական գանձարանը։ Միջոցները ստեղծվում էին տուգանքներից, զանազան վճարումներից, նվերներից և այլն։ Այդ միջոցներից բաժին էր հանվում անաշխատունակ դարձած կամ հիվանդ համքարականների, ինչպես և համքարության որբացած անդամների ապահովման համար։ Համքարությունները հաճախ իրենց միջոցներով ազատում էին գերի արհեստակիցներին։

Արհեստավորները բաժանվում էին երեք խմբի՝ վարպետ (ուստա), ենթավարպետ (քարգահ) և աշակերտ (շագիրդ)։ Ենթավարպետը տվյալ արհեստին լրիվ տիրապետելուց և որպես քննություն որևէ գործիք կամ իր պատրաստելուց հետո, մեծ հանդիսավորությամբ ու ծիսակատարությամբ վարպետից ստանում էր վկայական, որից հետո միայն կարող էր իր համար առանձին արհեստանոց բանալ։ Վարպետ դարձած ենթավարպետների տեղը գրավում էր ավագ աշակերտը։ Աշակերտությունից վարպետության աստիճան ձեռք բերելու համար տարբեր արհեստների բնագավառում սահմանված էր տարբեր ժամկետ, որը տատանվում էր 6—12 տարվա սահմաններում։ Աշակերտները կազմում էին արհեստավորության շահագործվող տարրը։ Ենթավարպետի վիճակը նույնպես նախանձելի չէր, նրա ստացած աշխատավարձը աննշան էր, և նա չէր կարող վարպետ դառնալ առանց իր վարպետի վկայության։

Համքարությունն ուներ իր վարչությունը, որը ընտրվում էր արհեստավորների ընդհանուր ժողովում։ Այդ վարչությունը բաղկացած էր ուստաբաշուց (գլխավոր վարպետ), նրա երկու օգնականներից (աղսախկալներից), գանձապահից (խազնա-

դարից) և իգիթբաշուց, որն ի կատար էր ածում ուստաբաշու վճիռները, նրա կարգադրությունները հաղորդում էր համքարության անդամներին։ Ուստաբաշին համարվում էր համքարության պետը։ Նա էր ամբողջապես տնօրինում քաղաքի քալանթարի կամ դարուղայի հետ եղած գործերը, որոշում հարկերի չափը, բողոքում այս կամ այն անարդարացի վճիռների դեմ։

Համքարությունները հաճախ խոշոր դեր էին խաղում նաև քաղաքների ընդհանուր տնտեսական և մշակութային կյանքում։

Համքարությունները առանձնապես ուժեղ էին դարբնության, ոսկերչության, ներկարարության, պայտարության, կաշեգործության և մի շարք այլ արհեստների գծով։

Արհեստագործական գործիքները պարզունակ էին, բացառապես տիրապետում էր ձեռքի աշխատանքը, արտադրողականությունը շատ ցածր էր։ Թե՛ Արևելյան և թե՛ Արևմտյան Հայաստանում ամենից ավելի տարածված էին կավագործությունը, դարբնությունը, ոսկերչությունը, ներկարարությունը, գզրարությունը, մանածագործությունը, պայտարությունը, դերձակությունը, կաշեգործությունը, հյուսնությունը և այլն։

Արհեստագործության կենտրոններից էին՝ Էրզրումը, Երզնկան, Երևանը, Վանը, Բիթլիսը, Մուշը, Կարսը, Բայազետը, Խլաթը։

Առևտուր.—Այս ժամանակաշրջանի արտաքին առևտրի մեջ նորությունն այն էր, որ Անդրկովկասի երկրները, այդ թվում և Հայաստանը, առևտրա-տնտեսական տեսակետից ավելի սերտորեն կապվեցին Ռուսաստանի հետ։

XVI—XVIII դդ. անդրկովկասյան երկրների և Ռուսաստանի միջև առևտրա-տնտեսական հարաբերությունների զարգացման ու արագ ծավալման համար ստեղծվել էին բարենպաստ մի շարք պայմաններ, որոնցից անհրաժեշտ ենք համարում նշել հետևյալները.

1. Ռուսաստանը դարձել էր միասնական մի ընդարձակ պետություն, և զարգանում էին նրա տնտեսության բոլոր ճյուղերը, այդ թվում և արտաքին առևտուրը։

2. XVI դարի կեսերին, Մերձվոլգյան շրջանների միացումով, Վոլգայի ջրային ճանապարհն ամբողջապես ընդգրկվեց ռուսական պետության մեջ, իսկ Վոլգան ելք էր բաց անում Կասպից ծովի վրայով դեպի Պարսկաստան ու Անդրկովկաս։

3. Թուրքական նվաճումների, ինչպես և առհասարակ համաշխարհային առևտրի ճանապարհների ուղղության փոփոխման հետևանքով (Միջերկրական ծովի փոխարեն համաշխարհային առևտրի մեջ սկսեց վճռող դեր խաղալ Ատլանտյան օվկիանոսը) Մեր-

ծավոր Արևելքի, Անդրկովկասի և Պարսկաստանի վրայով Արևելքի հետ կատարվող քարավանային առևտուրը կորցրեց իր նշանակությունը։ Անդրկովկասն ու Պարսկաստանը Արևմուտքի փոխարեն առևտրա-տնտեսական ավելի սերտ կապերի մեջ մտան Ռուսաստանի հետ։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ Ռուսաստանի հետ առևտրական հարաբերությունները սկսեցին անշեղորեն զարգանալ հատկապես XVII դարի 20—30-ական թվականներից, որովհետև մինչ այդ, Պարսկաստանի և Թուրքիայի միջև XVI դարում և XVII դարի սկզբում մղվող պատերազմների հետևանքով, նպաստավոր պայմաններ չկային առևտրական նորմալ հարաբերությունների համար։

Հայ վաճառականները գրեթե ամբողջովին իրենց ձեռքն էին վերցրել Պարսկաստանի և Ռուսաստանի միջև կատարվող առևտուրը։ Այդ գործում առանձնապես ակտիվ էին Նոր Ջուղայի վաճառականները, որոնք կազմել էին ընկերություն։

Հայ առևտրականները Ռուսաստան էին տանում պարսկական հում մետաքս, Արևելքի զանազան ապրանքներ (թանկագին քարեր, համեմունքներ), հայկական արհեստավորական արտադրանքներ (գորգեր, ներկեր և այլն)։

Ռուսաստանից Արևելյան Հայաստան և Պարսկաստան էին ներմուծվում թանկագին մորթիներ, մոմ, քաթան, մահուդ, մետաղյա իրեր և այլ արտադրանք, իսկ Եվրոպայից՝ մահուդ, տնային գործածության իրեր, զարդեր, հայելիներ։

Ռուսաստանի և Պարսկաստանի միջև կատարվող առևտրի մեջ XVII դարի 2-րդ կեսից և մանավանդ XVIII դարում առանձնահատուկ խոշոր դեր էր խաղում Երևանը։ Նա դարձել էր այն հանգույցներից մեկը, որտեղ կենտրոնանում էր Պարսկաստանից դեպի Ռուսաստան և Ռուսաստանից Պարսկաստան արտահանվող ապրանքների մի զգալի մասը։ Երևանը բանուկ ճանապարհներով կապված էր Նախիջևանի, Թավրիզի, Թբիլիսիի և Գյանջայի հետ։

Սակայն հայ վաճառականների գործարքները չէին սահմանափակվում միայն Ռուսաստանի և Պարսկաստանի միջև կատարվող առևտրով։ Նրանք տարանցիկ առևտուր էին անում նաև Արևմտյան Եվրոպայի, Հնդկաստանի ու Չինաստանի հետ։

Արևմտյան Հայաստանի հայ վաճառականները Թուրքիայի արտաքին առևտրով գրեթե չէին զբաղվում. այդ առևտուրը գտնվում էր եվրոպական առևտրականների ձեռքին։

Ընդհանուր առմամբ Արևելյան և Արևմտյան Հայաստանից արտահանվող կարևոր ապրանքներից էին՝ տառեխ ձուկը, բամբակի

գործվածքները, գղթորը, կաշիները, գորգերը, մետաքսը, բամբակը և այլն։

Ներքին առևտուրը մեծապես կապված էր արտաքին տարանցիկ առևտրի հետ. այն աշխույժ բնույթ էր կրում միայն տարանցիկ ճանապարհների մերձակա շրջաններում և գավառներում։

Ներքին առևտրի ապրանքները գյուղատնտեսական և արհեստավորական արտադրանքներ էին։ Իբրև ներքին առևտրի կենտրոնները էին ընկնում Երևանը, Էրզրումը, Երզնկան, Կարսը, Վանը, Խլաթը, Մուշը, Բիթլիսը։ Պակաս դեր չէին խաղում նաև գավառական կենտրոններն ու ճանապարհների վրա գտնվող բնակավայրերը։

Քաղաքներում կային շուկա-հրապարակներ, որտեղ լինում էին բազմաթիվ մանր խանութներ և կրպակներ։

Առևտրականներն ըստ իրենց կարողության և կատարած գործարքների, բաժանվում էին որոշ խմբերի՝ խ ո ջ ա ն և ր ի, թ ո մ ա ր ի ա ռ և տ ր ա կ ա ն ն ե ր ի, խ ա ն ո ւ թ պ ա ն ն ե ր ի և չ ա ր չ ի ն ե ր ի։ Խոջաները ամենից ազդեցիկ ու հարուստ առևտրականներն էին և հիմնականում զբաղվում էին արտաքին ու տարանցիկ առևտրով։ Թոմարի առևտրականները կատարում էին յուրատեսակ միջնորդի դեր։ Նրանք գնելով և իրենց մոտ կուտակելով մեծ քանակությամբ ներմուծված ու տեղական ապրանքներ, դրանք վաճառում էին խանութպաններին և չարչիներին (փերեզակ)։ Խանութպանները առևտուր էին անում իրենց սեփական խանութներում։ Նրանք վաճառքի համար իրենց ապրանքները գնում էին խոջաներից և թոմարի առևտրականներից. իսկ չարչիները շրջիկ մանր առևտրականներ էին։

Առևտրականները կազմակերպել էին ընկերություններ։ Սովորաբար այդ ընկերություններից յուրաքանչյուրն իր մեջ էր միավորում միատեսակ ապրանքներով առևտուր անող վաճառականներին։ Այսպես, օրինակ՝ ընկերություններ կային գինեվաճառության և մի քանի այլ ապրանքների առևտրի գծով։

Սակայն խոսելով XVII—XVIII դդ. Հայաստանի առևտրի մասին, չպետք է չափազանցնել նրա բնույթն ու ծավալը։ Այդ դարերում Հայաստանի տնտեսությունը մնում էր որպես փակ բնատնտեսություն։ Ներքին առևտուրը դեռևս լայն կերպով չէր թափանցել նրա խորքերը։ Բացի տնտեսության փակ նատուրալ բնույթից ու հետամնացությունից, առևտրի զարգացումը խափանում էին նաև Պարսկաստանի ու Թուրքիայի միջև պարբերաբար կրկնվող պատերազմները, փաշաների, խաների ու բեյերի ներքին կռիվները, մաք-

ային բարդ սիստեմը և չափերի ու կշիռների բազմատեսակությունը, թալանն ու կողոպուտը։

## Քաղաքները

Միջնադարյան հետամնացության մեջ խարխափող Թուրքիայում և Պարսկաստանում քաղաքային կյանքի զարգացման համար նպաստավոր պայմաններ չկային։ Առևտրի ու արհեստագործության համեստ չափերն ու ծավալը մեծ հեռանկարներ չէին կարող բաց անել քաղաքների զարգացման համար, չհաշված այն, որ պարբերաբար կրկնվող պատերազմների և ներքին կռիվների հետևանքով շատ քաղաքներ ենթարկվում էին լուրջ ավերման։

XVII—XVIII դդ. Հայաստանի քաղաքներից նշանավոր էին՝ Երևանը, Էրզրումը, Վանը, Երզնկան, Կարսը, Բայազետը, Խլաթը, Բիթլիսը, Մուշը և Արճեշը։ Սակայն բացառությամբ Երևանի, Էրզրումի, Վանի և Երզնկայի, յուրաքանչյուրի բնակչության թիվը մեկ տասնյակ հազարից չէր անցնում։ Այսպես, օրինակ, Արևելյան Հայաստանի ամենանշանավոր քաղաքը՝ Երևանը, XIX դարի առաջին քառորդում ունեցել է միայն մոտ 12 հազար բնակիչ (2400 ընտանիք), իսկ Արևմտյան Հայաստանի Խլաթ, Մուշ և Արճեշ քաղաքների բնակչության թիվը ավելի փոքր է եղել։ Քրդական բեյերի միջև մղվող կռիվների հետևանքով Մանազկերտը որպես քաղաք շարքից դուրս էր եկել։ Հայաստանի այս հնագույն քաղաքը, որը նախորդ բոլոր ժամանակաշրջաններում չնայած բազմիցս ենթարկվել էր ավերման, այնուամենայնիվ, մինչև թուրք-պարսկական տիրապետության շրջանը չէր կորցրել իր նշանակությունը։ XVI դարում նա ուներ մոտ 6000 տուն, իսկ XIX դարի սկզբում՝ միայն 107 տուն։

Հայերից հետո Արևելյան Հայաստանի քաղաքներում զգալի տոկոս էին կազմում ադրբեջանցիները, իսկ Արևմտյան Հայաստանի քաղաքներում՝ թուրքերն ու քրդերը։

Քաղաքները սովորաբար ունեին միջնաբերդեր, որոնք պատած էին ամուր պարիսպներով։ Իրենց ամուր միջնաբերդերով հռչակված էին Էրզրումը, Կարսը, Երևանը և, մասամբ, Բայազետը։

Քաղաքները բաժանված էին առանձին թաղամասերի։ Թաղամասերն իրենցից ներկայացնում էին վարչական և տնտեսական միավորներ։ Քաղաքների պետերը կոչվում էին ք ա լ ա ն թ ա ր ն ե ր և նշանակվում էին խանի կամ փաշայի կողմից, իսկ թաղամասերի կառավարիչները կոչվում էին քեդխուդա կամ մելիք։

Քաղաքներում բնակվում էին սոցիալական տարբեր խմբերին

պատկանող բնակիչներ։ Քաղաքների բնակչության ճնշող մասը կազմում էին արհեստավորները, առևտրականները և չքավոր ու ընչազուրկ բնակիչները, որոնք ծառայում էին կամ տներում, կամ զանազան հաստատություններում որպես սևագործ բանվորներ և բեռնակիրներ։

Քաղաքային բնակչությունը առևտրից, արհեստներից և այլ զբաղմունքներից բացի զգալի չափով կապված էր նաև գյուղատնտեսական աշխատանքների հետ։ Քաղաքներում (օրինակ, Երևանում, Վանում և այլուր) կային բազմաթիվ այգիներ, բանջարանոցներ։ Դրանց, ինչպես և տների մեծ մասի մի հարկանի լինելու և ամեն մի տան մեջ միայն մեկ ընտանիք բնակվելու պատճառով՝ քաղաքները գրավում էին ընդարձակ տարածություններ։

Քաղաքները գտնվում էին անբարեկարգ վիճակում։ Տները մեծ մասամբ կավակերտ էին, իսկ փողոցները՝ նեղ ու ոլորապտույտ։ Այդպիսի թույլ կառուցվածք ունենալու պատճառով տները երկրաշարժից և երկարատև անձրևներից հեշտությամբ փլվում էին։ Այսպես, օրինակ, 1648 թ. Վանում և 1679 թ. Երևանում տեղի ունեցած երկրաշարժերից ավերվել են ոչ միայն տների մեծ մասը, այլ նաև ավելի ամուր համարվող՝ եկեղեցական ու պաշտպանական շինություններ։

Քաղաքների փողոցները չէին լուսավորվում։ Մութն ընկնելուն պես բոլորը քաշվում էին իրենց տները։ Քաղաքներից շատերը չունեին խմելու համար պիտանի ջուր։ Փոշու առատության, նեխած ու ճահճային ջրերի առկայության, բուժօգնության և սանիտարական տարրական կանոնների պահպանման բացակայության պատճառով քաղաքներում անպակաս էին մահասփյուռ հիվանդությունները։

### 3. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՏԵՂԱՇԱՐԺԵՐՆ ՈՒ ԷԹՆԻԿԱԿԱՆ ԿԱԶՄԸ XVI—XVIII ԴԱՐԵՐՈՒՄ

XVI—XVIII դարերը հայ ժողովրդի պատմության ամենամռայլ ժամանակաշրջաններից են։

Գերեվարությունների, բռնի գաղթերի, հարկադրական արտագաղթի և այլ միջոցներով Հայաստանում հայ բնակչության թիվը զգալի չափով նվազում է։ Մոտավոր հաշիվներով, այդ դարերի ընթացքում զանազան եղանակներով Հայաստանից դուրս է գնացել ավելի քան մեկ միլիոն բնակիչ։

Պարսկական շահերը Թուրքիայի հետ ունեցած առաջին իսկ

պատերազմներից մինչև XVII դարի առաջին քառորդի վերջերը թուրքական ներխուժման առաջն առնելու ելքը տեսնում էին Արևելյան Հայաստանի ամայացման և նրա բնակչության Պարսկաստանի խորքերը քշելու մեջ։ Այդ եղանակով հարյուր-հազարավոր հայ բնակիչներ տեղահան արվեցին Արևելյան Հայաստանի տարբեր շըրջաններից և քշվեցին Պարսկաստանի հարավային ու կենտրոնական գավառները։ Տեղահանումը ահավոր չափի հասավ հատկապես Շահ Աբաս I-ի 1603—1604 թթ. արշավանքների ժամանակ։

Պարսկական այդ բռնակալը, լուր ստանալով օսմանյան բանակի հարձակման մասին, հրամայում է իր զորքերին ամայացնել Արևելյան Հայաստանի քաղաքներն ու գյուղերը, իսկ բնակիչներին զենքի ուժով քշել Պարսկաստան։ Մահվան սպառնալիքի տակ տեղահան է արվում մոտ 350 000 բնակիչ և զինվորական ջոկատների խիստ հսկողությամբ 1604 թ. քշվում դեպի Պարսկաստան։ Նրա մի զգալի մասը վատ եղանակների, սննդի բացակայության և այլ պատճառներով ճանապարհին զոհ է գնում։

Նույն կերպ էին վարվում նաև թուրքական սուլթանները։ Պարկաստանը թուլացնելու և Անդրկովկասը գրավելու ու իրենց լծի տակ պահելու համար թուրքական սուլթանները ևս, երկիրն ավերելու հետ միաժամանակ, նրա բնիկ բնակիչներին քշում էին իրենց կայսրության արևմտյան և հարավային նահանգները (գլխավորապես Փոքր Ասիայի արևմտյան շրջանները և Եգիպտոս)։ Այսպես, օրինակ, օսմանյան զորքերը 1578 թ. Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի վրա կատարած արշավանքի ընթացքում Արարատյան դաշտից և Երևանից 60 000 գերի վերցրին և քշեցին Թուրքիայի արևմտյան շրջանները։

Սակայն պարսկական շահերը տեսնելով, որ Արևելյան Հայաստանի ամայացումով ոչ թե դժվարանում, այլ, ընդհակառակն, հեշտանում է Օսմանյան կայսրության առաջխաղացումը դեպի արևելք, XVII դարի առաջին քառորդից սկսած փոխեցին իրենց այդ քաղաքականությունը և աշխատեցին երկիրը բնակեցնել հայերով։ Այդ նպատակով 1618—1623 թթ. ընթացքում Երևանի Ամիրգունա խանը, նույնիսկ մի քանի արշավանքներ է կատարում դեպի Արևմտյան Հայաստանի տարբեր շրջաններ և այնտեղից մեծ թվով հայեր բերելով, բնակեցնում է Արարատյան դաշտի տարբեր մասերում։ Բացի այդ, թույլատրվում է Պարսկաստան տարված բնակչության վերադարձը դեպի Հայաստան։ Այդպիսի քաղաքականության հետեվանքով Արևելյան Հայաստանի հայ բնակչությունը XVII դարի 30—40-ական թվականներից մինչև նույն դարի վերջերը զգալի չափով ավելանում է։ Արևմտյան Հայաստանում, ընդհակառակն, գնալով

հայ բնակչության թիվը ավելի ու ավելի է նվազում։ Սուլթաններն իրենց տիրապետությունը Հայաստանի այդ մասում հաստատուն դարձնելու համար պարբերաբար տեղահան էին անում հայ բնակչությանն իր հայրենի երկրից ու քշում դեպի կայսրության տարբեր մասերը, իսկ նրանց տեղը բնակեցնում էին թուրքեր ու քրդական ցեղեր։

Թուրք-պարսկական պատերազմների ընթացքում Թուրքիան օգտագործեց քրդական շեյխերի ու բեկերի՝ Պարսկաստանի դեմ ուղղված շարժումը և օգնեց նրանց Արևմտյան Հայաստանի գավառներում ավելի ամրանալու։ Սուլթան Սելիմից սկսած Օսմանյան կայսրության արևելյան սահմանների հսկողությունը հանձնվեց քրդական ցեղապետներին։ Այդ պարտականությունը կատարելու համար բազմաթիվ գավառներից հայերին տեղահան արեցին և նրանց տեղում բնակեցրին քրդական ցեղեր, որոնց մի մասը դարձավ նստակյաց։ Հյուսիսային Միջագետքից ու Քրդստանից տեղահանված քրդերը հիմնականում բնակվեցին Մասիսի Արևմտյան լանջերին, Բայազետի, Դիադինի ու Ալաշկերտի շրջաններում և Վանա լճից հյուսիս ընկած գավառներում։ XVI դարի վերջերին քրդական ցեղեր բնակվեցին նաև Արևելյան Հայաստանում։

XVI—XVIII դդ. ընթացքում արտագաղթի հոսանքը ոչ միայն չընդհատվեց, այլ ավելի ուժեղացավ։ Երկրում ստեղծված անտանելի պայմաններից ստիպված հայ ժողովրդի հոծ զանգվածներ բռնում էին արտագաղթի ուղին։ Արտագաղթն ուներ տարբեր ուղղություններ. գաղթող բնակչության մի մասը հաստատվում էր հարևան Վրաստանում և Ադրբեջանում, իսկ մյուս խոշոր մասը դիմում էր դեպի հեռավոր երկրներ՝ դեպի Հյուսիսային Կովկաս, Ղրիմ, Արևմտյան Ուկրաինա, Լեհաստան, Իտալիա, Հնդկաստան, Սիրիա, Փոքր Ասիայի արևմտյան շրջանները, Պարսկաստանի կենտրոնական ու հարավային գավառները և այլ տեղեր։

XVIII դարի առաջին քառորդից Արևելյան Հայաստանից արտագաղթողների հիմնական հոսանքն ուղղված էր դեպի Ռուսաստանի հարավային նահանգները։ Պետրոս Առաջինը 1723 թվականին հայերին ուղղած իր հատուկ հրովարտակով խոստանում էր արտոնություններ տալ այն բոլոր հայերին, ովքեր ցանկանում էին մշտապես կամ ժամանակավորապես բնակվել Ռուսաստանում և նրա նոր գրաված վայրերում։ Այդ հրովարտակի հետևանքը եղավ այն, որ Արևելյան Հայաստանից հազարավոր հայեր գաղթեցին դեպի Ռուսաստանի հարավային նահանգները՝ գլխավորապես Հյուսիսային Կովկասի արևելյան և արևմտյան շրջանները։

XVII—XVIII դդ. Արևելյան Հայաստանում հայերի հետ միա-

*սին բնակվում էին նաև ադրբեջանցիներ և մասամբ քրդեր։ Այստեղ մյուս ազգությունների (ասորի, հույն ու այլք) պատկանողները սակավաթիվ էին և գրեթե տոկոս չէին կազմում։ Արևմտյան Հայաստանում, ուր հայ բնակչությունն ավելի մեծ չափով էր ենթարկված տեղահանման, ոչնչացման և գերեվարության, այնուամենայնիվ, նա կազմում էր բնակչության մեծամասնությունը՝ հատկապես Էրզրումի, Վանի, Կարսի և Դիարբեքիրի վիլայեթներում։ Երկրորդ տեղն, ըստ իրենց թվի, բռնում էին քրդերը, իսկ երրորդը՝ թուրքերը։ Քուրդ բնակչության մեծ մասը հաստատված էր Վանի վիլայեթում և Բայազետի փաշայությունում։*

*XVI—XVIII դդ. Հայաստանի աշխատավոր բնակչությունը տիրող դասերի կողմից ենթարկվում էր դաժան շահագործման։*

*Առանձնապես ծանր էր հպատակ քրիստոնյա բնակչության վիճակը։*

*Հպատակ ժողովուրդներից տասնյակ հազարավոր երիտասարդներ վաճառքի էին հանվում շուկաներում և ստրկացվում։ Տնային ստրկությունը XVII—XVIII դդ. Թուրքիայում և Պարսկաստանում սովորական երևույթ էր։ Արևմտյան Հայաստանում կային փաշաներ, որոնց ստրուկների թիվը հասնում էր մի քանի հարյուրի։ Բնակչությունը ենթակա էր իշխողների կամայականություններին։*

*Օրենքի և կարգ ու կանոնի բացակայությունը, բռնությունները, ջարդերը, անասելի կեղեքումները, խրոնիկական բնույթ ստացած պատերազմները, ազգային հալածանքները սպառնում էին մեր ժողովրդի ֆիզիկական գոյությանը։*

*Անդրկովկասի ժողովուրդները համառ պայքար էին մղում ֆիզիկական բնաջնջումից փրկվելու և օտարի լուծը թոթափելու համար։ Նրանք ազատագրական պայքարի ընթացքում սերտ հարաբերությունների մեջ մտան Ռուսաստանի հետ և նրա օգնությամբ փրկվեցին պարսկական ու թուրքական ծանր լծից ու ֆիզիկական բնաջնջումից։*

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ԲԱԺԻՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ 1801—1917 ԹԹ.

### 1. ԵՐԿՐԻ ՎԱՐՉԱԿԱՆ ԿԱՐԳԸ

*Արևելյան Հայաստանի պատմական կյանքում 1801—1917 թթ. ընթացքում կատարվում են արմատական փոփոխություններ։ XIX դարի առաջին տասնամյակներում Անդրկովկասի երկրները՝ Վրաստանը, Ադրբեջանը և Արևելյան Հայաստանը միացվում են Ռուսաստանին։ Դրանից հետո Անդրկովկասի երկրների ու ժողովուրդների պատմական բախտը ամբողջովին կապվում է Ռուսաստանի և ռուս ժողովրդի պատմության հետ։*

*Չհաշված հայաբնակ մի շարք շրջաններ (Լոռի, Ղարաբաղ, Զանգեզուր և այլն), Արևելյան Հայաստանը Ռուսաստանին է միացվում Թուրքմենչայի պայմանագրով (1828 թ.), որը հաջորդեց ռուս-պարսկական 1826—1828 թթ. պատերազմին։ Ռուսաստանին միացված Արևելյան Հայաստանում վարչական փոփոխություններ են կատարվում դեռևս պատերազմն ավարտվելուց առաջ։*

*Երևանը գրավելուց անմիջապես հետո (1827 թ. հոկտեմբերի 1-ին) նախկին Երևանի ու Նախիջևանի խանությունների տերիտորիաներում կարգ ու կանոն հաստատելու և մինչև ռուս-պարսկական պատերազմի ավարտումը դրանց տնտեսական հնարավորությունները պատերազմի նպատակներին ծառայեցնելու համար գեներալ Պասկևիչը 1827 թ. հոկտեմբերի 6-ին Երևանում կազմակերպում է «ժամանակավոր վարչություն»՝ նրան հանձնարարելով նշված նախկին խանությունների կառավարումը։*

*Երևանում հաստատված ժամանակավոր վարչությունը բաղկացած էր երեք մարդուց՝ այստեղ գտնվող զորքերի հրամանատար գեներալ-լեյտենանտ Կրասովսկուց, որը համարվում էր վարչու-*

թյան նախագահը, Ներսես Աշտարակեցուն, որը իբրև տեղացի, բնակչության մեջ մեծ հեղինակություն ունեցող և երկրի պայմաններին լավ ծանոթ անձնավորություն, պետք է նպաստեր վարչության աշխատանքի հաջող ընթացքի ապահովմանը, և Երևանի բերդի պարետ փոխ-գնդապետ Բորոդինից։ Ժամանակավոր վարչությունը ամբողջովին ենթարկվում էր կովկասյան զորքերի գլխավոր հրամանատար Պասկևիչին և կառավարվում նրա կարգադրությունների հիման վրա։ Երևանի և Նախիջևանի նախկին խանությունների ներքին կյանքում ժամանակավոր վարչության գործունեության շրջանում փոփոխություններ չէին նախատեսված, և այդպիսիք տեղի չունեցան. ուժի մեջ մնացին վարչական բաժանման մահալային սիստեմը և դրանց կառավարման նախկին, պարսկական ձևը։ Ավելին, Նախիջևանում իրենց պաշտոններում մնացին պարսկական տիրապետության շրջանի բոլոր պաշտոնյաները, որոնք ենթարկվում էին ժամանակավոր վարչությանը։

Ժամանակավոր վարչությունը, կազմված լինելով մարզի քաղաքացիական բոլոր գործերը վարելու նպատակով, մեծ պարտականություններ էր կրում իր վրա։ Այդ պարտականությունները հատուկ հրամանագրի ձևով կազմվել էին Պասկևիչի կողմից և տրվել ժամանակավոր վարչությանը ի ղեկավարություն։

Պասկևիչի այդ հրամանագրով ժամանակավոր վարչությանը հանձնարարվում էր՝ մարզում հաստատել խաղաղություն, ապահովել նրա անդորրը ներքին և արտաքին հարձակումներից, հաշվի առնել և հայտնաբերել պետական բոլոր կարգի ունեցվածքները, պարսկական տիրապետության շրջանի պետական բոլոր եկամուտները և դրանք տրամադրել հօգուտ ռուսական կառավարության, զորքը մշտապես ապահովել պարենամթերքով, ռուսական իշխանությանը ենթարկել Արաքսի աջ կողմում գտնվող ցեղերին, որոնք ցանկանում են մտնել Ռուսաստանի հովանավորության ներքո, տեղական պաշտպանության նպատակներով տեղացիներից կազմակերպել զինված ջոկատներ, միջոցներ ձեռնարկել ժանտախտի տարածման դեմ, ապահովել Երևանի և Սարդարաբադի բերդերի կայազորների ու բնակիչների մատակարարումը, տեղեկություններ հավաքել թուրքական փաշայություններում տեղի ունեցող զորքերի շարժման և նրանց զինվածության մասին, ապահովել Վրաստանի հետ մշտական կապը Ապարանով և Դիլիջանի կիրճով, հոգ տանել Երևանում և Սարդարաբադում բամբակի մշակությունը ավելացնելու և ձեռնտու գներով բամբակ ձեռք բերելու համար, հովանավորել առևտուրը, Կողբի աղահանքերի արդյունահանությունը, բըն-

նել և ընթացք տալ եղած դիմումներին, պարզել արտոնյալ դասերի ներկայացուցիչների իրավական դրությունը և այլն, և այլն։

Այսպիսով, Պասկևիչը ժամանակավոր վարչությունից պահանջում էր լուծել պատերազմի և խաղաղ կյանքի հետ առնչվող այնպիսի հարցեր, որոնք կապված էին մեծ դժվարությունների հետ։ Քաքայված երկիրը ամենևին ի վիճակի չէր իր ողորմելի տնտեսությամբ հագուրդ տալու ցարական աստիճանավորների մեծ ախորժակին։

Պասկևիչը ժամանակավոր վարչության չորս ամիսների գործունեությունից անչափ դժգոհ է մնում և գլխավոր շտաբի պետ Դիբիչին գրավոր բողոք է ներկայացնում գեներալ Կրասովսկու դեմ, վերջինիս մեղադրելով անգործության մեջ։

Առանց այդ բողոքի էլ վաղուց արդեն արքունիքում նախագիծ էր մշակվում Երևանի մարզի մնայուն վարչաձևի համար։ Նիկոլայ I-ը դեռևս 1827 թ. հոկտեմբեր ամսին կարգադրել էր կազմել մի հանձնաժողով, որը մշակեր նոր նվաճված այդ երկրի կառավարչության նախագիծ և այն ներկայացներ հաստատելու։ Հանձնաժողովի կազմած նախագիծը երևան է գալիս 1827 թ. վերջերին։ Դա երկրի վարչական, տնտեսական և ռազմական բնագավառներին վերաբերող մի ընդարձակ կանոնադրության նախագիծ էր, որով հանձնարարվում էր առաջին իսկ հնարավորության դեպքում Երևանի մարզում (ПРОВИНЦИЯ), այսինքն՝ Երևանի ու Նախիջևանի խանություններում, ինչպես և նոր միացված մյուս շրջաններում ժամանակավոր կառավարչության փոխարեն ստեղծել նոր վարչություն կա՛մ Երևանում, կա՛մ մի այլ հարմար տեղում։ Այդ վարչությունը ենթարկվելու էր Պասկևիչի իշխանությանը և բաղկացած էր լինելու հինգ հոգուց՝ տվյալ մարզի ռազմական պետից, երկու խորհրդականներից, որոնք լինելու էին ռուս աստիճանավորներ (մեկը ոստիկանության գծով, իսկ մյուսը՝ ֆինանսական), և երկու ասեսորներից՝ խորհրդակցական ձայնով։ Ասեսորները երկուսն էլ լինելու էին բնակչության արտոնյալ խավերից՝ մեկը հայ, իսկ մյուսը՝ ադրբեջանցի։ Վարչությունն ունենալու էր իր գրասենյակը և համապատասխան պաշտոնյաները։

Երևանի մարզի վարչությանը պարտավորեցվում էր վերականգնել և պահպանել մարդկանց անդորրը և խաղաղ կյանքը՝ հետապնդելով բոլոր կասկածելի մարդկանց, հովանավորել ու զարգացնել առևտուրը, արդյունաբերությունը, առանձնապես հոգ տանել բամբակի արտադրությունը ընդարձակելու մասին։ Հանձնարարվում էր ամենակարճ ժամանակամիջոցում տեղեկություններ հավաքել քաղաքների, գյուղերի, պետական գյուղերի, առևտրի, ֆաբ-

*թիկաների ու ընդհանրապես արդյունաբերության, հացահատիկների մշակության, անասնապահության, շերամապահության, հարկերի, առանձին դասակարգերի մարդկանց իրավունքների, ջրաղացների, այգիների, հողերի, լեռնային արդյունահանության և այլ ու այլ բնագավառների մասին։ Նախագծով մարզային վարչությունը պարտավորվում էր սկզբնական շրջանում պարսկական տիրապետության ժամանակաշրջանի հարկային սիստեմը նույնությամբ թողնել ուժի մեջ, միայն չեղյալ հայտարարելով հայերից դավանանքի համար վերցվող հարկը, ինչպես և հրաժարվել հարկադրման և հարկահավաքման ժամանակ պարսիկների կիրառած անվայելուչ ու կամայական միջոցներից խաղաղության պայմանագիրը կնքելուց հետո միայն մարզում կիրառել Ռուսական կայսրության մեջ գործող հարկային սիստեմը։ Եկամուտների ներքին ղեկավարումը սկզբում վերապահվում էր մարզային վարչությանը և կախված էր նրանից, իսկ վերահսկողի դերը պատկանում էր Վրաստանի պետական էքսպեդիցիային։ Կանոնադրության նախագծում հատուկ կերպով սահմանվում է գործերի լուծման կարգը, ըստ որի մարզում գործերը լուծվում են երկու խորհրդականների զեկուցման հիման վրա, անհրաժեշտ դեպքում լսելով ասեսորների կարծիքը։ Վճիռները հաստատվում են զինվորական պետի կողմից, որի անունով էլ հենց գրվում են պաշտոնական գրությունները, բացի տեղեկանքներից և այս կամ այն հարցի իսկությունը հաստատող գրություններից, որոնք կարող էին տրվել խորհրդականների կողմից։*

*Նշվածներից բացի, մարզային վարչության կանոնադրության նախագծում հատուկ հոդվածներով հանձնարարվում է վարչությանը զբաղվել մարզի բնական հարստությունների հետազոտմամբ՝ հատուկ ուշադրություն դարձնելով հատկապես Կողբի աղահանքերի վրա, կազմակերպել արտաքին ու տրանզիտային առևտուրը, կանոնավորել մաքսատները, մաքսերի գանձման գործը, լավացնել ու բարելավել հաղորդակցությունը և այլն, և այլն։*

*Մարզի վարչական ու կառավարական սիստեմը որոշելիս այս նախագիծը չնչին փոփոխություններով կիրառվեց իբրև պարտադիր կանոնադրություն։*

*Հիմք ընդունելով հիշյալ նախագիծը, բարձրագույն հրամանագրով, Թուրքմենչայի պայմանագիրը վավերացնելուց մեկ օր անց, 1828 թ. մարտի 21-ին Երևանի ու Նախիջևանի նախկին խանությունների տերիտորիաներից կազմվում է Հայկական մարզը։*

*Հայկական մարզի մշտական վարչության կազմակերպումը առիթ դարձնելով, Պասկևիչը ղեկավարությունից հեռացրեց գենե-*

րալ Կրասովսկուն և Ներսես Աշտարակեցուն, որին. «վարձահատույց լինելու փոխարեն», «նրա [Պասկևիչի] սադրանքով ցարական կառավարությունը 15-ամյա պատվավոր աքսորի դատապարտեց»[1]։

Պաշտոնից հեռացված Կրասովսկու փոխարեն նոր կազմակերպված Հայկական մարզի պետ է նշանակվում գեներալ-մայոր Ալեքսանդր Ճավճավաձեն։ Վարչության կազմը համապատասխանում էր վերը նշված կանոնադրության պահանջներին. նա բաղկացած էր մարզի ռազմական պետից, որը նախագահում էր վարչության նիստերում և հաստատում նրա որոշումները, երկու ռուս խորհրդականներից, մեկը ոստիկանության գծով, իսկ մյուսը՝ ֆինանսական, և խորհրդակցական ձայնով օգտվող երկու ասեսորներից՝ մեկը հայ հասարակության կողմից, իսկ մյուսը՝ ադրբեջանական։ Մարզի կենտրոն հաստատվեց Երևանը։

1828 թ. կազմված մարզային վարչության մեջ, ինչպես ասված էր մշակված կանոնների նախագծում, հարցերը լուծվում էին երկու խորհրդականների զեկուցումների հիման վրա և հաստատվում զինվորական պետի կողմից։ Եթե հարցն այնպիսին էր, որ պահանջում էր ավելի մանրամասն քննություն, և նրա լուծումը անմիջապես կապված էր տեղական պայմանների ու բնակչության հետ, ապա այդ դեպքում լսում էին երկու ասեսորների կարծիքը և, անհրաժեշտ գտնելիս, որոշման ժամանակ դրանք հաշվի առնում։

Շուտով ակնհայտ դարձավ, որ նմանօրինակ վարչաձևը անձեռնտու է և շատ հեռու ցարական միասնական վարչական կարգից։ Հայկական մարզում գործում էին տակավին խանական շրջանից մնացած վարչական կառավարման շատ ձևեր ու սովորություններ։ Հայկական մարզում մի տեսակ կոնգլոմերատ էին կազմում խանական-պարսկականն ու ցարական-ռուսականը։ Ինչպես մյուս բնագավառներում, այնպես էլ այստեղ մարզի վարչական կառուցվածքը պետք էր փոփոխել և այն ավելի մոտեցնել կայսրության մյուս մարզերում գոյություն ունեցող վարչաձևին։

Այդպիսի փոփոխություն կատարվեց՝ Ա. Ճավճավաձեին 1830 թ. փոխարինած Բեհբութովի ժամանակ՝ 1833 թվականին։

Այս նոր օրենքը մի քայլ ևս առաջ գնաց նախկին խանական «օրենքների» քաոսը վերացնելու և հաստատուն կարգ ու կանոն մտցնելու ուղղությամբ։ Սակայն դրա հետ միասին նոր օրենքով

[1] Աշոտ Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, գիրք առաջին, Երևան, 1955, էջ 42—43։

նախկին մարզային վարչությունը, որը որոշ չափով կոլեգիալ օրգանի էր նման, վերածվեց սոսկ մարզի պետի գրասենյակի, և ավելի լայնացան վարչության պետի իրավունքները։ Դրան համապատասխան, նախկին խորհրդականների փոխարեն ստեղծվում են ոստիկանական (կամ կատարողական), ֆինանսական-տնտեսական և դատական հատուկ բաժիններ։ Տնտեսական և ֆինանսական մասերի միացումով կազմվեց մի հատուկ վարչություն, որը կոչվեց «Հայկական մարզի հարկերի և պարհակների հավաքման վարչություն»։ Քրեական գործերը քննելու իրավունքը, որը առաջ պատկանում էր վարչությանը, ըստ նոր վարչաձևի, տրվեց Երևանում գտնըվող ռազմա-դատական դատարանին։ Այդ դատարանը գործում էր քաղաքի զինվորական պարետի նախագահությամբ։ Նախկինում գոյություն ունեցող քաղաքային դատարանների փոխարեն կազմվում են երկու գավառական դատարաններ՝ Երևանում և Նախիջևանում։ Գավառական դատարանը բաղկացած էր դատավորից և երկու ռուս ու երկու տեղացի ատենակալներից։ Այդ դատարաններին իրավունք էր վերապահվում քննել միայն պետության ու մասնավոր մարդկանց և մասնավոր մարդկանց միջև եղած հայցերը։ Գավառական դատարանները առաջին ինստանցիան էին համարվում, և դրանց վճիռը ենթակա էր բեկման։ Երբ հայցը վերաբերվում էր ոչ ավելի, քան 200 ռուբլու գործերի, ապա դատարանի վճիռը հաստատում կամ բեկանում և նրա փոխարեն նոր վճիռ էր կայացնում մարզի պետը, իսկ եթե գործի արժեքը 200 ռուբլուց անցնում էր, ապա այն հաստատելու կամ բեկանելու իրավունք ուներ Կովկասի գլխավոր կառավարիչը, որը առհասարակ համարվում էր բոլոր կարգի հայցերի վերջնական լուծողը։ Այդ դատական օրգանների հետ միասին նոր վարչաձևը ուժի մեջ էր թողել նաև նախկին հոգևոր դատարանները (դրանք Հայկական մարզում երեքն էին՝ մեկը Երևանում, մեկը Նախիջևանում, մեկն էլ Օրդուբադում) և տանուտերերի դատ ու դատաստան տեսնելու իրավունքը։ Ոստիկանական վարչությունը Նախիջևանի և Օրդուբադի գավառներում մնում է էքսան-խանի և Շահ-Ալի-բեկի ձեռքին, իսկ Երևանի գավառը բաժանվում է ոստիկանական չորս շրջանների՝ օկրուգների՝ Երևանի, Շարուրի, Սարդարաբադի և Սուրմալուի, որոնց գլուխ կանգնում են շրջանային պետերը։ Վերջիններս նշանակվում էին քաղաքացիական ռուս աստիճանավորներից կամ զինվորականներից, նրանք ամբողջովին ենթարկվում էին մարզի պետին և տեղական բնակիչներից ունեին 2-ական օգնականներ։ Նոր հաստատված վարչաձևով նախկին մահալները մնացին նույնը և՛ իրենց տերի-

տորիալ սահմաններով, և՛ վարչական վիճակով. նույնը մնաց նաև գյուղական համայնքների կառավարման կարգը։

Մարզի կենտրոնը Երևանն էր, մարզային վարչության նստավայրը Երևանի բերդը, որը հետագայում էլ մնաց որպես նստավայր Երևանի գավառի, ապա նահանգական վարչության համար ընդհուպ մինչև 60-ական թվականները, երբ Երևանի նահանգական վարչության համար նոր շենք կառուցվեց և բերդն իբրև վարչական նստավայր լքվեց։

Հայկական մարզի կազմակերպումով ցարական կառավարությունը, կարելի է ասել, երկու նպատակ էր հետապնդում. առաջին՝ այն ծառայեցնել իբրև միջանկյալ վարչական օղակ խանական շրջանի վարչաձևը աստիճանաբար ոչնչացնելու և ցարական վարչաձևը արմատավորելու համար, երկրորդ՝ այն կոչելով «Հայկական մարզ», դրանով իսկ արտաքնապես ցույց տալ, որ իր վարչական բաժանման մեջ հաշվի են առնված տեղական-ազգային պայմանները և, իբր, նրանում միավորված հայկական շրջաններին, որոնք կազմում էին Ռուսաստանին անցած Արևելյան Հայաստանի զգալի մասը, տրված են որոշ արտոնություններ։ Հայկական մարզի վարչաձևը իբրև այդպիսին ներկայացնելու փորձեր էին փաստորեն ժամանակավոր վարչության մեջ Ներսես Աշտարակեցուն մտցնելը, մարզի մշտական վարչությունը հաստատելիս հայ ու ադրբեջանցի երկու ասեսորների ներկայությունն այդ վարչությունում և, վերջապես, 1833 թ. մարզի վարչական վիճակը փոփոխության ենթարկելիս՝ նրա գերբի վրա ցարական երկգլխանի արծվի և թագի հետ միասին Մասիսը, Հայկական թագավորական թագը և էջմիածնի վանքը պատկերելը։ Սակայն հենց նույն փաստերը գալիս են ասելու, որ ցարական վարչաձևը եթե սկզբում հանդուրժում էր մարզի վարչությունում լիակատար ձայն ունեցող մի հայի առկայությունը, ինչպես ժամանակավոր վարչության մեջ էր, հետագայում այն փոխարինվեց միայն խորհրդակցական ձայն ունեցող ասեսորով, որը վարչությունում գործերը լուծելիս գրեթե ոչ մի նշանակություն չուներ, իսկ 1833 թվականից այդ էլ վերացվեց և մարզային վարչությունն ամբողջապես դարձավ ռուսական՝ մարզի պետի ամենազոր իրավունքներով հանդերձ։

1833 թ. օրենքով չավարտվեցին Հայաստանի վարչաձևի փոփոխությունները։ Դեռևս վերջնական չէր համարվում նաև Անդրկովկասի մյուս մասերում տիրող վարչական կարգը։ Ցարական կառավարությունը ձգտում էր Անդրկովկասը լիովին և վերջնականորեն ենթարկել ռուսական պետության վարչաձևին, այնտեղ ոչնչացնել

տեղական և պարսից տիրապետության շրջանից մնացած բոլոր ձևերը ու հաստատել ռուսական միասնական վարչաձև։ Ցարական պաշտոնյաներից ոմանք (Պասկևիչ, Մեչնիկով, Գան և այլն) գտնում էին, որ առանց ձգձգելու անհրաժեշտ է անմիջապես և ամբողջովին Անդրկովկասը ենթարկել ռուսական միասնական վարչաձևին ու պետության մեջ գործող ընդհանուր օրենքներին, իսկ ոմանք էլ գտնում էին, որ նույն նպատակին պետք է հասնել աստիճանաբար, քայլ առ քայլ։ Անդրկովկասի, այդ թվում և Արևելյան Հայաստանի վարչական կարգը փոփոխելու համար նշանակվեց հատուկ հանձնաժողով, որի աշխատանքի արդյունքների և գործերի հետագա ընթացքի մասին կնշվի քիչ հետո, միայն պետք է ասել, որ Հայկական մարզը 1833 թ. վարչական ռեֆորմից հետո տերիտորիալ և վարչական առումով անփոփոխ մնաց մինչև 1840 թ.։

1829 թվականից Անդրկովկասը վարչականորեն բաժանված էր 6 տարբեր կարգի միավորների.

1. Բուն Վրաստան, որը բաղկացած էր 6 գավառից։

2. Հինգ դիստանցիա (շրջան)՝ Բորչալու, Ղազախ, Շամշադին, Փամբակ և Շորագյալ։

3. Յոթ պրովինցիա՝ Ղարաբաղ, Շաքի, Շիրվան, Բաքվի պրովինցիա, Կուբան, Դերբենդի պրովինցիա և Ախալցխա։

4. Չորս մարզ՝ Իմերեթիա, Մինգրելիա, Գուրիա և Հայկական մարզ։

5. Թալիշի խանություն։

6. Լեռնական զանազան ժողովուրդների զբաղեցրած տերիտորիաները[1]։

Դրանք միմյանցից տարբերվում էին և՛ Ռուսաստանին միանալու ժամանակով, և՛ իրենց վարչաձևով։ Մարզերը, այդ թվում և Հայկական մարզը, վարչականորեն կիսառազմական-կիսաքաղաքացիական բնույթ ունեին։

Հայկական մարզը, ինչպես նշվեց, կազմված էր Երևանի ու Նախիջևանի նախկին խանություններից և Օրդուբադի (նախկինում Աղաջիրան) շրջանից։ Հաշվի առնելով նախկինում գոյություն ունեցող այդ վարչակարգը, Հայկական մարզն էլ, դրան համապատասխան, բաժանվեց վարչական երկու միավորի՝ Երևանի և Նախիջևանի պրովինցիաների, որոնք մասնատվեցին օկրուգների։ Երևանի պրովինցիան մասնատված էր 4 օկրուգների՝ Երևանի, Շարուրի, Սուրմալուի և Սարդարաբադի։ Երևանի օկրուգն իր մեջ ընդ-

---

[1] *С. Эсадзе*, Историческая записка об управлении Кавказом, т. I, Тифлис, 1907, стр. 65.

գրկում էր նախկին Գյոգչայի, Դարաչիչագի և Կըրխ-բուլագի մահալները, Շարուրի օկրուգը՝ Շարուր, Վեդի-բասար, Գառնի-բասար և Զանգի-բասար մահալները, Սուրմալուի օկրուգը՝ Սուրմալուի, Դարաքենդ-Փարչենի մահալները և Գառնի-բասար ու Վեդի-բասար մահալների այն մասերը, որոնք ընկած էին Արաքսի աջ ափին, իսկ Սարդարաբադի օկրուգը կազմված էր նախկին Սաաթլինի, Թալինի, Սեիդլի-Ախսախլիի, Ապարանի, Կարբիի և Սարդարաբադի մահալներից։

Նախիջևանի պրովինցիան կազմված էր երկու օկրուգից՝ Նախիջևանի և Օրդուբադի։

Երևանի պրովինցիայի օկրուգների գլուխ էին կանգնած օկրուգային պետերը, իսկ Նախիջևանի ու Օրդուբադի օկրուգներում ուժի մեջ մնաց նախկին նայիբների իշխանությունը, ինչպես նաև կազմվեցին ոստիկանական վարչություններ, որոնց գլուխ ևս կանգնած էին նույն նայիբները։ Թե՛ Երևանի պրովինցիայի օկրուգների պետերը և թե՛ Նախիջևանի օկրուգների նայիբները ենթարկված էին Հայկական մարզի վարչությանը։ Երկու պրովինցիաներում էլ մահալների ու գյուղական համայնքների վարչաձևը մնաց հինը՝ պարսկականը։

Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միացվելուց և այնտեղ նոր օրենքներ ու վարչակարգ մտցվելուց հետո խանական շրջանի կամայականությունները մեծ մասամբ վերանում են. այժմ շատ բնագավառներում սկսում է գործել օրենքը, որ պարսկական տիրապետության շրջանում իբրև այդպիսին, բառիս բուն իմաստով, գոյություն չուներ։ Սակայն ցարական աստիճանավորների համար ևս խորթ չէին անօրինականություններն ու կամայականությունները։

Հայկական մարզում կային երեք քաղաքներ՝ Երևան, Նախիջևան և Օրդուբադ։ Հետագայում, երբ կազմակերպվեց Երևանի նահանգը, նրա քաղաքների թիվը հասավ 5-ի, որովհետև նրա մեջ մտավ նաև Ալեքսանդրոպոլը, որը մինչև 1837 թ. գյուղ էր և հայտնի էր Գյումրի (պատմական Կումայրի) անունով. այդ թվականից այն վերածվեց բերդի և կոչվեց Ալեքսանդրոպոլ, իսկ 1840 թվականից արդեն անցավ քաղաքների շարքը։ Մյուս՝ 5-րդ քաղաքը Երևանի նահանգի Նոր Բայազետն էր, որն առաջացավ Ներգաղթի շնորհիվ, նախկին Գավառ գյուղատեղում։ Նրա առաջացմանը նպաստեցին տեղական առևտրի զարգացումը և գավառական կենտրոն լինելը։ Նշված բոլոր քաղաքների մեջ իր տնտեսությամբ, վարչական վիճակով ու խաղացած դերով այդ շրջանում ամենից նշա-

նավորը Երևանն էր՝ Հայկական մարզի կենտրոնը։ Քաղաքները կառավարվում էին ոստիկանության կողմից։

Մենք տեսանք, որ 30-ական թվականներին Անդրկովկասում գոյություն ունեին վեց կարգի վարչական միավորներ, որոնք իրարից տարբերվում էին իրենց կառավարման օրգաններով, վարչական և ռազմական կարգ ու կանոնով։ Ցարական կառավարությունը չէր հանդուրժելու այդպիսի զանազանակերպ վարչաձևեր, նրան անհրաժեշտ էր ամենուրեք կիրառել կայսրության ընդհանուր օրենքներն ու վարչական բաժանման կարգը։

1838 թվականին բարձրագույն հրամանագրով ցարը հաստատում է սենատոր Գանի նախագահությամբ մի հանձնաժողով, որին հանձնարարվում է տեղում ծանոթանալ ու քննել Անդրկովկասի վարչական կառուցվածքի մասին եղած բոլոր առաջարկներն ու նախագծերը և կազմել մի կանոնադրություն, որի հիման վրա պետք է վարչական բաժանման ենթարկվեր Անդրկովկասը, որոշվեին նրա վարչական միավորների կառավարման ձևերը։

Հանձնաժողովի աշխատանքի հիման վրա 1840 թ. ապրիլի 10-ին հրապարակվեց հատուկ օրենք, ապա բարձրագույն հրամանագիր կառավարող սենատին՝ Անդրկովկասում նոր վարչական կառուցվածք մտցնելու մասին, դրանց հետ միասին հրապարակվեց բարձրագույն հրամանագիր՝ ըստ նոր օրենքի պետական պաշտոնյաների բացման վերաբերյալ։

Անդրկովկասն այդ, այսպես կոչված, գանյան վարչաձևի հիման վրա կազմեց մեկ նահանգ՝ Վրաց-Իմերեթյան նահանգ անունով և մեկ մարզ՝ Կասպիական մարզը՝ հատուկ ռազմա-օկրուգային կառավարչությամբ։ Վերացվեցին նախկին վեց կարգի վարչական բոլոր միավորները, որոնց թվում և Հայկական մարզը։

Վրաց-Իմերեթյան նահանգը ընդգրկում էր Անդրկովկասի մեծ մասը և բաժանված էր 11 գավառների՝ Թիֆլիսի, Գորիի, Թելավի, Բելոկանի, Քութայիսիի, Ելիզավետպոլի, Ալեքսանդրոպոլի, Երևանի, Նախիջևանի, Ախալցխայի և Գուրիայի։ Կասպիական մարզը բաժանվեց 6 գավառի՝ Շիրվանի, Ղարաբաղի, Շաքիի, Թալիշի, Դերբենդի և Ղուբայի։ Այսպիսով, նախկին Հայկական մարզի տերիտորիան վեր էր ածվել երկու գավառի՝ Երևանի ու Նախիջևանի, որոնք մտցվել էին Վրաց-Իմերեթյան նահանգի մեջ։ Երևանը դրանով դադարեց մարզի կենտրոն լինելուց, դարձավ համանուն գավառի կենտրոնը։

Գանի նախապատրաստած այդ օրենքի նպատակն էր վարչականորեն Անդրկովկասը ձուլել Ռուսական կայսրությանը՝ ոտնահարելով նրա ազգային առանձնահատկությունները, պատմակա-

նորեն ձևավորված յուրահատկությունները և այլն։ Այդ օրենքով երկրի կառավարման գործից հեռացվեցին տեղացի բարձր խավի ներկայացուցիչները՝ բեկերը, աղալարները, մելիքները։ Գավառներում, մահալներում և գյուղերում պաշտոնյաներ նշանակվեցին կայսրության մեջ ընդունված կարգով։ Ընդ որում գավառներում և մահալներում կառավարչական ապարատը՝ գավառապետությունը, ոստիկանական շրջանի պետի պաշտոնը և այլն, բացառապես տրվում էր ռուս աստիճանավորներին, իսկ գյուղերի ավագությունը՝ տեղացիներին՝ ընտրության միջոցով։ Մահմեդական հոգևոր դատարանները զրկվեցին իրենց իրավունքներից, դրանց փոխարեն ստեղծվեցին գավառական դատարաններ։ Հոգևոր դատարանները ամուսնության և ընտանեկան մանր հայցերից զատ այլևս այլ հայցեր ընդունելու և դրանց մասին վճիռ կայացնելու իրավունք չունեին։

1840 թ. ապրիլի 10-ի օրենքը գնահատվում է որպես Անդրկովկասը ռուսականացնելու ռեակցիոն փորձ։ Նրա կիրառումը մեծ անբավականություն է առաջացնում անդրկովկասյան շրջաններում՝ Ալեքսանդրապոլում, Նախիջևանում, Ախալցխայում, Գուրիայում, Բելոկանում և այլուր։ Առանձնապես մեծ դժգոհություն է արտահայտում տեղական ազնվականությունը, որը նոր օրենքով կորցրել էր կառավարմանը մասնակցելու իր նախկին իրավունքները, հեռացվել վարչական ապարատներից։ Ցարական կառավարության համար վերջինս ցանկալի չէր։ Հասարակության այն խավը, որը տեղում իրեն համար հենարան պետք է ծառայեր բնակչության մեծամասնությանը՝ աշխատավորներին «հլու-հնազանդ» պահելու համար, դուրս էր եկել նոր վարչաձևի դեմ։ Հետագա բարդություններից խուսափելու համար Նիկոլայ I-ը ստիպված է լինում նահանջել օրենքի որոշ դրույթներից կամ դրանք կիրառել կրճատված ձևով։ Ամենանշանակալի զիջումն այն էր, որ ցարի կարգադրությամբ իրավունք տրվեց աղալարներին, բեկերին և մելիքներին գրավել վարչական պաշտոններ։

1844 թվականին Կովկասը վեր է ածվում փոխարքայության, և փոխարքա է նշանակվում Մ. Ս. Վորոնցովը։ 1840 թ. ապրիլի 10-ի օրենքից ցարական կառավարության կատարած նահանջը, տեղական ազնվականությանը տրված որոշ արտոնությունները տակավին չէին կանխել և չէին էլ կարող կանխել Կովկասում ծավալված անբավականությունները։ Ուստի խորամանկ Վորոնցովը, իրեն ներկայացնելով որպես Կովկասի ժողովուրդների «բարեկամ», սկսում է զգուշությամբ և քողարկված ձևով պաշտպանել ցարական ինքնակալության շահերը։ Նա վերոհիշյալ օրենքով սահման-

ված միօրինակ վարչաձևը փոխարինում է Կովկասի տարբեր մասերում տարբեր վարչաձևեր հաստատելով։ 1846 թ. դեկտեմբերի 14-ին Վորոնցովի ներկայացրած նախագծի հիման վրա հրապարակվում է մի օրենք, որով ամբողջ Անդրկովկասը բաժանվում է չորս նահանգների՝ Թիֆլիսի, Քութայիսիի, Շամախիի և Դերբենդի։ Նախկին Հայկական մարզի տերիտորիաները, որոնք 1840 թ. կազմել էին երկու գավառ և մտել Վիրա-Իմերեթյան նահանգի մեջ, այժմ էլ փաստորեն վարչականորեն մնացին նույնը, այսինքն՝ իբրև երկու գավառներ՝ Երևանի և Նախիջևանի, մտան Թիֆլիսի նահանգի մեջ։ Թիֆլիսի նահանգի մեջ էր նաև Ալեքսանդրոպոլի գավառը, որը կազմված էր նախկին Շորագյալի, Փամբակի և Ախալքալաքի շրջաններից։

Տերիտորիալ-վարչական վերափոխությունները Անդրկովկասում դրանով ևս չավարտվեցին։ Նախկին Հայկական մարզի տերիտորիան իբրև գավառներ այլ նահանգների մեջ մտցնելը աղաղակող հակասություն էր առաջացնում տեղական պայմանների նկատմամբ։ Անհրաժեշտ էր պատմականորեն և ժողովրդական տնտեսությամբ շատ թե քիչ մի ընդհանրություն կազմող այդ լայնատարած մարզը ճանաչել որպես մի ավելի մեծ վարչական միավոր՝ նահանգ, քանի որ դա համապատասխանում էր ցարական ինքնակալության ռազմական, ոստիկանական, ֆինանսական և գաղութատիրական շահերին։

1849 թ. հունիսի 9-ին բարձրագույն հրամանագրով կազմվում է Երևանի նահանգը։ Այդ օրենքը ուժի մեջ է մտնում 1850 թ. հունվարի 1-ից, երբ նախապատրաստական բոլոր գործերը կատարելուց հետո բացվում են նահանգական և գավառական կառավարչությունները։

Կովկասի փոխարքա Մ. Ս. Վորոնցովը իր 1849—1851 թթ. գործունեության մասին գրած հաշվետվության մեջ փորձում է բանն այնպես ներկայացնել, որ, իբր, Երևանի նահանգի կազմումը ծնվում էր միայն երկրի բնակչության տնտեսական շահերից և նրա բնապատմական առանձնահատկություններից, մինչդեռ հենց նույն զեկուցագրից պարզ երևում է, որ մյուս նահանգների նման, Երևանի նահանգը ևս ստեղծվել էր վարչա-ոստիկանական և գաղութատիրական նպատակներից ելնելով։

Նահանգի կենտրոնը Երևանն էր։ Երևանի նահանգն իր մեջ ընդգրկեց նախկին Հայկական մարզն ու Ալեքսանդրոպոլի գավառը, որից անջատվեց Ախալքալաքի ոստիկանական շրջանը (участка)։ Նորաստեղծ Երևանի նահանգն իր կազմում ուներ Երևանի, Ալեքսանդրոպոլի, Նոր Բայազետի, Նախիջևանի և Օրդուբադի գավառ-

*ները։ 1862 թ. Ալեքսանդրոպոլի գավառից անջատվում և Թիֆլիսի նահանգին է միացվում Լոռին, որը նախկինում կազմում էր այդ գավառի Փամբակ ոստիկանական շրջանի հյուսիսային մեծագույն մասը։ 1867 թվականին Երևանի նահանգի գավառաբաժանումը ենթարկվում է փոփոխության։ Օրդուբադի գավառը վերացվում է, նրա տերիտորիան միացվում է Նախիջևանի գավառին, իսկ Օրդուբադ քաղաքը դառնում է արտաշտատային։ Այդ օրենքով կազմվում է և մի նոր գավառ՝ էջմիածնի գավառը։ Այսպիսով, 1867 թ. փոփոխմամբ ևս Երևանի նահանգը կազմված էր 5 գավառներից՝ Երևանի, Ալեքսանդրոպոլի, Նախիջևանի, Նոր Բայազետի և էջմիածնի։ 1874 թվականին Երևանի նահանգի գավառների կազմում նոր փոփոխություն է մտցվում։ Նրա տերիտորիան նախկին 5-ի փոխարեն մասնատվում է 7 գավառի՝ Երևանի, Ալեքսանդրոպոլի, էջմիածնի, Նախիջևանի, Նոր Բայազետի, Շարուր-Դարալագյազի և Սուրմալուի։ Շարուր-Դարալագյազը կազմվել էր Նախիջևանի գավառի մի մասից, իսկ Սուրմալուն՝ էջմիածնի գավառի Սուրմալուի ոստիկանական շրջանից, որն ընկած էր Արաքս գետի և Հայկական Պար լեռնաշղթայի միջև։*

*Այդպիսի կազմով Երևանի նահանգը, գրեթե առանց որևէ փոփոխության, մնաց մինչև առաջին համաշխարհային պատերազմը։ Ռուսական պետության մյուս նահանգների գավառների նման, Երևանի նահանգի գավառները ևս բաժանված էին ոստիկանական շրջանների։ Սակայն այդ պաշտոնական, օրենքով հաստատված վարչա-տերիտորիալ միավորներից բացի, բնակչության մեջ դեռևս պահպանվել էր պարսկական տիրապետության շրջանի վարչական փոքր միավորների՝ մահալների հասկացողությունը, որը սակայն սոսկ աշխարհագրական բնույթ ուներ։*

*Երևանի նահանգը, տերիտորիալ առումով, կազմակերպելու օրից մինչև վերջ փոփոխության չի ենթարկվել, միայն փոփոխվել է նրա ներքին գավառաբաժանումը, որի մասին ասվեց։ Նրա տերիտորիան, ներառյալ և Սևանա լճի հայելին, կազմել է մոտ 24 ½ քառ. վերստ, իսկ բնակչության թիվը 1871 թ. հասնում էր 452 001-ի։*

*Երևանի նահանգը կազմելիս նրա համար սահմանվեց ավելի պարզեցված կառավարման ձև, սակայն հետագայում նրա հիմնարկությունների ու կառավարող բյուրոկրատիայի թիվը գնալով բազմացավ ու բարդացավ։*

*Նահանգի գլուխ իբրև գերագույն կառավարիչ կանգնած էր գեներալ նահանգապետը, որը նշանակվում էր ցարական բարձրաստիճան զինվորականներից և համարվում էր նահանգի և՛ քաղաքացիական գլխավոր կառավարիչը, և՛ ռազմական ամենաբարձր*

պետը, այլ կերպ ասած, նրա տնօրինությանն էին ենթարկված նա-
հանգի քաղաքացիական և ռազմական գործերը։ Գեներալ նահան-
գապետը ենթարկվում էր Կովկասի փոխարքային, իսկ քաղաքա-
ցիական գործերի գծով նրա անմիջական պետը համարվում էր
Կովկասի փոխարքայության քաղաքացիական մասի գլխավոր կա-
ռավարիչը։ Նահանգապետն ուներ մեկ գլխավոր օգնական, որը
նրան կարող էր փոխարինել բոլոր գործերով։ Նրա օգնականը կոչ-
վում էր փոխ-նահանգապետ, որը դարձյալ նշանակվում էր բարձր
կոչում ունեցող ցարական աստիճանավորներից։

Նահանգն ուներ մի շարք հիմնարկներ։ Դրանք բոլորն էլ են-
թարկված էին գեներալ նահանգապետին։ Նահանգական հիմնարկ-
ները հետևյալներն էին՝ նահանգապետի գրասենյակը, նահանգա-
կան վարչությունը, զինապարտության նահանգական ատյանը
(губернское по воинской повинности присутствие), գյուղացիա-
կան գործերի նահանգական ատյանը և նահանգական վիճակա-
գրական կոմիտեն։

Դրանցից յուրաքանչյուրն ուներ իր բավական մարդաշատ ա-
պարատը, որտեղ պաշտոններ էին վարում բացառապես ռուս աս-
տիճանավորները։

Նահանգապետի գրասենյակը, որը բաղկացած էր կառավարի-
չից, նրա երկու օգնականներից և վեց աստիճանավորներից, վա-
րում էր բոլոր գրագրությունները, հատկապես գաղտնի գրագրու-
թյուններն ու այն գործերի գրագրությունները, որոնք անմիջակա-
նորեն շտապ լուծում էին պահանջում նահանգապետից։

Նահանգական վարչությունը բաղկացած էր երկու բաժնից՝
գրասենյակից և ընդհանուր ատյանից։ Գրասենյակը ամբողջապես
ենթարկվում էր փոխ-նահանգապետին և իր հերթին բաժանված էր
չորս բաժանմունքի, որոնցից առաջին երկուսը կարգադիր բա-
ժանմունքներ էին և յուրաքանչյուրը կազմված էր 3 հոգուց՝ խոր-
հրդականից կամ բաժանմունքի կառավարիչից, գործավարից և
նրա օգնականից։ Նահանգական վարչության գրասենյակի մյուս
երկու բաժանմունքներն էին՝ բժշկական բաժանմունքը և շինարա-
րականը։ Բժշկական բաժանմունքի ապարատը բաղկացած էր նա-
հանգական բժշկից, նրա օգնականից, երկու անասնաբույժից և մեկ
գրագրից, իսկ շինարարական բաժանմունքը՝ նահանգական ինժե-
ներից, նահանգական ճարտարապետից, երկու աշխղեկներից և մեկ
գործավարից։ Բաժանմունքների մեջ մտնող նշված պաշտոնյանե-
րից բացի, կային և մի շարք այլ պաշտոնյաներ, որոնք գրասենյա-
կային աշխատողներ էին համարվում։ Դրանք էին՝ քարտուղարը,

հաշվապահը, էկզեկուտորը, գրանցիչը (регистратор), արխիվարիուսը, հողաչափը և թարգմանիչը։

Նահանգական վարչության մեջ վարվող բոլոր գործերը ընդհանրապես երկու մասի էին բաժանվում՝ վարչական և դատական։ Վարչական գործերը լուծվում էին երկու եղանակով։ Դրանց մի մասը միանձնյա կերպով կարող էին տնօրինել նահանգապետը, փոխնահանգապետը և, եթե ոչ կարևոր գործ էր, բաժանմունքի պետերը, իսկ վարչական գործերի մյուս մասը, ինչպես և դատական բոլոր գործերը, լուծվում էր նահանգական վարչության ընդհանուր ատյանում՝ նահանգապետի կամ փոխ-նահանգապետի նախագահությամբ, որոնց կարծիքը վճռող նշանակություն ուներ։ Փաստորեն նահանգական վարչության ընդհանուր ատյանը վեր էր ածվում սովորական կատարողական հիմնարկի։

Նահանգական զինապարտության ատյանը գործում էր նահանգապետի նախագահությամբ։ Այդ ատյանը բաղկացած էր տարբեր գերատեսչությունների ներկայացուցիչներից։ Նահանգական գործերի ատյանը ևս գործում էր նահանգապետի նախագահությամբ։ Այս ատյանը բաղկացած էր երեք անդամից, քարտուղարից և թարգմանչից։ Նա զբաղվում էր տիրակալական հողերում ապրող գյուղացիների և տերերի միջև եղած հարաբերությունների հարցով։ Նահանգական գյուղացիական գործերի ատյանը իր պարտականությունները տեղերում կատարում էր, այսպես կոչված, հաշտարար միջնորդների միջոցով, որոնցից յուրաքանչյուրն իր տրամադրության տակ ուներ թարգմանիչ՝ տեղացիների խոսքերը ռուսերենի թարգմանելու և իրեն հասկանալի դարձնելու համար։

Տարբեր կարգի շատ անդամներ էր իր մեջ ընդգրկում նահանգական վիճակագրական վարչությունը, որը ևս գործում էր նահանգապետի նախագահությամբ։ Բացի նախագահից և նրա օգնականից, վիճակագրական կոմիտեն ուներ անփոփոխ, իսկական և պատվավոր անդամներ և քարտուղար։

Անփոփոխ անդամներ էին համարվում փոխգնդապետը, նահանգի հատուկ գերատեսչությունների կառավարիչները և այլն։

Իսկական անդամներին ընտրում էր կոմիտեն։ Իսկական անդամներ էին ընտրվում այն մարդկանցից, որոնք կարող էին իրենց գործունեությամբ օգտակար լինել կոմիտեի աշխատանքներին։ Վիճակագրական կոմիտեն աշխատում էր իբրև իսկական անդամներ իր կազմում ընդգրկել գիտական արշավախմբերի ղեկավարներին և կառավարության հանձնարարությամբ նահանգում կատարվող այն գիտական աշխատանքների ղեկավարներին ու մասնակիցներին, որոնք անմիջականորեն կապված էին վիճակագրու-

թյան հետ։ Պատվավոր անդամները ևս ընտրվում էին կոմիտեի կողմից։ Պատվավոր անդամ կարող էին ընտրվել նահանգում ծնված, մեծացած կամ այնտեղ անշարժ գույք ունեցող այն անձնավորությունները, որոնք հայտնի էին դարձել իրենց վիճակագրական աշխատություններով կամ, նահանգում վիճակագրական աշխատանքներ կատարվելիս, ցույց էին տվել նյութական մեծ օժանդակություն։

Վիճակագրական կոմիտեի պարտականությունները շատ էին և պատասխանատու։ Կոմիտեն պետք է զբաղվեր նահանգի բնակչության, արհեստների, առևտրի, արդյունաբերության, հողային տարածությունների, կուլտուրական աշխատանքների և այլ բնագավառների վիճակագրությամբ։ Նա ոչ միայն պետք է հավաքեր, այլև ստուգեր ու վերամշակման ենթարկեր տեղերից ստացված տվյալները։ Կոմիտեի պարտականությունների մեջ էր մտնում նաև նահանգի, նրա բաղկացուցիչ մասերի և առանձին օբյեկտների վերաբերյալ մանրամասն նկարագրություններ կազմելը։ Այդպիսի նկարագրությունները սովորաբար լինում էին աշխարհագրական, պատմական և տնտեսագիտական բնույթի աշխատանքներ։ Նահանգական վիճակագրական կոմիտեն ենթարկվում էր Կովկասյան փոխարքայության վիճակագրական կոմիտեին, իսկ վերջինս էլ՝ կենտրոնական վիճակագրական կոմիտեին։ Ցարական վիճակագրությունը անշուշտ ունեցել է անուղղելի թերություններ ու սխալներ և անճիշտ մեթոդներ։ Բայց և այնպես Երևանի վիճակագրական կոմիտեի թողած ժառանգությունը, իր սխալներով հանդերձ, պատկառելի է և մեծապես օգնում է մոտավորապես ճիշտ գաղափար կազմելու ինչպես ամբողջ նահանգի, նույնպես և նրա մասերը կազմող գավառների ու առանձին քաղաքների տնտեսական վիճակի մասին։ Նրա մշակած նյութերի հիման վրա վիճակագրական տեղեկություններ են հաղորդված առանձին գրքերում, պարբերականներում, ամփոփագրերում, արխիվային բազմաթիվ փաստաթղթերում։

Նշվածներից բացի, նահանգային վարչության տնօրինության մեջ էին մտնում երկրային պահնորդագրի տեսուչը, գավառական ոստիկանական վարչությունները, Երևան քաղաքի ոստիկանական վարչությունը և այլն։

Յուրաքանչյուր նահանգ ուներ իր նահանգական դատարանը, որը փոխարինում էր նախկին գավառական դատարաններին և մյուս դատական հիմնարկներին։ Նահանգական դատարանը իրավասու էր վճիռ կայացնելու բոլոր կարգի քաղաքացիական և քրեական հայցերի նկատմամբ։ Նահանգական դատարանը բաղկացած էր նախագահից, երկու խորհրդականից և չորս ատենակալից, որոնք

ընտրված էին հասարակության բարձր դասերի և առևտրական խավի կողմից։ Քաղաքացիական և քրեական հայցերից բացի, նահանգական դատարանի իրավասությանն էին ենթակա նաև խնամակալական և նոտարական գործերը։

Նահանգն ուներ իր դատախազը։

Երևանի նահանգն ուներ և պահնորդական վարչություն, որը գտնվում էր Երևան քաղաքում։ Դա բաղկացած էր վարչության պետից, նրա օգնականից, որը գործում էր Կարսում, և ադյուտանտից։ Երևանի պահնորդական վարչությունը գործում է ոչ միայն Երևանի նահանգում, այլև Կարսի մարզում։

Նահանգական պաշտոնական ապարատները նշվածներով չէին ավարտվում։ Կային տարբեր մինիստրություններին ենթակա մի քանի այլ հիմնարկներ ևս, որոնք նույնպես տեղադրված էին Երևանում։ Այդպիսիներից էր, օրինակ, պետական ունեցվածքների կառավարման գրասենյակը, որը բաղկացած էր կառավարիչից, դատական գործերի լիազորից ու նրա օգնականից և անտառների ստուգողներից։

Ռազմական առումով Երևանի նահանգը մտնում էր Կովկասի զինվորական շրջանի մեջ և ուներ տեղական ղեկավարման իր սիստեմը։ Բազմամարդ ապարատ ունեին ռուսական ու հայկական եկեղեցիներն ու մահմեդական մզկիթները։

Շատ ավելի պարզ կառուցվածք ուներ գավառների վարչական ապարատը։ Գավառի կառավարման գլուխ կանգնած էր գավառապետը, որը նույնպես առանց բացառության, նշանակվում էր ռուսական աստիճանավորներից։ Նրա պարտականությունների մեջ, ոստիկանական ծառայությունից բացի, մտնում էին՝ պետական ունեցվածքների ու անտառների պահպանությունը, գյուղացիական ամենազանազան գործերով զբաղվելը և դրանց ընթացք տալը, գավառի սահմաններում գործված հանցանքների համար գործ կազմելը և մեղավորներին նահանգական դատին տալը, ոչ կարևոր գործերով դատ ու դատաստան տեսնելը և այլն։ Գավառը բաժանված էր ոստիկանական շրջանների, որոնցում կառավարում էին ոստիկանական շրջանի պետերը (участковые начальники)։ Վերջիններս ունեին դատական և ոստիկանական իրավունքներ։

Երևանում էր գտնվում Երևանի գավառի վարչական ապարատը։ Նշված պաշտոնյաներից բացի, կար գավառական բժիշկ, Երևանի քաղաքային բժիշկ և այլն, որոնք նույնպես գտնվում էին քաղաքում։

Նահանգի վարչական ցածրագույն օրգանները գյուղական համայնքները կառավարող օրգաններն էին։ Գյուղական համայնք-

ների գլուխ կանգնած էին հայկական համայնքներում՝ մելիքները, իսկ ադրբեջանականում՝ քեդխուդաները, քյոխվաները և յուզբաշիները։

Հայկական մարզի, Երևանի նահանգի և գավառի պաշտոնատները, սկսած 1835 թվականից, ամռանը՝ հունիսի սկզբներից մինչև սեպտեմբերի սկզբները տեղափոխվում էին Դարաչիչագ (Ծաղկաձոր)։ Դրա շնորհիվ ժամանակի ընթացքում այստեղ կառուցվել էին պետական բազմաթիվ շենքեր, և երբեմնի սակավաբնակ Դարաչիչագը վերածվել էր ամառանոցային-նահանգական կենտրոնի։ Գրասենյակների տեղափոխումը և դրա հետ կապված ծախսերը, ինչպես և Դարաչիչագում շենքեր կառուցելն ու դրանք բարեկարգ վիճակում պահելը պահանջում էին հսկայական ծախսեր։ Սակայն ցարական աստիճանավորներին ինչ հոգ, այդ բոլոր միջոցները վերջ ի վերջո քամվում էին ժողովրդից՝ հատկապես հարկադիր աշխատանքների ձևով։

Արխիվային պաշտոնական նյութերում և ժամանակին հրապարակի վրա եղած գրքերում հաճախ ենք հանդիպում այնպիսի պնդումների, թե ցարական միապետական վարչաձևի կիրառումը միանգամից վերջ տվեց խանական շրջանում սովորական դարձած կամայականություններին, բռնություններին, կաշառակերությանը։ Որ պարսկական տիրապետության շրջանի համեմատությամբ Ռուսաստանին միանալուց հետո Անդրկովկասում ստեղծվեցին կարգ ու կանոն, մշտական գործող օրենքներ, որոնք ունեին իրենց չափն ու սահմանը, դա տարակուսանքի ենթակա չէ և չի կարող հերքվել որևէ մեկի կողմից. չէ՞ որ նույնիսկ ամենախիստ օրենքը գերադասելի է կամայականությունից, իսկ ցարական ինքնակալությունը, խիստ կենտրոնացած պետություն լինելով, ուներ և իր խիստ, ամենուրեք գործող օրենքները, մինչդեռ Պարսկաստանը ֆեոդալական ապակենտրոնացած պետություն էր, մասնատված բազմաթիվ մանր ու մեծ վարչա-քաղաքական միավորների՝ խանությունների, որոնցում անմրցակից իշխողը կամայականությունն էր՝ իր ուղեկիցներով՝ կաշառակերությամբ, բռնություններով և անօրինականություններով։ Սակայն ցարական վարչաձևի պայմաններում ևս չէին բացառված կամայականությունները, իսկ կաշառակերության նրա ստեղծած պայմանները նույնիսկ կարող էին մրցել նախկին կարգերի հետ։ Այդ գործում ցարական աստիճանավորները փաստորեն խանական պաշտոնյաների իսկական ժառանգորդները դարձան։ Ցարական աստիճանավորների գործած կամայականությունների և կաշառակերության մասին բազմաթիվ փաստաթղթեր են պահպանվել արխիվային ֆոնդերում։

XIX դ. 60—70-ական թվականներին և դրանից հետո Երևանի նահանգն ուներ 5 քաղաք՝ Երևան, Ալեքսանդրապոլ, Նոր Բայազետ, Նախիջևան, Օրդուբադ, որը արտաշտատային էր (այսինքն՝ վարչական կենտրոն չէր) և մտնում էր Նախիջևանի գավառի մեջ։ Անդրկովկասի մյուս նահանգների նման, Երևանի նահանգում ևս 50—60-ական թվականներին աշխատանքի բաժանման խորացման և ընդհանրապես արտադրության առաջադիմության շնորհիվ բնական փակ տնտեսությունը աստիճանաբար քայքայվում էր, իսկ դա նպաստում էր քաղաքային կյանքի զարգացմանը, տնայնագործությունը իսկական քաղաքային արհեստագործությամբ փոխարինելուն, քաղաքային բնակչության թվի ավելացմանը և այլն։

Քաղաքային կյանքի զարգացման համար առանձնապես նպաստավոր պայմաններ ստեղծեցին 60—70-ական թվականների բուրժուական ռեֆորմները, որոնք ընդգրկեցին երկրի ներքին կյանքի կարևոր բոլոր բնագավառները։

Արևելյան Հայաստանի բաղկացուցիչ մասերը կազմող մյուս տերիտորիաները՝ Զանգեզուրը, Լոռին, Շամշադինը և այլն, մտնում էին վարչական այլ միավորների՝ Թիֆլիսի և Ելիզավետպոլի նահանգների մեջ։

Արևմտյան Հայաստանի վարչական կառուցվածքը նշված ժամանակամիջոցում էական որևէ փոփոխություն չի կրում։ Ուժի մեջ են մնում նախորդ շրջանի վարչական կառուցվածքն ու կառավարման ձևերը։

1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմի հետևանքով Կարսի, Սարիղամիշի, Կաղզվանի, Օլթիի և այլ շրջաններ միացվում են Ռուսաստանին։ Այդ շրջանների տերիտորիաներից ցարական կառավարությունը կազմում է մի ընդարձակ վարչական միավոր՝ Կարսի մարզը, որի վարչաձևը, նահանգական վարչաձևերի համեմատությամբ, էլ ավելի ռազմական բնույթի էր։ Կարսի մարզը մասնատված էր օկրուգների։ Այն բաղկացած էր չորս օկրուգից՝ Կարսի, Կաղզվանի, Արդահանի և Օլթիի։ Մարզի գլուխ որպես գերագույն կառավարիչ և ռազմական պետ կանգնած էր մարզային պետը, իսկ օկրուգներում՝ նրա ստորադրյալները՝ օկրուգային պետերը։ Մարզն ուներ մարզային կառավարչություն, որն ուներ մի քանի վարչություններ։ Մարզի կենտրոնը Կարսն էր։ Մարզի մյուս քաղաքներից էին՝ Սարիղամիշը, Կաղզվանը, Արդահանը և Օլթին։

Կարսի մարզի տերիտորիան գրեթե հավասարվում էր Երևանի նահանգի տերիտորիային (եթե չհաշվենք վերջինիս մեջ մտնող

Սևանա լճի հայելին), իսկ վերջինս, ինչպես տեսանք, մի ընդարձակ երկիր էր։

## 2. ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ

### Ցարիզմի տնտեսական քաղաքականությունը Անդրկովկասում և Արևելյան Հայաստանում

Ռուս-պարսկական 1826—1828 թթ. և ռուս-թուրքական 1828—1829 թթ. պատերազմներից հետո, պատերազմներ, որոնցից առաջինը վերջացավ Պարսկաստանի հետ կնքված Թուրքմենչայի պայմանագրով (1828 թ.), իսկ երկրորդը՝ Թուրքիայի հետ կնքած (1829 թ.) Ադրիանապոլսի պայմանագրով, Անդրկովկասը վերջնականապես միացվեց Ռուսաստանին։ Այդ միացումը քաղաքականորեն կատարվել է համեմատաբար կարճ ժամանակամիջոցում՝ ընդամենը մոտ երեք տասնյակ տարիների ընթացքում, իսկ տնտեսականորեն Անդրկովկասի յուրացումը Ռուսաստանի կողմից կատարվում էր շատ դանդաղ։ Անդրկովկասի յուրացումը, որն սկսվել էր Ռուսաստանին միանալուց անմիջապես հետո, նույնիսկ XIX դարի վերջերին դեռևս չէր ավարտվել։ Դրա հիմնական պատճառն այն էր, որ ռուսական բուրժուազիան համեմատաբար թույլ լինելով, ի վիճակի չէր կարճ ժամանակամիջոցում մի ընդհանուր տնտեսական սիստեմի մեջ ընդգրկելու և յուրացնելու հսկայածավալ կայսրությունը, մանավանդ նրա նորանվաճ ծայրաշրջանները։ Բացի դրանից, Անդրկովկասի ու մյուս ծայրամասերի տնտեսական յուրացումը դժվարանում էր բարեկարգ ու հարմար ճանապարհների և համապատասխան հաղորդակցության միջոցների բացակայությամբ։ Ռուսական պետության կենտրոնական շրջաններում տնտեսական կյանքը, XVIII դարի վերջերի համեմատությամբ, XIX դ. սկզբներին արդեն բավականաչափ առաջադիմել էր։ Պատերազմների հետ կապված, զարգանում էին մետաղաձուլությունն ու մետաղամշակումը, պետության տերիտորիայի լայնացման շնորհիվ ընդարձակվում էին «համառուսական շուկայի» շրջանակները, ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության մեջ դրսևորվում էին նոր երևույթներ, որոնք «վկայում էին արդյունաբերության մեջ ճորտատիրական հարաբերությունների անկման և բուրժուական տիպի՝ նոր հարաբերությունների ու կապերի գոյացման մասին»։ Հետագա մի քանի տասնյակ տարիների ընթացքում Ռուսաստանի ժողովրդական տնտեսության մեջ կապիտալիստական արտադրության ձևերը և դրանց հետ կապված նոր՝ կապիտալիս-

տական հարաբերությունները արդեն ձևավորվում և բավականաչափ առաջադիմում են։ 1861 թ. ռեֆորմով Ռուսաստանում սկսվում է կապիտալիզմի դարաշրջանը։ Հետռեֆորմյան շրջանում Ռուսաստանում կապիտալիզմը սկսում է աստիճանաբար զարգանալ, որը 90-ական թվականներից շատ արագ տեմպեր է ընդունում։ Այս տեսակետից Անդրկովկասը շատ ետ էր մնում Ռուսաստանի կենտրոնական նահանգներից։ Այստեղ, ինչպես հայտնի է, բուրժուական ռեֆորմներ անցկացվեցին 5—10 տարի ուշացումով և ավելի մեծ վերապահումներով, որի պատճառով էլ Անդրկովկասում ավելի շատ ճորտատիրական մնացորդներ պահպանվեցին, քան Ռուսաստանում։ Մի խոսքով, և՛ տնտեսական վիճակով, և՛ հասարակական հարաբերությունների մակարդակով Անդրկովկասը Ռուսաստանից խիստ ետ էր մնում։

Այնուամենայնիվ, քաղաքական ներթափանցումից անմիջապես հետո Ռուսաստանը XIX դ. առաջին կեսից սկսում է Անդրկովկաս ներթափանցել նաև տնտեսապես։ Անդրկովկասը նա դիտում էր որպես գաղութ և, իբրև այդպիսին, իր քաղաքականությամբ ձգտում էր այն վերածել հումքի բազայի։ Այստեղ ցարական ինքնակալության տնտեսական քաղաքականությունն ամբողջապես ելնում էր Անդրկովկասը ռուսականացնելու, այն Ռուսաստանի արդյունաբերության հումքի բազայի և նրա արտադրանքների վաճառահանման շուկայի վերածելու նպատակներից։

Տնտեսապես Անդրկովկաս ներթափանցելու ցարական ինքնակալության ձգտումները սկզբնական շրջանում իրագործվում էին այստեղ հատուկ մաքսային քաղաքականություն վարելու և Ռուսաստանը գետերով, ծովերով ու մասամբ ցամաքային հաղորդակցության ճանապարհներով Անդրկովկասի հետ տնտեսապես սերտորեն կապելու միջոցով։

Սկզբնական շրջանում կայսրության մաքսային քաղաքականությունը, որը մայր երկրում հովանավորում էր հայրենական արդյունաբերության զարգացումը, չտարածվեց Անդրկովկասի վրա։ Վերջինս մինչև 30-ական թվականները օգտվում էր օտարերկրյա ապրանքների ներմուծման արտոնյալ պայմաններից։ Կայսրության մաքսային տարիֆը Անդրկովկասում տարածվեց 30-ական թվականներին։ Ըստ այդ տարիֆի ներմուծվող օտարերկրյա ապրանքների վրա նշանակված էր բարձր մաքս, որով ապահովվում էր ռուսական արդյունաբերական ապրանքների հաջող մուտքն ու վաճառքը Անդրկովկասում։ Այստեղ վաճառվող արդյունաբերական ապրանքների դիմաց Անդրկովկասը սկսեց աստիճանաբար որոշ տեսակի հումքեր մատակարարել Կենտրոնական Ռուսաստա-

նին։ Կենտրոնական նահանգների և Անդրկովկասի միջև կապ ըստեղծվեց լեռներով ու լեռնանցքներով անցնող ճանապարհներով և Սև ու Կասպից ծովերով։ Նույնիսկ նավարկություն կազմակերպվեց Կուր գետի վրա (Կասպից ծովից մինչև Մինգեչաուր և ավելի հեռու)։ Ստեղծվեցին հատուկ բաժնետիրական ընկերություններ («Կովկաս» և «Կասպիական ընկերություն»), որոնք նպատակ ունեին Անդրկովկասի ու Պարսկաստանի հետ շոգենավային մշտական կապ պահպանել և առևտուր անել։

Ցարիզմի այդ քաղաքականության հետևանքով Անդրկովկասը մի կողմից դառնում էր ռուսական արդյունաբերական ապրանքների վաճառահանման ամենաձեռնտու շուկաներից մեկը, իսկ մյուս կողմից աստիճանաբար մասնագիտանում էր ռուսական արդյունաբերության համար որոշակի հումք (բամբակ և այլն) արտադրելու ուղղությամբ։ Մոսկովյան արդյունաբերական ապրանքները ողողում էին Անդրկովկասի շուկաները, և տեղական, «տնայնագործական» եղանակով արտադրված ապրանքները (հատկապես մետաքսյա գործվածքները, որոնք նախկինում այնքան հայտնի էին) դուրս էին մղվում, որովհետև դրանք ավելի որակյալ և էժան էին։ Արդյունքն այն է լինում, որ տեղական տնայնագործական ձեռնարկությունները սկսում են անկում ապրել։ Անդրկովկասն իր հումքը ուղարկում էր ռուսական արդյունաբերական կենտրոնները, որտեղից արդյունաբերական ապրանքները անընդմեջ հոսում էին դեպի Անդրկովկաս, վերջինիս այդ եղանակով ներգրավելով համաշխարհային ապրանքաշրջանառության մեջ։

1861 թ. ռեֆորմից հետո, երբ Ռուսաստանը թևակոխեց կապիտալիզմի ժամանակաշրջանը, և արդյունաբերության զարգացման բնագավառում ձեռք բերվեցին նշանակալի հաջողություններ, Անդրկովկասում դեռ կապիտալիստական հարաբերությունները թույլ էին արտահայտված։ Մետրոպոլիայի համեմատությամբ Անդրկովկասում, ավելի շատ ճորտատիրական հարաբերությունների պահպանման, ցարիզմի վարած գաղութային քաղաքականության և մի շարք այլ պատճառների հետևանքով, կապիտալիզմի զարգացումը մեծ չափով ուշացավ և զարգացման ավելի դանդաղ տեմպ ունեցավ։

Չնայած այդ բոլորին, հետռեֆորմյան տասնամյակներում Անդրկովկասը նույնպես հասավ «կապիտալիզմի զարգացման որոշ մակարդակի»։ Սակայն Անդրկովկասի համար դա ընդհանուր երևույթ չէր։ Այստեղ կապիտալիստական զարգացում տեղի էր ունենում միայն մի քանի կենտրոններում (Բաքու, Թիֆլիս) և առանձին հանքավայրերում (Ալավերդի, Ղափան և այլն)։ Երկրի մյուս

մեծագույն մասը իր զարգացմամբ տակավին գտնվում էր նախակապիտալիստական մակարդակի վրա։ Այդ վիճակում էր և Արևելյան Հայաստանը, որը, բացառությամբ նշված հանքավայրերում և Կողբի աղահանքերում ստեղծված արդյունաբերական օբյեկտների, 70-ական թվականներին դեռևս գտնվում էր արդյունաբերության զարգացման արհեստագործական-տնայնագործական մակարդակի վրա։

## Տնտեսությունը

Պարսկական լծից ազատագրվելու և Ռուսաստանին միանալու շնորհիվ Արևելյան Հայաստանում համեմատաբար նպաստավոր պայմաններ ստեղծվեցին տնտեսության զարգացման համար։ Ստեղծվեցին խաղաղ պայմաններ, հաստատվեցին կարգ ու կանոն, օրենք, և ժողովուրդը կարող էր առանց ահ ու սարսափի զբաղվել իր տնտեսությամբ։ Նախորդ շրջանի նման, երկրի տնտեսական կյանքում առաջին տեղն անմրցակից կերպով գրավում էր գյուղատնտեսությունը։

Մշակույթների մեջ առաջին տեղը գրավում էին հացահատիկները՝ ցորենը, գարին, տարեկանը, բրինձը և կորեկը։ Արարատյան դաշտում և Մեղրու շրջանի փոքրիկ գետահովիտներում ցանում էին բամբակ, որի մշակությունը Երևանի նահանգում մեծ չափեր է ընդունում 60-ական թվականներից, երբ ռուսական գործարանները զրկված էին Ամերիկայից հումք ստանալու հնարավորությունից։ Տեխնիկական մյուս կուլտուրաների մեջ կարևոր տեղ էր գրավում ծխախոտը, որը մշակվում էր մեղմ և համեմատաբար խոնավ կլիմա ունեցող շրջաններում։ Գյուղատնտեսական մշակույթների կազմը ենթարկվում է որոշ փոփոխության։ Ռուսաստանին միանալուց հետո Արևելյան Հայաստանում, մասամբ այստեղ հաստատված ռուս գյուղացիները, մասամբ էլ հայերը զարկ են տալիս մեծ եկամտաբերություն ունեցող կարտոֆիլի ու կաղամբի մշակությանը (հատկապես Լոռի-Փամբակի, Դիլիջանի և Իջևանի շրջաններում)։

Այգեգործությամբ զբաղվում էին Արարատյան դաշտի, Մեղրու շրջանի ցածրադիր մասերի և նախալեռնային մի շարք շրջանների բնակիչները։ Հիմնական տեղը այգեգործության մեջ գրավում էր խաղողագործությունը։

Տեխնիկական առումով գյուղատնտեսությունը, նախորդ շրջանի համեմատությամբ, էական որևէ առաջադիմություն չի ունե-

նում։ Մշակման գործիքները դարձյալ մնում էին դարերից ժառանգված նահապետական արորը, տափանը և այլն։ Ամենուրեք տարածված էր եռադաշտային սիստեմը, իսկ լեռնային շրջաններում՝ նույնիսկ երկդաշտյանը։

Գյուղատնտեսության մյուս հիմնական ճյուղը՝ անասնապահությունը ներկայացված էր խոշոր ու մանր եղջերավոր անասնապահությամբ, ձիաբուծությամբ և գոմշաբուծությամբ։ Լեռնային շրջաններում մեծ տարածում ունեին էշն ու ջորին։

Երկրագործությունից, անասնապահությունից և այգեգործությունից բացի, որոշ շրջաններում զբաղվում էին նաև թռչնաբուծությամբ, շերամապահությամբ, մեղվաբուծությամբ, խոզաբուծությամբ, ձկնորսությամբ, որսորդությամբ։

Գյուղատնտեսության զարգացման համեմատաբար արագ տեմպեր սկսվում են գյուղացիական ռեֆորմի կիրառումից հետո (1870 թ.), հատկապես 90-ական թվականներից, երբ վերելքի շրջան էին ապրում տնտեսության նաև մյուս ճյուղերը։ Գյուղատնտեսությունը նախասովետական շրջանում իր ամենաբարձր մակարդակին է հասնում առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին։ Պատերազմի ընթացքում և դաշնակների տիրապետության կարճատև շրջանում, երկրի տնտեսության բոլոր ճյուղերի հետ միասին, ողորմելի դրության է հասնում և գյուղատնտեսությունը։

Արևմտյան Հայաստանում գյուղատնտեսությունը շարունակում էր մնալ ծայրաստիճան հետամնաց դրության մեջ։ Նախորդ ժամանակների համեմատությամբ այն որևէ առաջադիմություն չի ունենում ո՛չ մշակման տեխնիկայի ու ձևերի և ո՛չ էլ քանակական առումով։ Գյուղատնտեսությունն այստեղ ուներ նույն ճյուղերը, ինչ որ Արևելյան Հայաստանում։

Երկրի տնտեսության մեջ իրենց նշանակությամբ երկրորդ տեղը գրավում էին **արհեստները**։ Միայն Հայկական մարզում, որը կազմում էր Հայաստանի միայն մոտ $^1/_8$ մասը, 1830-ական թվականներին կային շուրջ 10 000 արհեստավորներ։ Արհեստագործության աչքի ընկնող կենտրոններ էին Երևանը, Ալեքսանդրապոլը, Ախալցխան, Կարսը, Նախիջևանը, Շուշին, Էրզրումը, Վանը, Երզնկան, Բիթլիսը, Սեբաստիան, Մալաթիան, Մուշը, Շատախը։ Հայաստանում այդ շրջանում արհեստների թիվը հասնում էր մոտ 120-ի։ Արհեստավորական տեխնիկան պարզունակ էր, սակայն որոշ արհեստներ իրենց արտադրանքի որակով հասել էին բարձր մակարդակի և մեծ համբավ ունեին նույնիսկ երկրից դուրս։ Աշխատանքի բաժանումը արհեստի ներսում թույլ էր, միևնույն մարդը

